# ԱՐԿԱԾՔ

# ՏԵՂԵՄԱՔԱՅ

# ԱՐԿԱԾՔ

# ՏԵԼԵՄԱՔԱՅ

ՎԻՊԱՍԱՆԵԱԼ

Ի ՓԵՆԵԼՈՆԷ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍԷ

ԳԱՂՂԻԱՑԻՈՅ

ԵՒ ԹԱՐԳՄԱՆԵԱԼ Ի ՁԵՌՆ

ԵԴՈՒԱՐԴԱՅ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍԻ

ՀԻՒՐՄԻՒԶԵԱՆ

Ի ՄԽԻԹԱՐԵԱՆ ՈՒԽՏԷ



Ի ՎԵՆԵՏԻԿ

Ի ՏՊԱՐԱՆԻ ՍՐԲՈՅՆ ՂԱԶԱՐՈՒ

ՅԱՄԻ 1850 ՌՄՂԹ

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

Փրանկիսկոս Ֆենելոն ծնեալ 'ի Պերիգոր գաւառ Գաղղիոյ յամին 1651, էր յերևելի և 'ի վաղնջուց ազգատոհմէ՝ յորում պայծառացան արք ականաւորք։ Սա ընդ կորովս մտաց բերելով յանձին և բարս քաղցրահամբոյր, յաճախեաց զպարծանս ազգին իւրոյ և զեկեղեցական ուխտին։ Դաստիարակեալ առ ոտս հօրեղբօր իւրոյ սպարապետի զօրաց, զարգացաւ 'ի սուղ ժամանակի 'ի գեղեցիկ դպրութիւնս, և 'ի վարժս բարձրագոյն գիտութեանց՝ յորս պարապէր առ 'ի զբօսանս ուշիմ պատանին։

Անուանամեայ հանդիսացաւ 'ի բեմբասացութիւնս, գովեալ յամենեցուն։ Այլ զի մի տարաժամ գովութիւնք զեղծուսցեն զնա, խոհական սեպուհն դաստիարակ նորա խրատ ետ

նմա հրաժարել 'ի բեմէ, և կալ ընդ ձեռամբ Գրուսոնի աւագերիցու 'ի Փարիզ. ուր մարզեալ քաջ յեկեղեցական ուսմունս, 'ի քսան և չորրորդ ամի տիոցն ձեռնադրեցաւ 'ի քահանայութիւն: Այլ յետ երից ամաց Նոյէ արքեպիսկոպոս Փարիզ քաղաքի ետ նմա զտեսչութիւն նորադարձ հաւատացելոցն. յորում պայծառացաւ հանճար նորա յուսուցանել և 'ի համոզել զմիտս: Արագել լեալ արքայն Գաղղիոյ, կացոյց զնա անդէն տեսուչ առաքելութեան յՕնի նահանգի, ուր լուսաւոր վարդապետութեամբն, հեզ և բարեկրօն կենցաղավարութեամբ և կորովի պերճախօսութեամբ ձգեաց զբազումս 'ի նորադարձից յողջամիտ հաւատս:

Տեսեալ Լուդովիկոսի ԺԴ արքային Գաղղիոյ զգերապանծ ձիրս ոգւոյ և զմտաց Ֆէնէլոնի, կացոյց զնա դաստիարակ արքայորդւոցն: Այնուհետև պերճափառ արքունիքն եղեն ասպարէզ հանդիսից առաքինութեան նորա. և զԹագաժառանգ պատանեակն այնպէս ճոխացոյց նա զմիտս աստուածային և քաղաքական գիտութեամբք, զի անդադրին պատրաստէր զբարեբաստութիւն Գաղղիոյ:

Այս յամին 1695, զհետ ընդ դաստիարակութեան արքայորդւոցն՝ տուաւ նմա և արքեպիսկո

պատուԹիւն ՝Ի Հռոմայեցի. այլ նա պայմանաւ զայն յանձն էառ, զի զերիս ամիս ևեթ տարւոյ կացցէ յաղքունիս ՝ի դատաւորականուԹիւն, իսկ զայլ ժամանակս ՝ի Թեմի իւրում առ ՝ի քաջ հովուել զհօտն։ Որպէս և եղև իսկ հայր բարեգութ ժողովրդեան, օրինակ առաքինութեան կղերց, և սիրելի ամենեցուն։ Անուն նորա հռչակեալ մատենագրութեամբքն պատկառելի էր յաչս Թշնամեաց իսկ. որպէս զի ՝ի պատերազմին, զոր դուքսն Սաւոյոյ ետ ընդ Լուդովիկոսի ԺԴ, արգել զօրականին չասպատակել զկալուածս նորա։ Սիրելի էր նա և անկրօնից իսկ ժամանակին քաղցրութեամբ բարուցն, որ ՝ի դրուածսն գերանէր. վասն որոյ խնդիր ՝ի մէջ անկեալ երբեմն՝ Թէ ո՞ յերկուց անտի հայրապետաց առաւելագոյն սպաս մատոյց քրիստոնեական կրօնից, Պոսիւէ եԹէ Ֆենելոն, բազումիմաստութեամբ ասաց դշխոյն Լեհաց տիկնին արքային Ստանիսլաւոսի, Թէ Պոսիւէ փաստիւք եցոյց, իսկ Ֆենելոն սիրելի արար զայն։

Բազում են նորա մատենագրութիւնք ընտիրք և խորիմացք, իմաստասիրականք, բանաստեղծականք և աստուածաբանականք, որովք անմահ էԹող յիշատակ։ Ընդ ընտիր գաղղիաբանութեան և ներդաշնակութեան ՝ի բնիկն բարբառ՝

բերէ և կերպարանս իմն բանից բնական, դիւրիմաց, և վայելուչ։ Այլ յետ գրաւորական վաստակոցս և առաքելաջան հովուութեանն, ըստ սրբակրօն վարուցն՝ սրբութեամբ կնքեաց զկեանս իւր յամին 1715. 'ի սուգ համակեալ զԳաղղիա համօրէն։ Լուդովիկոս ԺԵ ետ կանգնել 'ի պատիւ նորա անդրի կճեայ, զոր և չքնաղ ներբողենիւք պատուեցին ճարտարախօսք Գաղղիոյ։

Բաց յառաջիկայ գրոցս Արկածից Տելեմաքայ, գրեաց նա բազում և այլ ինչ գիրս, յորոց արժանի յիշատակի են

Տրամախօսութիւն մեռելոց.

Ցուցադրութիւն զպերճախօսութենէ.

Առաջնորդ խղճի մտաց Թագաւորի. որ ըստ Լահարբայ՝ համառօտութիւն իմն է իմաստութեան, և քրիստոնէական վարդապետութիւն աւագանւոյ.

Համառօտ վարք նախնի իմաստասիրաց.

Դաստիարակութիւն աղջկանց.

Ապացոյցք գոյութեանն Աստուծոյ, ընդ այլ իմաստասիրական ճառս.

Բեմբասացութիւնք և այլ հոգևոր ճառք.

'Նամականի, ընդ որս գերապանծ թուղթ նորա առ ճեմարանն գիտութեանց, որով արժանի գտաւ յօդանալ ճեմարանին.

Թարգմանութիւն Ընծայականին Վիրգիլեայ 'ի պէտս սանից իւրոց թագաւորազանց, այլ կորեաւ այն 'ի միջոյ մինչ չև 'ի տիպ արձանացեալ։

Սուղ ինչ արդ զառաջիկայ գրոցս ասասցուք։ Զսա ըստ ոմանց յարքունիս անդ յօրինեաց Փէնելոն մինչդեռ դաստիարակէր զարքայորդիս, իսկ ըստ այլոց յառանձնութեան իւրում 'ի Հայրապետանոցի։ Յերևել առաջին տպագրութեան սորա 'ի լոյս, Լուդովիկոս ԺԴ գրգռեալ 'ի բանսարկութենէ ոմանց՝ յայլ ընդ այլոյ կարծիս եղև զմատենէս, համարեալ զսա իբր զանխուլ իմն երգիծաբանութիւն իւրոցն գնացից և աշխարհակալութեանց. վասն որոյ և արգել զհրատարակումն նորին։ Սակայն արգելմամբն այնուիկ յաւելաւ եւս յարգ մատենին, և հրատարակեցաւ այն արագ արագ ընդ ամենայն Եւրոպա։ Եղեն և չարախօսք ոմանք՝ որք իմացան 'ի գիրս անդ այլաբանեալ զգործս զարս և զկանայս, զմարդկօրէն թերութիւնս նոցա նշաւակեալ։ Սակայն զգօնք և ողջամիտք գիտելով զուղղութիւն մտաց մատենագրին, և զի յամենայն ժամանակս նոյն թերութիւնք եղեն և լիցին 'ի մարդիկ՝ արհամարհեցին զկամակոր մեկնաբանութիւնն, և սքանչացան ընդ ճարտարութիւն ստեղծական վիպասանութեանս, ըստ գիւտիցն, ըստ նկարա-

գրութեանց, ըստ բարոյական խրատուցն, և ըստ քաղցրութեան կերպարանաց բանիցն։ Այս թէպէտ եղեն պարսաւադէտք անձինք Ոջիլոյք, որք զամենայն գեղեցկութիւնս մատենիս եպերեցին վասն դոյզն ինչ բծիցն ՚ի սմա երևելոց, այլ եպերանք նոցա ոչ արգելին զանհամար տպագրութիւնս սորա և զթարգմանութիւնս, որ են առհաւատչեայ կարծեաց իմաստնոց առ հասարակ բարգաւաճեալ ազանց։



# ՆԱԽԱԴՐՈՒԹԻՒՆ

Տելեմաք ՝ առաջնորդութեամբն Աթենասայ, որ 'ի կերպարանս Մենտորի ուղեկից լինի նմա, մազապուր 'ի նաւաբեկութենէ հասանէ 'ի կղզի դիցուհւոյն Կալիփսեայ՝ որ մորմոքէրն տակաւին ընդ տարագնաց չու Ոդիսեայ: Հիւրընկալէ զնա դիցուհին մարդասիրապէս. և հարեալ 'ի սէր նորա, խոստանայ նմա անմահութիւն, և խնդրէ լսել զարկածս նորա: Պատմէ նմա Տելեմաք զուղևորութիւն իւր 'ի Պիլոս և 'ի Սպարտա, զնաւաբեկութիւն իւր առ Սիկիլեաւ, զվտանգն մատչելոյ 'ի զոհ ուրուին Անքիսեայ, և թէ զիարդ ինքն և Մենտոր օգնեցին Ակեստեայ ընդդէմ հինից բարբարոսաց, և զի թագաւորն փոխարէն օգնականութեանն ետ նոցա նաւ մի տիւրացի առ 'ի դառնալ յաշխարհն իւրեանց:



# ԱՐԿԱԾՔ ՏԵԼԵՄԱՔԱՅ

## ԳԻՐՔ ԱՌԱՋԻՆ

Կալիպսէ [2] կայր 'ի սուգ անմխիթար ընդ չու Ոդիսեայ [3], և չարաբաստիկ առ վշտին թուէր նմա անմահութիւն։ Քարայրն օթևան նորին ոչ ևս հնչէր 'ի ձայն երգոց նորա, և նաժիշտք իւր յաւէրժ հարսունք չիշխէին խօսել ընդ նմա։ Ճեմ առեալ միայնիկ մնջիկ գգնայր նա ստէպ ընդ ծաղկաւէտ դալարիս, որովք գարուն մըշտափթիթ զկղզեաւն [4] շուրջ գեղազարդէր, բայց զուարթագեղ վայրացն ոչ միայն ոչ ինչ զվիշտս նորա սփոփեալ, այլ և 'ի յուշ ածէին նմա յար զտխուր յիշատակ Ոդիսեայ՝ զոր անդ առ իւր տեսեալն էր յաճախ։ Յաճախ առ ափն ծովուն արձանացեալ՝ թանայր զվայրն արտասուօք, և դառ-

նայր հայեր անդադար ընդ որ նաւն Ոդիսեայ ան-
դընդահերձ տարադէմ անհետացեալն էր յաչաց ։
Եւ ահա նաւու բեկելոյ երևէին նշխարք, նստարանք Թիավարաց խորտակեալք, Թիակք աստ անդ ընդ աւազուտն խրեալք, և երերածուփ տատանեալ ընդ ծով կայմ և ուղղեակ և պարանք ։ Աչմարէր և ահա արք երկու, մին աւելորիկ, իսկ միւսն պատանեակ՝ զՈդիսեայ բերելով զնմանութիւն. գեղ և պերճութիւն, կերպարան նորա և սիգաձեմ գնացք հանգունատիպ նմին ։ Գիտաց դիցուհին զի նա ինքն էր Տելեմաք որդի դիւցազինն Ոդիսեայ. բայց Թէպէտ և 'ի գեր 'ի վերոյսն քան զբնաւից մահկանացուացս գիտութիւն հասու գտանէին դիք, սակայն չկարաց դիցուհին գուշակել՝ ո՛ ծերունին այն էր պատկառելի ուղեկից պատանւոյն. զի դիցն վեհից իշխանութիւն է ծածկելոյ զոր կամին 'ի ստորնագունից. և Աթենաս[5], որ առաջնորդէրն պատանւոյն 'ի կերպարանս Մենտորի[6], չկամէր 'ի ծանօթութիւն գալ Կալիփսեայ ։

Բայց Կալիփսէ խնդայր ընդ արկածս նաւաբեկութեանն, որ 'ի կղզի անդր իւր առեալ բերէր զհամանմանն հօրն զորդին Ոդիսեայ ։ Դէմ եդեալ առ նա, յառաջ մատուցեալ, և իբր յանգէտս ասէ. Ո՞ւր իշխես ով դու մատչել 'ի կղզի այդր մեր. գիտեա հիւրդ անտխական, զի չիք ումեք անպատուհաս 'ի սահմանս պետութեան մերոյ կոխել ։ Եւ ընդ սպառնալից բանիւքն հնա-

րէր քօղարկել զցնծութիւն սրտին, որ ակամայ 'ի դէմսն փայլատակէր :

Պատասխանի ետ Տէլեմաք. Եթէ մահացու եւ թէ յանմահից ոք իցես ով տիկին, թէպէտ 'ի տեսիլ քոյին դիցուհի զքեզ դաւանել ոչ ոք երկուասցի, կարիցես դու զօլ անկարեկիր ընդ աղէտս որդւոյ՝ որ 'ի խնդիր հօրն մտանեալ հողմոց եւ ալեաց, նաւաբեկ գտանի ընդ քարաժայռս քոյին :

Արկանեալ անդրէն դիցուհւոյն ասէ. Ո՞ւ հայր քոյին, զոր խնդրեսդ : Պատասխանին ասէ. Ոդիսեւս անուն է նորա, մի յարքայից՝ որք զգերահռչակն Տրովադա զտասն ամ պաշարեալ կործանեցին : Համբաւ նորա ընդ Եղլադա ողջոյն եւ ընդ Ասիա համօրէն քաջութեամբն 'ի մարտի հռչակեալ, եւս առաւել հանճարեղ խորհրդականութեամբ : Այլ արդ ծովէ 'ի ծով թափառական՝ ընդ ահագին խութս նաւարկէ, խուսելով իւրն հայրենեացն յերեսաց նորա : Պենելոպէ կին նորա, եւ որդի նորին ես, գտանիմք յուսահատք 'ի վերստին տեսոյ նորա : Ամենավիշտ ընդ վտանգս առ 'ի գիւտ նորին ալեկոծեալ ծփիմ. այլ աւա՜ղ, գուցէ անդընդասոյզ նա արդ ընկլուզեալ իցէ : Ողորմեա աղետից մերոց ով դիցուհի. եւ եթէ ոչ զանխուլ է 'ի քէն զինչ նմա 'ի հրամանաց ճակատագրին պատահեալ, կորո՞ւստ թէ փրկութիւն, կամեաց յայտնել որդւոյ նորին ինձ :

Ընդ այնպիսի զգօն ' եւ ընդ ճարտարախօս բանս նորա 'ի վեր քան զտիս առոյգ մանկու-

թեան, 'ի զարմացումն և 'ի գորով ածեալ դիցուհին, յառեալ կայր 'ի նա անյագ և լուիկ ։ Եւ ապա ասէ. Պատմեսցուք քեզ, Տելեմաք, որ ինչ անցք ընդ հայր քո անցին. այլ երկարապատում վէպք իւրացն են, ժամ է արդ հանգչելոյ քեզ 'ի տառապանացդ. Եկ յօթևան իմ, և ընկալայց զքեզ որպէս զիմ որդի. Եկ, և լիցիս ինձ 'ի սփոփումն միայնութեանս. բարեբաստիկ զքեզ կացուցից, եթէ միայն գիտիցես վայելել 'ի բախտ քոյին ։

Եւ գնայր Տելեմաք զհետ դիցուհւոյն, որ յերիտասարդուհեաց պարառեալ 'ի բազմահոյլ յաւերժհարսանց՝ բարձր 'ի գլուխ 'ի միջի նոցա ամբառնայր, որպէս կաղնի բարձրաբերձ յանտառի սաղարթախիտ ոստովք գեր 'ի վերոյ քան զշրջակայսն առ հասարակ ամբառնայ մայրիս ։ Հիանայր Տելեմաք ընդ գեղանշոյլ դէմս նորա, ընդ պերճ ծիրանւին երկայնատուտն գեղածփեալ, ընդ հիւսակս վարսիցն վայելուչս յետկուսէ լքեալ, ընդ աչկունսն հրացայտս, և ընդ քաղցրութիւն՝ որ զսաստ նոցին ամոքէր ։ Իսկ Մէնտոր ցածութեամբ լուռ և եթ, զաչս 'ի վայր արկեալ, զհետ ընթանայր պատանւոյն ։

Հասին առ սեամս քարանձաւի դիցուհւոյն. և զարմանայր Տելեմաք, զի 'ի գեղջկայնումն յանպաճոյճ պարզութեան տեսանէր զամենայն ինչ ակնահաճոյ ։ Ոչ էր անդ ոսկի և արծաթ, ոչ կիճ և ոչ սիւնք և սեղանք և անդրիք. քարայրն այն 'ի խոռոչ ժայռի կոփածոյ՝ 'ի խճից և 'ի

խողունջնաց 'ի կամարսն զմրեխթարդս էր դրուագեալ, և զոգցես իմն դիպակազգեստ յաճուննաձիգ որթոյ՝ որ յաջ և յահեակ զճապուկ ուռսն տարածեալ պատէր ։ Քաղցրասիք հողմունք ընդ բոցակէզ արեգակամբ զովացին զվայրն կացուցանէին և հեշտալի ․ վտակք քաղցրակարկաջք զեռեալ ընդ արօտս պճնեալս յանթառամ և 'ի մանիշակ՝ լճակս ուրեք ուրեք գործէին պայծառ և յստակ քան զակն վանեայ ․ և ծաղկունք հոյլ 'ի հոյլ դեռափթիթք գեղերփնէին զգորգն կանաչազգեղ, որ զքարայրն ծածկէր ։ Էր անդ ծառաստան վարսագեղ ոսկեխնձոր, որ 'ի քառահոլով եղանակս տարւոյ նորափթիթ՝ բուրէր անուշահոտ քան զամենայն խնկենիս ․ և պսակաձև զգեղեցիկ արօտսն շուրջ պատեալ, յօրինէր գիշեր 'ի տունջեան՝ անթափանց 'ի ճառագայթից արփենից ։ Թռչնոց և եթ լսելի լինէին անդ ճռուողական դայլայլիկք, և խոխոջ վտակի՝ որ 'ի բարձանց ժայռի զահավիժեալ եռայր փրփրագէզ, փախստական ընդ արօտն գետահետեալ ։

Այս էր քարայրն 'ի դարևանդ բլրոյ, ուստի երևէր ծով մերթ վճիտ և միապաղաղ իբրև զբիւրեղ, և մերթ մոլեալ անսաստ ընդ ժայռ և ընդ խութ՝ յորս ահագնագոչ լեռնաձև կոհակօքն կոծեալ բեկանէր ։ Այլուր երևէր գետ՝ կղզիս 'ի պտոյտսն գործելով ափնածիրս 'ի ծաղկաւէտ թմբեաց և 'ի բարձրաբերձ կաղամախեաց՝ որ զխրոխտ գագաթունսն յամպս ծրարէին ։ Այս

որք զկղզեակն գործէին առուք՝ թուէին խաղալ ՚ի դաշտին, կէսք որընթաց զակնակիտ ալիսն թաւալելով, այլք հանդարտահետք հեզասահք. և կէսք պատ ՚ի պատ յետս ընդ կրունկն դառնային, յաղթերակունս անդր խուրեանց գոգցես նկրտելով՝ դժկամակք ինն զբաղմազուարճ ափունս թողուլ: Աշխարհին ՚ի բացեայ բլուրք և լերինք, որոց գագաթունք կորնչէին յամպս, և կոհակաւէտ ձևովքն բազմակերպ զծիր տեսութեան գործէին և ակնապարար: Դալարագեղ զլերինս մօտակայս ծածկէր այգեստան. և ուրք վարսագեղք մանեկաձև կախեալ, և ողկոյզք ծիրանեփայլք քան զծածկոյթ սաղարթացն առատագոյնք ծանրաբեռնէին զայգիս: Թզենի, ձիթենի, նռնենի, և այլ ևս ազգի ազգի ծառք պտղաբերք ծածկեալ զդաշտավայրն, լայնածաւալ յօրինէին զայն պարտէզ:

Օ այսոսիկ առ հասարակ գեղեցկութիւնս բնութեան ցուցեալ պատանւոյն դիցուհին ասէ. Հանգիր դու արդ, և փոխեսջիր զձորձս քոյին ողողեալս, և ապա տեսցուք դարձեալ զմիմեանս, և պատմեսցիս քեզ անցս՝ ընդ որս գործեսցիս սիրտ քո: Նա եմուծ զնա ընդ Մենտորի ՚ի ներքսագոյն խորս քարայրի միոջ մերձ յիւրականն, ուրանօր յաւերժհարսանց հոգացեալ խարոյկս էր յեղևնափայտից՝ որոց բուրումն անուշահոտ ծաւալէր համասփիւռ, և ձորձս հիւրոյն նորեկաց:

Իբրեւ ետես Տելեմաք պատրաստեալ իւր պատմուճան ասուի նուրբ ձիւնափայլ եւ կրկնոց ծիրանի ոսկեճամուկ, հրճուէր ընդ շուք հանդերձիցն՝ ըստ մանկականի տիոցն բնաւորութեան ։ Յայնժամ Մենտոր ՚ի բարբառ լուրջ եւ զգօն ասէ ցպատանին․ Այդքի՞կ ուրեմն, ո՜վ Տելեմաք, պարտին զբաւել իղձք զմիտս ոդիսական զաւակին․ զգոյշ լեր չաղարտել զհամբաւ հայրենի, յաղթանակեալ բախտին՝ որ զքեզ հալածէ ։ Պատանի նանրասէր, որ կանացաբար զարդարի, անարժան է իմաստութեան եւ փառաց․ սիրտ որ ժուժկալէ վշտաց եւ զգիրգանս առ ոտն կոխէ, նմա վայելուչ են փառք ։

Յոգւոց եհան պատանին եւ ասէ․ Ո՛ն եւ ո՛ն արասցեն ինձ դիք, քան թէ գրգանաց եւ հեշտութեան տիրել ՚ի սիրտ իմ․ մի՛, մի՛ լիցի ոդիսեան զաւակին պարտել ՚ի հրապուրանաց մեղկ եւ վատ կենաց ։ Այլ որպիսի՜ շնորհք երկնաձիր նաւաբեկելոյս ետուն հանդիպել տիկնոջս, թէ արդեօք եւ դիցուհւոյ, որ լիապարգեւ զմեզ հիւրընկալէ ։

Սրտնեալ անդրէն Մենտորի, ասէ․ Երկի՛ր թէ զուցէ չարիս քեզ նիւթէ․ երկի՛ր ՚ի պատիր ողոքանաց նորա քան ՚ի ժայռից՝ որ զնաւ քո խորտակեցին․ քան զնաւաբեկութիւն եւ զմահ դժնդակագոյնք են գրգանք, որք մարտնչին ընդ առաքինութեան ։ Մի՛ հաւատայցես պատմելեացն ՚ի նմանէ բանից․ յանդուգն է հասակ մանկու-

Թեան, և խոստանայ անձին զամենայն. անզօր է, և ամենազօր զանձն համարի. ոչ ինչ ուստեք կասկածէ, վստահի յանձն անզգոյշ և վայրապար։ Զգոյշ լեր 'ի փաղաքուշ հրապուրանաց Կալիփսեայ, որք իբր իժ ընդ ծաղկամբք սողոսկին. Երկիր 'ի զանխուլ Թունիցն, մի յանձն վստահիր, անսա խրատուցս միշտ։

Դարձան ապա առ Կալիփսէ, որ մնայրն նոցա։ Յաւերժհարսունք սպիտակահանդերձք գեղեցկահիւսակ վարսիւքն պաշտեցին անդէն ճաշ անպաճոյճ, այլ կազմիկ և համեղաճաշակ։ Խորտիկք և եթ էին անդ հաւուց անկելոց 'ի վարմն նոցա, և էրէոց որսացելոց 'ի նոցանէ նետահար։ Անուշակ քան զաստուածըմպելի ըղխէր 'ի Թակոյկց արծաթեաց գինի 'ի բաժակս ոսկիս ծաղկապսակս։ Պտղէին կողովովք զմիրգս ազգի ազգի, զորս գարնայնոյ աւետեաց՝ և սփռէ աշուն ընդ երկիր։ Յայնժամ չորեցունց յերիտասարդուհեաց անտի յաւերժհարսանց երգս առեալ, զհրակայիցն նուագեցին նախ զաստուածամարտ պատերազմ*, և ապա զտարփանս Դիայ ընդ Սեմելեայ [9], զԱպանդարամետին ծնունդ [10] և զդաստիարակութիւն առ ոտս ծերունւոյն Սիլենեայ, զօրիորդին Ատալանտեայ զարշաւահանդէս ընդ Իպպոմենեայ՝ [11] որ ոսկի խնձորովք երեկորնական պարտիզացն [12] յաղթեաց նմա, և զպատերազմն իսկ Տրովադայ երգեցին [13], և զարութիւնս Ոդիսեայ և զիմաստութիւն նորա երկնաչափ գեր-

ամբարձեալ։ Նա երգակցէր Լեւկոթոյէ, երի-ցագոյնն 'ի յաւերժհարսանց անտի, ընդ քաղցրաձայնութիւն այլոցն քնարաւ։

Բայց 'ի լսել Տեղեմաքայ զանուանն հայրենի՝ արտասուք ընդ ծնօտս նորա իջեալք գեղեցկափայլ եւս զդէմսն յօրինէին։ Զգաց Կալիփսէ զի առ տրտմութեանն չկարէր նա ճաշակել. և յանձնարկել անդ նորա՝ սկսան յաւերժհարսունք նուագել զյուշկապարկացն [14] մարտ ընդ լապիթայս [15], և զէջս Որփեայ 'ի սանդարամետս վերբերել զԵւրիդիկէ [16]։

Վախճան եղև ճաշուն. և դիցուհւոյն առեալ զՏեղեմաք, խօսեցաւ ընդ նմա և ասէ. Տեսանես զաւակդ մեծին Ոդիսեայ քանի մարդասիրութեամբ զքեզ հիւրընկալեմ, անմահս գոլով. չիք ումեք 'ի մահկանացուաց մուտ 'ի կղզի այսր առանց զյանդգնութեանն լուծանելոյ զվրէժ. և ոչ աղէտք նաւաբեկութեանդ պատսպարէին զքեզ յերեսաց սրտմտութեան իմոյ, եթէ ոչ սիրէի զքեզ։ Հանդուռնատիպ վիճակեցաւ հօր քում նսեհ. այլ, աւա՜ղ, չգիտաց նա 'ի ճահ առնուլ զայն։ Կալայ զնա առ իս ընդ երկար 'ի կղզւոջս, և 'ի կամս իւր էր վայելել աստ ընդ իս յանմահական 'ի կեանս. այլ կոյր ցանկութիւն դառնալոյ 'ի հէք հայրենիսն՝ մերժեաց զայսոսիկ առ հասարակ բարեմասնութիւնս [17]։ Տեսերև կան քեզ որ ինչ կորոյսն վասն Իթակեայ, զոր չկարաց իսկ տեսանել անդրէն. եթող զիս և

մեկնեցաւ, այլ զմրէժ իմ խնդրեցին մրրիկք. նաւ նորա խաղալիկ լեալ հողմոց ընդ երկար, ընկլուզաւ ապա յալիս: Ազատեա՛ց յաղետից նորա. կորեաւ նա, ոչ ևս է քեզ յոյս տեսանելոյ զնա, և ոչ զհետ նորա Թագաւորելոյ յԻթակէ. սփոփեա՛ց ընդ կորուստ նորա դիցականաւս շնորհիւ, որ կամիմս երանաւէտել զքեզ և Թագաւորեցուցանել:

Եւ յաւել դիցուհին երկայնապատում բանիւք ցուցանել նմա՝ քանի՛ բարեբաստիկ էր Ոդիսեւս առ իւր. պատմեաց և որ ինչ անցք անցեալ էին ընդ նա 'ի քարայրի բոլորակնեայն Պողիփեմայ [18], և առ Անտիփատայ արքային Լեստրիգոնաց [19]. յաւել և զանցս նորա՝ որ 'ի կղզւոջն Կիրկեայ դըստեր արեգական [20], և զարկածս վտանգին ընդ Քարիբդ և Սկիւլլա [21]: Նկարագրեաց և զվերջին մրրիկն յարուցեալ ընդդէմ նորա 'ի Պոսիդոնէ [22] 'ի մեկնելն նորա յիւրմէ, լռելով զհասանել նորա 'ի կղզին Փէակեանց [23], որպէս զի պատանին համարեսցի զնա ծովամոյն կորուսեալ:

Բայց պատանին Թէպէտ և 'ի սկզբան անդ զեղեալ 'ի հրճուանս ընդ հիւրընկալութիւն Կալիփսեայ, սակայն հասու եղեալ ապա հնարից նորա իմաստուն խրատուքն Մենտորի, կարճ 'ի կարճոյ արար պատասխանի. Ներեսջիր վշտաց իմոց, ո՛վ դիցուհի, զի ցաւոց է ինձ ժամանակս. քաղցրասցի ինձ Թերևս առ յապայ բարեբաստութիւն՝ զոր ինձն մատուցանես, այլ Թո՛ղ ինձ արդ

ողբալ զհայրն իւր. զի տեղեկագոյն քան զիս գի-
տես քանի ողբոց արժանի է նա։

Եւ ես իշխեալ դիցուհւոյն թախանձել զնա առ ժամն, պատճառէր ցաւակից լինել նմա և վշտանալ ընդ մահ Եղիսեայ։ Բայց առ 'ի գիւտ հնարից շարժելոյ զսիրտ պատանւոյն, հարցանէր ցնա զհանգամանս նաւաբեկութեանն, և որպէս 'ի ծովեզերս անդր էր հասեալ։ Պատանին ասէ. Նորկարապատում են վէպք աղէտից։ Դիցուհին ասէ. Եւ այդպէս, ցանկալի է ինձ լսել վաղագոյն զարկածս քոյին, փութա պատմել ինձ զայդոսիկ։ Իսկ ոչ ևս կարացեալ պատանւոյն յոգնաթախանձ աղերսանաց նորա գոլ անլսող՝ սկսաւ պատմել և ասէ.

Մեկնեալ յԻթակայ գնայի առ այլս յարքայից դարձելոց 'ի պաշարմանէն Տրովադայ, հարցանել զողջունէ հօրն իմոյ։ Տարփաւորք մօրն իմոյ Պենելոպեայ [24], յորոց թագուցի զչու իմ՝ գիտելով զդաւաճանութիւն նոցա, յապուշ հարան։ Նեստոր [25] որում պատահեցի 'ի Պիլէ, և Մենելաւոս [26] որ ընկալաւն զիս սիրով 'ի Սպարտա [27], ոչ գիտէին թէ կենդանի՞ արդեօք էր հայրն իմ։ Ձանձր էր ինձ կալ յերկբայս և 'ի հոգս. խորհուրդ կալայ գնալ 'ի Սիկիլիա, ուր համբաւէր հայրն իմ վարեալ 'ի հողմոց։ Բայց գերահանճարս այս Մենտոր, զոր տեսանես, ընդդէմ դարձաւ յանդուգն խորհրդոյս, զԿիկլոպայս ինձ 'ի դէմն ածեալ հսկայս անձոռնիս և մարդակերս [28],

և զնաւատորմն Յունաց և զՏրովացւոց", որ 'ի ծովու եզերս անդ դեգերէր ։ Ցասմամբ են տրովացիքդ, ասէր, ընդ Յոյնս առ հասարակ, և քաղցր է նոցա հեղուլ մանաւանդ զարիւն ոդիսեան զաւակին ։ Դարձիր յԻթակէ, թերևս և հայր քոյին, ընդ որ հաճեցան դիք, հասցէ զհետ քո անդր ․ իսկ եթէ կորուստ սահմանեցին նմա դիք, և չիք նմա տեսանել անդրէն զհայրենիսն, հարկ իսկ է քեզ գնալ անդր առ 'ի խնդրել զվրէժ նորա, ազատել զմայր քո, ցուցանել ազգաց զիմաստութիւն քո, և բոլորումն յայտ առնել Յունաց զարժանաժառանգ պայազատ Ոդիսեայ ։

Խորհուրդք առաքինիք, այլ չէր յիս իմաստութիւն 'ի լուր այնոցիկ, և անսացի ըղձից իմոց ։ Բայց իմաստնոյն Մենտորի այնքան էր ընդ իս սէր, զի և 'ի յանդուգն ուղևորութեան՝ յոր ընդդէմ խրատուցն իւրոց դիմագրաւէի՝ ուղեկից եղև ինձ, և թոյլ ետուն ինձ դիք զառածանել 'ի վրիպակ առ 'ի խրատ յանդգնութեան իմոյ ։

Եւ 'ի խօսել պատանւոյն՝ հայէր Կալիփսէ 'ի Մենտոր, և հիացեալ կայր ․ զի դիցական ինն տեսանէր 'ի նմա, այլ ոչ կարէր զմէգ մտացն փարատել, ընթռնեալ յերկիւղ և 'ի կասկածանս յերևսաց առնն անծանօթի ։ Այլ զի մի մասն լիցի խռովութեան մտացն, ասէ ցպատանին ․ Յառաջ մատո զպատմութիւնդ, քաղցր է ինձ լսել զայն ։ Եւ Տելեմաք ասէ ․

Յաջողեցին մեզ հողմք ընդ երկար առ 'ի նա-

ւել 'ի Սիկիլիա, այլ ապա սեաւ մրրիկ գողացաւ յաչաց մերոց զերկինս, և ընկլուզաք 'ի գիշեր խորին։ Ի նշոյլ փայլատակմանց նշմարեցաք այլ ևս նաւս ալեկոծ վտանգեալ, և ծանեաք զի էին նաւք Էնեայ, ոչ ինչ ընդհատ քան զխարակս մեզ ահարկուք։ Նոյնգամն յայնժամ խելամուտ եղէ այնմ, զոր եռանդն խօլ մանկութեան արգել ինձ 'ի սկզբանէ 'ի միտ առնուլ։ Իսկ Մենտոր անյողդողդ և անվեհեր 'ի վտանգին, զուարթագոյն ևս թուէր քան զօրէն հանապազօր, և քաջալերեալ 'ի նմանէ՝ զգենուի զօրութիւն անպարտելի։ Նա ինքն անխռով հրամանս տայր նաւատուղն, զի նաւուղիղն իսկ տագնապեալ էր յերկիւղէ։ Ասէի ցնա. Իմ Մենտոր, ընդէր անսաստեցի խրատուց քոց. աւա՜ղ զի յանձնապաստան գտայ 'ի տիս անփորձ անցելոցն, անգուշակ հանդերձելոց, և յորկանս անզգոյշ։ Ո՛հ եթէ զերծանիցիմք միայն 'ի մրրկէս, կասկածեցից յանձնէ իմմ 'ի վտանգաւորագոյն ոսոխէ, և քեզ, Մենտոր, եղէց յամենայնի ունկնդիր։

Ժպտեցաւ Մենտոր, և ասէ ցիս. Ոչ է ինձ 'ի դէպ կշտամբել զվրիպակդ, զոր քեզէն խոստովանիս, եթէ միայն խրատեսցիս դոքաւ զգուշագոյն գոլ յիղձս քո. զի յանցանել վտանգին, գուցէ դարձցի 'ի քեզ յանձնապաստանութիւն։ Ժամ է արդ խրախուսանաց. զի մինչ չև անկեալ 'ի վտանգ, պարտ է կասկածել և զգուշանալ. իսկ 'ի հասանել նորին, արհամարհել ևեթ զայն։

Լեր արդ որդի արժանի Ոդիսեայ, և բե՛ր յան-ձին սիրտ զեր 'ի վերոյ քան զամենայն սպառնա-լիս չարեաց:

Հեզութիւն և արիութիւն իմաստնոյն Մեն-տորի հիացուցին զիս. այլ առաւել ևս հիացայ ընդ ճարտարութիւն նորա՝ որով փրկեաց զմեզ 'ի ձեռաց Տրովացւոց: Ի պահուն յորում պարզէին երկինք, և մարթէր Տրովացւոց մօտ հասեալ ճանաչել զմեզ, դիտեաց նա վարեալ հեռի 'ի մրրկէ զմի 'ի նաւաց նոցա համանման մերումն, զի առաջք նորա պսակեալ էին ծաղկամբք. փու-թացաւ պսակեաց և զառաջս մերոյս, կապեալ զծաղկունսն նարօտիւք 'ի գոյն տրովականացն. և հրամայեաց թիավարացն մերոց խոնարհել քան զխելս շրթանց եզերաց նաւուն, որպէս զի մի ծանիցեն զնոսա թշնամիքն: Այսպիսեաւ անցաք սաղապարձեմիւ ընդ հոյլս նաւաց թշնամեաց որք զաղաղակ ցնծութեան հարկանէին 'ի տեսանելն զմեզ իբր ընդ գիւտ ընկերացն իւրեանց՝ զորս հա-մարէին 'ի կորուստ մատնեալ: Հարկ եղև մեզ յերեսաց բռնութեան ալեաց նաւել ընդ նոսա ընդ երկար, մինչև կարացաք յետս կալ փոքրիկ մի. և 'ի վարել զնոսա ստահակ հողմոց յԱփրի-կէ, մեք զօրութեամբ ուժոյ թիակաց գունդ գոր-ծեցաք անկանել 'ի մօտակայ ծովեզերս Սիկիլիոյ:

Հասաք իսկ անդր. այլ ոչ ինչ ընդհատ քան զնաւաստորմին՝ յորմէ փախուցեաքն, դժնդակ էր մեզ վտանգ ուր դիմէաքն, զի էին 'ի ծովափունս

անդ Սիկիլիոյ այլ Տրովացիք թշնամիք Յունաց, քանզի թագաւորէր անդ ծերունին Ակեստէս [30] փախուցեալ 'ի Տրովադայ: Ընդ մտանելն մեր անդր՝ բնակք երկրին կարծելով զմեզ յայլազգեաց կղզւոյն հէնս, և կամ եկս սպառազէնս 'ի նուաճումն երկրին, յեռանդն սրտմտութեան հրձիգ արարին զնաւ մեր և սրախողխող զուղեկիցս մեր, զՄենտոր և եթ և զիս ապրեցուցեալ՝ յանդիման առնել Ակեստեայ 'ի հարցփորձ թէ առ ինչ և ուստի գայաք: Ձեռս 'ի յետս կապեալ մուծին զմեզ 'ի քաղաք անդր, ոչ առ այլ ինչ յամեցուցեալ զմահ մեր, բայց առ 'ի կացուցանել զմեզ առակ նշաւակի անագորոյն ժողովրդեանն 'ի յայտնելն մերումն զի էաք Յոյնք:

Առաջի կացուցին զմեզ Ակեստեայ, որոյ գաւազան ոսկի 'ի ձեռին դատելով զժողովուրդ իւր՝ պատրաստէր 'ի հանդէս զոհի: Եհարց զմեզ խստագոյնս. Յորմէ՞ աշխարհէ էք, և առ ինչ գայք: Կանխեաց Մենտոր և ասէ. Ի մեծաց երեկոյնական [31] ափանց, ուստի ոչ ինչ կարի հեռի են հայրենիք մեր: Եւ այսպէս լռեաց նա զազգ մեր: Բայց Ակեստեայ ոչ ևս յամեալ 'ի լուր, և օտարազգիս զմեզ համարեալ ծածկամիտս՝ հրամայեաց վարել զմեզ 'ի մի 'ի մերձակայ անտառաց 'ի ստրկութիւն ընդ ձեռամբ տաւարածականացն իւրոց:

Դառնագոյն քան զմահ թուէր ինձ կենցաղն այն, և ձայն բարձեալ գոչէի. Սպա՛ն զմեզ տէր

արքայ, և մի 'ի դժպատեհդ յայդ վարեր 'ի կեանս. գիտուն լիցի քեզ զի հանճարեղին Ոդիսեայ որդի եմ Տելեմաք արքային Իթակեայ, Թափառական ծովէ 'ի ծով 'ի խնդիր հօր իմոյ եկեալ. եթէ չիցէ ինձ հնար գտանել զնա, կամ դառնալ 'ի հայրենիս իմ ազատ 'ի ծառայութենէ, բարձ յինէն զանտանելի զկեանս զայս:

Իբրև ամբոխն առ հասարակ յուզեալ 'ի բանից աստի, աղաղակէին. Մեռցի զաւակն ոդիսեան, որդի անողորմին՝ որոյ խորամանկութիւն կործանեաց զՏրովադա: Յայնժամ ասէ ցիս Ակեստէս. Զաւակդ ոդիսեան, չկարեմ զլանալ զարիւն քո հօգւոց թիւրաւորաց Տրովացւոց՝ զորս հայր քոյին հոսեաց 'ի Թուխ Կոկիտոն [32]. մեռցիս դու առաջնորդաւդ հանդերձ: Անդ ծերունի ոմն յամբոխէն սադրեաց արքայի՝ զենուլ զմեզ 'ի վերայ շիրմին Անքիսեայ [33]. Զի արիւն դոցա, ասէր, հաճոյ թուեսցի ուրուի դիւցազինն. և Ակեստէս 'ի լսելն զայն՝ զուարթացի ընդ այդքան սէր արքայի առ որ քան զամենայն ինչ սիրելի լեալ նմա ընդ արեգական:

Ծափս հարին ամենեքեան ընդ խորհուրդ ծերոյն, և ձեպէին 'ի գործ: Վարեալ տանէին զմեզ 'ի շիրիմ անդր, կանգնեալ անդ բագինս երկուս, հուր սուրբ բորբոքեալ 'ի նոսա, և շողայր յաչս մեր սուսերն ծարաւի արեան մերում: Ծաղկապսակս զմեզ կացուցին անդ, և կարեկցութեան չէր մարթ երաշխաւորել մեզ զկեանս:

Եւ մինչդեռ անշուշտ առաջի կայր մեզ մահ, խնդրեաց Մենտոր խօսել առ արքայ, և ասէ.

Տէր արքայ, եթէ աղէտք պատահմանւոյդ՝ ուր չիք երբէք զէն առեալ ընդդէմ տրովացւոց՝ չարկանեն 'ի քեզ գութ, այլ 'ի շահ օգտի քո խնայեա։ Գիտութիւն հմայից և դիցն կամաց առնեն ինձ ազդ, զի այլ ևս երբէք աւուրք՝ և յարձակեսցին 'ի վերայ քո ազգք խուժադուժք, իջեալք ուղխօրէն 'ի գլխոց լերանց՝ հեղեղել զքաղաք քո և ապականել զերկիրդ ամենայն։ Փութա զառաջս առնուլ չարեացն, վառեա զժողովուրդ քո 'ի զէն, և մի՛ յապաղեր պատսպարել 'ի ներքս 'ի քաղաքիդ զբազմութիւն հօտիցդ արօտականաց։ Եթէ գուշակութիւն իմ 'ի դերև ելցէ, յերիր աւուր սպանցես զմեզ. բայց գալով չափ բանիցն իմոց՝ յուշ լիցի քեզ զի չէ օրէն բառնալ զկեանս կենսատուի։

Զարմացաւ Իդոմենէս ընդ վստահութիւն բանիցն Մենտորի, որպիսի ոչ յումեք 'ի մահկանացուաց էր տեսեալ, և ասէ. Տեսանեմ քաջ, հիւրդ, զի դից զպարգևս բախտի ձշդեալ քեզ՝ զպատուականագոյնն քան զամենայն բարեմասնութիւնս շնորհեալ է զիմաստութիւն։ Եւ յերկարաձգեալ զզրոհն, տայր պատուէրս կարևորս առ 'ի խափանել զհէնսն՝ զորս գուժէր Մենտոր։ Ընդ էր տեսանել զկանայս զդողանի հարեալ, զծերս յերկիր կորացեալ, և զաղանձրի երամ մանկտւոյ յարտասուս հարեալ, որք առ հասարակ 'ի քաղաք

անդր խուսէին ։ Արջառք 'ի բառաչ, և խաշինք 'ի մայիւն՝ անդր գունդագունդ հօրդան տուեալ դիմէին՝ զպարարտ արօտսն թողեալ, և անձկանային նոցա գոմք և դաղարք ։ Թանձրանայր ամբոխ աղաղակի խուժանն զմիմեանս մղելոյ՝ անլուրք խօսից միմեանց, ընկալուչք անծանօթին իբր բարեկամք, և դիմեալք առանց գիտելոյ զդէմ ուղւոյն ։ Իսկ աւագանին յիմաստութիւն պանծացեալ՝ համարէր խաբեբայ զՄենտոր, և առ 'ի գիւտ կենաց զչարագոյժ գուշակութիւնն յօդեալ ։

Եւ երից աւուրցն լրացեալ, մինչդեռ ամենեքեան 'ի յոյզս խորհրդոց էին, և ահա ընդ դարւանդս մերձակայ լերանց մորկեալ փոշի՝ հետ ընդ հետ հրոսակ սպառազէն անթիւ բազմութեան բարբարոսաց գայր յերևան, որք էին հիմերացիք[54] ազգ վայրագ՝ համախուռն ընդ ազգս բնակեալս 'ի Նեբրոդեան լերինս և 'ի կատար Ակրագանդայ, ուր տիրէ ձմեռն անողոքելի 'ի հարաւաշունչ հողմոց ։ Որոց զգուշակութեամբն Մենտորի արհամարհեալ էր, կորեան նոցա ըստրուկք և անդեայք. և ասէ Թագաւորն ցՄենտոր. Աչ ես Հելլէնս գիտեմ զձեզ, ահա տոհմք մեր բարեկամք լեալ մեզ. աստուածք զձեզ առաքեցին առ 'ի փրկել զմեզ. ոչ ինչ նուազ ակնկալութիւն է ինձ 'ի քաջութենէ ձերմէ քան զխորհուրդս իմաստութեանդ. հա՛պա օգնեցէք մեզ ։

Բայց Մենտորի փայլէր 'ի յաչսն խորախոյս՝ քաջաց իսկ մարտկաց պակուցանող։ Ասպար 'ի ձեռին, սաղաւարտ 'ի գլուխ, սուր առեալ և նիզակ, կարգեալ զզօրս Ակեստեայ 'ի ռազմ, խաղայր առաջի յօրինեալ ճակատու ընդդէմ թշնամեաց։ Ակեստ, թէպէտ և քաջասիրտ, այլ ըստ հարկի աւելորեալ հասակին հեռևէր 'ի բացուստ. իսկ ես 'ի մօտոյ հետևեալ, բայց քաջութեանն Մենտորի հաւասարել ոչ զօրէի։ Զրահք նորա զանմահականին զայծենակաշ վահանին [38] բերէր զնմանութիւն. և ընդ ռազմն թշնամեաց ընթանայր մահ ընդ հարուածս նորա։ Եւ էր նա որպէս առիւծ նումիդեան [36] սովալլուկ, զի յարձակեալ 'ի խաշն տկար՝ կեղեքէ և խողխողէ ողողեալ 'ի նախճիրս արեան. և հովիւք ապիկարք զդէմ՝ ունելոյ՝ փախչին ահաբեկք յերեսաց սրտմտութեան նորա։

Իսկ խուժադուժքն, որ յուսային յեղակարծումն 'ի վերայ հասանել քաղաքին, ինքեանք 'ի յեղակարծ յարձակմանէն խուճապեցան։ Զօրք Ակեստեայ խրախուսեալք օրինակաւ և բանիւք Մենտորի, 'ի վեր քան զկարծիս գործեցին արութիւնս։ Ես իսկ 'ի տեղ նիզակի տապալեցի զարքայորդին թշնամեաց, հաւասար ինձ տիովք՝ այլ յաղթանդամ քան զիս. քանզի սերէր ազգն այն 'ի Հսկայից համազգեաց ընդ Կիկլոպայս։ Արհամարհէր նա զտկարութիւն իմ. այլ ես ոչ ինչ պակուցեալ յանհնարին ուժոյ նորա, և ոչ 'ի

վայրենի և 'ի գազանային խոժոռադիմութենէ նորա, նստուցի զնիզակ իմ 'ի տախտակ կրծոց նորա, և ժայթքեաց ընդ ոստոցն ուղխս թուխ արեան: Նոյն 'ի տապալելն իւրում, փոքր միւս ևս՝ և ընկճէր զիս ընդ իւրև. 'ի շառաչիւն զրահիցն հնչեցելոյն լերինք բացակայք: Ես բարձեալ զկապուտ նորա, դարձայ առ Ակեստէս: Իսկ Մէնտոր 'ի սպառսպուռ հարեալ խորտակեալ զթշնամիս, վանեաց զփախստեայս մինչև 'ի խորս անտառաց:

Յանկնկալ յաջողութեանքն մեծարեցաւ Մէնտոր որպէս սիրելի դից և աստուածազգեցիկ. և Ակեստէս առ շնորհապարտ սիրոյն զեկոյց զվտանգն, որ առաջի կայր մեզ 'ի հասանել նաւատորմին Ենեայ 'ի Սիկիլիա. և ետ մեզ զմի 'ի նաւաց իւրոց՝ փութալ դառնալ յերկիր մեր, լիապարգևս ստիպեալ զմեզ 'ի չու առ 'ի խուսել 'ի չարեացն՝ զորս գուշակէր: Նոյն ոչ կամեցաւ նա տալ մեզ նաւուղիղ և թիավարս յիւրոցն, զի մի գուցէ վտանգեսցին 'ի ծովեզերս Ելլադայ. բայց միայն ետ մեզ ուղեկիցս 'ի վաճառականաց փիւնիկեցւոց, որ զի շահակիցք էին ընդ ամենայն ազգս՝ ոչ գոյր նոցա երկիւղ. և պարտ էր նոցա դարձուցանել զնաւն առ Ակեստ, թողեալ զմեզ յԻթակէ: Նոյն որք ծիծաղէին ընդ խորհուրդս մեհկանացուաց դիք, պատրաստեալ էին մեզ այլ ևս վտանգս:

# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ

## ԱՌԱՋՆՈՑ ԳՐՈՑՆ

1 Տեղեմաքոս որդի Ոդիսեայ և Պենելոպեայ, յերթալ հօրն իւրոյ 'ի պատերազմն Տրովադայ, եկաց առ մօր իւրում. և բազում վիշտս կրեալ 'ի տարփաւորաց նորա, 'ի դառնալ անդրէն հօրն՝ օգնականութեամբ նորա խնդրեաց զվրէժ մօրն և զիւր 'ի թշնամեաց:

2 Կալիփսէ դիցուհի դուստր Ատղասայ և Թետեայ, տիրուհի Ոգիգեայ կղզւոյն, ուր հիւրընկալեաց զՈդիսեւս 'ի նաւաբեկութեանն:

3 Ոդիսեւս որդի Լայերտեայ, թագաւոր Իթակայ և Դուլիքիոնի կղզեաց յոնիական ծովուն. որոյ էր կին Պենելոպէ դուստր Իկարոսի, յորմէ ծնաւ զՏեղեմաք: Էր նա այր քաջ և խորագէտ և ճարտարախօս, և հնարիւք խրատուք նորա առաւ քաղաքն Տրովադա յետ տասնամեայ պաշարման: Այլ 'ի դառնալ 'ի մարտէն՝ հալածանօք բաղդին տառապեալ թափառական զամս տասն ընդ ծով և ընդ ցամաք, անկաւ նաւաբեկութեամբ 'ի կղզին Ոգիգէ. ուր Կալիփսէ կալաւ զնա առ իւր զամս եօթն, ցանկացեալ լինել նմա կնութեան: Բայց հրամանք դիցն արգելին, և կայր նա անմխիթար ընդ չու նորա: Զարկածս զայսոսիկ Ոդիսեայ երգեաց Հոմերոս 'ի գիրսն, որ աստի զանունն կալեալ՝ կոչի Ոդիսական:

4 Ոգիգէ կղզի 'ի միջերկրական ծովուն, որ և Գաւլոս կոչի, և խտալերէն Կօզօ, փոքր մի ստորև քան զՄելիտինէ, ընդ ծովեզերս Ափրիկեայ և ընդ Պաքինոն հրուանդան Սիկիլիոյ:

5 Աթենաս կամ Պաղլաս դիցուհի իմաստութեան և պատերազմի, ըստ առասպելաց ծնեալ յուղղոյ Արամազդայ, որում նուիրեալն էր ձիթենի, և նկարէր նա նիզակ 'ի ձեռին և վահան՝ յորում դրոշմեալ կայր գլուխ Մեդուսայ օձախուիւ:

6 Մենտոր մի 'ի բարեկամաց Հոմերի, և ասպնջական նորին յԻթակէ 'ի նեղելն իւրում 'ի ցաւոց աչաց: Վասն որոյ Հոմերոս առ շնորհակալութեան անմահացուցանէ զանուն նորա յՈդիսականին, և ցուցանէ զնա մի 'ի հաւատարիմ բարեկամաց Ոդիսեայ, որում և յանձնեալ Ոդիսեայ զխնամակալութիւն տան իւրոյ 'ի գնալ իւրում 'ի պատերազմն Տրովադայ:

Ֆէնելոն քանզի դաստիարակ էր դքսին Պուրկօյնի, և 'ի հրահանգս մանկութեան նորա յօրինեաց զքերթուածս, կեղծէ զԱթենաս 'ի Մենտոր՝ առ 'ի յաճախել զզօրութիւն խրատուցն:

7 Ակնարկէ գրուածոցս 'ի յոլով բարեմասնութիւնս սանուն իւրոյ, զոր կերպարանէ 'ի Տելեմաք. որ ապա վաղամեռիկ լեալ 'ի հասակի քսանևինն ամաց, եթող անմխիթար զդաստիարակ իւր և զԳաղղիա ողջոյն, զգեղեցիկ ակնկալութիւն նոցա պատրեալ:

8 Հօնիոս որդիք Տիտանայ յանդգնեալ ընդդէմ դից 'ի պատերազմ, եդին կարկառակոյտս լերանց զմիմեամբք՝ ելանել յերկինս, և նստուցանել զհայր իւրեանց յաթոռ Արամազդայ. այլ ամպահարեալ 'ի նմանէ, ընդ շեղջակուտիւ լերանցն սատակեցան:

9 Դիոս կամ Արամազդ, որդի Կռոնոսի և Ռէայ, որ 'ի Սեմելեայ դստերէ Կադմոսի ծնաւ զԴիոնիսոս: Համարէր սա վեհագոյն 'ի դիս, և նկարէր շանթ 'ի ձեռին՝ հեծեալ յարծիւ:

10 Սպանդարամետ կամ Դիոնիսոս որդի Արամազդայ, արարիչ համարեալ գինւոյ. որում դաստիարակ եղև մարդայայծն ծերունի Սիլենոս:

11 Ատալանտա դուստր արքային Սքենեայ կամ Գիասայ արքային արգիացւոց, մի 'ի նաժշտաց Անահտայ Թեթևընթաց, որում Իպպոմենէս յաղթեաց 'ի հանդէս արշաւոյ՝ արկեալ առաջի նորա խնձորս ոսկիս շնորհեալս յԱստղկանէ, առ 'ի յամեցուցանել զնա յընթացս:

12 Եսպերիդեան կամ Եսպերեան պարտէզք՝ ուր էր ծառ ոսկեխնձոր, յանձն էին երեցունց քերց Եսպերեայց դստերաց Եսպերոսի եղբօր Ատլասայ: Անդ 'ի պահ խնձորոցն հսկէր վիշապ ահագին, զոր սպանեալ Հերակլեայ՝ յափշտակեաց զխնձորսն:

13 Տրովադա էր քաղաք հռչակաւոր 'ի Փռիւգիա: Պարիս որդի Պրիամու արքային Տրովադայ յափշտակեալ զՀեղինէ զկին Մենելաւոսի արքային սպարտացւոց, եղև գրգիռ մեծի տրովական մարտին. յոր արքայք Յունաց առ հասարակ դաշնակցեալ, յետ տասնամեայ պաշարման առին զքաղաքն և կործանեցին. զոր և երգեաց Հոմերոս յիլիականին:

14 Յուշկապարիկ կամ Կենտաւրոս, ծնեալք յԻքսիոնէ և յամպոյ. հրէշք մարդակերպք, 'ի միջոյ և 'ի վայր ձիակերպք: Այսպէս առասպելեցան բնակիչք միոյ 'ի գաւառաց Թեսաղիոյ, որ առաջինք նուաճեցին զերիվար, և հեծեալք զհետ պնդեցան ցլուց փախստէից. զի չինաքանք՝ որոց չև էր տեսեալ զայր հեծեալ, տեսանելով զնոսա 'ի հեռուստ խառն

ընդ ձիանն՝ կարծեցին զնոսա նորանշան ինչ հրէշ, մարդ ձիա-
խառն կամ ձիացուլ։ Եւ համարին ծնեալք յամպոյ, զի բազ-
մագոյնք 'ի նոցանէ էին 'ի Նեփելէ քաղաքէ Թեսաղիոյ, որ
թարգմանի ամպ։ Ոմանք 'ի նոցանէ հրաւիրեալք 'ի հարսա-
նիս Պերիթեայ ընդ Իպպոդամեայ և գինեհարբեալք, զրգռե-
ցան 'ի մարտ ընդ Լափիթայս։

15 Լափիթայք էին բնակիչք Թեսաղիոյ սերեալք յԵւռոզոսէ
և 'ի Լափիթեայ զաւակէ Ապողոնի։ Յայտ 'ի հարսանիս ար-
քայից իւրեանց Պերիթեայ մարտեան ընդ յուշկապարիկս,
որք յափշտակել կամէին զԻպպոդամէ զհարսն նորա։

16 Որփէոս քերթող Թրակացի, որ ըստ աւանդելոյն՝ շար-
ժէր զանասունս և զվէմս քնարաւն, զոր յԱպողոնէ ընկալեալ
էր, զզօրացուցանէր զգազանս, և զգետս ընկղմէր։ Որ և 'ի
մեռանել կնոջ իւրոյ Եւրիդիկեայ՝ իջեալ զհետ նորա 'ի սան-
դարամետս, և 'ի գովեստ շարժեալ քնարաւն զՊղուտոն և զՊեր-
սեփոնէ, հրաման 'ի նոցանէ ընկալաւ վերադարձուցանելոյ զկին
իւր։ Քնար սորա յաստեղատունս դասեցաւ։

17 Պատճառք գործին Ոդիսեայ էր խանդակաթ սէր կնոջ
իւրոյ Պենելոպեայ, յորմէ չկամէր մեկնել։ Վասն որոյ և առ
'ի չգնալոյ 'ի պատերազմին տրովական՝ պատճառէր զյիմարու-
թիւն. այլ յայտնեցաւ խորագիտութիւն նորա։

18 Նկարագրէ Հոմերոս յՈդիսականին՝ թէ զիարդ Ոդիսեւս
'ի քարայրի անդ արգելաւ ընկերօքն, և թէ զիարդ զՊոլիփեմեայ
բոլորակնեայ հսկային բրեալ զակն՝ զերծան անտի մազապուր։

19 Լեստրիգոնք ազգ մարդակեր բնակեալ 'ի Լամոս կամ 'ի
Փորմիա քաղաք առ ծովեզերբ Կամպանիոյ. ուր Ոդիսեայ
կորեան ընկերքն ոմանք։

20 Կիրկէ դուստր արեւու և Պերսիդայ յաւերժահարսին,
վհուկ հռչակաւոր. կղզին Կիրկէի լեառն է և սարաւանդ 'ի
Լատիոն՝ կարկառեալ 'ի ծովն Տիւրենեան. և կոչի կղզի, զի
ծով և ճահիճք որ զնովաւ՝ գործեն զնա իբր ցամաք կղզի։
Անդ զընկերս Ոդիսեայ աւանդելեն փոխեալ 'ի խոզս։

21 Սկիւլլա և Քարիբդիս են ժայռք կրկին աստի և անտի Սի-
կիլիոյ. ուր կորեան Ոդիսեայ ընկերքն վեց։

22 Պոսիդոն, որդի Կռոնոսի և Ռէայ, դիք ծովու. որ
նկարի երեքժանեան 'ի ձեռին։

23 Փէակիա կամ Կորկիւրա կղզի հանդէպ Եպիրոսի։ Յն.
Քորֆու։ Տճ. Քէօրֆէզ։

24 Գեղեցկութիւն Պենելոպեայ ձգեաց զբազումս յաւա-
կաց 'ի տարփանս, զի Ոդիսեւս այր նորա մեռեալ համարէր։

25 Նեստոր որդի Նելէոսի, թագաւոր 'ի Պիլէ քաղաքի 'ի
Պելոպոնէս. այր քաջ և ճարտարախօս, որ եկեաց զամս երեք-

տրիւր, և յալիս ծերութեան գնաց ընդ դաշնակից արքայս իննսուն նաւօք 'ի պատերազմն տրովական:

26 ՄԷՆԷԼԱՈՍ որդի Ատրէոսի, եղբայր Ագամեմնոնայ, արքայ Սպարտացւոց, որոյ կին էր Հեղինէ դուստր Արամազդայ և Լեդայ: Ի յափշտակութենէ նորա դրդեցաւ տրովական պատերազմն:

27 ՍՊԱՐՏԱ կամ ԼԱԿԵԴԵՄՈՆ քաղաք 'ի Պելոպոնեսս:

28 ԿԻԿԼՈՊՔ հսկայք բոլորաչեայք արբանեակք Հեփեստոսայ, որք գործէին Արամազդայ շանթիս 'ի լերան Եթնէ և այլուր: Զսոսա սպան Ապողոն վասն գործելոյ նոցա զշանթն մահառիթ Ասկղեպեայ:

29 ԵՆԷԱՍ իշխան տրովացի, որդի Անքիսեայ և Աստղկան. յետ կործանման Տրովադայ նաւարկեալ 'ի Կարքեդոն, սիրելի եղև Դիդեայ դշխոյի: Այլ 'ի հրամանաց դիցն ստիպեալ մեկնել անտի, անց յԻտալիա, և շինեաց քաղաք յափն Տիբերի: Եւ պատերազմեալ ընդ Տուռնոսի արքայի, սպան զնա, և էառ իւր կնութեան զԼաւինիա դուստր Լատինոսի զխօսեցեալն ընդ նմա: Այսոքիկ են պատճառք Ենէականին Վիրգիլեայ:

30 ԱՍԿԱՆԻՈՍ որդի Կրէուսեայ դստեր և Եկաբեայ տիկնոջ տրովացւոյ, առաջնեկան Ենեայ և հօր նորա Անքիսեայ 'ի գնալ նոցա յԻտալիա 'ի կործանմանէն Տրովադայ:

31 ԵՍՊԷՐՈՆԱԿԱՆ կամ ԵՍՊԷՐԻԱ կոչին Իտալիա և Սպանիա. և առ 'ի խառն զանազանութեան՝ առաջինն կոչի մեծ Եսպերիա, իսկ երկրորդն կրտսեր կամ վերջին Եսպերիա, յանուն Եսպերոսի արքայի, որ հալածեալ յերեսաց Ատղասայ եղբօր իւրոյ՝ ամրացաւ յԻտալիա; կամ մանաւանդ յանուն երեկոյեան գիշերավար աստեղն՝ որ յունարէն կոչի Եսպերիա: Եւ կոչէր արևմուտ 'ի յունաց Իտալիա, 'ի մտաց կալով յունաստանի. որպէս և Սպանիա յիտալացւոց 'ի նոյն սակս:

32 ԿՈԿԻՒՏՈՍ գետ դժոխոց, որ Թարգմանի կականաւոր, իբր յարտասուաց և յողբոց տանջեցելոցն անդ գետահոսեալ:

33 ԳԵՐԵԶՄԱՆ Անքիսեայ էր յԵրիքս լերին, ուր մեռաւ նա 'ի գալն իւրում ընդ Ենեայ յԻտալիա:

34 ՀԻՄԵՐԱ քաղաք 'ի Սիկիլիա, զոր կործանեաց Աննիբաղ 400 ամօք նախ քան զթուականութիւն փրկչին:

35 ԱԾԷՆԱԿԱՇ կամ ԷԳԻՍ կոչի վահանն Արամազդայ. զի մորթով այծուն՝ որ դիեցոյցն զԱրամազդ՝ պատեալ էր այն: Աթենաս ընկալեալ զայն 'ի նմանէ պարգև, դրոշմեաց 'ի նմա զօձախառն գլուխ Մեդուսայ յահարկութիւն, որով փոխակերպէր յապառաժ զմարդիկ:

36 ՆՈՒՄԻԴԻԱ գաւառ յԱփրիկէ, ուր ամեհիք են առիւծունք:

# ԱՐԿԱԾՈՒՔ ՏԵԼԵՄԱՔԱՅ



## ԳԻՐՔ ԵՐԿՐՈՐԴ

# ՆԱԽԱԴՐՈՒԹԻՒՆ

Շարայարէ Տելեմաք զպատմութիւն արկածիցն՝ թէ որպէս 'ի նաւատորմէն Սեսոստրի կալեալ նաւն իւրեանց տիւրացի, գերի վարեցան և ինքեանք յԵգիպտոս։ Նկարագրէ զցեղեց-կութիւն եգիպտացւոց աշխարհին, և զիմաստուն տեսչութիւն թագաւորին։ Պատմէ ապա զՄենտորի գնալն 'ի գերութիւն յԵթովպիա, և զվարիլ իւր 'ի խաշնարածութիւն յանապատս Ովասեայ, և զՏերմոսիրեայ քրմին Ապողոնի ափոփել զինքն 'ի նմանութիւն աստուածոյն՝ որ հովիւ խաշանցն Ադմետայ արքայի երբեմն լեալ էր։ Յաւելու ապա զի Սեսոստրի ուր ուրեմն գիտացեալ զանմեղութիւն իւր 'ի զարմանալեացն՝ զորս գործէր ընդ հովիւս, կոչեաց զնա առ ինքն՝ դարձուցանել զնա յԻթակէ. և թէ որպէս մահուամբ թագաւորին անկաւ անդրէն յաղէտս, և արգելաւ յաշտարակ մի ծովեզերեայ՝ ուստի տեսանէր զԲոկքորիսի նորոյ արքային զանկումն 'ի ճակատու պատերազմի ընդդէմ ապստամբ ժողովրդեանն, ընդ որս և ձեռն տիւրացւոցն էր։

# ԱՐԿԱԾՈՒՔ ՏԵԼԵՄԱՔԵԱՅ

## ԳԻՐՔ ԵՐԿՐՈՐԴ

Այս էր ցասմանք մեծաւ ընդ գոռոզութիւն տիւրացւոց արքային Եգիպտոսի Սեսոստր, աշխարհակալ պետութեանց բազմաց: Զի յաճախութեամբ գանձուց՝ զորս ստացեալ էին տիւրացիքն ՚ի վաճառաշահութենէ, և ամրութեամբ քաղաքին Տիւրոսի՝ որ բնակեալ էր ՚ի ծովու, ստահակեալ զլացան նմա զհարկսն, զոր ՚ի դառնալն իւրում յաշխարհակալութենէ՝ արկ նոցա, և ետուն զօրս ՚ի նպաստ եղբօր նորա՝ որ խորհէրն դաւաճանել զնա ՚ի խրախճանս անդ ՚ի դարձին:

Ի մտի եդեալ էր նորա նկուն առնել զնոսա ՚ի հպարտութենէն՝ խափանելով զշահավաճառ նոցա ընդ ծով, և ամենայն ուրեք նաւք նորա հետամուտ լինէին փիւնիկեցւոց: Իսկ մի ՚ի նաւացն սպառահեւաց մեզ. այն ինչ ծածկէին յաչաց մերոց լերինքն Սիկիլիոյ, և թուէր խուսել ՚ի մէնջ երկիրն յետոյս և կորնչել յամպս հետախաղաղ, և ահա գայր մերձենայր նաւատորմն եգիպտականն որպէս քաղաք ծովածուփ: Շա-

նեան զնա փիւնիկեցիք, և խնդրէին խոյս տալ, այլ տարաժամ. առագաստք նոցա թեթևաթռիչք քան զմերն, հողմ յաջողակ նոցա, և թիավարք բազմագոյնք էին։ Հասին կալան զմեզ, և ածին գերի յԵգիպտոս։

Ի զուր աղերս առնէի, զի չէաք մեք փիւնիկեցիք. լսել անգամ ոչ յանձն առնուին։ Կարծեցին զմեզ ստրուկս արծաթագինս 'ի տուրևառիկ վաճառաշահ փիւնիկեցւոցն, և 'ի շահ ևեթ աւարին իւրեանց խորհէին։ Նշմարէաք անդստին զալիս ծովու սպիտակացեալ խառն ընդ ափս Նեղոսի, և երևէր ծովափն Եգիպտոսի հարթ հաւասար ընդ ծովու։ Հասեալք ապա 'ի կղզին Փարոս մերձ 'ի քաղաքն Նով, ելաք անտի ընդ Նեղոս 'ի Մեմփիս։

Եթէ 'ի վիշտս գերութեան չէաք անզգայացեալք զբօսանաց, պարարէր արդեօք զաչս մեր երկիրն Եգիպտոսի արգաւանդ, պարտէզ զուարճալի՝ ոռոգեալ 'ի բազմահոյլ վտականւոյ։ Ուստի և անտի ընդ գետեզերս էին քաղաք մեծափառթամք, ամարանոցք գեղեցկադիրք, անդաստանք՝ որք ամի ամի ծածկէին անդադար 'ի հունձ ոսկեփայլ, արօտք խաշնաւէտք, մշակք ծանրաբեռնեալք արմտեօք՝ զորս բղխէր երկիրն 'ի ծոցոյ իւրմէ, և հովիւք՝ որոց փողք և սրինգք քաղցրաձայնք հնչեցուցանէին շուրջանակի արձագանգս։

Յայնժամ ասէր ցիս Մենտոր. Երանի՛ ժողովրդեան՝ որում առաջնորդէ թագաւոր իմաստուն. վայելէ նա 'ի լիութեան և 'ի բարօրու-

թեան, և սիրէ զբարեացն տուիչ։ Նոյնպէս պարտ է քեզ թագաւորել, ո՛վ Տելեմաք, և յարդարել զբարեկենդանութիւն ժողովրդեան, եթէ տացեն երկինք ժառանգել զարքայութիւն հօր քո։ Սիրեսցես զժողովուրդ քո հայրաբար, քաղցրասցի քեզ սիրելի զոլ նոցա, և զուն գործեսջիր զի 'ի վայելել նոցա 'ի բարերարանս և 'ի խաղաղութեան՝ յիշեսցեն միշտ զի բարեգութ թագաւորի ձեռք են այնոքիկ առատապարգևք։ Թագաւորք՝ որ ահարկու եւեթ կամին լինել հպատակաց իւրոց և ընկճել զնոսա 'ի հնազանդութիւն, հարուած է ազգի մարդկան։ Լիցի ապաքէն ահարկու որպէս ցանկայն, բայց ատելի իսկ և զարշելի, և առաւելագոյն լիցի նոցա երկիւղ 'ի ժողովրդենէ, քան ժողովրդեան 'ի նմանէ։

Ես որ պատասխանի տուեալ ասէի․ Աւա՛ղ, զի՞նչ ևս պէտք իցեն մեզ խրատուց բարուոք թագաւորելոյ․ կորեաւ 'ի մէնջ Իթակէ, ոչ ևս լիցի մեզ տեսանել զհայրենիս մեր, և ոչ զՊենելոպէ։ Եթէ յաջողեսցի իսկ Ոդիսեայ դառնալ փառօք 'ի թագաւորութիւն իւր, լիցի նա 'ի սպառ զուրկ 'ի բերկրանաց տեսանելոյ զիս, և ես 'ի հնազանդելոյ նմին առ 'ի վարժ հրամայելոյ։ Մեռցուք, սիրեցեալդ իմ Մենտոր, չիք մեզ այլում իմիք ակնկալել․ մեռցուք, զի ոչ ևս գթան 'ի մեզ դիք։

Զայսոսիկ 'ի խօսից սրտէ կարկամ հեծեծանօք բարբառէի․ բայց Մենտոր, որ խիթայրն 'ի չարեաց նախ քան զհասանել նոցա և ոչ ևս 'ի

հասելոցն, կշտամբէր զիս՝ ասելով. Մենտորն Ողիսեայ անարժան որդի, ահա՝ նկատեն ուրեմն լիցիս յարկածիցդ. գիտեա զի և զԻթակէ տես-ցես դու երբեմն և զՊենելոպէ, և զանպարտե-լին հայր Ողիսեւս, զոր ոչն երբէք ճանեար, տես-ցես յառաջին փառս իւր, զանընկճելին յոխերով բախտէ, և որ յարկածս դժնդակագոյնս քան զքոյդ խրատէ զքեզ՝ մի երբէք վհատել: Եթէ երբէք ազդ լինէր նմա 'ի օտար աշխարհ՝ ուր արկ զնա մրրիկ, զի որդեակն իւր 'ի հայրենի երկայն-մտութենէն և յարիութենէ վերջացեալ գտանի, յանօթ լինէր ընդ գոյժն, և դառնագոյն քան զբազմանեայ աղէտս իւր թուէր նմա այն:

Ցուցանէր ինձ ապա Մենտոր զհրճուանս և զլիութիւն հանճարիւռ ընդ աշխարհին եգիպ-տական, ուր էին քաղաքք իբր քսանեերկու հա-զարք: Զարմանայր ընդ բարեկարգութիւն քա-ղաքացն այնոցիկ, զի իրաւունք աղքատին յաղ-թանակէին ամեն ընդդէմ մեծատանն. ընդ դաս-տիարակութիւն մանկտւոյն, որ վարժէին 'ի հնազանդութիւն 'ի վաստակս 'ի զգաստութիւն և 'ի սէր արուեստից և դպրութեանց. ընդ պահ-պանութիւն պաշտամանց կրօնիցն, ընդ անտե-սութիւն իւրաքանչիւր շահու, ընդ փոյթ փա-ռաց, ընդ հաւատարմութիւն առ իրեարս, և ընդ երկիւղածութիւն 'ի դիցն յոր հարք սնուցանէին զորդիս: Այլ ոչ դադարէր 'ի զարմանալոյ ընդ գեղեցիկ կարգսն, և դարձեալ վերստին ասէր

ցիս. Ազգանն ժողովրդեան, որում այսպիսի ոք Թագաւոր խնամատուն առաջնորդէ. այլ առաւել երանի Թագաւորի, որ զայսչափ բազմութեան ժողովրդոց յարդարէ զբարեկենդանութիւն, և զիւրն եւս յառաքինութեան կրթում: Ոխերա- պաստիկ ամբարագոյն քան զկապարանս երկիւղին՝ սիրոյն կապանօք կցորդէ նա ընդ իւր զանձրդիկ. որք ոչ միայն հնազանդիլն նմա, այլ և մտադիւր սիրով ցանկան հնազանդել: Թագաւորէ նա 'ի սիրտս ամենեցուն. և ոչ միայն չխնայէ ոք զերծանել 'ի նմանէ, այլ և երկնչի 'ի կորուսանելոյ զնա, և զանձն իւր դնէ 'ի վերայ նորա:

Նոյն ևս 'ի լուր բանիցն Ա՛նտոսոփ խելամուտ լինելի, և խրախոյս եմն 'ի խրատուց զգօն բարե- կամին արծարծանէր 'ի սիրտս իմ:

Այս իբրև հասաք 'ի Ա՛նտիոք քաղաքս բարեխօ- զանձն և մեծանձնաց, հրամանաւ քաղաքապետին զննալ մեզ 'ի Թեսաղիա՝ յանդիմանեան լինել առքայիս Ասորւոյ, որ երբեմն կամէր հաղորդակցել զմեզ, և ծանուցառումն էր ընդ աշխարհիս: Սակս որոյ նա եցոյց ընդ մերկոյս՝ Նեղոսի միջոցէ 'ի հանդամուտենս քաղաքն հարկուրդնեաց 'ի Թեսաղիա, ուր աղքատք բնակին: Թուէր մեզ ընդարձակութիւն քաղաքին ամբոխ, և մեծութեա- շատ քան զամենայն քաղաքս Ասորւոյ բարեզարդա- ծեալ: Բարեպաշտութիւն անօթեր 'ի մաքրու- թիւն փողոցաց, 'ի Ջրանցս, 'ի զուարթութիւն բա- զանեաց, 'ի զարդարումն արուեստից, և յանդր-

կեան կեանս հասարակաց։ Ճարտարակք զարդարեալք աղբերբք և բրգամբք, տաճարք կճեայք, անպաճոյճ բայց մեծավայելուչ ճարտարապետեալք։ Արքունիքն ինքնին թուէր քաղաք մեծ. սիւնս անդ էր տեսանել ամենայն ուրեք մարմարեայս, բրգունս և կոթողս, անդրիս հսկայաձևս, և կահս առ հասարակ ձոյլ ոսկի և արծաթի։

Պերեվարք մեր զրոյց ետուն արքային, գտեալ զմեզ 'ի նաւու մի փիւնիկեցի։ Իսկ լսէր նա զօրհանապազ 'ի սահմանեալ ժամս զբողոք ժողովրդեան կամ զխորհուրդ, ոչ զոք արհամարհէր և ոչ զոք մերժէր. քանզի համարէր առ 'ի բարերարել և եթ թագաւորեալ հպատակացն, զորս սիրէրն իբրև զորդիս։ Ընդունէր և զեկս մարդասիրաբար, և ցանկայր տեսանել զնոսա, ոչ ինչ երկուացեալ ուսանել միշտ 'ի նոցանէ օգտակարս՝ տեղեկութեամբ բարուց և իմաստից տարաբնակ ազգաց։

Յայն սակս իսկ յանդիման արարին զմեզ արքային։ Իսկ բազմէր նա 'ի գահ փղոսկրեայ, գաւազան ոսկի 'ի ձեռին. ծեր էր հասակաւ, այլ հաճոյ աչաց 'ի տեսիլ, հեզահամբոյր և մեծավայելուչ։ Դատէր հանապազ զժողովուրդ իւր երկայնմտութեամբ և իմաստութեամբ 'ի զարմացումն ամենեցուն անաչառապէս. և վաստակեալ զօրն ցերեկ 'ի յանձանձանս իրաց աշխարհին և յառնել իրաւունս, ընդ երեկս ապա առ 'ի հանգիստ՝ պարապէր 'ի լուր իմաստնոց և 'ի

կենակցութիւն առաքինեաց՝ զորս քաջ գիտէր ընտրել և ընդունել 'ի մտերմութիւն իւր ։ Չէր մարթ ստգտանել ինչ յամենայն կեանս նորա, բայց զի պերճագոյնս 'ի վերայ պատուելոց արքայից յաղթանակէր, և վստահացեալ յոյժ էր 'ի մի 'ի պաշտօնէիցն իւրոց՝ զորմէ լիցին ինձ բանք ընդ հուպ ։ Իբրև ետես զիս, գթացաւ 'ի տիս մանկութեան իմոյ, և եհարց զանուն իմ և զհայրենիս. և սքանչանայր ընդ իմաստութիւն բանից նորա ։

Պատասխանի ետու և ասեմ. Արքայ քաջ, ոչ ինչ զանխուլ է 'ի քէն պաշարումն Տրովադայ ընդ ամս տասն, և աւեր նորա՝ վասն որոյ այնքան արեանց եղեն ճապաղիք ազանց առ հասարակ Եւլլադայ ։ Ողիսեւս հայր իմ՝ էր մի 'ի գլխաւորաց արքայից, որք կործանեցին զքաղաքն զայն. և թափառի նա արդ ծովէ 'ի ծով, չև ևս հասեալ 'ի թագաւորութիւն իւր 'ի կղզին Իթակէ ։ Ի խնդիր նորա շրջիմ, և նմանամիշտ արկածք մատնեցին զիս 'ի գերութիւն. տուր ինձ դառնալ առ հայր իմ և 'ի հայրենիս, և պահեսցեն զքեզ դիք որդւոց քոց, և տացեն նոցա զվայելս ընդ իմամովք հօրդ բարւոյ ։

Եւ ոչ դադարէր Սեսոստր հայել ընդ իս կարեկցութեամբ. բայց առ 'ի ստուգել զբանս իմ, արձակեաց զմեզ առ մի ոմն 'ի պաշտօնէից իւրոց, պատուէր տուեալ տեղեկանալ 'ի կալանաւորաց մերոց՝ թէ արդարև Յոյնք

էաք եթէ փիւնիկեցիք: Նա յաւել ասել. Ո՛ ի եթէ փիւնիկեցիք իցեն, կրկին պատժոց արժանի գտանիցին. մի՝ զի թշնամիք մեր են, և դարձեալ առաւելագոյն պատժոց արժանիք, զի հնարիւն խաբել զմեզ վասն ստութեամբ: Իսկ եթէ Յոյնք իցեն, քաղցրութեամբ գնասջիք ընդ դոսա, և միայն 'ի նաւաց իմոց արձակեսջիք զդոսա յաշխարհն իւրեանց. քանզի սիրելի են ինձ Յոյնք, բազումք յեգիպտացւոցս եղեն նոցա օրէնսդիրք [1]. ոչ ան-ծանօթ են ինձ առաքինութիւնք Հերակլեայ [2], և փառք Աքիլլեայ [3] հասին առ մեզ. և զարմանալիս լուեալ է իմ զիմաստութենէ չարաբաստիկն Ոդի-սեայ: Քաղցր է ինձ ձեռն տալ տառապելոյ ա-ռաքինութեան:

Իշխանն, որում յանձն եղև յարքայէ քննու-թիւն իրացս մերոց, չարաժխտ էր և խոժոռադէմ՝ որչափ Մենտոր անկեղծ և մեղմաձև. և անուն նորա էր Մետոփիս: Նա 'ի հարցափորձ մատու-ցեալ, հնարէր ըմբռնել զմեզ բանիւք. և տեսեալ զի իմաստնագոյն քան զիս էր Մենտոր 'ի պատաս-խանել, ընդ ակամբ հայէր 'ի նա կասկածանօք. որպէս չարաց է բնութիւն զչարել ընդ բարիս. և մեկնեաց զմեզ 'ի միմեանց: Յայնմ հետէ ոչ ևս ինչ գիտացի զՄենտորէ, այլ որպէս շանթ 'ի յերկնէ եհար զիս բաժանումն այն:

Յուսայր Մետոփիս որսալ 'ի բերանոյ մերմէ բանս հակառակ միմեանց 'ի հարցաքննութեան զմեզ ուրոյն. և մանաւանդ հրապուրէր զիս մարդելոյզ

խոստմամբք ածել 'ի խոստովանութիւն զաւրա-
նեաց՝ զորս կարծէին թագաւորացուցանել Մենտորի ։ Այլ զի յերկարեմ, ոչ ուղիղ մտօք 'ի խնդիր էր նա ճշմարտութեան, այլ պատճառանս խնդրէր ցուցանելոյ զմեզ փիւնիկեցիս առաջի թագաւորին՝ առ 'ի գրաւել զմեզ 'ի ստրկութիւն, որպէս և արարին իսկ. զի թէպէտ և անպարտք էաք մեք, և թագաւորն արդարակորով, եղիտ նա հնարս խաբելոյ զնա ։

Աւա՜ղ, յորպիսում վտանգի կան թագաւորք, և բազում այն է՝ զի և իմաստնագոյնք 'ի նոցանէ անկանին յայն ։ Որք խորամանկք և չարաշահք շուրջ կան զնոքօք. իսկ բարիք հրաժարեն, զի չեն իսկ յառաջամատոյցք և շողոքորթք ։ Լաւ արեարն սպասէ հրաւիրանաց, այլ սակաւք 'ի թագաւորաց գիտեն լինել նոցա 'ի խնդիր. իսկ չարք ձեռներէցք են, խաբեբայք և հետամուտք 'ի սպրդել ընդ միտ մտանել, ճարտարք 'ի կեղծաւորել, և պատրաստք 'ի հաճել զախտս թագաւորին՝ առ ոտն կոխեալ զպատուութիւն և զխիղճ մտաց ։ Վա՜յ թագաւորի, որ նշաւակ կայ չարարուեստ հնարից նոցա. մնացեալ հասցէ նմա կորուստ, եթէ ոչ հերքէ զշողոմս, և սիրէ զդիմագրաւեալս ասել նմա զճշմարտութիւն ։ Զայսոսիկ յաղէտս իմ զմտաւ ածէի, յիշելով զոր ինչ լուեալն էր իմ 'ի Մենտորէ ։

Յայնժամ Մետոփիս արձակեաց զիս 'ի լեռնակողմանս Ովասեայ՝ անապատին ընդ ստրուկս

իւր, արածել անդ ընդ նոսա զբազմահոյլ խաշինս իւր ։

Աստ Կալիփսէ ընդմիջեալ զխօսս պատմութեան, ասէ․ Աղէ, և զի՞նչ արարեր յայնժամ որ 'ի Սիկիլիա զմահ լաւ համարէիր քան զծառայութիւն ։ Պատասխանի ետ Տելեմաք․ Աղէտք իմ յաճախէին օր ըստ օրէ, և ոչ ևս էր ինձ առաւելին սփոփումն ընտրելոյ ընդ մահ և ընդ ծառայութիւն․ հարկ էր գնալ 'ի ստրկութիւն, և գոգցես իմն քամել զամենայն մրուրս դառնութեան բախտին ։ Ոչ ևս գոյր ինձ ուստեք ակնկալութիւն, և ոչ բարբառել ինչ կարէի 'ի հնարս ազատութեան ։ Իսկ ապա գիտացի 'ի Մենտորէ, զի վաճառեալ եթովպացւոց ումանց՝ երթեալ էր ընդ նոսա յԵթովպիա ։

Իսկ ես հասի յանապատս ահագինս, ուր ծածկէ զդաշտս աւազ բոցակէզ, և զկատարս լերանց ձիւն մշտասառոյց՝ յաւէրժական ձմերայնոյ բքաբեր․ և 'ի սարաւանդս ևեթ զկողիւք լերանցն 'ի մէջ քարաժայռից գտանէին անդ արօտք 'ի ճարակ խաշինս ։ Իսկ հովիտք այնպէս խորաձորք, զի հազիւ աղօտ ինչ նշոյլք ճառագայթից արեգական հասանէին անդր ։

Ոչ էին անդ բնակիչք բաց 'ի հովուաց, և նոքին իսկ հանգոյն երկրին վայրենիք ։ Զգիշերն 'ի բուն ողբայի անդ զաղէտս իմ, և 'ի տուընջեան ոչ դադարէի 'ի հովուելոյ՝ առ 'ի զերծանել 'ի գազանամիտ վայրենութենէ ուրումն 'ի հովուա-

պետաց, որ առ 'ի գտանել ազատութիւն անճա-տանէր անդադրար զայլս, 'ի ցոյց տխրանէր նա-խանձու. և անուն նորա էր Բուտիս: Այս հասին ինձ արկածք անձողորմելի. զի առ ծանրաթա-խիծ տրտմութեան մոռացեալ 'ի միում աւուրց զհօտ իմ, կայի յորսայս 'ի դալարւոջ առ քարայրի ուրեք՝ դէտակն ունելով մահու, ոչ ևս հանդուր-ժեալ տառապանաց իմոց:

Այս տեսի, և ահա լեառնն ողջոյն սասանէր, և կաղնիք և շոճք թուէին վայրաքերիլ. և իբրև կարկեցան կացին հողմք, բարբառ ահեղագոչ 'ի քարայրէ անտի ելանէր, ասելով. Ո՜ աւակդ ի-մաստնոյն Ուղիսեայ, պարտ է քեզ նայապէս վշ-տակրութեամբ եղանիլ մեծ. իշխան, որ միշտն լեալ իցէ երանաւէտ, անարժան գտանի երանու-թեան. մեղկութիւն զնա զառածանէ, և արբե-ցուցանէ ամբարհաւաճութիւն: Ո՛րանմ երանա-ւէտ պահի քեզ նաեհ, եթէ յաղթեսցես դու արկածիցդ, և յուշի զդոսա կապեսցես. լիցի քեզ տեսանել միւսանգամ զԻթակէ, և փառք քո մինչև յաստեղս ամբառնայցեն: Այս իբրև տի-րեսցես այլոց, յուշ լիցի քեզ՝ զի էիր երբեմն և դու համգոյն նոցին տկար և կարօտ և վշտակիր. զբօսիր 'ի սփոփել զնոսա, սիրեսջիր զժողովուրդ քո, ատեսջիր զշողոմս, և գիտասջիր զի միայն հնար մեծութեան է՝ 'ի չափու ունել զանձն, և արիաբար յաղթել կրից:

Պատգամքս այսոքիկ մինչև 'ի խորս սրտի իմոյ

ազդեալ, արծարծեցին յիս խնդութիւն և խրա-
խոյս։ Ո՛չ զգացի զսոսկումն՝ որ յերեսաց դիցն
ներգործեալ 'ի սիրտ մահկանացուաց, դիցանոյն
հերք նորա քստմնեալ զգլխով, և պաղի յերեսս
նորա արիւն. այլ յարեայ անխռով, և ծունր
կրկնեալ, ձեռս 'ի վեր համբարձեալ, երկիր պագի
Աթենասայ՝ յորմէ թուէր ինձ պատգամն ազ-
դեալ։ Սակայն գտանէր փոխեալ յայր յայլ.
միտք իմ պայծառացեալ իմաստութեամբ, և սիրտ
իմ արիացեալ առ 'ի սանձահարել զկիրս և նա-
հանջել զթափ պատանեկան տիոց։ Սիրելի եղէ
հովուաց ամենեցուն անապատականաց. և հե-
զութեամբ իմով և համբերութեամբ և ժրու-
թեամբ հաշտ արարի ընդ իս և զանհամբոյրն իսկ
զԲուտիս՝ զվերակացու այլոց ստրկաց, որ 'ի
սկզբան անդ անողորմն էր ընդ իս։

Եւ առ 'ի դիւրել ինձ զտաղտուկ գերութեան
և զամայութեան՝ խնդրէի գիրս. զի ծանրա-
նային յիս թախիծք առ 'ի չգոյէ վարժից ինչ 'ի
ձեռաց և 'ի կազդուրումն մտաց։ Ասէի ընդ միտս
իմ. Երանի՛ որոց տաղտկալի լինին բոյք բաղձից,
և որ հաճք լինին և գոհ ընդ բերկրութիւնս ան-
մեղ կենաց։ Երանի՛ որոց զբօսանքն 'ի գիտու-
թիւնս և 'ի բարգաւաճել զմիտսն հմտութեամբք.
զի ուր և ընկեցիկ զնոսա արասցէ բախտն ոխե-
րիմ, տանելին ընդ իւրեանս զզբօսանս իւրեանց.
և տաղտկութիւն, որ 'ի վայելս իսկ զրգանաց հա-
չէ զայլս, հեռի է 'ի նոցունց՝ որք պարապեն

յընթերցուածս ։ Երանի՛ որ ընթերցասէրքըն իցեն՝ և ոչ զուրկք 'ի մատենից իբրև զիս ։

Մ՛ինչդեռ մտայոյզ 'ի խորհուրդս յայսոսիկ՝ մտանէի յանտառ ուրեք նսեմաստուեր, և ահա յանկարծ տեսի զմին ծերունի՝ մատեան 'ի ձեռին, ճակատ նորա լայն և ճաղատ՝ դոյզն ինչ խորշոմեալ, մորուք սպիտակափառ մինչ 'ի գօտին իջանէր, բարձրադիտակ և մեծավայելուչ, երեսք նորա դեռ ևս կայտառ և կարմրագեղ, աչք հրա-ցայտք և սրատեսիլք, ձայն քաղցրաբարբառ, և զրոյցք պարզ և ախորժ ։ Չէր իմ երբէք տեսեալ այնպիսի ոք ծեր պատկառելի. և էր նա Տերմո-սիր քուրմ մարմարաշէն մեհենին, զոր Թագա-ւորք Եգիպտոսի կառուցին Ապողոնի* յանտառի անդ. և զիրքն, որ 'ի ձեռին նորա, էին քաղուա-ծոյք օրհներգութեանց դիցն ։

Մ՛ատեաւ առ իս սիրով, և խօսեցաք ընդ մի-մեանս. և այնպէս գեղեցկապատում յօրինէր ճառս զանցից անցելոց, զի թուէր ինձ դէմ յան-դիման զնոսին տեսանել. բայց էր նա հակիրճ, և ոչ ձանձրանայի երբէք 'ի լուր նորին ։ Խորագնին իմաստութեամբն՝ որով ճանաչէր նա զմարդիկ և որ ինչ մարթէրն նոցա երկնել 'ի միտս՝ գուշակէր զհանդերձեալսն ։ Ընդ այնպիսում խոհականու-թեան էր նա զուարթ և հաճոյ, գեր 'ի վերոյ քան զգեղածիծաղ մանկութեան բերելով շնորհս յաւելորեալ ծերութեան, որով և սիրէր զմանկունս հլու և առաքինասէր ։

Ի գութ խանդաղատեցաւ ընդ իս, և ետ ինձ զիրս ինչ առ 'ի սփոփումն, որդեակ ինձ առձայնելով. և ես հայրակոչ լինէի նմա ստէպ և ստէպ. Ի բառնալ յինէն դիւց զՄենտոր, զթացեալ յիս շնորհեցին զքեզ ինձ առպաւէն: Ծերունին այն աստուածազդեցիկ, համանմանեալ Որփէոսի ' և Լինեայ ', արտասանէր ինձ զքերթուածս իւր, և զյոգունս այլոց հրաշալեաց քերթողաց սիրեցելոց 'ի Մուսայից: Նոյն ինչ արկեալ զանձամբ զպճղնաւորն ձիւնափայլ՝ առնոյր 'ի ձեռն զքնարն փղոսկրեայ, վագերք և արջք և առիւծունք 'ի համբոյրս եկեալ քծնէին զնովաւ, և լիզուին զոտս նորա. և մարդապայք՝ եկեալ յանտառաց՝ կայթս առնէին զնովաւ. մայրիք իսկ զգացեալ գորովեալ, և ժայռք զլխովլին 'ի գութ խանդաղատեալ, թուէին իմն իջանել 'ի գագաթանց լերանց առ հրապոյրս քաղցրալուր նուագաց: Նա երգէր զդիցն մեծվայելչութիւն, զդիւցազանցն առաքինութիւն, և զիմաստութիւն մարդկան՝ որոց ցանկալի են փառք քան զզբօսանս:

Յաջալերէր նա զիս ստէպ՝ թէ ոչ թողցեն դիք զՈդիսեւս. և ոչ զզաւակն ոդիսական 'ի ձեռաց. և վստահ առնէր զիս՝ թէ մինչ քեզ լուս օրինակին Ապողոնի ուսուցանել հովուաց զպաշտօն Մուսայից: Նա ասէր ցիս, զի զայրացեալ Ապողոնի ընդ Արամազդ՝ որ շանթիւքն իւրովք 'ի պարզի զուարթախանձանձ ամբոխէր զերկինս, զվրէժ քինուն 'ի Կիկլոպայցն խորհեցաւ առնուլ՝ 'ի դար-

ընտողաց նման շանթից։ Այլ ընդ նետահարն զնո-սա առնել՝ դադարեաց Եթնէ [9] 'ի ժայթքելոյ զբոցոյ մրրիկ. ոչ ևս լսելի լինէին ահագինքն ուռնադղորդ սալից բոմբիւնք, յորոց սանդարա-մետք երկրի և վիհք անդնդախորք ծովու հեծէին. Երկաթ և պղինձ ոչ ևս կռեալք 'ի Կիկլոպայց՝ լինէին ժանգահար. և Հեփեստոս [10] զայրագին 'ի դուրս յարձակեալ 'ի դարբնոցէն կաղ 'ի կաղ՝ դիմեաց յՈղիմպոս [11], հաս յակնթահայլ 'ի դիցն կաճառ՝ ընդ քրտան հարեալ և ընդ փոշի, և բո-ղոք արկ սաստառուչ։ Այլ սրտմտեալ Դիոս ընդ Ապողոն, մերժէր զնա յերկնից հոսեալ 'ի յեր-կիր. և կառք նորա թափուրք իւրովի զհանապա-զորդ ընթացսն կատարէին՝ ածել մարդկան զտիւ և զգիշեր, քանզի եղանակաց անվրէպ փոխա-ռութեանք։

Ապողոն կապտեալ 'ի լուսոյ անձաձանչ՝ զհո-վուական յանձն էառ կենցաղ, և արածէր զխա-շինս Ադմետոսայ արքայի։ Նուագէր նա սրնգաւ, և զայլքն ժողովէին հովիւք առ հաւասարակ ընդ հովանեաւ նշդարեաց առ եզերբ ականակիտ աղ-բեր, 'ի լուր երգոց նորին։ Այլ որ վայրենաբա-րոյքն էին յառաջագոյն և անասնակենցաղք՝ ոչ գիտելով դարմանել և կտրել զխաշինս, ոչ կաթն կթել, և ոչ մակարդել զպանիր, և թուէր դաշտա-վայրն անապատ ամայի, 'ի սուղ ժամանակի ու-սուցանէր Ապողոն զարուեստս՝ որ ախորժ ընծայեն զկենցաղ։

Նուագէր նա զծաղկունս՝ որովք պսակի գա-րուն, զբուրմունս՝ զոր շուրջ ծաւալէ, և զդեղ դալար՝ որ ընդ զարշապարօք նորա բողբոջեն. Նուագէր զամառնայնոյ զգիշերս հեշտալիս՝ յորս զեփիւռք զովացուցին մարդկան, և ցօղք արբու-ցանեն ընծայեն ծարաւուտ երկրի: Յեռայր 'ի նուագս իւր և զմիրգս ոսկեփայլս՝ որովք վարձա-տրէ աշուն երկրի մշակաց, և զհանգիստ ձմե-ռայնոյ՝ յորում զբօսանէր մանկտին պարս յօրինել առ հրով: Նուագէր դարձեալ զանտառախիտ լե-րինս և զծործորս խորաձորս, ուր գետք աստ 'ի աստ խաղան ընդ գեղածիծաղ մարգս: Ուսոյց և ևս հովուաց ո՛ր այն իցեն անդաստանական կենաց բերկրութիւնք՝ որոց գիտիցեն զճաշակ շնորհի անպաճոյճն բնութեան:

Հովիւք անդանօր սրնգօքն ևեթ իւրեանց գտան բարեբախտագոյնք քան զթագաւորս. և բերկրութիւնք անխառն 'ի տրտմութեանց, փա-խըստականք յանկեձեղուն ապարանից, դիմէին համերամ 'ի հիւղս նոցա. խաղք և ծիծաղք և հրճուանք զհետ երթային ամենայն ուրեք հո-վուհեացն անմեղաց: Հանապազօր տօնք էին նոցա. ղայլայլիկք ևեթ թռչնոց լսելի լինէին առ նոսա, և քաղցրաշունչ զեփիւռք՝ յորոց ծառոց խաղացեալք, և խոխոջք վճիտ կոհակաց 'ի ժայ-ռից հոսեալք, և նուագք հովուաց զհետ երթե-լոց Ապողոնի 'ի Մուսայից 'ի նոսա ազդեալք: Նա ինքն մարզէր զնոսա յասպարիզի 'ի մրցանակ,

նաւապարքն, ամենայն ինչ անդ ախորժ էր և գե-
ղածիծաղ, և 'ի բնակչացն զգօնութենէ թուէր
երկիրն 'ի համբոյր ածեալ:

Ժողովէաք յաճախ մատուցանել զոհս 'ի մե-
հենին Ապողոնի, ուր Տերմոսիր սպասաւորէրն
նորա. և գային անդր հովիւք պսակեալք սարդե-
նեօք 'ի պատիւ դիցն. գային անդր և հովուհիք
ծաղկապսակք պարպատողք, ընթերելով 'ի գլուխս իւ-
րեանց զպահանմունս 'ի կողովս: Այլ յետ զոհիցն
առնէաք խրախճանս գեղջկայինս, ուր համադամք
էին կիթք այծիցն մերոց և մաքեաց՝ զորս մեզէն
կթէաք, և միրգ դալար՝ զորս ձեռօք մերովք քա-
ղէաք, արմաւ և թուզ և խաղող: Նստարանք էին
մեզ դալարիք, և ծառք սաղարթախիտք առնէին
մեզ հովանի ախորժ քան զոսկեզօծ յարկս ար-
քունեաց:

Բայց անուանի եւս յոյժ եղէ առ հովիւս 'ի
յարձակել սովալլուկ առիւծու 'ի խաշինս իմ: Այն
ինչ սկսանէր նա նախճիրս գործել զժնդակս,
ցուպ 'ի ձեռին խիզախեցի ընդդէմ նորա. քրտա-
մնեալ ղիզացան բաշք առիւծուն, ցուցանէր ինձ
զժանիսն և զճիրանս, բանայր զկոկորդն պա-
քեալ բոցաշունչ, աչք նորա արիւնոտուշա և հրա-
ցայտ, և ծեծէր նա զքամակ իւր ձանգուկ ձե-
տոյն: Նուան հարի փլանեմէ, և վերա եզիպ-
տացի՝ զոր 'ի ձև հովուաց երկրին զգեցեալ էի՝
պահպանեաց զիս 'ի ժանեաց գազանին. երիցս
զգետնեցի զնա, երիցս 'ի վեր վաղեաց. և 'ի մռնչ-

Այս ասաց Մենտոր գութ և գորով առարեալ ընդ իս, խորհուրդ կալաւ արձակել զիս յԻթակէ նաւուք և զօրօք առ 'ի փրկել զՊենելոպէ 'ի սի-րեխացն: Նաւն և պատրաստ կայր նաւաստեօք և մնայր մեզ. այլ ես առաջեալ կայի ընդ դէպս բախ-տին՝ թէ որպէս յանկարծ զոր կործանեսցէ յապա-ցանէ. և զփոյթ առնեալ յուսոյն՝ զի և Ողիսեայ յետ երկարատև վշտակրութեանն հասցէ դառնալ յաթոռ իւր: Խորհէի դարձեալ, զի մարթէր ինձ և զՄենտոր անդրէն ածանել, թէպէտ և սահեալ նժդեհութեանն 'ի գաւառս անծանօթս Եթովպիոյ:

Մ՛ինչդեռ յամէի 'ի խորհուրդս յայսոսիկ՝ խնդրելով զդոյզ ինչ առնուլ զմանանէ, եհաս փախ-ձանն Մենտորի՝ որ անցեալ իսկ էր զառաքօք, և մահ նորա ընկլոյզ զիս անդրէն 'ի վիշտս: Ե-գիպտոս առ հասարակ կայր 'ի սուգ անմխիթար վասն կորստեանն. ազգ գաւառն իւրաքանչիւր հա-մարէր կորուսեալ զքերմաւորն զիւր սիրելի զպաշտպան և զհայր: Մինչ ձեռս յերկինս տա-րածեալ՝ աղաղակէին. Չէր երբէք լեալ յԵգիպ-տոս թագաւոր այսպիսի, և ոչ լիցի երբէք: Ո՛վ դիք, չէր իսկ պարտ պարգևել զնա մարդկան, և կամ յետ պարգևելն ոչ ևս բառնալ զնա 'ի նոցա-նէ. ընդէ՞ր իսկ ոչ մեռանեմք զարև յետ մեռանելոյ մեծին Մենտորի: Իսկ մանկունքն աղաղակէր. Ճ՝ ... Եդաւ յոյս Եգիպտոսի. երանի հարցն մերոց՝ որ ընդ այսպիսի թագաւորաւ ձգեցին զկեանս,

իսկ մեք առ 'ի սղալ եւեթ զկարգաւոր նորա ծանուցաք զնոսա ։ Ոնոյն եւ սպասաւորք թագաւորին որքս առեալ բայլին զգիշեր եւ զցերեկ ։ Այլ 'ի հանդիսս յաղարկաւորութեան նորա զաւուրս քառասուն զամենայնազգն դիմէր ժողովելոյ 'ի սար աշխարհաց ։ ամենայն որք ցանկայր միւս անդամ տեսանել զկերպարան նորա, ամենայն որք ցանկայր ունել առ իւր զպատկեր նորին ։ եւ բազումք են այսպիսի էին, որք ցանկային լինել ընդ նմա թաղակից ։

Յաճախեաց եւ ես զատուգ կարգաւորեան նորա Ասկ-քանզի որդի նորին Հերակլեայ, որում ոչ փոյթ լինէր զգաստութեանց, ոչ վարել առաքինեաց, եւ ոչ ակն փառաց ։ այլ հայրենի մեծութեանցն զեղծեալ՝ անարժան ամենեքին թագաւորութեան գտանէր ։ Անեալ 'ի զեղխութեան եւ 'ի զազրանաբարոյ զառողութեան, առ հանապազ էր նա զինեալ՝ 'ի ծառայութիւն իւր հանապազորդեալ զնոսա անեղծեալ, եւ զերբագուցին քան զնոսա զանձնն մխճակեալ ընթացին ։ Ախտիցն եւեթ սպասաւոր 'ի ստածունն, 'ի վատնել զզանձս անձնաս մթերեալս 'ի խնայութենէ հօրն, 'ի հայրատահարել զժողվուրդս եւ 'ի ծծել զարիւն տառապելոց, անարգեալ փաղաքուշ խորամանգ մանկութեան՝ որ շուրջ պատեալ կային զնովաւ, եւ մերժելով առ հանուր հանօք 'ի բաց զծերականսն խոհականն՝ զանարգել խորհրդականկից հօր իւրոյ ։ Ջերմ խնն էր նա, եւ ոչ թագաւոր ։ Հեծէր ընդ այն Աղեքսանդրոս առ հասարակ ։ եւ թէպէտ եղխպատացիք վասն սիրոյ հօրն հանդէ-

ընէին վատ և անգութ գնացից որդւոյն, այլ նա ինքն իւրովի դիմէր ՚ի կորուստ, և չէր մարթ թագաւորի այնպիսւոյ անարժանի կալ մնալ ընդ երկար ՚ի գահու:

Ոչ ևս էր ինձ ախորժակութիւն դառնալոյ յԻթակէ. այլ կայի մնայի ՚ի ծովեզերեայ աշտարակի ուրեք մօտ ՚ի Պելուսիոն [12], ուստի սպասէր մեզ մտանել ՚ի նաւ՝ եթէ չէր Մեսոստրի զրաւեալ ՚ի կենաց: Բայց Մետոփեայ ճարտար հնարիւք ճողոպրեալ ՚ի բանտէ, և իշխանութեան հասեալ անդրէն ՚ի դրան նորոյ արքային, արգել փակեաց զիս յաշտարակի անդ, փոխանակ զի յաչաց ել վասն իմ Մեսոստրի: Կայի զտիւ և զգիշեր ՚ի խոր տրտմութեան, և որ ինչ Տերմոսիրեայ գուշակեալն էր, և որ ինչ լուեալ իմ ՚ի յայրին, թուէին ինձ անուրջք առ հասարակ. և անդունդք դառնութեան վշտաց պաշարէին զիս: Տեսանէի զալիս՝ որ գային բաղխէին զստորոտս աշտարակին, յորում կայի բանտարգել. ՚ի զնին կայի յաճախ մրրկածուփ նաւաց, որոց հասանէր վտանգ կոծելոյ ընդ ժայռս հիմանց աշտարակին. և ոչ աւաղէի զորեարն՝ որոց սպառնայր կորուստ, այլ մանաւանդ նախանձեալ ընդ բախտ նոցա՝ ասէի ընդ միտս. Ահա ընդ հուպ վճարեսցեն դոքա զաղէտս կենաց և կամ հասցեն ՚ի հայրենիս. իսկ ինձ, աւա՜ղ, չիք և ոչ միում յուսալ:

Եւ մինչ ընդունայն մաշէի ՚ի հոգս, ահա կայմք անտառախիտք հողմուղոյց առագաստիւք ծած-

կէին զծով, և 'ի բաղխումն անթիւ թիակաց փրփ‐րէին ալիք : Պոռչիւն խառնաձայն լսելի լինէր ամենուստ · կէսք յեգիպտացւոց ահաբեկք ըն‐թանային 'ի զէն առ ծովեզերբքն , այլք թուէին գնալ ընդ առաջ նաւատորմին՝ որ գայր հասանէր : Ծանեայ արդ զի կէսք 'ի նաւացն եկաւորաց էին 'ի Փիւնիկեցւոց , այլք 'ի Կիպրոսէ · զի յարկածս անդ զփորձ առեալ , ընդելանային խրոց նաւարկու‐թեան : Անկապատակեալ թուէին ինձ եգիպտա‐ցիք , և դիւրաւ էր գուշակել զխստապահանջութիւն ժողովրդեանն և զամբոխ քաղաքականն մարդոյ դրդեալ 'ի բռնակալութենէ անմիտ արքային : Տեսի խոկ 'ի դիտանոցէն զնախանձոտ մարդոյն :

Որոց զայլազգիսն կոչեցեալ էր յօգնութիւն եգիպտացիքն , խեղդեցեալ զնոսա յերկիր , դիմեցին ընդ նոսա 'ի վերայ հանեցգեացն՝ որոց Բոկքորն խնդրէին զօրավարէր : Տեսանէի ես զնա , զի խոսա‐խոսէր զիւրան զհետ իւր , և թուէր մեզ այլ Մերէս [13] · վասնզի առեանց խաղային զնովաւ , և անիւք կառաց նորա ներկեալք 'ի փոշոտանս և թանձրամած յարիւն թուխ՝ հազիւ զնացին 'ի գիլ ընդ զբաղհանս դիականց կոտորելոց : Էր նա պատանի առոյգ և կորովի , սէգ և բարձրադի‐տակ · զայրոյթ և յուսահատութիւն յաչս իւր բո‐րբոքեալ , որպէս նժոյգ սօս կարծրերախ՝ դիմագրա‐ւէր արիութեամբն , այլ զքաջութիւն նորա ոչ սանձահարէր խոհեմութիւն : Զգիտէր նա ոչ ելլի աղագս գտանել , ոչ յայտնի ինչ հրաման

տալ, ոչ զատաւորս ունել զմտատանջս վասանդաց, և ոչ յանձնանձնել զարևորն՝ որում առաւելապէսն կարօտէր ։ Այր ոչ եթէ անհամեմատ լինէր ոք էր, զի համեմատ քաջութեանն էին նոքա մաքր. այլ զի չէր նա խրատեալ յարկածից բախտին, զերծե-ցինքն նորա բնաւորութիւն 'ի չարաթոյն շողոմից զատախազակացն ապականեալ էր ։ Անփորձու-թեանն իշխանութեանն և բարեբախտութեան կարծէր՝ զի պարտ էր ամենայնի տեղի տալ առա-ջի բուռն ըղձից նորա, և ընդ դոյզն ինչ կշտինն բորբոքեալ 'ի զայրոյթ՝ անզգայէր այնուհետև իբր յայլոց խելս լեալ ։ Կատաղի գոռոզութեանն թուէր նա որպէս գազան անհնի, բարուցն 'ի բնէ բուռն բարուցն և աղջախոհ մտացն որացեալ 'ի նմանէ 'ի բաց. հասարակագոյնք 'ի ծառայիցն 'ի փախուստ դառնային, և ողոքիչք և եթ ախտից նորա էին նմա սիրելիք ։ Այսն որոյ ընդդիմ խա-կարէս օգտին հանապազ դորոէր, և բարեկէր մարդկան ատելի զիւր անձն գնացեան առնէր ։

Նորա ձիրս ժուժկալեալ քաջութեանն ընդ-դէմ բազմամբոխ թշնամեացն, այլ ընկճեցաւ. տեսի ես զմահ նորա, զեզարդն մեայ 'ի փիւնիկեցի զօրականէն եւ թափանցեալ ընդ սիրտ նորա, ա-տեան սանձք 'ի ձեռացն, և գլորեցաւ անկաւ 'ի կառաց անտի առ աթոռ երիվարացն ։ Այլ կլորա-ցոյ ուրումն զինուորի զլխատեալ զնա, և բուռն հարեալ զհերացն, ցուցանէր զկառաւոյն նորա ա-խոյանաձև յաղթական բանակին ։

Սպառածին այն արիւնաթաթաւ երեւութացի ինձ զամենայն աւուրս կենաց իմոց, աչք նորա չէ-ջեալ կափուցեալ, դէմք դեղնեալ այլանդակեալ, բերան կիսահագագ՝ աւարտել իմն զսկսեալն կամելով յօդս, և կերպարան սէգ և սպառնական՝ զոր և մահուն չէր կարացեալ առնել նկուն: Տե-սից միշտ զպատկերն զայն ակներև. և եթէ եր-բէք տացեն ինձ դիք թագաւորել, աղիողորմ օրի-նակաւն խրատեալ՝ յիշեցից անմոռաց, զի ոչ է արժանի հրամայելոյ և ոչ բարեբաղդ 'ի գահու թագաւոր՝ որ ոչ հպատակէ բանին: Աւա՜ղ թշուառութեան այնորիկ, որ սահմանեալ 'ի յար-դարել զբարեկենդանութիւն ժողովրդեան՝ առ 'ի թշուառութիւն ևեթ նոցին վարեսցի իշխա-նութեամբն:



# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ

## ԵՐԿՐՈՐԴԻ ԳՐՈՑՆ

1 Բանզի կեկրոփս և կադմոս և այլք յեգիպտացւոց օ- րէնս ետուն Յունաց։

2 Հերակլէս մի 'ի հզօրագոյն դիւցազանցն Յունաց, որդի Դիոսի և Ալկմենայ, ծնաւ 'ի Թեբէ քաղաք Բէովտիոյ, և գեր- յորդանս անդ հեղձոյց օձս երկուս՝ զորս Հերայի դիցուհւոյ յղեալ էր առ 'ի մահ նորին։ Սորա քաջութիւնք պատ- մին, յորս և առաւելեալքն երկոտասան նահատակութիւնք։ Դէանիրա մի 'ի կանանց սորա նախանձեալ ընդ Յոլայ դստեր Եւ- րիթոսի, զի սիրէր զնա Հերակլէս, յղեաց առ նա 'ի վրէժ զթու- նաւոր պատմուճան Նեսոսի յուշկապարկի, որով հարեալ Յոլա 'ի կատաղութիւն՝ չարամահ եղև։ Դիւցազնս այս բազ- մայաղթ հարեալ 'ի գեղ Ոմփալեայ դշխոյին լիւդացւոց, փոխան ահարկու լախտին՝ որով յաղթանակէրն՝ ձեռն էարկ յիլ և յաղեկատ, և 'ի ձև կանացի եմուտ յաղախնութիւն տիկնոջն, մանել ընդ այլ նաժիշտս նորա զասր։

3 Աքիլլէս որդի Պելեայ արքային Թեսաղիայ և Թետեայ դստեր Ներէոսի, Թոռն Էակեայ։ Զսա 'ի տղայութեան ընկղմեաց մայր իւր երիցս 'ի Ստիւքս գետ դժոխոց, որով ա- ռասպելեն զնա լեալ անխոցելի բաց 'ի կրնկանէ ոտիցն՝ ուստի կալեալ էր մայր նորա յընկղմելն։ Դաստիարակ նորա Քիրոն յուշկապարիկ գիտացեալ 'ի պատգամաց զօրհաս նորա 'ի տրովական մարտին, Թաքոյց զնա 'ի Սկիրա կղզւոջ յարքունիս Լիւկոմեդեայ արքայի, խառնեալ զնա 'ի ձև կանացի ընդ դըս- տերս արքային։ Բայց հնարիւք Ոդիսեայ 'ի յայտ եկեալ, ստիպեցաւ գնալ 'ի պաշարումն Տրովադայ. ուստի Թէպէտ և մեկնեալ 'ի բաց՝ առ գժդմնութեանն ընդ Ագամեմնոնայ, սա- կայն դարձաւ անդրէն միւսանգամ 'ի լուր անկման սիրելւոյն իւրոյ Պատրոկլի։ Եւ սպանաւ նա 'ի Պարեայ յեղբօրէ Հեկ- տորի՝ զոր սպանեալն էր։

4 Ովասիս անապատ սոսկալի, ուր աքսորեցաւ և մեռաւ Նեստոր հերձուածապետ։

5 Ապողոն որդի Արամազդայ և Լետովայ, եղբայր Անահ- տայ, ծնեալ 'ի Դելոս կղզի։ Սա զԿիկղոպայսն դարբինս Արա-

մազդայ սպան վասն դարձնելոյ նոցա զշանթն՝ որով Արամազդ հար զԱսկլեպիոս զորդի իւր։ Վասն որոյ մերժեալ ընկեցեալ յերկնից 'ի յերկիր, զամս ինն արածէր զխաշինս Ադմետայ արքային Թեսաղացւոց։ Սա ինքն Ապողոն համարի գտակ բժշկութեան, երաժշտութեան, քերթութեան և հմայից. էր նա և կորովի աղեղնաւոր։ Կոչի յաճախ Փէբոս, զի էր նորա 'ի Դեղփիս մեհեան հոյակապ պատգամատեղի։

6 Որֆէոս, տե՛ս 'ի ծան 16. Գիրք Ա։

7 Լինոս որդի Ապողոնի գտիչ քնարերգութեան, երաժիշտ քաջ, վարժապետ իսկ լեալ Որփէոսի։

8 Մարդապայք Նոխազոտանք կամ այծամարդք. առասպելեալ հրէշք միջով չափ մարդակերպք եղջերաւորք անտառաբնակք. զորս հեթանոսք ընդ կիսաստուածս դասէին։

9 Եթնա լեառն հրաբուղխ 'ի Սիկիլիա, ուր ըստ քերթողաց ամպահարեալ սատակեաց Արամազդ զՏիտանեանս։ Ընդ ստորև լերամբ առասպելեն զդարբնոց Հեփեստեայ, ուր Կիկլոպայքն դարբնէին։

10 Հեփեստոս որդի Արամազդայ և Հերայ, որք վասն տգեղութեան նորա ընկեցին զնա յերկնից, որով և կաղացեալ զնա առասպելեն։ Համարի սա ստեղծիչ հրոյ և դարբին դից։

11 Ողիմպոս կամ ըստ մեզ Դիւցընկեց լեառն 'ի մէջ սահմանաց Թեսալիոյ և Մակեդոնիոյ, ուր ըստ առասպելաց ոչ հողմ, ոչ ամպրոպք, ոչ բուք և ձիւնաբերք են, և ոչ Թռիչք հաւուց հասանեն անդր։ Վասն որոյ և այլաբանաբար նշանակէ զերկինս բնակարան դից։

12 Պելուսիոն քաղաք Եգիպտոսի զծովեզերբ միջերկրականին յարևելեան բերան Նեղոսի, որ արդ կոչի Պելուզիոն։

13 Արէս դիք պատերազմի, որդի Հերայ։



# ՆԱԽԱԴՐՈՒԹԻՒՆ

Դարձեալ վերստին շարայարէ Տելեմաք պատմութիւնն, զի յաջորդին Բոկքորի գերեդարձ առնելով Տիւրացւոց առ հասարակ՝ արձակի և ինքն 'ի Տիւրոս նաւաւն Նարբաղայ, որ հրամանատարն էր նաւատորմին Տիւրացւոց։ Զի պատմէ նմա Նարբաղ զբռնաւորութիւն արքային իւրեանց Պիգմալիոնի, և զանողորմ ագահութիւն նորա՝ յորմէ վտանգն էր, և տայ նմա տեղեկութիւն զկարգաց վաճառականութեան Տիւրոսի։ Զի իբրև հանդերձեալն էր մտանել 'ի նաւ մի կիպրացի, և անցանել 'ի Կիպրոսէ յԻթակէ, ազդ լեալ Պիգմալիոնի զի էր նա եկ օտար՝ կամէր ձերբակալ առնել զնա. և զի 'ի վտանգէ կորստեան զերծոյց զնա Աստարբէ հոմանի բռնաւորին, առ 'ի մտանել 'ի մահ պատանի զոմն առ վրէժ քինու արհամարհանաց։

# ԱՐԿԱԾՔ ՏԵԼԵՄԱՔԵԱՅ



## ԳԻՐՔ ԵՐՐՈՐԴ

Ի լսել իմաստութեան բանիցն Տելեմաքայ յակձիւս լեալ Կալիփսէ, զմայլէր մանաւանդ ընդ անկեղծութիւն նորա 'ի պատմել իւրովի զյանցանսն անզգուշութեան և զանսաստութեան խրատուց իմաստնոյն Մենտորի: Սքանչէր ազնուականութիւն իմն 'ի մանկանն, և չքնաղ վեհանձնութիւն՝ որով ամբաստանէրն զանձն, և թուէր քաջ խրատեալ սխալանօքն, և զգաստացեալ նորօք 'ի խոհականութիւն և 'ի չափոյն: Այս ասէ. Յառաջ մատո զբանսդ, սիրեցեալդ իմ Տելեմաքէ, ցանկամ լսել թէ որպէս յաջողեցին քեզ ելք յԵգիպտոսէ, և ուր իմաստնոյն հանդիպեցար անդրէն Մենտորի՝ ընդ որոյ յերաւի վշտանայիր ընդ կորուստ:

Եւ այսպէս սկսաւ անդրէն պատմել Տելեմաք. Նաւաքինագոյնքն Եգիպտացւոց և տիրասէրք տկարագոյնք էին. և 'ի մտանել Թագաւորին՝

հարկ եղև նոցա տեղի տալ այլոց, և Թագաւո-
րեաց Տերմոսիս։ Մեկնեցան գնացին փիւնի-
կեցիք ընդ զօրս Սիպրացիս՝ կռեալ դաշինս ընդ
նորոյ արքային. և դարձոյց նա զամենայն գե-
րեալս ՚ի նոցանէ, ընդ որս և զիս։ Ելի յաշտա-
րակէն, և մտի ընդ այլս ՚ի նաւ. և սկսաւ ար-
ծարծանել անդրէն յոյս ՚ի յիս։ Հողմն աջողակ
ուռոյց զառագաստս մեր, հերձուին Թևճակք
զփրփրադէզ ալիս, լայնածաւալ ծածկէր ծով ՚ի
լաստափայտից, զաղաղակ ցնծութեան հարկա-
նէին նաւաստիք, ծովեզերք եգիպտականք խոյս
տային ՚ի մէնջ, բլուրք և լերինք դաշտանային տա-
կաւ, և ոչ ևս ինչ երևէր բայց երկինք և ծով։ Արե-
գակն ծայրակարմիր Թուէր ՚ի ջուրց անտի ծա-
գել բոցանշոյլ. և ՚ի ճառագայթից նորա փայլէին
ոսկեճաճանչ ծագք լերանց՝ զորս տակաւին նշմա-
րէաք ընդ աղօտ ՚ի բացէ, և երկինք կապուտակ
խոստանային մեզ նաւարկութիւն բարեբաստիկ։

Այլ ոք ՚ի փիւնիկեցւոց անտի, ընդ որս արձա-
կեցայ իբր համաշխարհիկ, ճանաչէր զիս։ Նար-
բալ նաւապետ մեր եհարց զանուն իմ և զհայ-
րենիս, և ասէ. Յորմէ քաղաքէ Փիւնիկիոյ ես
դու։ Ետու պատասխանի՝ Թէ չեմ ես փիւնի-
կեցի, այլ Եգիպտացիք կալան զիս ՚ի նաւ մի փիւ-
նիկեցի, և եղէ յԵգիպտոս ՚ի գերութեան՝ հա-
մարեալ ընդ փիւնիկեցիս. տառապեցայ ընդ եր-
կար իբր փիւնիկեցի, և իբր փիւնիկեցի գտի զա-
զատութիւն։ Նարբալ ասէ. Յորմէ ապա յաշ-

խարհէ ես դու։ Ասեմ. Յաղադայ. որդի եմ ես Ողիսեայ արքային Իթակացւոց Տելեմաք, գեր- համբաւելոյն 'ի Թագաւորս՝ որք պաշարեցին զՏրովադա։ Ոչ շնորհեցաւ նմա 'ի դէպ դառնալ 'ի հայրենիս իւր, և 'ի զուր 'ի խնդիր նորին տար- աշխարհիկ շրջիմ. հանգունատիպ նմին հալա- ծէ և զիս բախտին։ Հէք և Թշուառ ոչ առ այլ ինչ հառաչեմ, բայց առ հայրենիս իմև առ հայր։

Իսկ հիացեալ կայր ընդ իս ՙՆարբալ, չգիտեմ զինչ 'ի յիս տեսանելով երկնաձիր պարգև՝ օտար 'ի հասարակաստեղծ մարդկանէ։ Այր նա անկեղծ և ողորմած. և 'ի գութ հարեալ ընդ աղէտս իմ, խօսեցաւ ընդ իս մտերմութեամբ, 'ի դիցն ինձ ազդեալ փրկել զիս յահագին վտանգէն, և ասէ. Ոչ ինչ երկբայիմ ընդ բանս քո, Տելեմաք, և ոչ երկբայել կարող եմ. վիշտ և առաքինութիւն դրոշմեալ 'ի դէմս քո չնորհեն ինձ կասկածել զքէն։ Տեսանեմ զի դիք, յորոց եղէ միշտ երկիւղած, սիրեն զքեզ, և կամին իսկ զի և ես զքեզ սիրե- ցից հայրաբար։ Խրատ տամ քեզ 'ի փրկութիւն, ոչ այլ ինչ խնդրելով փոխարէն՝ բայց խորհրդա- պահ լռութիւն։

Պատասխանի ետու և ասեմ. Մի՛ ինչ զանգի- տեր, ոչ ինչ դժուարին է ինձ լռել զգաղտնիս. մանուկ դեռ ես գոլով, ծերացեալ եմ 'ի խորհր- դապահութիւն, ևս առաւել առ 'ի չմատնել և ոչ իւիք պատճառանօք զգաղտնիս այլոյ։ ՙՆար- բալ ասէ. Իսկ ո՛րպէս 'ի սկզբնաւորս տերոց

սովորեցար յայդ. Իւ, ասէ նա, հաստ եղեր առաքինութեանդ՝ որ հիմն է զգօն կենաց, և առանց այնր չիք ինչ յընդաբոյս ձրից պիտանացու: Իսկ ես ասեմ. Յորժամ Ոդիսեւս չու առնէր 'ի պաշարումն Տրովադայ, առեալ զիս 'ի գիրկս իւր և 'ի վերայ ծնգացն հանգուցեալ, որպէս ապա պատմէին ինձ տեսողք, համբուրեաց զիս գորովանօք. և թէպէտ չև ես հաստ լինէի բանիցն, ասաց ցիս. Որդեակ իմ, եթէ երբէք համդերձեալ իցես զառածանել 'ի հրապոյրս և խոտորել յառաքինութենէ, մի տացեն ինձ դիք տեսանել զքեզ միւսանգամ, լաւ իցէ ինձ թէ աստաստին հատցեն Պարկայք՝ զկենաց քոց թել որպէս արտահունձ 'ի սայր գերանդւոյն զծաղիկ նորափթիթ, և առաջի աչաց մօր քո և իմոց յօշոտեսցեն զքեզ թշնամիք: Այս դարձեալ առ բարեկամ սըն ասէ. Զքեզ զորդեակն իմ սիրելի յանձն առնեմ, խնամել զմանկութիւն սորա. եթէ սիրէք զիս, պահեցէք զսա 'ի հրապուրանաց մարդահաճութեան, ուսուցէք սմա յաղթել անձին՝ մինչդեռ դիւրադարձն է յուղղութիւն որպէս թուփ մատաղատունկ. և մանաւանդ զամենայն ջան 'ի գործ արկեալ, յարդարեսջիք զսա արդար, բարերար, անկեղծ, և հաւատարիմ խորհրդապահ: Որ ստէն՝ անարժան է ընդ մարդկան գոլ 'ի համարի, և որ չգիտէն լռել՝ անարժան է իշխելոյ:

Ահա պատմեմ քեզ ճշգրտիւ որ ինչ 'ի հոգաբարձուացն իմոց յաճախ յունկն իմ կրկնեալ

տարրացեալ են 'ի սիրտ իմ, և սաստիկ 'ի մտի իմում յեղյեղեմ։ Բարեկամք հօր իմոյ փառաքաջ մարզեցին զիս 'ի խորհրդապահութիւն. անդէն 'ի տխս տղայութեան յայտնէին ինձ զվիշտս իւրեանց ընդ վտանգ մօրն իմոյ, որում ժպիրհէք յաղունք տափայինն. և անդստին առ այր խոհական և անկեղծակարծ ունելով զիս, ձայնս ընդ իս զաղտ զկարևորագոյն իրաց արկանէին, պատմելով որ ինչ ընդդէմ սիղեխացն խորհուրդ կալեալ էր։ Զարմանայի ընդ վստահել նոցա յիս, և համարէի զիս խոհեմացեալ. ոչ երբէք զեղծայ վստահութեանն նոցին, ոչ երբէք մատն եղէ չրթամբք և դոյզն ինչ գաղտնեաց։ Բազումն ջանահնար եղեն դարմանականք մօր իմոյ որսալ ինչ 'ի բերանոյ իմմէ, յուսացեալք զի տղայոյ տեսեալ ինչ կարևոր կամ լուեալ՝ չգիտիցէ լռել. այլ գիտէի ես քաջ կշռել նոցա զպատասխանին առանց ստելոյ, և առանց հանելոյ նոցա 'ի վեր որ ինչ չէր արժան։

Յայնժամ ասէ ցիս Վարդան. Ահա տեսանես դու զզօրութիւն փիւնիկեցւոց՝ որք ամենայն ազգաց դղրացեաց ահ արկանեն անհամար բազմութեամբ նաւացն, և են փարթամագոյնք քան զամենայն բարգաւաճեալ ազգս վաճառականութեամբն իւրեանց մինչև ցարձանս Հերակլեայ[3]։ Հզօր արքայն Սեսոստր, ապիկար 'ի նուաճել զնոսա ընդ ծով, հազիւ ընդ ցամաք կարաց նոցա յաղթել յոգնախումբ բանակօքն՝ որովք զարևելս առ հասարակ կալաւ, և զհարկ՝ զոր 'ի

վերայ մեր արկ՝ 'ի բազում ամաց հետէ ոչ հատուցաք։ Չէր մարթ մեծափարթամ և մեծազօր ազգին համդուրժել ընդ լծով ծառայութեանն, և ելաք յազատութիւն. կանխեալ մահուն Սեսոստրի, չեթող նմա տանել 'ի գլուխ զպատերազմն ընդդէմ մեր։ Խիթալի իսկ էր մեզ յիմաստութենէ նորա առաւել քան 'ի զօրութենէ, այլ 'ի ժառանգել որդւոյ նորա զհայրենի զօրութիւնն առանց իմաստութեան, ոչ ևս գոյր մեզ երկիւղ։ Եգիպտացիք, փոխանակ զէն 'ի ձեռին մտանելոյ յաշխարհ մեր առ 'ի նուաճել զմեզ անդրէն, կարօտ եղեն առ 'ի զերծանել 'ի ձեռանէ անօրէն և անագորոյն արքային իւրեանց օգնականութեամբս մերով։ Եղաք նոցա ազատարարք, և ևս քան զևս յաճախեցին փառք փիւնիկեցւոց՝ յաւելեալք յազատութիւն և 'ի ճոխութիւն։

Այլ մինչ դեռ զայլս ազատէաք, մեք ինքնին մատնեցաք 'ի գերութիւն։ Օ՜ զգոյշ լեր, Տելեմաք, զգոյշ լեր չանկանել 'ի ձեռս Պիգմալեայ՝ մերոյս թագաւորի. թաթաւեաց նա զանողորմ ձեռս իւր յարիւն Սիքէոսի առն Դիդեի [5] քեռ իւրոյ։ Դիդէ վառեալ 'ի բոց վրէժխնդրութեան փախեաւ 'ի Ծուրայ բազմութեամբ նաւաց. և որք միանգամ առաքինութեան և ազատութեան էին սիրողք, առաւելագոյնք 'ի նոցանէ չոգան զհետ նորա. և կառոյց նա 'ի ծովեզերս Ափրիկեայ զԿարքեդոն [6] քաղաք հրաշակերտ։ Իսկ

Պիգմալիոն տուայտեալ անյագ ընչաքաղցու-թեամբ, յաղեստից յաղէտս որ ըստ օրէ զատուա-ծանի՝ ատելի լեալ ժողովրդեան։ Ոճիր է 'ի Ծուր ժառանգել ինչս. ագահութիւն խէթ և կասկածանս 'ի միտս արկանէ անգութ բռնաւո-րին. հալածէ նա զընչաւէտս, և երկնչի յաղքա-տաց։ Դարձեալ և դժնեագոյն ոճիր՝ առաքինու-թիւն. զի անհնար թուի բռնաւորին՝ համբերել առաքինեաց ընդ անիրաւութիւնս իւր և ընդ ապիրատութիւնս, և դառնացեալ զգրգռի ընդ-դէմ առաքինութեան՝ որ դատապարտ առնէ զնա։ Յուզի տագնապի յամենայնէ, ամենայն ինչ կեղեքէ զմիտս նորա, զարհուրի 'ի ստուերէ իւր-մէ, քուն հատեալ է յաչաց նորա զցայգ և զցե-րեկ. և առ 'ի պատուհաս յաճախեն նմա դիք զգանձս, յորս չիշխէ վայելել։ Որով իւիք երջան-կանալն խնդրէ, նովին իսկ վրէպ յերջանկութենէ գտանի. վշտանայ ընդ տուրսն, երկնչի 'ի կորու-սանելոյ զոր ժառանգէն, և ակն ցանկութեամբ ստանալոյ։

Դուն ուրեք երևի նա արտաքոյ, նստի տխուր միայնակ լքեալ 'ի խորս արքունեացն, բարեկա-մաց իսկ նորա ոչ իշխելով մատչել առ նա՝ թէ գուցէ լիցին կասկածելի։ Գունդ ահեղ սուսերա-մերկ տիգաւոր պահակէ համապազ զարքու-նեօքն։ Ինքն 'ի ներքս անդ ամրափակեալ կայ ուր սենեակք երեսուն են հաղորդականք միմեանց դրամբք երկաթեօք զորս նիգք աղխեն վեցեակք

զիւրաքանչիւր. և չէ յայտ յորում 'ի նոցանէ նմջիցէ, և իբր հաւաստի պատմի ոչ երբէք զաւուրս երկու անընդմէջ գիշերել նմա 'ի միում՝ առ ահի սրախողխող 'ի թշնամեաց լինելոյ։ Անծանօթ են նմա քաղցր բերկրութիւնք, և քաղցրագոյն քան զայնոսիկ բարեկամութիւն. եթէ զուրախութենէ լիցին բանք, մերժեալ համարի զայն յիւրմէ և անասպնջական 'ի սիրտ իւր։ Աչք նորա խորասոյզք հրացայտք դժնեայք և արիւնռուշտք յեղյեղեալ յածին շուրջանակի. 'ի սին սօսաւիւն արհաւրօք ականջէ, մահատիպ, նիհար, և 'ի հօգս տխուրս դէմք նորա հանապազ խորշոմեալ։ Լուռ կայ, հառաչէ, և սրտառուչ յոգւոց հանէ, չկարացեալ ծածկել զխիղճ մտացն՝ որ զաղխս նորա կեղեքեն։ Անախորժ են նմա համաղաւք. որդիք նորա փոխանակ յուսոյ ազդեն 'ի նա սոսկումն, զի թշնամիս իւր զնոսա ոխերիմս արար. չիք կենաց նորա վայրկեան մի աներկեան, և 'ի ճապաղխս արեան այնոցիկ՝ յորոց կասկածէ՝ յերկարաձգէ զկեանս իւր։ Չառնու անմիտն 'ի միտ՝ զի անզգութիւն, յոր ապաւինի, նոյն զնա կորուսցէ. յընտանեաց նորա ոք, հանգոյն նմին կասկածաւոր, փութասցի փրկել զաշխարհ 'ի ձեռանէ մարդակերպ գազանին։ Երկիւղած եմ 'ի դից, և թագաւորի՝ զոր կացուցանեն՝ եղէց հաւատարիմ, թէպէտ և դժկամակ. ընտրեցից մեռանել 'ի նմանէ քան մատնել զնա 'ի մահ, կամ վերջանալ իսկ 'ի պաշտպանելոյ զնա։ Բայց դու

Տելեմաք, զգոյշ լեր չյայտնել նմա զի որդի ես Ոդիսեայ. 'ի գերութեան կալցի նա զքեզ, յուսով բազմագանձ փրկանաց 'ի հօրէ քումմէ ընդունելոյ՝ 'ի դառնալ նորա յԻթակէ, առ 'ի գրաւաթափ առնել զքեզ:

Այլ իբրև հասաք մեք 'ի Տիւրոս, արարի ըստ խրատուցն Նարբալայ, և ծանեայ զի ճշմարիտ էր որ ինչ պատմեացն զՊիգմաղեայ. և անհաս թուէր մտացս թէ որպէս ոք 'ի թշուառութիւն այնպիսի կարող էր նոյնպէս անձամբ զանձն զառածանել: Ապշեալ ընդ սոսկալի և ընդ նորանշան տեսարանն, ասէի ընդ միտս. Ահա սա բարեբաստութեան լեալ հետամուտ, համարէր մեծութեամբ գանձուց և ինքնիշխան տէրութեամբ հասանել յայն. ժառանգէ արդ որոց ցանկայրն, սակայն նովիմբ իսկ գանձիւքն և իշխանութեամբ գտանի թշուառ: Այլ թէ էր նա հովիւ, որպէս էի ես վայրենի մի յառաջ, գոյր բարեբաստիկ որպէս զիս. վայելէր յանմեղ բերկրանս գեղջկից, և վայելէր անխիղճ և աներկիւղ 'ի սրոյ և 'ի թունից: Սիրէր զմարդիկ, և սիրելի լինէր նոցա. չժառանգէր բազմագանձ մեծութիւն իբր աւազակոյտ առ ոչ ինչ պիտանացու, զի չիշխէր իսկ լինել 'ի նոսա ձեռնմերձ. այլ վայելէր ազատ 'ի բերս երկրի, անկարօտ ամենեւին յանհրաժեշտ կարեւորաց: Արդ սա առ ամենայն իղձս իւր թուի ձեռնհաս, այլ 'ի բազմաց անտի 'ի դերև ելանէ. զանազորոյն զկիրս իւր ևեթ կատարէ, մղեալ յագահութե-

նէ յերկիւղէ և 'ի կասկածանաց։ Ուսուի իշխել ամենեցուն, այլ չիշխէ անձին. և ըստ Թուոյ բուռն կրիցն տիրեն նմա բռնաւորք և դահիճք։

Զայսոսիկ զննաւ ածէի, առանց տեսանելոյ զՊիգմալիոն. զի անտես իսկ էր նա, և զաշտարակն եւեթ ահիւ էր տեսանել զբարձրաբերձ՝ շուրջ պատեալ 'ի պահակերաց զինու և զգիշեր, ուր ինքնակամ արգելեալ կայր նա գանձիւքն հանդերձ իւր 'ի բանտի։ Համեմատէի նմա զՍեսոստր զարքայն հեզ զդիւրամատոյց զքաղցրահամբոյր զօտարընկալ և զլսասէր, առ 'ի քօղախնդրել 'ի սիրտս մարդկան զճշմարտութիւնս՝ որ ծածկին 'ի Թագաւորաց։ Ասէի ընդ միտս իմ. Սեսոստր չերկնչէր ուստեք, զի չէք իսկ նմա երկիւղ, և երևէր ժողովրդեան իւրում որպէս հայր որդւոց. իսկ սա յամենայնէ երկնչէր, զի ամենայն ուստեք երկիւղ է նմա։ Համապազ վտանգ է բռնաւորին այնմիկ չարաչար սպանութեան անդէն իսկ յանմատոյց ապարանսին շրջապատեալս 'ի պահակերաց. իսկ առաքինին Սեսոստր աներկեան 'ի խուռն անդ կայ որպէս տանուտէր բարեհաւ յընտանիս իւր։

Հրաման ետ Պիգմալիոն արձակել զզօրս կիպրացիս, որ եկեալ էին յօգնութիւն վասն նիզակակցութեանն ընդ տիւրացիս։ Զայն պատեհ առեալ Նարբալայ հանելոյ զիս յազատութիւն, խառնեաց զիս ընդ կիպրացի զօրուն. զի և զդուզնաքէից իսկ կասկածէր բռնաւորն։ Ա

դիւրահաւանքն են և անզգոյշ իշխանք վստահին անկասկած 'ի խորամանկ և 'ի զեղծ դրանիկս. իսկ բռնաւորս այս յառաքինի որեարն չվստահէր, և ոչ գիտէր նա ընտրել զուղիղս և զպարզամիտս՝ որ ոչ կեղծ 'ի կեղծս ինչ գործեն, զի և չէր իսկ երբէք տեսեալ նորա զբարիս՝ որք յայնպիսեացն 'ի բաց կան 'ի յոռի թագաւորաց: Պարձեալ զի և յորմէ հետէ թագաւորէրն՝ այնչափ ինչ 'ի պաշտօնեայս իւր տեսեալ էր նորա կեղծաւորութիւն և դաւ և չարաչար յոռութիւնս կերպարանեալս յառաքինութիւն, զի ծպտեալս համարէր զմարդիկ առ հասարակ. և եղեալ 'ի միտ զի չիք ընդ արեգականբ առաքինութիւն անկեղծ, հաւասարս իմն իրերաց վարկանէր զամենայն մարդիկ: Յըմբռնել զոք յիւրոցն 'ի դաւ և 'ի կաշառանս, չլինէր այլոց ուրուք 'ի խնդիր, ոչ ինչ ընդհատ 'ի նմանէ զայլս համարեալ. բարիք նմա յոռեգոյն քան զչարս հրապարակագոյժս թուէին, զի համարէր և զնոսա անխտիր չարս և խաբեբայս:

Ըզից արդ յաջորդել զանցս, որ անցին ընդ իս: Խառնեալ ընդ կիպրացիս, խոյս ետու ես յերեսաց մանրակրկիտ հետազօտութեան բռնաւորին: Յահի մեծի կայր՝ Սարբալ զի մի գուցէ գուշակ ոք լիցի զինէն, զի վտանգ մահու երկաքանչիւրոցս անտի հասանէր. փութայր ձեպէր տեսանել զշումեր, այլ հողմք անյաջողք արգելուին զմեզ ընդ երկար 'ի Տիւրոս: Բայց 'ի կալ մերում անդ՝

դիտէի զբարս փիւնիկեցւոց, հռչակաւորացն առ ամենայն ծանօթ ազինս։ Զարմանայի ընդ դիրս մեծի քաղաքին, որ բնակէ 'ի մէջ ծովու 'ի կըղզւոջ. ծովեզրն որ առ նովաւ՝ բազմազուարճ է և բերրի, բերք նորա ընտիրք, և խիտ առ խիտ անդ քաղաքք և գիւղք՝ ընդ երեարս գոգցես շարայարեալք. և օդք զուարթն քաղցրախառն. զի լերինք պատսպարեն զծովեզրն 'ի բոցակէզ շընչմանց հարաւայնոց, և հիւսիս 'ի ծովէ զովացուցանէ զայն։ Երկիրն այն առ Լիբանանու կայ լերին, որոյ գագաթն յամպս ծրարեալ՝ կցի յաստեղս. սառամանիք յաւիտենից ծածկեն զարտեւանս նորա, և հեղեղատք ուղխինահոսք ձիւնալիցք գահավիժին 'ի ժայռից սեպացելոց զգագաթամբն։ Ըստ կողիւք լերինն տարածանի անտառ մեծ հինաւուրց մայրեաց, գոգցես իմն համատիոց երկրին՝ յոր ամբառնան սաղարթախիտք երկնուղէշք։ Իսկ առ ստորև անտառին 'ի դարեւանդ լերինն արօտք արգաւանդք, ուր արջառք բառաչեն ճարակաւորք, և խաշինք մատաղ գառամբքն խայտալով 'ի դալարւոջ անդ մայեն, և բիւրակնեայք խաղան անդանօր վտակք ականակիտք։ Իսկ առ ոտամբ լերինն հովիտ բուրաստանաձև, ուր գարուն և աշուն տիրեն աջակիցք՝ միրգս ընդ ծաղկունս խառնեալ. ոչ երբէք խորշակ ժանտ խամրիչ և կիզիչ բուսոց, և ոչ դառնահոտ փչմունք հիւսիսի իշխեն զգրախտին այնորիկ եղծանել զերփնազարդ գեղեցկութիւն։

Մերձ 'ի գեղեցիկն յայն 'ի ծովեզր ամբառնայ 'ի ծովու կղզին, յորում քաղաքն Տիւրոս կառուցեալ հոյաշէն՝ ընդ մկանունս ալեաց թուի ձեմել որպէս դշխոյ ծովուց։ Վաճառականք 'ի չորից ծագաց երկրի անդր հասանեն, և բնակիչք իսկ կղզւոյն գերահռչակեալք քան զամենայն վաճառականս երկրի։ Թուի քաղաքն այն մտելոցն անդր ոչ միոյ ևեթ ազգի, այլ հանուրց ազգաց մայրաքաղաք, և միջակէտ վաճառականութեան։ Նաւարտակք կրկին մեծամեծք բազկաձև կարկառին անտի ընդ ծով, լայնատարր գործեալ նաւահանգիստ՝ ուր չիք հողմոց մուտ։ Անդ է տեսանել զանտառախիտս կայմից, և 'ի լաստափայտից բազմութեանց ծածկեալ զծովն ենթակայեալ։ Քաղաքացիք առ հասարակ պարապեն 'ի վաճառաշահ, և բազմագանձ նոցին մեծութիւնք ոչ կասեցուցանեն զնոսա 'ի վաստակոց՝ առ 'ի յաճախել և ևս զայնոսիկ։ Գտանի անդ ամենայն ուրեք բեհեզն նուրբ եգիպտացի, և հրաշափայլ ծիրանին տիւրացի ճանճախարիթ, որոյ կրկնաներկ երանգոցն անեղծ 'ի ժամանակաց է փայլումն, և ներկանելին նովաւ ասուիք բարակամանք՝ զորս կիտուած ոսկւոյ. և արծաթոյ և ևս գեղազարդէ։ Շահակիցք ընդ ամենայն ազգս են փիւնիկեցիք՝ մինչև 'ի Գադէս, և յաշխարհածովն իսկ՝ որ պատի զերկրաւ՝ եղեն նոքա միջամուխ. և ընդ ծովն Կարմիր յարածուփ երթևեկեալ, ընթանան 'ի կղզիս անծանօթս 'ի խնդիր

ոսկւոյ և խնկոց անուշից և ազգի ազգի չքնաղա-գիւտ կենդանեաց ։

Զայգեգին աչք իմ ՚ի հայելոյ ՚ի մեծագործ տեսիլ քաղաքին այնորիկ, ուր ամենայն ինչ ՚ի յոյզս էր ։ Ոչ եւս տեսանէի անդ, որպէս ՚ի քաղաքս Ելլադոյ, արս դատարկապորտս և հետա-քրքիրս՝ որք պարապեն ՚ի լսել նորագոյն ինչ ՚ի հրապարակի, և դէտ կան եկաց հասելոց ՚ի նա-ւահանգիստն ։ Այլ արք անդ զբաղեալք, կէսք ՚ի թափել զբեռինս ՚ի նաւաց, այլք ՚ի կրել զարդ խանութս վաճառաց, կէսք ՚ի վաճառել կամ ՚ի մթերանոցս զետեղել, և այլք դարձեալ ՚ի գիր առնել զհամար առի և տուոյ ընդ այլազգի վաճա-ռականս ։ Իսկ կանայք պարապեալք անդուլ ՚ի մանել զասր, յառնեգործել, և ՚ի ծալել զդի-պակս մեծագինս ։ Եւ իւ, ասեմ, Փիւնիկեցիք եղեն այսպէս իշխանք վաճառականութեան ընդ տիեզերս, և մեծամեծ գանձիւք ազգաց և ազանց ։

Ետ պատասխանի Նարբաղ և ասէ ։ Յայտ իսկ է այն, զի բնակութիւն Տիւրոսի քաջադէպ է ՚ի վաճառաշահ ։ Առաւելութեանն գիւտ՝ հայրե-նեացս մերոց են պարծանք ։ Տիւրացիք եղեն ա-ռաջինք, եթէ վաղնջուցն հաստատել արժան իցէ նսեմաւանդութեանց, ՚ի նուաճել զալիս վաղ իսկ յոյժ քան զՏիփիս և զԱրգեայ [3] նաւորդս պան-ծացեալս յԵլլադոս ։ Նոքա նախ ընչին փայտին իշխեցին հաւատալ զանձինս՝ դիմադրաւ ՚ի սաստ կոհակաց և մրրկաց, և զխորոց անդնդոց

ծովու առին զչափ, անտեսք երկրի՝ անհնկատոյցք յաստեղս, եգիպտացւոցն և բաբելացւոց յարա-հետեւողք գիտութեանց, կցորդելով զազգս և զա-զինս անջրպետեալս 'ի ծովուց: Ճարտարք են տիւրացիք և երկայնամիտք, աշխատասէրք, յար-դարունք, զգաստք, քաջք 'ի տնտեսութիւն, ճիշդ յօրինապահութիւն և միաբանասէրք: Չիք ոք յազգաց անյողդողդ քան զնոսա, անկեղծ, հաւատարիմ, աներկեւան և դիւրընկալ օտարաց:

Ոչ է պարտ այլ ինչ պատճառս խնդրել. ահա պատճառք տիրապետութեան նոցա ընդ ծով, և բարգաւաճմանց տուրևառիկ շահաւէտութեան առ նոսա: Եթէ հեռ և նախանձ էին 'ի նոսա, եթէ դրդանք դատարկապորտ կենաց մեղկէին զնոսա, եթէ աւագորեար ազգին խոտէր զաշխա-տութիւն և զտնտեսութիւն, եթէ ոչ յարգէին արուեստք առ նոսա, եթէ չէին նոքա հաւատա-րիմք առ օտարս, եթէ ոչ անվրէպ պահէին առ նոսա օրէնք ազատ վաճառականութեան, եթէ թերահոգք էին 'ի ձեռակերտս, և եթէ վերջա-նայէին 'ի փութոյ պնդութենէ առ 'ի զարգացումն վաճառաց ըստ ազգս իւրաքանչիւր, տեսանէիր արդեօք ընդ հուպ զկործանումն պետութեանդ՝ ընդ որ զարմանաս:

Յայնժամ խնդրեցի ուսանել 'ի նմանէ զհը-նարս հանդոյն իմն վաճառաշահ սահմանելոյ երբեմն յԻթակէ, և նա ասէ ցիս. Արասջիր ըստ օրինակիդ, լեր դիւրամատոյց և հիւրընկալ օտա-

րաց, պատրաստեա նոցա 'ի նաւահանգիստս քո աներկեւան ապահովութիւն, դիւրութիւն և համարձակ ազատութիւն : Մ՛ի 'ի զօշաքաղութիւն և 'ի գոռոզութիւն զառածանիցիս. զի որ յոլովագոյնս խնդրէ շահել, պարտի յառաւելագանց շահուց հրաժարել և զկորուստ իսկ 'ի դէպ ժամանակի յանձն առնուլ : Սիրելի զանձն ընծայեսջիր օտարաց, համբեր իսկ նոցա յիրս իրս, մի՛ նախանձուկս 'ի նոսա արկաներ պերճանօք, հաստատուն կալ զօրէնս վաճառականութեան՝ պարզս և դիւրինս, և ուսո զժողովուրդ քո յանվրէպ պահպանութիւն նոցին. խստիւ պատուհասեսջիր ոչ միայն զխարդախութիւն այլ և զանհոգութիւն և զզեղխութիւն 'ի վաճառս, որ կործանեն զվաճառականութիւն կործանմամբ սատարաց նորա :

Զգուշասջիր մանաւանդ մի՛ բռնադատել զվաճառաշահ 'ի հաճոյս քո. ոչ է պարտ Թագաւորի խառնիլ անդր առ 'ի չբռնադատելոյ զայն, այլ զամենայն շահ թողուլ ժողովրդեան՝ որ վաստակէն 'ի նոյն, և մի՛ լքուցանել զնոսա, շատացեալ շահիւքն՝ որ 'ի բազմապատիկ գանձուց մտելոց յաշխարհ իւր: Վաճառականութիւն նման է աղբերաց ոմանց, զորոց եթէ կամիցիս դարձուցանել զընթացս, ցամաքեսցին : Օգուտ ևեթ և դիւրութիւն ձգեն զօտարականս առ քեզ. եթէ նուազ արասցես զօգուտ և զդիւրութիւն վաճառականութեան, ուծասցին 'ի քէն տակաւ, և ոչ ևս դարձցին առ քեզ. զի 'ի ձահ առեալ այլոց ազգաց զանխոհե-

մնութիւն քո, ձգեսցեն զնոսա առ իւրեանս, և ուսուսցեն նոցա զանց առնել զքև։ Պիտառաջիր իսկ զի 'ի ժամանակաց ինչ հետէ խրթնացեալ են փառք Տիւրոսի. աւա՜ղ, եթէ տեսանէիր դու զայն, սիրեցեալդ իմ Տելեմաքէ, նախ քան զթագաւորել Պիգմալեայ, յոյժ առաւել զարմանայիր։ Ոչ այլ ինչ տեսանես դու արդ, բայց զտխուր նշխարս մեծութեան հասելոյ մերձ 'ի կործանումն։ Ո՛վ Տիւրոս Տիւրոս, յո՞ր ձեռս անկար քաղաքդ հէք և թշուառ, որումն ծով առեալ բերէր հարկս երբեմն յամենայն ազգաց։

Պիգմալիոն յամենեցունց իսկ երկնչի, յիւրոցն և յօտարաց. և փոխանակ հրաւիրելոյ 'ի նաւահանգիստս իւր զազգս հեռաւորս տալով նոցա համարձակ ազատութիւն ըստ վաղնջուց մերումն սովորութեան, խնդրէ ճշգիւ զհամար նաւաց հասելոց, և թէ ուստի՛ գան, քանիք ոմանք իցեն 'ի նոսա նաւորդք, զինչ վաճառականութիւն նոցա, որպիսի՛ վաճառացն տարազ և գինք, և քանի՛ ժամանակս մնայցեն աստ։ Այլ ոչ այսչափ միայն, այլ և հարստահարէ զվաճառականս՝ 'ի վերայ հասեալ նոցա, և զվաճառսն յարքունիս գրաւեալ. խուէ զճոխագոյնս 'ի նոցանէ, յաճախէ բաղբաղանօք զհարկս և զմաքս, և վաճառակից նոցին խնդրէ գոլ, ուր ամենայն ոք երկնչի ունել ընդ նմա մասն և բաժին։ Վասն որոյ վաճառականութիւն թաղանայ, և մոռանան օտարք զճանապարհ Տիւրոսի՝ ուր երբեմն քաղցր էր նոցա դի-

մեղ. և եթե ոչ փոխեսցէ Պիգմալիոն զգնացս իւր, փառք մեր և զօրութիւն փոխեսցին ընդ հուպ յազգ յայլ՝ որոյ լաւագոյն իցէ կարգ տեսչութեան ։

Հարցի ապա ցՆարբալ՝ թէ որպէս այնչափ զօրացան տիրեցիք ընդ ծով, զի ցանկայի ուսանել զամենայն ինչ կարևոր առ ՚ի բարւոք տեսչութիւն, և ասէ ցիս. Մայրք Լիբանանու մատակարարեն մեզ նաւափայտս, և առ այս յանձանձեմք զանտառս, առ ՚ի պէտս ևեթ հասարակաց հատեալ անտի փայտ ։ Են իսկ մեզ ՚ի շէնս նաւաց հիւսունք ճարտարք ։

Յաւելի և ասեմ. Եւ զիարդ եղեն ձեզ դոքա ։ Նարբալ ասէ. Տակաւ կրթեցան առ մեզ. քանզի վարձք առատք յորդորեն զճարտարս արուեստից ածել զայնոսիկ արագ արագ ՚ի ծայր կատարման. զի իմաստնագոյնք և հանճարեղք մտադիւր պարապեն յարհեստս, ուր մեծամեծք իցեն մրցանակք ։ Արդ արգոյք են առ մեզ որք յաջողեն յարուեստս և ՚ի գիտութիւնս պիտանիս ՚ի նաւարկութիւն. մեծարի քաջ երկրաչափ, և ներհուն աստղաբաշխի մեծ է յոյժ պատիւ. մեծանայ նաւուղիղ գերազանց յարուեստին, և ոչ արհամարհի հիւսն ճարտար, այլ լիաձեռն վարձատրի ։ Թիավարաց իսկ քաջաց անվրէպք են վարձք և վաստակոց նոցա համեմատք. դարմանն և ռոճիկ ելանէ նոցա առատ, և հոգ և խնամ ոչ պակասէ նոցա ՚ի հիւանդութեան ։ Ի մեկ֊

նել նոցա՝ յանձանձելն կանայք նոցա և որդիք. 'ի կորնչել նոցա նաւաբեկութեամբ՝ ընտանիք նոցա ոչ մնան անտէրունչք. և 'ի ծառայել նոցա առ ժամանակ մի՝ արձակին 'ի տուն իւրեանց: Վասն որոյ ոչ պակասեն երբէք Թիավարք, մնացիւր վարժեն հարք զորդիս իւրեանց յարուեստն շահեկան, և անդադարին 'ի մասնաւոր տեղւոյ ուսուցանելն նոցա Թի վարել, չուանս ձգել, և քամահել զմրրկոցս: Ահա հնարք յորդորելոյ զմարդիկ անբռնադատ, վարձատրութիւն և բարեկարգութիւն: Իշխանութեամբ եւեթ ոչ յաջողեն իրք, և չէ իսկ բաւական իշխեցելոցն հնազանդութիւն. պարտ է յանկուցանել զսիրտս, և ցուցանել մարդկան զշահ իւրեանց յոր ինչ կամք իցեն մեզ վարել զճարտարութիւն նոցա:

Այս յետ բանիցս այսոցիկ շրջեցոյց զիս Նարբալ, տեսանել զշտեմարանս և զգործարանս և զամենայն արուեստանոցս՝ որ 'ի պէտս նաւաց շինութեան. և հարցանէի մի ըստ միոջէ զամենայն, և դրոշմէի զուսեալն 'ի գիր՝ առ 'ի չմոռանալոյ ինչ 'ի պիտանեաց:

Բայց Նարբալ քանզի քաջ ճանաչէր զՊիգմալիոն, և սիրէր զիս, ցանկայր վաղագոյն մեկնելոյ իմոյ, զի մի՛ լրտեսք բռնաւորին՝ որք զցայգ և զցերեկ զննային ընդ քաղաքն ամենայն զուշակ լինէին զինէն: Այս մինչդեռ շրջէաք յայց և 'ի խնդիր ընդ նաւահանգիստն և 'ի հարցփորձ վաճառականաց, եհաս մի 'ի պաշտօնէականաց բռնաւորին

և ասէ ցՆարբալ. Ազդ եղև արքային յումեմնէ 'ի նաւաստեաց՝ որ դարձան ընդ քեզ յԵգիպտոսէ, զի ածէիր դու զօտար ոք Կիպրացի կարծեցեալ. արդ հրամայէ արքայի ունել զնա, և ստուգել թէ ուստի իցէ. 'ի քէն խնդրեսցի համար, և գլխապարտ գտցիս մինստասուն: Յայնմ վայրի մեկուսի կայի ես առ 'ի զննին համեմատութեանց միոյ 'ի նաւացն տիւրացւոց՝ որ այն ինչ կառուցեալն էր, և համարէր թեթևընթաց քան զամենայն նաւս երևեալս 'ի նաւահանգստի անդ՝ ճշգրիտ համեմատութեամբ ամենայն մասանցն. և հարցաքննէի ես զճարտարապետ նաւուն:

Իսկ Նարբալ 'ի յեղակարծ բանիցն զահի հարեալ, ասէր. Որթայց խնդրեսցին զայլոն Կիպրացի: Այլ 'ի մեկնել պատուիրակին, դիմեաց նա առ իս պատմել զվտանգն՝ յորում կայի, և ասէ. Կարի իսկ զուշակէի ես զայս, սիրեցեալդ իմ Տելեմաք. կորուստ 'ի վերայ կայ մեզ. բռնաւորն տագնապեալ յերկիւղէ զտիւ և զգիշեր, կասկածէ զքէն զի չիցես Կիպրացի. հրամայէ ունել զքեզ, և մահ ինձ սպառնայ եթէ ոչ մատնեսցեմ նմա զքեզ: Արդ զի՞նչ արասցուք. ով դիք, տուք մեզ իմաստութիւն զերծանել 'ի վտանգէս. հարկ է ինձ, Տելեմաք, ածել զքեզ յարքունիս. Կիպրացի դու միշտ ասասջիր զքեզ յԱմաթեայ[9] քաղաքէ, որդի անդրիագործի միոյն Ասաղկանն. վկայեսցեմ և ես ծանուցեալ երբեմն զհայր քո. Թերևս բռնաւորն ոչ ևս մանր հարցաքննեալ, արձակեսցէ

զքեզ։ Զիք այլ ինչ հնար զերծանելոյ մեզ 'ի վտանգէս։

Պատասխանի ետու նմա և ասեմ. Թո՛յլ արա հիքիս կորնչել, որովհետև այսպէս հրամայեն դիք. գիտեմ ես մեռանել, Նարբալ, այլ ցաւէ ինձ յոյժ զի և զքեզ ընդ իս ձգեցի 'ի թշուառութիւն։ Սակայն չատնում երբէք յանձն. չեմ ես կիպրացի և չգիտեմ կիպրացի զանձն դաւանել. տեսանեն դիք զանկեղծութիւն իմ, նոցա է փրկել զիս՝ եթէ կամին՝ զօրութեամբ իւրեանց. այլ ինձ քաւ լիցի ստութեամբ շահել զկեանս։

Ակնեալ անդրէն Նարբալայ, ասէ. Ո՜հ ինչ վնաս իցէ 'ի ստութենէ, դիք իսկ զայդ ոչ դատապարտ առնեն. ոչ ումեք մեղանչէ դա, այլ փրկէ զկեանս երկուց անմեղաց. և խաբել իսկ զթագաւորն՝ առ 'ի խափանել զնա յոճիր եղեռանէ՝ խաբէ։ Առաւելագանց 'ի քեզ է սէր առաքինութեան և երկիւղածութիւն։ Պատասխանի ետու և ասեմ. Ստութիւն ամենայն, որ զի ոչ է ճշմարիտ, անպատեհ է մարդոյ՝ որ 'ի լուր դիցն բարբառի և պարտի պատկառ կալ ճշմարտութեան։ Որ մեղանչէ ճշմարտութեան, թշնամանէ զդիս, և անձամբ անձին մեղանչէ, զի ոչ ըստ հաւատոց բարբառի։ Մի՛ սադրեր ինձ, Նարբալ, որ ինչ քեզ և ինձ է դժպատեհ։ Եթէ զթան 'ի մեզ դիք, կարող իսկ են փրկել զմեզ. իսկ եթէ թողուն զմեզ 'ի կորուստ, փո-

խառնակեսցուք զանձինս մեր 'ի վերայ ճշմարտութեան, և թողցուք աշխարհի օրինակ՝ լաւ համարելոյ անարատ պահել զառաքինութիւն քան կեալ ընդ երկար։ Կարի իսկ երկայն են ինձ կեանք իմ թշուառ. այլ ընդ քոյդ ևեթ, սիրեցեալդ իմ Նարբալ, սիրտ իմ գելանի. արժա՞ն ինչ էր բարեկամութեանդ քում ընդ հեքի ումեմն պանդխտի լինել քեզ աղխտաբեր։

Սա մինչդեռ այսպէս ընդերկար ընդ միմեանս վիճէաք, ահա եհաս առ մեզ չնչաստաւոր այլ ոք պատուիրակ արքունի 'ի դիմաց Աստարբեայ տիկնոջ։ Սա էր տիկինս այս հրաշագեղ որպէս զմի 'ի դիցուհեաց, գեղոյ վայելչութեան մարմնոյն կցորդ զմտացն ունելով, զուարթ, ողջքիչ և յանկուցող բարուք։ Ընդ այսպիսի հրապոյրս խաբէութեան բերէր նա սիրտ անագորոյն և լի մեզմեխանօք զօրէն համբարուի [10]. այլ գիտէր ծածկել խորամանկութեամբ զխորհուրդս չարեացն։ Սիրացեալ իսկ էր նորա զսիրտ Պիգմալեայ գեղեցկութեամբն և համձայնով, քաղցրաձայնութեամբն և ներդաշնակաւոր քնարերգութեամբ. և արբեցութեամբ տռփանաց նորա լքեալ Պիգմալեայ զդշխոյ հարսն իւր զՏոփէ, հաճէր յամենայնի զկիրս ամբարհաւաճ հոմանւոյն. և սէր Աստարբեայ ոչ ինչ նուազ եղեռնաւոր էր 'ի նմա քան զժանտաժուտ ագահութիւն նորա։ Բայց թէպէտ և թագաւորին այնպէս զակառեալ յԱստարբէ, այլ Աստարբէ արհամարհէր

զԹագաւորն և գարշէր իսկ 'ի նմանէ . սակայն Թագուցեալ զկիրս սրտին , վէր 'ի վերոյ կեղծաւորէր առ 'ի սէր եւեթ նորին կեալ՝ մինչ դժկամակերն համբերել նմա :

Եւ էր 'ի Տիւրոս պատանի մի Լիւդացի , Մ՛ալաքոն անուն , չքնաղագեղ . այլ մեղկ կնատ և շռայլեալ 'ի ցանկութիւնս : Պարապէր նա միշտ փափուկ և գունեղ ունելոյ զձորձս , սանտրէր յարդարէր զխարտեաշ գիսակսն գեղածփեալս զուսովք , օծանէր յիւղս անուշունս , զանգրաձև խորշաքաղ զպատմուճան իւր գործէր , և զխանդս սրտից 'ի լարս քնարին գեղգեղէր : Աստարբեայ 'ի տեսանելն զնա , հարեալ 'ի սէր նորա յիմարեցաւ . այլ պատանեկն արհամարհէր զնա , տարփացեալ այլոյ ումեմն օրիորդի . սակայն և զանգիտէր յանողորմ վրէժխնդրութենէ Թագաւորին : Աստարբէ ընդ այսպիսի արհամարհանս վառեալ 'ի զայրոյթ , առ մոլեգին ցասման մտաբերերեաց փոխանակել զՄ՛ալաքոն ընդ տարաշխարհիկ պատանւոյն՝ զոր խնդրէր Թագաւորն , և զոր ընդ Նարբալայ տեսին եկեալ :

Պատրեաց իսկ զՊիւգմալիոն , կաշառաբեկ արարեալ զամենեսին՝ որոց մարթ էր լուծանել զպատրանս Թագաւորին : Որ քանզի չէին զօրեարն առաքինի , և ոչ ընտրութիւն առնէր առաքինեաց , շուրջ կային զնովաւ արք շահախնդիրք , չարարուեստք , և կազմք և պատրաստք 'ի կատարել զանիրաւ և զեղեռնաւոր հրամանս նո-

րա ։ Սոքա այսպիսիք երկնչէին իսկ 'ի զօրութենէ Աստարբեայ, և դաւակիցք լինէին նմա 'ի պատրել զԹագաւորն, զի մի՛ յաչաց ելանիցեն գոռոզ տիկնոջն՝ որ համօրէն զխրատ արքայի զրաւեալ ունէր ։ Այսպէս Սալաքոն Թէպէտ և վկայեալ յամենայն քաղաքայնոց լիւդացի, համարեցաւ փոխանակ տարաշխարհիկ պատանւոյն՝ զոր Նարբալայ ածեալ էր յԵգիպտոսէ, և արկաւ 'ի բանտ ։

Այն որոյ կասկածեալ Աստարբեայ՝ Թէ գուցէ 'ի խօսել Նարբալայ ընդ արքայի նշաւակեսցէ զդաւն, յղեալ էր առ նա զպատուիրակն ։ Որոյ հասեալ, ետ զպատգամն զայս ․ Հրաման է Աստարբեայ չյայտնել քեզ արքայի ո՛ ուղեկիցդ քո իցէ տարաշխարհիկ, այլ լռել ևեթ ․ և ինքն գիտասցէ հաշտ առնել ընդ քեզ զարքայ ․ բայց փութացո 'ի չու ընդ կիպրացիս զպատանիդ՝ զոր ածեր յԵգիպտոսէ, մի՛ ևս ոք տեսցէ զդա 'ի քաղաքիս ։ Իսկ Նարբալ այլ յայլմէ եղեալ առ խնդութեանն, զի երկաքանչիւրոցս այսպէս փըրկէին կեանք, խոստացաւ լռել ․ և պատուիրակն պատահեալ խնդրոյն, դարձաւ անդրէն տալ զրոյց Աստարբեայ ։ Յայնժամ ընկալեալ զվարձ անկեղծութեանս մերոյ, սքանչանայաք ընդ գԹութիւն դից խնամակալուաց այնոցիկ՝ որք փոխանակեն զանձինս 'ի վերայ առաքինութեան ։ Սակուին էր մեզ խորհել 'ի Թագաւորն անձնամատն յագահութիւն և 'ի հեշտախտութիւն, և ասէաք

ընդ միմեանս. Որ առաւելազանցն երկնչի 'ի դաւոյ, յիրաւի է նմա կրել դաւամս, և կրէ իսկ միշտ անմտաբար. կասկածէ 'ի բարեաց, և վստահի 'ի չարս. Ինքն ևեթ է անգէտ անցից՝ որ անցանեն։ Տես ինձ զարքայն խաղալիկ լեալ կնոջ Արբենեայ. սակայն դիք 'ի ձեռն անիրաւութեան չարաց փրկեն զբարիս, որք զմահ յանձն առնուն առաւել քան ստութիւն։

Մինչդեռ զայսոսիկ ընդ միմեանս բարբառէաք, և ահա հողմք շնչէին աջողակք 'ի չու կիպրացինաւատորմին, և գոչեաց Նարբալ. Ահա դիցն կամք յայտնեալ, սիրեցեալդ իմ Տելեմաք. ահա կամին նոքա փրկել զմեզ, փախիր յաննուէր և յանիծապարտ երկրէ աստի։ Եթէ կարէի ընդ քեզ գալ մինչև 'ի ծովափունս անծանօթս, եթէ մարթէր ինձ ընդ քեզ կեալ և մեռանել. այլ բախտ անողորմելի կաշկանդէ զիս ընդ հէք հայրենիս իմ, հարկ է ինձ վշտակիր ընդ նմա լինել, թէ արդեօք և թաղիլ իսկ ընդ փլատակօք սորա. և չէ ինձ փոյթ, եթէ միայն խօսեսցին շրթունք իմ զճշմարտութիւն, սիրտ իմ սիրեսցէ զարդարութիւն։ Իսկ քեզ, սիրեցեալդ իմ Տելեմաք, մաղթեմ 'ի դից առաջնորդել անվտանգ, և զպատուականագոյն քան զամենայն պարգևս տալ քեզ զառաքինութիւն ամբիծ և անարատ մինչև ցկեանս։ Կեցցես դու, և դարձցիս յԻթակէ, և մխիթարեսցես զՊենելոպէ՝ զերծուցեալ զնա 'ի ձեռաց ժպիրհ տարփաւորաց։

Աչք քո տեսցեն զիմաստունն Ոդիսեւս, փարեսցիս զդրկախառն զնովաւ, և հաւասար խնամատութեան նորա լիցիս նման որդի։ Այլ 'ի բարեբաստութեանդ քում յուշ լիցի քեզ չարաբաստիկն Նարբալ, և մի՛ անկցի նա 'ի սիրոյ քումմէ։

Եւ յաւել նորա զայս՝ լուռ եւեթ արտասուէր, և հառաչանք 'ի խորոց սրտէ զեղուին զխօսս իմ. և փարեալք զմիմեանս անբարբառ, ապա էած նա զիս մինչև 'ի նաւ անդր, և կայր մնայր 'ի ծովեզերին. և 'ի չու առնել նաւուն, ոչ դադարէաք 'ի հայելոյ ընդ միմեանս ցորչափ զօրէին աչք։



# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ

## ԵՐՐՈՐԴԻ ԳՐՈՑՆ

1 Կիւպրոս կղզի 'ի միջերկրական ծովու, բեղնաւոր և զուարճալի, նուիրեալ դիցն Աստղկան, վասն որոյ և բնակիչք նորա անձնատուրք 'ի գրգանս: Տճ. Կըպրըս:

2 Պարկէանք երեքին քորք Երեբոսի և Գիշերոյ, տեսուչք օրհասի. որոց անուանք են Կղոթէ, Լաքեսիս, Ատրոպէ: Կղոթէ ունի զաղեկատն, պատեալ զնովաւ ասր. Լաքեսիս մանէ զասրն, ունելով զիլ. իսկ Ատրոպէ մկրատ 'ի ձեռին՝ հատանէ զթել մանածոյն. ակնարկելով 'ի ծնունդ, 'ի կեանս և 'ի մահ մարդկան:

3 Արձանք Հերակլեայ են երկոքին լերինք Կալպեայ և Աբիլեայ 'ի Ճիպրալթար 'ի կրճին, ընդ որ Ովկիան ընդ միջերկրականն կցորդի ընդ ծով. ցայսվայր եհաս Հերակլէս, և սիւնաձև լերինքն համարեցան արձանք սահմանաց արշաւանի նորա:

4 Պիւգմալիոն որդի կրտսերոյն Բելայ, եղբայր Դիդեի, արքայ Տիւրոսի. որ 'ի հրապոյրս ագահութեան դաւաճանեաց զՍիքէոս քեռայր իւր զքուրմ Հերակլեայ: Վասն որոյ Դիդէ փախեաւ հայրենի գանձիւքն յԱփրիկէ, ուր շինեաց զԿարքեդոն իբր 907 ամօք նախ քան զԹուականութիւն փրկչին: Որ ապա առ 'ի չառնուլ յանձն զբռնի ամուսնութիւն ընդ Յարբասայ արքային Գետուլիոյ, չոգաւ զիւրովի: Բայց Վիրգիլ քերթողական համարձակութեամբ կեղծէ զնա առ սիրոյն Ենեայ լեալ անձնասպան:

5 Դիդէ. տես 'ի (4) Պիգմալիոն:

6 Կարքեդոն քաղաք ծովեզերեայ յԱփրիկէ, ոսոխ Հռոմայ. տես 'ի 4: Կործանեցաւ 'ի Սկիպիոնէ Ափրիկեցւոյ քաղաքս այս յերրորդումն պունիկեան պատերազմի:

7 Գադէս, Իտալերէն Գատիչէ. կղզի 'ի բետիկեանն Սպանիա յՈվկիանոս, ուր մի 'ի հնագոյն գաղթականացն տիւրացւոց բնակէր:

8 Արգէոյ նաւորդք կամ Արգոնաւորդք էին քաջազունք Հելլէնք, որք զօրավարութեամբն Յասոնի նաւեցին 'ի Կողքիս՝

յափշտակել զգեղմն ոսկի հրաշական խոյին, զորոյ զգզաթ պահպանէր վիշապ ահագին ։ Նաւն այն նախակերտ որով նաւեցին՝ կոչէր Արգոն, 'ի Ճարտարապետէն զանունն կալեալ՝ որ կոչէր Արգոս. և նաւապետին անունն էր Տիփիս ։ Նաւս այս ապա յաստեղատունս անդր դասեցաւ ։

9 Ամաթուս քաղաք վաղեմի 'ի Կիպրոս ։

10 Համբարուք, առասպելեալ դստերք գետոյն Աքելովայ և Մուսային Կալլիոպայ, 'ի միջոյ և 'ի վայր ձկնակերպք, իսկ 'ի վերոյ զկանացի բերելով կերպարանս, և թեւաւորք ։ Բնակեալք 'ի հրուանդանին Սիկիլիոյ 'ի Պելորոն, վտանգէին զնաւորդս քաղցրաձայն երգովք. յորոց հազիւ զերծաւ Ոդիսեւս՝ կապեալ զանձն 'ի կայմ նաւուն, և ականջախից զուղեկիցն արարեալ մոմով ։



# ՆԱԽԱԳԻՐՈՒԹԻՒՆ

Կալիփսէ դադարեցուցանէ զՏելեմաք առ 'ի հանգիստ քնոյ, և 'ի լինելն առանձինն, յանդիմանէ զնա Մենտոր' զի էառ յանձն պատմել Կալիփսեայ զանցս իւր, և խրատ տայ նմա կատարել զսկսեալն ։ Յաւելու Տելեմաք պատմել զերազ իւր, զոր ետես 'ի նաւարկելն իւրում 'ի Տիւրոսէ 'ի Կիպրոս' Աթենասայ պաշտպանելով զնա յերեսաց Աստղկան և Երոսի . և զերևութանալ Մենտորի' յորդորելով զնա խոյս տալ 'ի Կիպրոսէ, և զնեկավարել իւր 'ի զարթնուլն 'ի մրրկէ' որ կորուստ 'ի վերայ ածէր նաւուն, վասն արբեցութեան Կիպրացւոցն և չկարելոյ նոցա փրկել զնաւն ։ Զի 'ի հասանելն իւրում 'ի Կիպրոս' գարշէր 'ի ժանտաժուտ զեղծմանէ բնակչացն . բայց Ազայէլ Ասորի' որ զՄենտոր առեալ էր 'ի ստրկութիւն' գտանի անդ, և դարձուցեալ զայրն զգօն յառաջնորդութիւն նորին, առնու զնոսա ընդ իւր' նաւարկել 'ի Կրետէ . և տեսանել նոցա ընդ ծով զչքնաղ տեսարան ծովածնոց ձգելոյ զկառս Ամփիտրիտեայ ։

# ԱՐԿԱԾՈՒՔ ՏԵԼԵՄԱՔԱՅ



## ԳԻՐՔ ՉՈՐՐՈՐԴ

Մինչև ցայս վայր Կալիփսով զմայլեալ ՚ի լուր Տելեմաքայ, դադարեցոյց ապա զնա ՚ի խօսիցն, և ասէ. Ժամ է արդ վաստակելումդ քաղցր ՚ի քուն լինել. չիք ուստեք քեզ աստ երկիւղ, ամենայն ինչ բարեբաստիկ յաջողեալ: Ուրախ լեր արդ, և վայելեսջիր ՚ի խաղաղութիւն և յամենայն պարգևս դից՝ որ զեղուցուն աստ զքեզ: Ընդ վաղիւ այն ինչ այգ՝ վարդամատնեան բացցէ զոսկեձոյլ դրունս արևելից, նժոյգք արփւոյն յաղթատուկ ալեաց ՚ի վեր ելեալ՝ սփռեսցեն զբոցանշոյլ ճաճանչս տուընջեան հալածելով զաստեղս, բուռն հարցուք վերստին, իմ Տելեմաք, ՚ի վէպս արկածիցդ: Անցուցեր զանցուցեր դու զիմաստութեամբ և զարիութեամբ հօր քո. ոչ Աքիլլէս յաղթականն Հեկտորի [1], ոչ Թեսևս [2] ՚ի սանդարամետաց դարձեալ, և ոչ Ալկեանն [3] Հրէշից յերկրէ սատակիչ, հաւասարեսցին զօրութեան

քում և առաքինութեան ։ Կարճել քեզ զգիշերս մաղթեմ ՚ի դից յանդորր ՚ի քում . այլ ո՛հ , քանի երկայն թուեսցի ինձ այն , քանի յամեսցէ ինձ տեսանել զքեզ վերստին , լսել զբարբառ քո , միւսանգամ տալ քեզ երկրորդել զպատմեալսն , և զչև լուեալսն հայցել ։ Ե՛րթ իմն Տելեմաք ընդ իմաստնոյն Մենտորի՝ զոր դարձուցին քեզ դիք , Երթ ՚ի քարայրդ ՚ի բացէ՝ ուր ամենայն ինչ ձեզ կազմ և պատրաստ կայ առ ՚ի հանգիստ ։ Մինչ անուշակ զծանրարթուն արտևանանքդ ածցէ Մորփէոս , սփռեալ ոգի աստուածեղէն ՚ի խոնջ անդամս քո . և երագս տացէ քեզ թեթևս , որք թևածեալ զքև՝ զգուեսցեն զզգայարանս քո ՚ի տեսիլս զուարճալիս , զի մի՛ տիպք անդոհականք ընդոստ ՚ի քնոյն զարթուսցեն զքեզ ։

Նա էած ինքնին իսկ դիցուհին զՏելեմաք ՚ի քարայր անդր մեկուսի յիւրմէն , հանգոյն իւրումն զեղջկատիպ զուարճատեսիլ ։ Վտակ առ երի բղխեալ քաղցրակարկաջ հրաւիրէր զննջ . և յաւերժհարսանց յարդարեալ էր նոցա անկողինս կրկին ՚ի քնքուշ դալարեաց՝ տարածեալ զնոքօք մորթս մեծամեծս , առիւծենի Տելեմաքայ , և Մենտորի արջենի ։

Մինչ չև ՚ի քուն լեալ պատանւոյն , խօսեցաւ ընդ նմա Մենտոր և ասէ . Իղձք պատմելոյ զարկածս քո զառածեցուցին զքեզ . զմայլեալ դիցուհին ՚ի լուր վտանգացդ՝ յորոց զերծար արիութեամբքդ քով և ճարտարմտութեամբք , վառեցաւ

և ես 'ի սէր քոյին, և վտանգաւորագոյն պատրաստեցեր քեզ գերութիւն։ Յուսայցես թէ թողցէ նա քեզ մեկնել 'ի կղզւոյս, կախարդեալ 'ի լուր պատմութեան արկածիցդ. սնափառութիւն ետ քեզ բարբառել զայդոսիկ, բարձեալ 'ի քէն զխոհեմութիւն։ Խոստացաւ նա քեզ պատմել զանցս Ոդիսեայ, այլ եգիտ զհնարս առանց ինչ պատմելոյ խօսել ընդ քեզ ընդ երկար, և որսացաւ 'ի բերանոյ քումմէ որ ինչ գիտելն ցանկայր։ Նա քեզ արուեստ չնթող և տուփոտ կանանւոյն։ Ո՞րբ իցէ քեզ, ով Տելեմաքէ, զգօնանալ և մի սնափառութեամբ զպարծանս քո պատմել ուր չիք և ոչ մի ինչ շահ։ Զարմանան այլք ընդ իմաստութիւն՝ քո, յորմէ ներելի էր վերջանալ մանկականի տիոցդ. այլ ես որ ճանաչեմ զքեզ և սիրեմ, չներեմ ինչ քեզ. պարտ է ինձ խրատել զամենայն գերութիւնս քո։ Ռանիօն դեռ ես 'ի բացեայ յիմաստութենէ հօր քո գտանիս։

Յայնժամ ասէ պատանեակն. Եւ զի՞նչ ասես, պա՞րտ էր ինձ հրաժարել 'ի պատմելոյ Ակեստեայ զարկածս իմ։ Մենտոր ասէ. Ոչ, այլ պարտ իսկ էր պատմել որչափ ինչ և եթ կարևորն էր առ 'ի գութ ածել զնա։ Մարթ էր քեզ պատմել նմա զշրջել քո թափառական, և զվարել 'ի Սիկիլիա 'ի գերութիւն, և անտի յԵգիպտոս. շատ իսկ էր այսքան, այլն ամենայն յաւել բորբոքել զբոցն՝ որ զսիրտ նորա տոչորէ. իցէ՛ թէ պահեսցեն դիք զքոյդ 'ի բոցոյն։

Յաւել պատանեկին ցածութեանն և հլու-
թեանն. Այլ զինչ առնել իցէ ինձ արդ։ Մ՛են-
տոր ասէ. Մէ ևս մնայր է լսել 'ի նմանէ զխրա-
տորդս արկածից քոց. անդէկութիւն պատմելոյդ
անպատառելի զնա արարացէ 'ի լուր պատմելեացդ,
և զգուշութիւնդ քո այսուհետև յաւելցէ զըր-
գռել զնա։ Կատարեաջիր ասաց պատմել նմա առ-
վաղիւ որ ինչ դիպեցն ընդ քեզ բազմեբարեալ, և ու-
սիր զզաստագոյն յայսմ հետէ խօսել զարարծա-
նաց անձին։ Մ՛տադիւրութեամբ լուաւ պատա-
նեկն զխրատն, և 'ի քուն եղեն։

Մ՛այն ինչ ծայրակապակեր արեգականն սփռէր զճա-
ռագայթս իւր յերկիր, այդ եղև Մ՛ենտորի բար-
բառ դիցուհւոյն՝ որ զյանտրժհարաման ձայնէր
յանտառն, և զարթոյց նա զՏելեմաքոս և ասէ.
Ժամ է արդ սթափել 'ի քնոյ. դարձցուք առ Կա-
լիփսոյ, այլ զգոյշ լեր 'ի քաղցրութենէ բանից
նորա, մի յայտներ զսիրտ քո նմա, երկիր 'ի չա-
րաթոյն շողոմից շրթանց նորա։ Պահպանձար
զքեզ յերբեկին քան զհայր քո ասէր, և արխագոյն
քան զանպարտաւելին Ա՛քիլլէս, քան զանուանեին
Թետէսա, և քան զանմահացեալն Հերակղէս։
Ճանաչեա՛ր արդեօք զառաւելագանցութիւն զո-
վութեանցն, թէ զուցէ հաստատեսցէր բանից նո-
րա. զխառանչիր զի ինքն իսկ չհաւատայ խորոցն
բանից. զոյլէ զքեզ, զի համարի զքեզ խօթամիտ
և մնաքառ՝ դիւրախաղ 'ի զանխութիւնս անպատ-
կանաւորս արութեանց քոց։

Զօգամն տայր առ դիցուհին, որ մնայր նոցա։ Մատուցաւ նա 'ի տեսանելն զնոսա. այլ ընդ վեր 'ի վերոյ խնդութեամբն ծածկէր զերկիւղ իւր և զտագնապ սրտին, գուշակելով զի պատանին առաջնորդեալ 'ի Մենտորէ խոյս տալոց էր հանդոյն Ոդիսեայ։ Խօսեցաւ ընդ նմա և ասէ. Հապա, իմն Տելեմաք, լցո զիղձս իմ 'ի լսել. զգիշերն 'ի քուն երազէի զմեկնել քո 'ի Փիւնիկեայ՝ դէմ եդեալ յարկածս նորանորս ճակատագրին 'ի Կիպրոս։ Պատմեա արդ որպէս հասեր անդր, պատմեա, մի յապաղեր։ Յայնժամ բազմեցան 'ի մանուշակաւէտ դալարուոյն ընդ հովանեաւ սաղարթախիտ անտառին։ Բայց Կալիփսէ չհանդարտէր հայէր ստէպ խանդակաթ գորովանօք 'ի պատանին, և զայրանայր ընդ դիտել Մենտորի զմեղմեղանս աչաց իւրոց։ Ընդ և յաւերժհարսունք առ հասարակ յակձիռս շուրջ բոլորեալ 'ի լուր և 'ի տես պատանւոյն, ակնկառոյց կային 'ի նա անքթիթ։

Իսկ Տելեմաք զաչս 'ի խոնարհ ունելով, և վայելչագեղ պատկառանօք յառաջ ածեալ զպատմութիւնն, ասէ. Ի չնչել աջողակ օդոց՝ հողմուոյց առագաստիւք մեկնեցաք 'ի Փիւնիկեայ, և ծածկեցաւ երկիրն յաչաց մերոց։ Ընդէտ բարուցն կիպրացւոց՝ ընդ որս նաւէի, եդի 'ի մտի լուռ և եթ կալ, դիտել զամենայն, և խոհական զգուշութեամբ մեծարոյ լինել նոցա։ Այլ 'ի լաւութենէ անտի ծանրացան արտեւանունք իմ

քաղցր 'ի նիրհ, թմրեցան զգայութիւնք իմ ընդ-արմացեալք. և մինչդեռ զմայլեալ կայի 'ի հըր-ճուանս և 'ի խորին խաղաղութեան, տեսի զԱստղիկն զի սրանայր ամպախաղաց 'ի կառս իւր լծեալս յաղաւնեաց, այնպէս պայծառագեղ առոյգ և բարետեսիլ, որպէս յորժամ փրփրածին յՈվ-կիականն ծովէն 'ի վեր ելեալ՝ զԴիայն իսկ զօշոտեաց զաչս ։ Սաւառնեցաւ էջ առ իս, և գեղեցկաժպիտ ածեալ զբազուկ իւր զուսովք իմովք, և առձայնեալ զիս յանուանէ, ասէ. Համբակդ Հելլէն՝ որ մտանես 'ի սահմանս ինք-նակալութեան իմոյ, հասցես դու ընդ հուպ 'ի կղզին բարեբաստիկ՝ ուր գրգանք և հրճուանք և խաղք և խնծիղք 'ի ձեմն ոտից իմոց խայտան ։ Բուրեսցես դու անդ խունկս անուշից 'ի բագինս իմ ; և արբուցից քեզ անդ զուղխս փափկութեան իմոյ ։ Բայց զսիրտ քո 'ի յոյս անուշակ, և մի իշ-խեսցես ընկրձել հզօրագունին յաստուածու-հեաց՝ որ կամի երանաւէտել զքեզ ։

Եւ տեսի, և ահա մանուկն Երոս [6] շուրջ զմարմն իւրով զթեւիկսն ածեալ թռանէր ։ Քաղ-ցրութիւն և շնորհք և զուարթագեղ մանկու-թիւն 'ի դէմս նորա, այլ դժնէհայեացք իւրն ա-կանողիք նորա պակուցանէին զիս. ժպտէր նա յակնարկելն իւրում 'ի յիս, այլ ժպիտ նորա չար-իմաց հեգնաւոր և դժնդակ ։ Զգեաց 'ի կա-պարճիցն ոսկեաց սլաք սայրասուր, լարեաց զա-ղեղն իւր, և յարձակել նորա զնետն 'ի յիս՝ հատ

Աթենաս, և այծենակաճ ասպարաւն պատսպա-
րեաց զիս ։ Ոչ ինչ 'ի նմա գոյր մեղկ և խանդա-
ղատելի, որպէս 'ի գեղ Աստղկանն նշմարէի 'ի
դէմս և 'ի շարժուածս նորա . այլ գեղեցկութիւն
պարզ անպաճոյճ և համեստ . ամենայն ինչ 'ի նմա
ծանր կորովի ազնուական և մեծավայելուչ ։ Աչքն
երեան անզօր 'ի յերգիծանել յայծենակաճն 'ի
վահան, սահեալ անկաւ 'ի գետին . և Էրոս սըր-
տառուչ դառնահառաչ զամօթի հարկանէր ընդ
պարտութիւն իւր ։ Յայնժամ գոչեաց Աթենաս .
Ի բաց կաց մանուկ ժպիրհ, յաղթողդ վատաց
ամօթապարտից մեղկասիրաց, և ոչ երբէք որոց
սիրեն զիմաստութիւն և զփառս ։ Նոյն մանուկն
սրտմտեալ սրացաւ 'ի բաց . և յամբառնալ ան-
դրէն Աստղկանն յՈլիմպոս՝ տեսանէի զկառս
նորա լծեալս յաղաւնեաց ընդ ամպս կապուտակս
ոսկեճաճանչս մինչև անհետ լինէին յաչաց . և
խոնարհեալ զաչս իմ 'ի յերկիր, և ոչ ևս ուրեք
տեսանէի զԱթենաս ։

Թուէր ինձ ապա կալ 'ի դրախտի ուրեք փափ-
կութեան, որպիսի ելիսեանքն ' նկարէին հոմերոսք .
և տեսանէի անդ զՄենտոր, որ ասէր ցիս . Փա-
խիր յանհամբոյր երկրէդ 'ի ժանտաժուտ կըղ-
զւոյդ, ուր չիք ընչել բայց զխիւք հեշտութեան .
կորովագունին իսկ աստ վտանգ է առաքինու-
թեան, փախստեամբ լոկով յաղթող է փրկութիւն ։
Իբրև տեսի զնա, կամէի անկանել զպարանոցաւ
նորա, փարել զնովաւ . այլ ոտք իմ կասէին,

ծունկք իմ դողդոջէին , և բազուկք իմ կարկառեալք առ 'ի գիրկս արկանել նմա , խնդրէին ստուեր սին՝ որ խուսափէրն 'ի նոցանէ ։ Ի ձգանց անտի զարթուցեալ , խելամուտ եղէ՝ զի տեսիլն այն խորհրդաւոր՝ խրատ էր ինձ աստուածազդեցիկ ։ Եւ զգայի խրախոյս յանձին ընդդէմ գըրգանաց , այլ չվստահէի յանձն դարշել 'ի կիպրական հեշտախտութենէն ։ Բայց կարեվէր հարայ յոգի՝ կարծելով մեռեալ զՄենտոր , և ընդ ստուգեան [8] անցեալ զնա ընդ ալիս յերանաւէտ օթեւանս արդարոց . և ուղխս արտասուաց հեղուի ընդ մահ նորա ։ Եւ որոց դիվանեքն հարցանէին զողբոց իմոց , ասէի . Եւ չիցե՞ն կարի իսկ 'ի ձահ արտասուք հեղուլ տարաշխարհիկ Թափառականի , որում չիք յոյս անդրէն զհայրենիսն տեսանելոյ ։

Յայնժամ վայրի կիպրացիք , որ էին 'ի նաւի անդ , անզգոյշք պարապէին 'ի խնջոյս . Թիավարք յուլացեալք , զԹիակօքն անկեալք նիրհէին . Նաւուղիղն ծաղկապսակ լքեալ զքեղիս , զստոմանն գինւոյ ունէր 'ի ձեռին՝ քամեալ զայն զրեթէ 'ի սպառ ։ Եւ այլք առ հասարակ զգլխեալք յաւիւն սպանդարամետական [9] , մինչ դեռ նուագէին երգս Աստղկան և Երոսի՝ քստմնելիս 'ի լուր առաքինասիրաց , մռռացկոտք ծովուն վտանգաց , մրրիկ յեղակարծ խռովեցոյց զերկին և զծով ։ Հողմք շղթայազերծք մռնչելով մոլեգին 'ի յառագաստս մեր խուժէին . ալիք Թուխք բախէին

դկողս նաւուն, որ ընդ հարուածովքն հեծէր ։ Մերթ 'ի վերայ լեռնակուտակ ալեացն ամբարձեալք, և մերթ 'ի յորձախորս ալեաց թուէր նաւս մեր լինել անդնդասոյզ. և ժայռս ևս հուպ առ մեզ տեսանէաք, ընդ որս կոծեալ խորտակէին ալիք ահեղագոչք ։ Յանժամ 'ի միտ առնուի զոր ստէպ լուեալն էր 'ի Մենտորէ, զի աղք մեղկք և զականեալք 'ի զրգանս՝ վատասիրտք 'ի վտանգս գտանին. քանզի կիպրացիք առ հաստարակ լուծեալք լքեալք լային կանացաբար. ոչ այլ ինչ լսելի լինէր անդ, բայց ձիչ աղիողորմ, աղաղանք ընդ կորուստ հեշտութեանց, և խոստմունք ընտիրք զոհս դիցն մատուցանելոյ՝ եթէ փրկութեան ևեթ հասանէին ։ Եւ զի ոչ ոք 'ի նոսա գոյր զգաստ առ 'ի հրամայել կամ 'ի կատարել զնաւաստութիւն, պարտ անձին վարկուցեալ փրկել ընդ իմում զկեանս այլոց, անցեալ կացի առ ղեկան. զի նաւուղիղն զինեհարեալ որպէս զմի յաստուածապարարկաց՝ չզգայր վտանգին. և խրախուսեալ զնաւաստին ահաբեկ, իջուցանել հրամայեցի զառագաստս, և թիուժգին վարել ։ Եւ անցաք ընդ ժայռ և ընդ խութ մերձ քերեալք արհաւրաց մահու ։

Բայց նաւորդացն անուրջք թուէին արկածքն, և փրկեալք ինև՝ հայէին ընդ իս հիացեալ ։ Եւ հասաք 'ի Կիպրոս յամսեան գարնայնի նուիրականի Աստղկան. զի վայելուչ դիցուհւոյն համարէին կիպրացիք զեղանակն զայն տարւոյ, յորում

բնութիւն առհասարակ թուի հոգենորոգ զուարթացեալ՝ վերընձիւղել հրճուանս որպէս զծաղկունս 'ի դաշտի ։ Ընդ հասանել 'ի կղզի անդր՝ շնչէր սիւք քաղցր, որ յոյլ և պղերգ զբնակչացն գործէ զանդամս, այլ ազդէ 'ի նոսա բարս զուարթ և ծաղրասէր ։ Տեսանէի զդաշտորայս արգաւանդս 'ի բնէ և զուարճալից լքեալ գրեթէ անմշակ 'ի գործաւորաց բնակչացն ։ Տեսանէի ամենայն ուրեք կանայս և օրիորդս պճնապաճոյճ զարդարեալս, որք բարեբանութիւնս նուագելով Աստղկան՝ գնային նուիրել զանձինս 'ի մեհեան նորա ։ Պեղ վայելուչ և զուարթ բերկրութիւն նշողէին 'ի դէմս նոցա, այլ սեթևեթեալ էր գեղեցկութիւն նոցա ․ չերևէր անդ ազնուական պարզութիւն և պատկառանք ցանկալի, որ առաւելապէսն գործէ զգեղ զօշոտից ։ Կերպարան մեղկ, շպարք արուեստակեալք, հոպոտանք սնոտիք, ձեմք նազելիք, հայեացք գոգցես իմն հետազօտք արանց, նախանձընդդէմ հնարք բորբոքելոյ տոփանս 'ի սիրտս տեսողաց, և միանգամայն իսկ ասել, ամենայն որ ինչ 'ի կանայսն յայնոսիկ տեսանէի՝ թուէր ինձ անարգ և անգոսնելի ․ և այնու իսկ որով ջանային հաճոյ լինել, լինէին ինձ անհաճոյ ։

Ածին զիս 'ի մեհեան դիցուհւոյն, զի բազումք են նորա 'ի կղզւոջ անդ մեհեանք, և պաշտի մանաւանդ 'ի Կիթերա[10] յԻդալիոն[11] և 'ի Պափոս[12] ։ Մեհեանն՝ որ 'ի Կիթերա, յոր զիսն ածին, է

հանճուկ կճեայ, կամարակապ սիւնազարդ շուրջանակի. և սիւնքն ստուարք և բարձրաբերձք մեծավայելուչ զշինուածն կացուցանեն: Ճակատք եռանկիւնի 'ի չորից դիմաց զվերնախարիսխն և զծնօտիւ ամբառնային, բարձրաքանդակ դրօշեալ 'ի նոսա դէպք դիցուհւոյն հաճոյագոյնք 'ի տեսիլ: Ընդ սեամն մեհենին դիմէ անդադար խուռն ժողովրդեան նուիրաբեր:

Ի շրջափակին մեհենական ոչ է օրէն զենուլ երբեք զոհ, և ոչ որպէս յայլ մեհեանս այրել զճենճերս երնջոց և զուարակաց, և ոչ զարիւն նոցա հեղուլ անդր. այլ մատուցանել եւեթ առաջի բագնին 'ի նուէր, զընտիրս յանդէոց մատաղս այծտակս անբիծս և անարատս, զարդարեալս 'ի վառ ոսկեթել ծիրանի. պճնեալ զեղջիւրս նոցա ոսկեզօծեալս 'ի փունջս անուշահոտ ծաղկանց: Իսկ յետ կացուցանելոյ զնոսա առաջի բագնին, ածեն 'ի բաց 'ի զենարան անդր առ 'ի սպանող 'ի խնջոյս քրմաց դիցուհւոյն:

Նուիրին և ազգ ազգ ծաղկահոտ ընծայելեաց և զինեաց անուշից քան զնեկտար: Սպիտակք են զգեստք քրմացն և պճղնաւորք, 'ի վերջաւորս ոսկեհուռս զարդարեալ, և կամար ոսկի ընդ մէջ: Ծխեն զտիւ և զգիշեր 'ի բագինս անդ բուրմունք ազնուազունից արեւելեան խնկոց, և ամպոյ խիտ հանգոյն ելանեն դիզանման ընդ օդս: Սիւնք մեհենին առ հասարակ ծաղկազարդեալք 'ի դրասանգս, և սպասք զոհիցն առ հասարակ ոս-

կերգէինք . և անտառ մրտենեաց դիցանուէր շուրջ պատէր զմեհենան ։ Պատանեաց եւեթ նորատեաց և չքնաղագեղ օրիորդաց օրէն է մատուցանել զզոհսն քրմաց, և լուցանել զհուր 'ի բագինս ։ Այլ լքեալի ցոփութիւն անարգի տաճարն վեհափայլ ։

Սովորութիւն յիս 'ի սկզբան անդ նորք զործէր որ ինչ տեսանէի, այլ տակաւ ընդելացայ 'ի տեսիլն ։ Յոռութիւն ոչ ևս ազդէր ինձ արհաւիրս, և կենակցութիւն չզխտեմ որպէս յօժարեցուցանէր զիս յանառակութիւն . խաղ առնէին զանմեղութեամբս իմով, և զզուշութիւն իմ և պատկառանք էին այսմ կատակաց լրբենեաց ժողովրդեանն ։ Ջանն գործէին յուզել զկիրս իմ, լարել ինձ որոգայթ, և զրգռել յիս զախորժակս հեշտութեանց ։ Որ քան զօր նուաղէի, բարեմասնեալ դաստիարակութիւն ոչ ևս զոգցես օժանդակէր ինձ, ամենայն առաջարկութիւնք իմ բարեք 'ի դերև ելանէին . ոչ ևս զօրէի զդէմ ունել չարեաց՝ որ շուրջ պաշարէին զիս . և ձախողակի պատկառանօք ամօթ իսկ համարէի զառաքինութիւն ։ Նմանեալ առն լողողի ընդ գետ խոր և արընթաց, որ 'ի սկզբան անդ հերձեալ զալիս ընդդէմ յորձանացն իսկ 'ի վեր կոյս ընթանայ . այլ եթէ առափնայք իցեն զետեզերք, և չկարացէ առնուլ անդ հանգիստ, վաստակէ տակաւ, լքանի զօրութիւն նորա, ընդդարմանան անդամքն պարտասեալք, և 'ի յորձանաց գետոյն յափշտակեալ մնի ։

Զնոյն և ես կրէի կիրս. մթագնէին տեսլառք իմ, նուաղէր սիրտ իմ, ոչ ևս կարէի հպատակել բանին և հայրենականացն յիշատակի առաքինութեանց: Երազն իսկ, յորում զխնամատուն տեսանէի զՄենտոր իջեալ յելիսեանն ՚ի դաշտս, լքուցանէր զիս ՚ի սպառ. և քաղցր այնուհետև թուէին ինձ հրապոյրք թմբրիցն, որ ընդ երակս իմ սողոսկեալ՝ մինչև ցուղեղ ոսկերաց իմոց թափանցանէին: Սակայն դեռ ևս հառաչէի ՚ի խորոց սրտէ, լայի դառնապէս, և առ զայրոյթ սրտիս մնչէի իբրև զառիւծ, և ասէի. Թշուա՛ռ մանուկութիւն, ո՛վ դիք որք զմահկանացուօքս խաղ առնէք անկարեկիր, ընդէ՞ր շնորհէք նոցա զհասակս զայս արբեցութեան և տապագին ջերմանս. աւա՛ղ, ընդէ՞ր ոչ ա՛յլք սպիտակք ծածկեն զգլուխ իմ, և ոչ կորացեալ կամ յանկն տապանին հանգուցանէի հանգոյն իմոյ Լայերտեայ [13]. քաղցր էր ինձ մեռանել քան զայս անօթապարտ վատութիւն:

Այսպիսեօք ողոքէի զվիշտս իմ բողոքանօք. այլ սիրտ իմ արբեցեալ ՚ի խօլական ախտէն՝ զընկենոյր զամօթ, և գտանէի անդրէն խորասուզեալ ՚ի թախիծս մնաց. և առ տագնապ սրտիս թափ առեալ գնայի ՚ի մեհենական անտառին, որպէս եղջերու նետահար ընթանայ ընդ անտառ լայնալիր առ ՚ի սփոփումն ցաւոցն, այլ ընդ իւր զսլաքն կրէ զմահահարութ՝ հարեալ ՚ի լերդակողմն: Հանգոյն նմին զրահետ վարեալ ընթանայի առ

՚ի մոռացօնս վշտաց իմոց, այլ ոչ ինչ զվէրս սրտի
իմոյ ամոքէր։

Յայնժամ վայրի նշմարէի ՚ի բացեայ ՚ի նսեմա-
ստուեր անտառին զկերպարան իմաստնոյն Մ՝են-
տորի. այլ դէմք նորա այնպէս այլագունեալ ինձ
թուէին տխուր և խոժոռ, զի չազդէին յիս խըն-
դութիւն. ձայնեցի առ նա և ասեմ. Եթէ դու
իցես, սիրեցեալդ իմ Մ՝ենտոր. դու իցես, յոյսդ
իմ միակ. դու արդեօք իցես, թէ պատկեր խա-
բուսիկ զաչս իմ պատրէ. դու ինքն իցես, իմ
Մ՝ենտոր, թէ ուրու քոյին դեռ ինձ վշտակից։
Ո՞չ յերանելեացն իցես դու ՚ի կայս, որք ՚ի
վարձս առաքինութեանցն իւրեանց վայելեն, և
որոց դիք բերկրանս անապականս ՚ի յաւէրժ խա-
ղաղութեան պարգևեն յԵլիսեան ՚ի դաշտ։ Խօ-
սեաց, Մ՝ենտոր, եթէ տակաւին կենդանի՞ իցես,
և լիցի՞ ինձ բախտ տեսանել զքեզ, թէ ստուերք
սիրելւոյդ ինձ երևութանան։ Եւ զայսոսիկ բար-
բառելով, ընթացայ առ նա ոգեսպառ և խելայե-
ղեալ. իսկ նա զկայ առեալ կայր անխռով, և ոչ
քայլ մի ոտին յառաջ առ իս մատուցեալ։ Վկայք
էք ինձ, ով դիք, որպիսի՞ եղև ինձ խնդութիւն
յարկանելն իմում զիրկս զնովաւ, գոչէի առ խըն-
դութեան. Ոչ ոչ, չէ սա ստուեր ուրուական,
ունիմ զքեզ, փարիմ զքև իմն Մ՝ենտոր։ Թա-
նայր զդէմս նորա յուղխս արտասուաց, և կայր
անկեալ զպարանոցաւ նորա անխօս անբարբառ։
Այլ նա հայէր յիս տխրագին զորովալից աչօք։

Եւ ապա ուր ուրեմն ասեմ ցնա․ բամբէ, ուստի գաս, յոր վտանգս լքեր զիս, և յինչ արդ ձեռնհաս իցեմ առանց քո ։ Իսկ նա առանց պատասխանի տալոյ ինձ, ասէ մեծասաստ․ Փախիր դու, փութա 'ի փախուստ․ Թշնամիք են երկիրդ, օդ ժանտ, և որեար ժամանաժուտ՝ առ 'ի վարակել ևեթ զկրեարս 'ի Թոյն մահացու՝ միմեանց խօսակիցք ։ Հեշտութիւն դառն և վատ, որ աղիտագոյնն է քան զամենայն չարիս 'ի պանդորեան [14] տփոյն զեղեալս յաշխարհ, ապականէ աստ զկիրս, և վարէ աստի 'ի բաց զամենայն առաքինութիւն ։ Փախիր, զի կաս․ և յետս անգամ 'ի փախչել քում մի հայիցիս․ Ջնջեա և զյիշատակ անիծապարտ կղզւոյդ 'ի մտաց ։

Եւ զոյգ ընդ բանիցն մեզ իմն Թանձրախիտ Թօթափեալ յաչացս՝ տեսանէի լոյս անաղօտ, և ցնծութիւն իմն անուշակ և վստահութիւն ազդէր միւսանգամ 'ի սիրտ իմ ։ Այլ ցնծութիւնս այս յոյժ այլազգ 'ի մեղկ և 'ի խօլական խնդութենէն էր, որով զգայութիւնք իմ 'ի սկզբան անդ ցնորէին․ արբեցութիւն իմն էր այն և յուզումն կրից, խառն ընդ մոլեգնութեան և ընդ խայթս խղճի խոցոտիչս․ իսկ այս խնդութիւն իմանալի, գերաշխարհիկ իմն և երանաւէտ, որ անապականն է և անյեղլի, միանգամայն և անսպառ․ որչափ ոք խորասուզի 'ի սմա, այնչափ առաւել ճաշակէ զքաղցրութիւն, և զմայլի սովաւ անյագ 'ի կրից ։ Արտասուէի յայնժամ, և ոչ ինչ քաղցրագոյն

ինձ թուէր քան զայնպիսի արտասուս, և ասէի. Երանի՜ որոց յանդիման առնէ առաքինութիւն զամենայն ճաճանչս գեղոյ իւրոյ. իցէ՞ իսկ մարթ տեսանել զայն, և ոչ սիրել. իցէ՞ իսկ մարթ սիրել զայն, և ոչ գոլ երանելի:

Յայնժամ ասէ ցիս Մենտոր. Հարկ է ինձ թողուլ զքեզ. մեկնիմ աւասիկ, և ոչ ևս օրէն է ինձ յամել աստ: Իսկ ես ասեմ. Եւ յո՞ երթաս, ո՞ր այն երկիր անասպնջական՝ ուր ոչ զհետ քո եկից. մի՛ կարծիցես խուսափել յինէն, մեռայց հետամուտ քեզ: Եւ զայսուիկ բարբառելով ուժգին զնովաւ գիրկս արկեալ փարէի, այլ նա ասէ. Զուր ջանաս արգելուլ զիս. անողորմն Մետոփիս վաճառեաց զիս եթովպացւոց ոմանց կամ արաբացւոց. որոց երթեալ 'ի Դամասկոս Ասորւոց 'ի տուրևառ՝ կամեցան վաճառել զիս Ազայելի ումեմն, յուսացեալ շահել արծաթ բազում, զի խնդրէր նա ստրուկ Հելլէն առ 'ի գիտել 'ի նմանէ զսովորութիւնս և զբարս Յունաց, և տեղեկանալ գիտութեանց մերոց: Ծանրագնի իսկ գնեաց զիս Ազայել. և 'ի լուր սովորութեանցն մերոց արծարծեցան 'ի նմա իղձք գնալոյ 'ի Կրետէ, և ուսանելոյ անդ զօրէնս իմաստունն Մինովայ [16]: Եւ 'ի նաւելն մերում անդր, ստիպեցաք 'ի մրրկէ զկայ առնուլ 'ի Կիպրոս. և մինչդեռ սպասէաքն յաջողակ հողմոյ, եկն նա մատուցանել նուէրս 'ի մեհենի աստ. և ահա ելանէ նա, և հողմ բարեշունչ կոչէ զմեզ, ուռնուն գոգանան առագաստք մեր: Բարեաւ

մնա, իմն Տելեմաք. սաստիկ երկիւղած 'ի դիւց պարտի հաւատարիմ գոլ տեառն իւրում. ոչ ևս ներեն ինձ դիք լինել ինքնիշխան, վկայեն նոքա, զի եթէ ինքնիշխան էի՝ քեզ լինէի անձնանուէր։ Ո՜հ խաղաղութեամբ, յուշ լիցին քեզ արութիւնք Ոդիսեայ և արտասուք Պենելոպեայ. յուշ լիցին քեզ դիք արդարադատք։ Ո՛վ դիք ապաւէնք անմեղութեան, յորպիսում երկրի բուռն է ինձ թողուլ զպատանիս։

Իսկ ես ետու պատասխանի. Ոչ ես, իմն Մենտոր, ոչ ևս 'ի ձեռս քո է մեկնել յինէն. լաւ իցէ ինձ մեռանել քան բաժանել 'ի քէն։ Մի՛թէ չիցէ գութ յաղիս տեառնդ այդորիկ ասորւոյ. մի՛թէ վագր զգա դիեցոյց. և կամիցի՞ խլել զքեզ 'ի գրկաց իմոց. թո՛ղ սպանցէ նա զիս, կամ թողցէ ինձ գալ զկնի քո։ Յորդորես զիս 'ի փախուստ, և ոչ կամիս զի զհետ քո եկից փախստեամբ։ Գամ խօսել ընդ Հազայելի, թերևս գթասցի նա 'ի մանկութիւն իմ և յարտասուս. զի սիրէ նա զիմաստութիւն. և որ տարաշխարհիկ 'ի խնդիր իմաստութեան շրջի, չէ մարթ գոլ նմա խստասիրտ և անկարեկիր։ Անկայց յոտս նորա, զծնգովք նորա փարեցայց, և ոչ թողից զնա մինչև ներեսցէ ինձ գալ ընդ քեզ։ Սիրեցեալդ իմ Մենտոր, գերեկից քեզ եղէց, մատուցից նմա զանձն 'ի ծառայութիւն. եթէ մերժեսցէ զիս, վճարեալ է վասն իմ, զրաւեցայց 'ի կենաց աստի։

Եւ մինչդեռ զայս խօսէի, կոչեաց Ազայէլ զՄենտոր. եւ փութացայ անկանել յոտս նորա։ Իսկ նորա զարմացեալ՝ տեսանելով առ ոտս իւր զայր անծանօթ, ասէ ցիս. Զի՞նչ կամիս։ Իսկ ես ասեմ. Զկեանս, զի չկարեմ կեալ եթէ ոչ հրաման տացես ինձ գալ ընդ Մենտորի ծառայի քում։ Որդի եմ ես մեծին Ոդիսեայ, իմաստնագունին 'ի թագաւորս Յունաց՝ որք զգոռոզն կործանեցին զՏրովադա, զգերահռչակեալն ընդ բնաւ Ասիա։ Ոչ առ 'ի պարծանս ինչ յայտ առնեմ զազգ իմ, այլ առ 'ի գութ արկանել 'ի քեզ ընդ աղէտս իմ։ Ծովէ 'ի ծով 'ի խնդիր հօրն իմոյ շրջեցայ ընդ առնդ ընդ այդմիկ, որ հայրաբար ինձ առաջնորդէր. այլ 'ի լրումն աղէտիցս՝ եբարձ զդա յինէն բախտն, եւ արար քեզ ծառայ. թո՛յլ տուր զի եւ ես գերի եղէց քեզ։ Եթէ արդարեւ սիրես զարդարութիւն, եւ գնաս 'ի Կրետէ յուսումն օրինացն Մինովայ բարւոյ արքային, մի՛ փակեր զգութ քո առ հառաչանս իմ եւ առ արտասուս։ Ահա արքայորդի յանհնարին աղէտս իւր ստիպեալ 'ի խնդիր ծառայութեան. լաւագոյն զմահ երբեմն 'ի Սիկիլիա քան զծառայութիւն համարէր, այլ աղէտք իմ նախկինք՝ ճաշակք եւեթ դուզնաքեայք էին թշնամանաց ոխերիմ բախտին. եւ արդ երկնչիմ թէ գուցէ չեղէց 'ի համար ծառայից քոց ընդունելի։ Հայեցարո՛ւք, ո՛վ դիք, 'ի տառապանս իմ. եւ դու, ո՛ Ազայէլ, յիշեա զՄինովս՝ որոյ զարմանալի է քեզ իմաստութիւն,

և որ դատեալցն է և զքեզ և զիս յաղքատութեանն Պղատոնի [16] ՚ի սանդարամետս ։

Յայնժամ Ազայէլ քաղցր ՚ի յիս ակնարկեալ, և ձգեալ մարդասիրապէս զաջ իւր, յարոյց զիս և ասէ. Ոչ ինչ զանխուլ է յինէն իմաստութիւն Ոդիսեայ և առաքինութիւն. պատմէր ինձ ստէպ Մենտոր՝ որպիսի փառս ստացաւ նա առ Յոյնս, և համբաւ արագաթև հռչակեաց զանուն նորա աշխարհաքարոզ ընդ արևելս ։ Ե՛կ զկնի իմ զաւակդ ոդիսական, ես եղէց քեզ ՚ի հայր մինչև ՚ի գիւտ ծնողին քո. եթէ չէին իսկ բաւական փառք Ոդիսեայ և աղէտք իւր և քոյին ՚ի շարժել զսիրտ իմ, սակայն առ ՚ի սէր Մենտորի խնամարկէի քեզ ։ Ապաքէն սորուկ արծաթագին է նա ինձ, այլ ունիմ զնա առ մտերիմ բարեկամ. գնոց, զոր ետու վասն նորա, ստացայ զպատուականագոյնն և զսիրելի քան զամենայն բարեկամս իմ յերկրի ։ Գտի ՚ի նմա զիմաստութիւն՝ զոր խնդրէի, և նա ելոյց յիս զսէր առաքինութեան ։ Եւ արդ շնորհեմ նմա ազատութիւն, լիցիս և դու ինքն ազատ. ոչ այլ ինչ պահանջեմ ՚ի ձէնջ փրկանս, բայց զսիրտ ձեր ։

Աղէտք դառնակսկիծք յանկարծակի փոխեցան յիս ՚ի բերկրալից ցնծութիւն, քան զոր աւելի ոչ է մարթ կրել մարդոյ մահկանացուի ։ Մազապուր յահագին վտանգէ՝ մերձենայի ՚ի հայրենիս, հասանէր ինձ օգնութիւն դառնալոյ անդր, սփոփէի ուղեկցութեամբ այնորիկ՝ որ առ սէր

ւեթ առաքինութեան սիրէր զնա . և միանգամայն իսկ ատեցեալ, պատուհէր ընդ ամենայն բարեաց՝ 'ի գտանել զՄենտոր անկորուստ :

Բայց Մզայէլ յառաջ մատչէր ընդ ծովեզրն աւազուտ . և մեք զհետ ընթացեալ, մտաք 'ի նաւ : Հերձուին թիավարք զխաղաղաւէտ ալիս, զեփիւռ " թեթև փչէր զառագաստիւք, և խրախուսեալ զլաստափայտն վարէր առաջապաճեմիւ . և ոչ ևս տեսանէաք զԿիպրոս : Իսկ քանզի ցանկայր Մզայէլ հետազօտել զխմաստս մտաց իմոց, եհարց զիս զբարուց կիպրացւոցն . և պատմեցի նմա անկեղծութեամբ յոր վտանգ գտանէր անդ մանկութիւն իմ, և զյոյզս պատերազմաց որ յիս կրեալ : Պոռովեցաւ նա 'ի լսել զարհաւիրս իմ յախտէն, և գոչէր . Ո՛ Աստղիկ, ոչ անծանօթ է ինձ զօրութիւն քոյին և զաւակի քո . մատուցի իսկ խունկ 'ի բագինս քո, այլ զարշիմ յամօթապարտ մեղկութենէ բնակչաց կղզւոյդ, և 'ի խենէշ լկտութենէ տօնից քոց :

Իսկ ապա ճառս արկեալ խօսէր նա ընդ Մենտորի զնախագոյ էէն, որ արար զերկինս և զերկիր . զանհունն և զանյեղլի լուսոյն, որ հաղորդեալ բնաւից կայ մնայ ինքն անբաժին . և զգերաբուն զանպարագրելի իմաստութենէն, յորմէ ամենեցուն լուսաւորին միտք որպէս մարմինք յարեգակնէ : Իսկ յաւելոյր, զի որոյ չիք զլոյսն զայն անաղօտ տեսեալ՝ կոյր է նա որպէս 'ի ծնէ անտես, և կեայ 'ի խոր գիշերի զօրէն ժողովրդոց՝

յորս ոչ ծագէ արև զբազմամնեայ աւուրբք․ Հա-
մարի զանձն իմաստուն, և է անմիտ․ տեսանել
կարծէ զամենայն, և տեսանէ ինչ ոչ, և մեռանի
մինչ չև ինչ տեսեալ․ կամ թէ շատ, նշմարէ ա-
ղօտ ինչ և պատիր նշոյլս, ստուերս մնոտիս, և
կերպարանս անէական։ Այսպիսիք ոմանք են եր-
կրաքարշք զակատեալք 'ի դրդամս զգայութեանց
և 'ի հրապոյրս ցնորից մտաց։ Չիք ոք ճշմար-
տասէր յերկրի, բայց որ հարցանէ և սիրէ զլոյսն
զայն միտակայ, և հպատակէ նմին․ զի սա է՝ որ
ազդէ 'ի մեզ 'ի բարւոքն խորհել, և սոյն ինքն՝
որ կշտամբէ զմեզ յորժամ՝ 'ի չար ինչ մտաբերեմք․
և սա դարձեալ պարգևէ մեզ զկեանս և զմիտս։
Ովկիան իմն է լուսեղէն, և միտք մեր առ հա-
սարակ որպէս վտակք մանունք անտի բղխեալք,
անդրէն դարձեալ կորնչին։

Չև ես կարէի ես յայնժամ հասու լինել խորին
իմաստութեան ճառիցն, սակայն չգիտեմ որ-
պիսի ինչ զգացումն վեհ և իմանալի զսիրտ իմ
բորբոքէր, և յամենայնի 'ի նոսա թուէր ինձ
տեսանել լուսաճաճանչ զճշմարտութիւն։ Յա-
ւելին զրուցատրել և զդիցն ծննդոց և զդիւցա-
զանց, և յաղագս քերթողացն և ոսկեղինիկ [18]
դարուն և ջրհեղեղին և վաղնջուց վիպասանու-
թեանց ազգի մարդկան, զգետոյն մոռացու-
թեան [19] յոր խորասուզին հոգիք մեռելոց, զան-
վախճան պատուհասիցն՝ որ պատրաստեալ կան
ամպարշտաց 'ի մշտագիշեր անդունդս Տարտա-

ռաւին [20], և զերանաւէտ խաղաղութենէն՝ յոր վայելէն արդարք յելիսեան 'ի դաշտս առանց երկիւղի կորստեան ։

Մինչդեռ զայսոսիկ Նգայել և Մենտոր ընդ միմեանս խօսէին, և ահա դլփինք Թեփամորթք, ոսկեձաձանչք և կապոյտք խաղային ընդ ծով՝ ամբառնալով փրփրադէզ զալիս ։ Զհետ նոցա գային Տրիտոնք [21], զխեցիսն հնչեցուցանելով զալարափողս, շուրջ պար առեալ զԱմփիտրիտեայ [22] կառօքն՝ զոր ծովաձիք ձգէին ձիւնափայլք հրացայտ աչօք և ծխաշունչ ռնգամբք, և որ հերձեալ զաղտաղտուկ ալիս՝ ակօս զհետ իւր Թողոյր լայնատարր 'ի ծովուն, կառք հրաշազան ծովածին՝ սպիտակափայլ քան զփղոսկր, յեց յանիւս ոսկիս՝ որք ընդ խաղաղ մկանունս Ջուրց Թեթև սլանային ։ Գնային զհետ կառացն 'ի լող յաւերժհարսունք ծաղկապսակք գունդագունդ, և վարսք նոցա զուսովքն 'ի շունչ հողմոց գեղածփեալ ։ Իսկ դիցուհւոյն զաւազան ոսկի յաջումն 'ի սաստ կոհակաց, և 'ի ձախմէ զծնգօք նորա 'ի ծուծ ստեանցն կախեալ որդեակն իւր, մանկիկ աստուածն Պալեմոն [23] ։ Դէմք նորա զուարթատեսիլ, և մեծավայելուչ քաղցրութիւն ցածուցանէին զամպրոպս հողմոցս և զսեաւ մըրրիկ ։ Տրիտոնք զոսկեսանձ երիվարսն երասանակէին . լայնալիր 'ի վերոյ կառացն ծածանէր 'ի Թըռիչս ծիրանեփայլ առագաստ, զոր առեալ 'ի քաղցրասիք շնչմանց զեփիւռից՝ որ Թևապարէին զնո֊

վառ։ Ընդ Նուոլոս[24] ժիրաժիր գայր երևէր ընդ օդս եռանդուն և անհանդարտ, դէմք նորա տխուր և խորշոմ, բարբառ սպառնալից, յօնք թաւք 'ի վայր անկեալք, և աչք նորա հրացայտք աղօտաձաձանչք և խոժոռք կարկէին զհիւսիսակս ամեհիս և ընկրկէին զամպրոպս։ Ընդ և կէտք անհեթեթք և նհանգք առ հասարակ անդնդայինք ծծեալ և զզայռեալ ընդ ռնգունս իւրեանց զաղտաղտուկ ալիս, խուժէին ձեպ 'ի ձեպ 'ի խորոց վհից 'ի զնին դիցուհւոյն։



## ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ

### ՉՈՐՐՈՐԴԻ ԳՐՈՑՆ

1 Այգն կամ Աւրորա համարի դուստր արեգական, կամ Տիտանայ և երկրի, դիցուհի տունջեան։ Նկարի 'ի բանաստեղծից քրքմագոյն հանդերձիւք և վարդագոյն մատամբք, ջահ 'ի ձեռին՝ բազմեալ յոսկեզօծ կառս։ Ինքն ընդ առաւօտս բացեալ զդրունս երկնից, աւետէ զդարձ հօր իւրոյ։

2 Հեկտոր որդի Պրիամու արքային տրովացւոց զօրավար քաջ, որ սպան զՊատրոկլէս բարեկամ Աքիլլեայ, յորմէ և սա դրդուեալ՝ սպան զնա ինքն, և զդիակն նորա կապեալ յետ կոյս երկձիոյն՝ եած ընդ քարշ շուրջ զպարսպօքն Տրովադայ երեքկին, և ապա ետ զայն հօր նորա Պրիամայ։

3 Թեսէոս որդի Եգէոսի արքային աթենացւոց, որ յԻպպոլիտա Ամազոնէ ծնաւ զԻպպոլիտոս։ Էջ նա 'ի դժոխս յափշտակել զՊերսեփոնէ կին Պղուտոնի սանդարամետին. այլ ըմբռնեալ 'ի Նմանէ եկաց 'ի շղթայս, մինչև Հերակլէս ազատեաց զնա։

4 Ալկէոն կոչի Հերակլէս յանուն հաւոյն իւրոյ Ալկէոսի։ Տես Հերակլէս. Գիրք Բ. ծան. 2։

5 Մորփէոս մի յորբանեկաց դիցն քնոյ, որ քնաբեր կակաչիւ նինջ զամենեքումբք ածէ յորս մերձի, և երազս յաճախէ։

6 Երոս կամ Կուպիդոն համարի որդի Արէսի և Աստղկան, աստուած սիրոյ և ցանկութեան. Նկարի մանուկ գեղանի, աղեղն 'ի միում ձեռին, և ջահ վառեալ 'ի միւսումն կրելով. և կապարճս 'ի յետս։

7 Ելիսէան դաշտ էին վայրք զուարճալիք, մշտադարուն օթևանք արդարոց վախճանելոց։

8 Ստիւքս աղբիւր առ ստորոտով լերինն Նոնակրեայ յԱրկադիա, որոյ ջուրք ցրտագինք էին և թունաւորք՝ անդէն և անդ ածելով մահ ըմպելեացն։ Գետ կամ լիճ դժոխային զսա կեղծեն քերթողք. և որ միանգամ 'ի դիցն երդնոյր յայն, չիշխէր անցանել զերդմամբն, երդմնազանցիցն զամս հարիւր զրկելով յաստուածութենէ։

9 Սպանդարամետին Դիոնիսի կամ Բաքոսի քրմուհիք զգե-

նուէրն վագրենի, և հերարձակք ջահս վառեալս 'ի ձեռին կրելով և գաւազան բաղեղնապատ, վազս առնուին խառնաձայն ճչիւք, մոլեգնեալք յաւիւն դիցականն, պարս զբագնաւ նորա յօրինելով, վասն որոյ և աստուածապարարկքն կոչեցան:

10 ԿԻԹԷՐԱ կղզի մօտ 'ի Կրետէ, որ արդ կոչի Չէրիկօ, ուր եհաս Աստղիկն հեծեալ 'ի կոնք խեցի ծովային. վասն որոյ բնակիչք կղզւոյն կանգնեցին նմա անդ մեհեան:

11 ԻԴԱԼԻՈՆ քաղաք 'ի Կիպրոս. իսկ ԻԴԱԼԷԱ կամ ԻԴԱԼԻ լեառն 'ի Կիպրոս նուիրեալ Աստղկան:

12 ՊԱՓՈՍ քաղաք Կիպրոսի նուիրեալ Աստղկան, ուր էր նորա և մեհեան:

13 ԼԱՅԷՐՏ, որդի Արկեսիոսի, հայր Ոդիսեայ:

14 ՊԱՆԴՈՐԱ ըստ առասպելաց նախաստեղծ կին, որում դիք առ հասարակ եղեն պարգևատու, ուստի զանուանն կալաւ ամենապարգև: Արամազդ ցասուցեալ ընդդէմ Հեփեստեայ՝ վասն գողանալոյ նորա հուր յերկնից, առաքեաց յերկիր զՊանդորա՝ տուփ ամփոփեալ տուեալ 'ի ձեռս նորա. զոր Եպիմեթեայ եղբօր Հեփեստեայ բացեալ հետաքրքրութեամբ, անտի 'ի դուրս խուժեցին ամենայն ախտք և աղէտք, և յոյս եւեթ 'ի յատակ տփոյն մնաց: Պանդորաւ զընութիւն այլաբանէին հեթանոսք:

15 ՄԻՆՈՍ որդի Արամազդայ և Եւրոպայ դստեր Ագենորայ արքային Կրետայ, իմաստուն օրէնսդիր կրետացւոց, որ վասն արդարակորով ուղղութեանն կացուցաւ 'ի Պղուտոնէ դատաւոր 'ի դժոխս:

16 ՊԼՈՒՏՈՆ որդի Կռոնոսի և Ռէայ. եղբայր Արամազդայ և Պոսիդոնի, ընդ որս բաժանեցաւ զտիեզերս, և վիճակեցաւ զԴժոխս:

17 ԶԵՓԻՒՌ հեզաշունչ հողմ արևմտեան, ըստ առասպելաց որդի Եւոլոսի և Արշալուսոյ, ամուսին Փլորայ դիցուհւոյն՝ յորմէ ծնաւ բազում որդիս: Նկարեն զսա 'ի դէմս գեղեցիկ պատանւոյ:

18 ՈՍԿԵՂԷՆ դար կոչեն հեթանոսք զժամանակ թագաւորութեանն Կռոնոսի, իբր զի 'ի ժամանակին յայնմիկ պտղաբերէր երկիր առանց մշակութեան ինքնաբոյս զամենայն, և Աստրէա այսինքն է արդարութիւն իշխէր յաշխարհի, և հասարակաց ամենեցուն էին կեանք յօդիւ սիրոյ: Աղօտ պատկեր դրախտին եդեմական:

19 Զգետս զայս սանդարամետական 'ի յոյն բարբառ կոչեն քերթողք ԼԷԹԷ, այսինքն ՄՈՌԱՑՈՒԹԻՒՆ. իբր զի արբմամբ 'ի ջրոյ նորա մոռանան մեռեալք զանցեալս:

20 Տարտարոս խորք դժոխոց, ուր 'ի տանջանս կան մեղաւորք։

21 Տրիտոնք դիք ծովու, որդիք Պոսիդոնի, և փողարք Նորին համարեալ 'ի քերթողաց. միջովք չափ մարդակերպք, անտի 'ի վայր աւարտեալք 'ի ձուկն դլփինատիպ տուտամբ, որունս իբր զձիոյ երկուս ունելով առաջակողմեանս, և խեցի գոգաւոր կրելով 'ի ձեռին իբր գալարափող։

22 Ամփիտրիտէ դուստր Ովկիանու և Դորիսի կին Պոսիդոնի, դիցուհի ծովու։

23 Պաղէմոն դիք ծովու, որդի Աթամանտայ և Ինովայ։

24 Եոլոս որդի Արամազդայ և Ակեստեայ, իշխեցող հողմոց։



# ԱՐԿԱԾՈՑ ՏԵԼԵՄԱՔԵԱՅ



## ԳԻՐՔ ՀԻՆԳԵՐՈՐԴ

# ՆԱԽԱԴՐՈՒԹԻՒՆ

Պատմէ Տեղեմաք, լուեալ 'ի հասանելն իւրում 'ի Կրետէ՝ զԻդոմենեայ արքային Կրետացւոց զոհել զորդին իւր միածին առ 'ի կատարումն յանդուգն ուխտին. և զի կրետացիք 'ի վրէժ արեան պատանւոյն հալածեալ զարքայն, յետ ընդ երկար վարանմանց՝ ժողովեալ էին կացուցանել զայլ ոք Թագաւոր. և զի հրաւիրեալ և ինքն Տեղեմաք 'ի ժողովն, և գուպարայաղթ 'ի մրցմունս՝ լուծեալ և զխնդիրս ինչ 'ի գիրս օրինացն Մինովայ, ընտրի 'ի ծերակուտէն և 'ի ժողովրդենէ վասն իմաստութեան իւրոյ 'ի Թագաւոր:

# ԱՐԿԱԾՔ ՏԵԼԵՄԱՔԵԱՅ

## ԳԻՐՔ ՀԻՆԳԵՐՈՐԴ

Օ՛հետ զարմանահրաշ տեսլեանն երեւէին 'ի բացէ լերինք Կրետեայ' խառն 'ի խուռն ընդ ամպս երկնից և ընդ ալիս ծովու։ Տեսաք ապա զկատար Իդայ լերին[2], որ գեր 'ի վերոյ քան զայլոց լերանց կղզւոյն' որպէս եղջերու հինաւուրց բազմաստեղ-նեան եղջերօքն յանտառի 'ի մէջ որթուց եղանց' ամբառնայ։ Տակաւ պայծառագոյն զծովեզերս կղզւոյն տեսանէաք, որք հանգոյն իմն կրկէսից շուրջ տեսանելեաց մեզ յանդիմանս լինէին։ Որչափ անխնամք էին անդաստանք Կիպրոսի և անգործք, նոյնչափ երկիրն կրետական բերկրի էր և պտղալից երկասիրութեամբ բնակչացն[3]։

Ուր առ ուր էին անդ գիւղք բարեշէնք, աւանք հանգունատիպք քաղաքաց, և քաղաքք մեծակառոյցք։ Ոչ գոյր անդ դաշտ, որ ոչ զձեռին ժիր մշակի բերէր զկնիք. ամենայն ուրեք ակօսք խորք պատառեալք յարօրոյ, և փուշ և տատասկ

և որ ինչ այլ մոլախոտք խափանիչք երկրի՝ անծանօթք էին անդ: Քաղցր էր մեզ տեսանել անդ հովիւս խորաձորս՝ ուր նախիրք արջառոց բառաչէին ընդ արօտ պարարտ առ վտակօք, խաշինս ճարակաւորս յեմակս բլրոց, արտորայս լայնալիրս ծածկեալս 'ի դեղձանիկ 'ի հունձս՝ յառատաձիրն Դեմետրեայ [1] 'ի լիուլի պարգևաց, դարևանդս պճնեալս 'ի վարսագեղ այգեաց և յողկուզաց նորախայծից՝ որ խոստանային մշակաց զանուշակ տուրս Սպանդարամետին [2] փարատիչս հոգոց մահացուաց:

Մենտորի յառաջագոյն իսկ լեալ էր անդ 'ի Կրետէ, և որ ինչ գիտէրն զկղզւոյն՝ պատմեաց մեզ, և ասէր. Կղզիդ՝ ընդ որ զարմանամն եկք, հարիւր քաղաքօքն հռչակաւոր, մնուցանէ անաշխատ զբնակիչս իւր անհամարս. զի որք մշակենն անդ զերկիր, ընուն բերովք նորա: Նպաստելի է ծոց նորա արգաւանդ. որչափ յաճախեն անդ մարդիկ, եթէ գործունեայք ևեթ իցեն, յառաւելագոյն վայելեն 'ի լիութիւն. չիք նոցա տեղի նախանձու ընդ միմեանս: Երկիրն այն մայր բարեգութ յաճախէ զպարգևս իւր ըստ յաճախել զաւակացն, որք արժանի պարգևաց նորա վաստակօքն իւրեանց գտանին: Փառասիրութիւն ևեթ և ագահութիւն աղբիւրք են աղետից մարդկան. որք 'ի խնդիր ստանալոյ զամենայն, աւելորդացն ցանկութեամբ թշուառանան. եթէ սակաւապիտութեամբ զկարևորաց ևեթ պի-

տոյից իւրեանց շատ համարէին զլրումն, զտա֊նելին ամենայն ուրեք լիութիւն, հրճուանս, խա֊ղաղութիւն և միաբանութիւն։

Խելամուտ գտաւ այսմ իմաստնագոյնն և բարե֊լաւ քան զբնաւ թագաւորս Մինովս։ Որ ինչ 'ի կղզւոջս տեսանէք զարմանալիս, արգասիք են առ հասարակ օրինաց նորա։ Դաստիարակու֊թիւն մանկտւոյ սահմանեալ 'ի նմանէ, առողջ և կորովի գործէ զմարմինն. զի 'ի մատաղ տիոց կրթին 'ի կենցաղ պարզ սակաւապէտ և աշխա֊տասէր, զամենայն գրգանս համարեալ մեղկա֊ցուցիչ մարմնոյ և մտաց։ Ոչ այլ իմիք սովորին ցանկալ, բայց միայն անընկճելի առաքինութեան և յաճախելոյ վաստակօք փառս անձանց։ Ոչ առ֊համարհել եւեթ զմահ 'ի վտանգս պատերազմաց համարի աստ քաջութիւն, այլ և առ ոտն կոխել զփարթամ ճոխութիւն և զամօթապարտ հեշ֊տութիւն։ Անպատուհասք առ այլս յազգաց՝ պատուհասին աստ ապերախտութիւն կեղծաւո֊րութիւն և ագահութիւն։

Պերճանաց և զեղխութեան չեն իսկ աստանօր պէտք սանձահարելոյ, զի անծանօթ իսկ են այ֊նոքիկ 'ի Կրետէ։ Ամենեքին աստ պարապեն 'ի վաստակս, և ոչ ոք մտաբերէ 'ի մթերս ընչից. ամենայն ոք լիուլի համարի վարձս վաստակոց իւրոց զքաղցր և զբարեկարգ կենցաղ, յորում ժառանգէ զխաղաղութիւն, և վայելէ առատա֊պէս յամենայն կարևոր պէտս կենաց։ Տարա֊

դրեալ են առտի կահք մեծագինք, չքեղ հանդերձանի, խնճոյք խրախճանաց, և ոսկեձեղուն ապարանք։ Զորձք նոցա առուիք են նրբաթելք և գեղեցկաթոյրք, այլ պարզք և ոչ ասղնագործեալք։ Ճաշք նոցա անպաճոյճք, գինի սակաւիկ, հաց գերմանակ, պտուղք որպէս դրեթէ ինքնաբերք 'ի ծառոց, և կիթ խաշանց պատրաստեն զկարևորագոյն մասն կոչնոց նոցա. և թէ շատ, ճաշակեն զոյզն ինչ խորտիկ անհամեմ. զի զընտիրս 'ի բազմահոյլ անդէոց պահեն 'ի բարգաւաճանս երկրագործութեան։ Տունք նոցա կոկիկք են զուարթ և անզարդ. ճարտարապետութիւն հոյակապ չէ ինչ աստ անծանօթ, այլ պահի մեհենաց դից. 'ի յանդգնութիւն համարի ընակել մահկանացուի յապարանս հանգոյնս տաճարաց վեհիցն անմահից։ Ճոխութիւնք կրետացւոց են առողջութիւն, կորով, արիութիւն, խաղաղութիւն, միաբանութիւն ընտանեաց, ազատութիւն քաղաքացւոց, առատութիւն կարևորաց, արհամարհութիւն աւելորդաց, գործունէութիւն և սոսկումն յանգործութենէ, նախանձ առաքինութեան, օրինապահութիւն, և երկիւղածութիւն յարդարութենէ դից։

Հարցի զնա և զիշխանութենէ թագաւորին, և ասէ. Ամենիշխան վարէ նա տէրութիւն 'ի վերայ ժողովրդեան. այլ և 'ի վերայ նորա իշխեն օրէնք։ Ազատ է ամենևին 'ի բարեգործել. այլ կապեալ և կաշկանդեալ առ 'ի չար ինչ գործել.

օրէնք յանձնեն նմա զժողովուրդն որպէս պա-
տուականագոյն քան զամենայն աւանդս, որպէս
զի լիցի նա հայր հպատակացն իւրոց: Մինչ
՚ի շինութիւն կենաց բազմամբոխ ժողովրդոց
հրամայեն ծառայել զգօնութեամբ իւրով և չա-
փոյիւք, և մի՛ բազմութեամբն թշուառութեամբ և
վատ ծառայութեամբ արբանեկել գոռոզութեան
և զեղխութեան միոյն: Թագաւորի չէ արժան
ունել ինչ առաւել քան զայլս, բայց որ ինչ կա-
րևորն է առ ՚ի սփոփումն բազմավիշտ պաշտաման
նորա, և առ ՚ի մեծարոյ առնել ժողովրդեան
զպաշտպան օրինացն: Նա աւանիկ պարտ է թա-
գաւորի զգաստագոյն քան զայլս գոլ, թշնամի
զեղխութեան, և զգոյշ ՚ի պերճանաց և ՚ի գոռո-
զութենէ: Ոչ զանձիւք և զրզանօք պարտ է նմա
առաւելուլ, այլ իմաստութեամբ և փառօք: Պարտ
է նմա արտաքոյ պաշտպան կալ հայրենեաց զօ-
րավարութեամբ, և առանձին՝ դատելով զժողո-
վուրդս, առ ՚ի յարդարել զնոսա առաքինիս ի-
մաստունս և բարեբաստիկս: Ոչ վասն անձին ինչ
կացուցանեն զնա դիք թագաւոր, այլ ՚ի սպաս
ժողովրդոց. նոցա ամենայն կեանք նորա և հոգք
և իղձք նուիրեալ են. և եթէ ոչ մոռացեալ զանձն՝
ընծայի բոլորանուէր յօգուտ հասարակաց, չկա-
րէ ՚ի վիճակին իւրում վայելուչ գոլ:

Երգել իսկ Մինովս որդւոց իւրոց չթագաւո-
րել զհետ իւր ՚ի չառնուլ նոցա յանձն զօրէնս
զայսոսիկ. զի սիրէր նա զժողովուրդ իւր առա-

ւել քան զընտանիս։ Սովին խնամածութեամբ կացոյց նա զԿրետէ այսպէս հզօր և բարեբաստ, և սովին զգօնութեամբ զլեաց զփառս աշխարհակալաց առ հասարակ՝ որք առ 'ի մեծութիւն իւրեանց կամին ծառայեցուցանել զազգս սնափառութեամբ. և ապա արդարութեամբն իւրով գտաւ արժանի գահերէց 'ի սանդարամետս դատաւոր բազմել մեռելոց։

Այլ 'ի խօսելն Մենտորի զայսոսիկ, հասաք 'ի կղզի անդր։ Տեսաք մեք անդ զհռչակաւոր բաւիղն [6], ձեռակերտ հանճարեղին Դեդալեայ ըստ օրինակի եգիպտականին մեծի, զոր տեսեալ իսկ էաք։ Մինչդեռ 'ի զնին կայաք հրաշակերտ շինուածոյն, և ահա ծածկէր ծովեզրն յամբոխէ մարդկան՝ որք խուռն դիմէին հուպ 'ի ծով անդր։ Հարցաք զվասն էրն, և Նաւսիկրատ կրետացի պատմեաց մեզ այսպէս.

Իդոմենեէ որդի Դևկալիոնի, Թոռն Մինովայ, ընդ այլ 'ի Թագաւորացն երթեալ էր 'ի պաշարումն Տրովադայ. և յետ կործանման քաղաքին իբրև դառնայր այսրէն, յարեաւ մրրիկ սաստիկ, մինչև նաւապետին և ամենեցուն իսկ՝ որ փորձք էին նաւարկութեան, համարել անհրաժեշտ 'ի վերայ հասեալ կորուստ։ Ամենայն ոք առաջի աչաց նկատէր զմահ, ամենայն ոք տեսանէր զանդունդս բացեալ առ 'ի կլանել զնա, և ամենայն ոք ողբայր զաղէտս իւր՝ ոչ ակն ունելով տխուր հանգստեան, յոր Թաղելոցն ևեթ

վայելէն հոգիք՝ ընդ ստուգականն անցեալք ընդ գետ[7] ։ Յայնժամ Իդոմենեայն՝ զաչսն 'ի յերկինս ամբարձեալ, թագկատարած կարդայր առ Պոսի-դոն ․ Լո՛ւր աստուած հզօր, իշխեցող ալեաց ծո-վու, լո՛ւր հէքիս ․ եթէ լիցի տեսանել ինձ միան-գամ զԱրետէ՝ ապրեալ 'ի զայրագին մրրկացս, մատուցից քեզ զոհ՝ որ նախ ելցէ ինձ ընդ ա-ռաջ ։

Յայնմ վայրի որդի նորա անձկանօք տեսու-թեան հօրն՝ փութայր ընդ առաջ նորա, գիրկս արկանել նմա ․ ոչ գիտէր հէքն, զի յօրհաս իւր ձեպէր ։ Մազապուր 'ի մրրկէն անդր 'ի նաւա-հանգիստն ցանկալի ժամանեաց հայրն, զոհա-նալով զՊոսիդեայ վասն ուխտիցն լսելի լինելոյ ․ այլ ծանեաւ անդէն քանի աղխտաբերք էին նմա այնոքիկ ։ Անդստին նախազգեցիկ իմն զիղջ ընդ ուխտ իւր անհանձար ձմլէր զսիրտ նորա ․ խի-թայր հանդիպել իւրոցն, և թուէր նմա տեսա-նել որ քան զամենեսեան սիրելին էր նմա ։ Իսկ անողոքելին 'ի դիս անողորմն Նեմեսիս[8] որ հսկէ 'ի պատուհաս մահացուաց, և մանաւանդ զոռոզ արքայից, մահահամբոյր աներևոյթ ձեռամբն մղէր զԻդոմենէ յաղէտսն ։ Հասեալ նորա 'ի ծովեզրն, այն ինչ զաչս 'ի վեր էառ՝ 'ի տեսիլ որդեկին զարհուրեալ ընկրկեցաւ, և աչք իւր շուրջ յածեալ հետագօտէին զայլ ոք 'ի նուազ սիրելեաց առ 'ի զոհ ։ Իսկ որդւոյն անկեալ զպա-րանոցաւն հայրենի, ոչ կարէր 'ի վերայ կալ ան-

կարեկիր ապշութեան հօրն . և տեսանելով զար-
տասուս նորա , ասէ . Ո՞ր ի՞նչ է քո տրտմութիւնդ ,
հայր . յետ բազմամեայ պանդխտութեան դարձ
արարեալ յաթոռ քո 'ի ցնծութիւն որդեկիդ , և
ընդէ՞ր տրտմեալ կաս . զի՞նչ մեղայ , զի դար-
ձուցանես զաչս քո յինէն ։ Բայց հայրն հեղ-
ձամղձուկ 'ի վշտացն՝ վայրիկ մի անբարբառ , ա-
պա հառաչանօք 'ի խորոց սրտէ ասէ . Աւա՜ղ ,
զի՞նչ երդուայ քեզ , ո՛վ Պոսիդոն , քանի՛ ծանրագնի
փրկեցեր զիս 'ի նաւաբեկութենէ . մատնեա զիս
անդրէն ալեաց և ժայռից 'ի կործումն , զի կորեայց
ես , և կեցցէ որդեակն իմ ։ Ահա արիւն իմ , ան-
նուէր դիք , փոխանակեսցի արիւն իմ ընդ նորայն ։
Ելաց , և զոյգ ընդ բանին մերկեաց զդաշոյն՝
դնալ զիւրովին . այլ որք մերձն կային հասին կա-
լան արգելին զնա ։

Ընդ ծերունին Սոփրոնիմ թարգմանն դիցն կա-
մաց եցոյց նմա , զի չէր ինչ հարկ մխել զձեռն իւր
յարիւն որդեկին՝ առ 'ի հաշտ առնելոյ զՊոսի-
դոն , և ասէր . Յանդուգն երդուար , անհաճոյ է
դից պաշտօն անգթութեան . զգոյշ լեր չյաւե-
լուլ 'ի մեղս երդմնանդ զկատարումն նորին հա-
կառակ օրինաց բնութեան ։ Զե՛ն Պոսիդեայ
զուարակս ձիւնափայլս հարիւր , հե՛ղ զարիւն նո-
ցա շուրջ զծաղկապսակ բագնաւ նորա , և ծխես-
ցեն խունկք քո 'ի հոտ անուշից առաջի դիցն ։

Բայց Իդոմենէս , գլուխ 'ի վայր արկեալ ,
կայր անմռունչ . բորբոքէր յաչս նորա մոլեգնու-

թիւն, մահատիպ դիմաց նորա այլափոխեալ առագ արագ շրջէին գոյնք, և դողդոջէին անդամք նորա: Իսկ որդին ասէր. Ահաւասիկ ես, հայր իմ, ահաւասիկ որդեակն քո պատրաստ 'ի մահ առ 'ի հաշտ առնել զգլխս, մի ձգեր 'ի վերայ քո զցասումն աստուածասաստ. մեռայց մտադիւր, զի դու զերծանիցիս 'ի մահուանէ. հար զիս, հայր, մի երկնչիր, չեմ ինչ վատասիրտ և հօրդ առաքինւոյ անարժան որդի: Յայնժամ Իդոմենէս խելայեղ այսահարեալ իմն 'ի ժանտից դժոխայնոց, յանպատրաստից որոց մերձն կային՝ մխեաց զսուսերն 'ի սիրտ պատանւոյն, և յետս ձգեալ զայն ծխաշունչ արիւնաթաթաւ՝ մինչ կամէրն արկանել զայն 'ի կող իւր, դարձեալ 'ի վերայ հասեալ որք շուրջն կային՝ արգելին զնա:

Անկաւ մանուկն յարեան իւրում թաւալգլոր, ծանրացան արտևանունք նորա 'ի ստուերս մահու, և աչք նորա կիսաբացք առ խուն ինչ նշոյլ լուսոյ անհանդուրժելիք փակեցան 'ի սպառ: Որպէս շուշան չքնաղագեղ հարեալ առ արմին 'ի խոփ սայրասուր՝ տապաստ անկանի 'ի դաշտի, չև կորուսեալ զգեղ ձիւնափայլ, չև զպայծառութիւն ակնապարար, այլ ոչ ևս ընդունի սնունդ 'ի յերկրէ և ոչ ևս կեայ, այսպէս զաւակն իդոմենեան իբր զծաղիկ մատաղատունկ դեռաբուսիկ 'ի սկզբնաբոյս հասակին անկանէր կտրեալ:

Յանհնարին վշտացն հայր նորա անզգայեալ՝ անգիտանայր ուր էրն, որ ինչ գործեալն էր, և

զոր պարտէրն գործել. դանդաչէր տատանէր ըն
թանայր 'ի քաղաքն կոյս, հարցանելով զորդեակն
իւր ։ Իսկ ամբոխն շարժեալ 'ի գունդ ընդ աղէտս
մանկանն, և 'ի սոսկումն ընդ խուժադուժ որ֊
դեսպանութիւն արքային, աղաղակէր՝ արդարա֊
դատ դից մատնեալ զնա ձիւաղաց դժոխայնոց ։
Յայնժամ զայրոյթ զինուորեաց զնոսա 'ի վիրգս
և 'ի վէմս, և գժտութիւն շնչեաց 'ի սիրտս նոցա
թոյն մահացու ։ Կրետացիք, ազգ զգօն, մոռա֊
ցեալ զանձկալին իւրեանց զիմաստութիւն՝ ոչ ևս
ակն ածէին թոռին գերահանճարն Մինովսայ ։
Իսկ բարեկամք թագաւորին չգտեալ այլ ինչ
հնարս փրկութեան նորա, ածին զնա անդրէն 'ի
նաւ, և ելեալ անդր ընդ նմա փախեան՝ ապաս֊
տանեալք յալիս ։ Իսկ ապա թագաւորին 'ի միտս
լեալ, շնորհս մատոյց նոցա զի հանին զնա յեր֊
կրէ՝ զոր շաղախեալն էր արեամբ որդեկին, ան֊
ասպնջական իւր զնա գործեալ ։ Իսկ վարեալք
'ի հողմոց յԱրեկորնեայ կոյս, անդ հիմնեցին
թագաւորութիւն նոր յերկիր սալենտեանց [9] ։

Իսկ կրետացիք մնացեալ անտէրունչ, խորհե֊
ցան ընտրել զոք տեսուչ՝ առ անեղծ պահպանու֊
թիւն օրինացն իւրեանց, սկիզբն ընտրութեանն
առնելով այսպէս ։ Ըստ որեարն ամենայն քա֊
ղաքացն հարիւրոց եկին այսր 'ի մի վայր. մատու֊
ցան զոհք, հրաւիրեցան իմաստունք առ հասա֊
րակ ականաւորք մերձակայ գաւառաց՝ 'ի քննին
հանճարոյ արժանաւորացն 'ի տեսչութիւն ։ Պա֊

տրաստեցան տօնք խաղուց, ածել 'ի հանդէս զհետամուտս ընտրութեանն, և տալ մրցանակ զթագաւորութիւն այնմ, որ յաղթական բնաւից հանդիսասցի 'ի հանճար և 'ի կորով: Վասնզի խնդրէր թագաւոր ժիր և կորովի մարմնով, և միտօք հանճարեղ և առաքինի: Եկաց իսկ օտարաց բաց է ասպարէզ:

Ի լուր հրաշապատում իրացս, ասէ ցմեզ Նաւսիկրատ. Ողջ է հիւրքդ, մտերմուք 'ի ժողով այսր. մտերմուք և դուք, և եթէ տացեն դիք միում 'ի ձէնջ զյաղթութիւն, թագաւորեսջիք աստ: Իսկ մեք ոչ առ 'ի յաղթութիւն ինչ, այլ առ 'ի տեսիլ նորանշան իրացն երթեալ ընդ նմա՝ հասաք 'ի տեղի ուրեք հանգոյն կրկէսի անտառախիտ շուրջանակի, ուր 'ի մէջն էր ասպարէզ պատրաստեալ 'ի հանդէս մարտի, և շուրջ տեսանելեաց տեղի հողաբլուր դալարազգեղ՝ ուր բազմէր կարգ ըստ կարգէ ժողովուրդ անթիւ: Եւ իբրև մատեաք, ընկալան զմեզ մեծարանօք. քանզի կրետացիք օտարասէրք են քան զամենայն ազգս, և երկիւղածք 'ի հիւրընկալութիւն: Բազմեցուցին զմեզ, և հրաւիրեցին իսկ 'ի մարտ. բայց Մենտոր հրաժարեաց վասն ալեացն, և Ազայէլ վասն մարմնոյն տկարութեան: Մանկութիւն և կորով բառնային յինէն զամենայն պատճառանս. սակայն ակնարկէի 'ի Մենտոր՝ առ 'ի գիտել զխորհուրդս նորա: Եւ իբրև ծանեայ զի կամէր, ընկալայ զհրաւէրն. մերկացայ զհանդերձս

իմ, օծայ յիւղ անոյշ և 'ի փայլունակ հեղեալ զբոլոր անձամբս, և խառնեցայ ընդ մարտիկս ։ Բարբառ ամենուստ լսելի լինէր ․ Ահա որդին Ագլխնեայ եկեալ 'ի փորձ մրցանակին ․ և բազումք 'ի կրետացւոց անտի, որոց տեսեալն էր զիս յԻթակէ 'ի մանկութեան, ծանեան զիս ։

Գօտէկռիւ մրցութիւն անց նախ 'ի հանդէս ․ և հռոդացի ոմն ամաց իբր երեսուն և հնգից յաղթեաց ամենեցուն, որք իշխեցին ոտոխել ընդ նմա ։ Զի էր նա տակաւին յաստիս երիտասարդութեան, բազուկք նորա ջլապինդք և աճառուտք, իրան ճապուկ և հուժկու, և առ դոյզն ինչ շարժուած՝ ամենայն մկանունք անդամոց նորա ձգտեալ գային յերևան ։ Ոչ արժանի իւր վարկաւ նա զիս ախոյեան, և գթացեալ 'ի մատաղ մանկութիւն իմ՝ յետս կամէր ընկրկել ․ այլ ես յառաջ անդր մատեայ ։ Եւ յարձակեալք յիրեարս՝ ուժգին զմիմեամբք փարեցաք հեղձամիձուկք ընչասպառք, թիկն ընդ թիկին ոտն ընդ ոտին հակառակեալ, ջիլք ուժգնապիրկ, բազուկ ընդ բազուկ օձատիպ խաղապատեալ, ճգնելով երկաքանչիւր բառնալ զոտոխն յատնկելեաց ։ Մերթ ընկճէր նա զիս յանկարծ 'ի յաջմէ, և մերթ յահեակ թեւակոխէր ․ և մինչ այսպէս հնարէր նա ինձ գործել դաւ, հարեալ ուժգին զնա մղեցի, և կթուցեալ ընդ մէջ՝ անկաւ յորսայս 'ի գետին, ձգեալ և զիս զհետ իւր ։ Ի զուր ճգնէր նա ենթարկել զիս, կալայ զնա անշարժ

յաղթահարեալ ընդ ինև. և ամբոխն առ հասարակ շրջակայ աղաղակէր. Յաղթեաց որդին Ողիսեայ: Յայնժամ ձեռն ետու հռոդացւոյն յոտն կալ, և էր նա կորակոր զամօթի հարեալ ընդ պարտութիւնն:

Դժուարագոյն քան զայս կռփամարտիկն [10] եղև մրցութիւն: Սամեցւոյ ուրումն մեծատան որդի այնպէս ականաւոր էր 'ի մարտին, զի ամենեքին տեղի ետուն 'ի նմանէ. ես միայն խրախուսեցի ընդդէմ նորա: Նախ 'ի կառափն իմ և ապա 'ի լանջս եհան կռուփս ուժգին մինչև ժայթքել ինձ արիւն, և աչաց իմոց նսեմանալ 'ի մէգ թանձրախիտ. դեդևէին բարձք իմ, նա զհետ պնդէր ինձ, և սպառէր շունչ իմ. այլ զօրացայ 'ի բարբառ Մենտորի՝ որ գոչէր առ իս. Քաջալերեա՛ց զաւակդ Ողիսեայ: Յասումն յաւել յիս զօրութիւն, խոյս ետու 'ի հարուածոց բազմաց՝ որք նկուն արդեօք առնէին զիս, և այն ինչ սամեցւոյն 'ի վրէպ անկեալ մի 'ի հարուածոցն՝ կարկառէր բազուկ 'ի դերև, հասի զնովաւ մինչդեռ խոնարհեալ կայր. և յամբառնալ իմում զձեռն երկաթագէն առ 'ի շեշտել զնովաւ, նորա յետս նահանջեալ կորոյս 'ի խուսափելն զկշիռ կայիցն, և յաջողեաց ինձ զգետնել զնա: Ձեռն ետու յանկանել նորա առ 'ի յարուցանել զնա, այլ նա ինքնին յոտն եկաց փոշելից և արիւնաշաղախ. և կորակոր ամաչեցեալ, ոչ ևս խիզախեաց 'ի կռիւ:

Նոյնհետայն անցին կառարշաւք 'ի հանդէս, վիճակաւ զկառսն բաշխեալ։ Յոռեգոյն ինձ վիճակեցան կառք, անիւք ծանունք, և ձիանս ոչ քաջ ուժեղք։ Սրացաք յարձակարանէն, և փոշի ամպաձև մրրկեալ, դիզացեալ ծածկէր զերկին։ Ի սկզբան անդ թողի անցանել նոցա զինև. Կրանտոր պատանի սպարտացի յառաջեաց քան զբնաւս, և Պոլիկլէտ կրետացի զհետ գնայր մերձ ընդ մերձ։ Իպպոմաքոս ազգական Իդոմենեայ, որ ակն ունէր յաջորդել նմա յաթոռ, սանձարձակ զերիվարսն թողեալ ծխաշունչս 'ի քրտանէ, կարկառեալ կախեալ կայր զուլամբք նոցին՝ զորովք բաշքն ծածանէին. անիւք կառաց նորա սաստկահոլովք, իբրև զթևս արծուոյ ընդ օդս թռուցելոյ անշարժք երևէին։ Խրախոյս առին երիվարք իմ, և տակաւ սրավարեալ՝ թողին յետս զրեթէ զամենեսին, որք փոյթեռանդն 'ի գլխոց տապարիզին յարձակեալն էին։ Իպպոմաքոսի ազգականին Իդոմենեայ սաստիկ զձիանն մտրակելով, կորովագոյնն 'ի նոցանէ տապալեալ անկաւ, բարձեալ 'ի վարչէն զյոյս թագաւորութեան։ Պոլիկլետեայ կառի իւն զերիվարօքն սաւառնեալ, 'ի ցունց տալ երկձիոցն՝ չկարաց պինդ կալ. անկաւ նա թաւալգլոր, զերծան սանձքն 'ի ձեռանէ նորա, և բարեբաստիկ գտաւ՝ մազապուր զոլ 'ի մահուանէ։ Իսկ Կրանտորի ակնարկեալ յիս բարկացայտ աչօք, զի հասեալ կայի առ իւր, երագէր զընթացսն. մերթ զչխան կար-

դայր նա յօգնութիւն՝ նուէրս ուխտելով նոցա մեծամեծս, և մերթ խրախոյս երկվարացն տայր։ Խիթայր նա թէ գուցէ անջրպետէի ես ընդ նա և ընդ նպաստակն, զի երկվարք իւր դեռ յուժի կային, և մարթէր նոցա անցանել զնովաւ. վասն որոյ յանհնարս մտեալ, խափան եւեթ լինել ինձ ջանայր՝ յանձն առեալ զվտանգ բաղխելոյ 'ի նպաստակ անդր, ուր և խորտակեցաւ իսկ մի յանուոց նորա։ Փութացայ ես շրջան առնուլ զնովաւ՝ զի մի խոչ ընդ ոտն ինձ լինէր, և 'ի քթթել ական ետես նա զիս 'ի ծայր ասպարիզին։ Ես դարձեալ միւսանգամ աղաղակէր ամբոխն. Յաղթեաց զաւակն Ողիսեայ, զնա դիք սահմանեն մեզ թագաւոր։

Յայնժամ աւագանին և իմաստունք կրետացւոց ածին զմեզ 'ի դիցանուէր անտառ ուրեք վաղեմի՝ անմատոյց 'ի պղծոց, ուր ծերունիք ումանք՝ կարգեալք 'ի Մինովայ դատաւորք ժողովրդեան՝ ընկալան զմեզ։ Մարտկաց եւեթ կրկէսին տուաւ անդր մուտ. և բացին իմաստունք զմատեանն, յորում բովանդակեալ կան օրէնք Մինովայ։ Զամօթի հարեալ ակն ածէի 'ի մատչել խմբում առ ծերակոյտն, զորս ալիք պատկառելիս գործէին՝ անմոռացելի զկորով մտաց նոցա պահեալ։ Բազմէին կարգաւ անշարժք յիւրաքանչիւր 'ի կայս, կէսք սպիտակավարսիւք ծաղկեալ, և շատք ևս ճաղատք գրեթէ բնաւին։ Փայլէր 'ի դէմս նոցա հանդարտս իմաստութիւն

հեզ և զգօն. ոչ փութային 'ի խօսել, և ոչ ասէին ինչ մինչ չև խորհեալ: Յերկպառակել իւրեանց՝ այնպէս զգուշաւորք էին երկուստեք 'ի պնդել զիւրաքանչիւր կարծիս, զի թուէին համամիտք: Բազմաժամանակեայ հմտութեամբն անցից անցելոց և վարժութեամբ 'ի յանձանձանս իրաց, խելամուտ լինէին ամենայնի. և մանաւանդ հանդարտութիւն հոգւոյ զերծ 'ի խօլականաց կրից և յերիտասարդական զբօսանաց ամենազգաստ զնոցայն գործէր զիմացութիւն: Իմաստութիւն և եթ ներգործէր 'ի նոսա. և յարատև առաքինութեամբ այնպէս նուաճեալ էին 'ի նոսա ախորժակք, զի քաղցր էր նոցա հեզ և ազնուական հլութիւն թելադրութեան բանին: Զարմանայի ընդ նոսա, և ցանկայի կարճել կենաց իմոց և փութալ հասանել 'ի ծերութիւն պատուական, թշուառ համարելով զմանկութիւն վասն բուռն կրիցն և բացախայտալոյ 'ի զգաստութենէ և 'ի հանդարտ մտաց:

Երիցագոյնն 'ի ծերունեաց անտի եբաց զմատեան օրինացն Մինովայ զմեծ, որ պահէր 'ի տապանակ ոսկի՝ լի խնկովք անուշիւք. և այլք առ հասարակ համբուրեցին զայն մեծարանօք: Զի ասէին թէ յետ դից՝ յորոց ամենայն օրէնք բարիք իջանեն, չիք ինչ պաշտելի առ մարդիկ քան զօրէնս՝ որոց է յարդարել զնոսա առաքինիս իմաստունս և բարեբաստիկս. և թէ իշխանք ժողովրդոց, որք 'ի ձեռին ունին զօրէնս, պարտին ընդ

իշխանութեամբ նոցին իսկ օրինաց կալ. օրինաց անկ է իշխել, և ոչ մարդոյ: Այսոքիկ իմաստնոցն այնոցիկ եղեն զրոյցք. և ապա երէցն 'ի նոցունց խնդիրս 'ի մէջ էարկ երիս, լուծանել ըստ օրինացն Մինովայ:

Առաջին, թէ ո՛ ազատագոյն իցէ 'ի մարդիկ: Կէսք ասացին զթագաւոր ամենիշխան և ամենայաղթ. այլք զայր ընչաւէտ՝ բաւական 'ի լնուլ զամենայն իղձս իւր: Ոմանք զայր անկին՝ որ յամենայն կեանս իւր շրջիցի յազգաց յազգս, առանց անկանելոյ ընդ օրինօք ուրուք 'ի նոցանէ. և ոմանք դարձեալ զայր խուժիկ, որ որսովք իւրովք կեայ յանտառս՝ զերծ յամենայն քաղաքական իշխանութենէ, և ոչ ընդ կարեօք պիտոյից անկեալ: Էր որ համարէր զայն ինչ ազատեալն 'ի գերութենէ, զի զերծեալ 'ի ծառայական խստութեանց՝ առաւելագոյն առնու նա զճաշակ քաղցր ազատութեան. և էր դարձեալ՝ որ զօրհասականն համարէր ազատագոյն, զի զերծանի նա մահուամբն յամենայնէ, և միանգամայն ամենայն մարդիկ չկարեն իշխել նմա: Իսկ իբրև ինձ անկ եղև խօսել, առանց ինչ ընդ բանս ածելոյ, զի անմոռաց էր ինձ որ ինչ յաճախին յեղյեղէր Մենտոր, պատասխանեցի և ասեմ. Ազատագոյն 'ի մարդիկ այն է, որ և 'ի ծառայութեան գտանի ազատ. և է իսկ ամենայն ուրեք և յամենայն յեղմունս բախտի ազատ ամենեքին՝ որ երկիւղածն է 'ի դից, և 'ի նոցանէ եւեթ եր-

կընչի ։ Այս համառօտ իսկ ասացեալ, տիրապէս ազատ այն է՝ որ զերծ յամենայն երկիւղէ և 'ի ընաւ ամենայն ըղձից, դից եւեթ և բանին հպատակէ ։ Հայեին ընդ միմեանս ծերքն հիացեալք, զի յար և նման Մենտորայ բանիցն ետու պատասխանին ։

Այս ապա առաջարկեցաւ խնդիր երկրորդ՝ թէ ո՛ իցէ թշուառագոյն 'ի մարդիկ ։ Իւրաքանչիւր ոք ասէր զկարծիս իւր. ոմն՝ թէ որոյ չիցեն ոչ ինչք ոչ առողջութիւն և ոչ պատիւ. այլ ոմն՝ թէ որոյ չիցեն բարեկամք. և այլ ոք դարձեալ՝ թէ որոյ ապաշնորհ իցեն որդիք և անարժանք նմին ։ Այս իմաստուն ոք լեսբացի'' յաւել, թէ թշուառագոյն է 'ի մարդիկ որ այնպիսի զանձն համարի. զի թշուառութիւն 'ի կարծմունս է՝ որով ծանրանան աղէտք, քան յարդեանց իրացն ։ Զայն եբարձ ժողովն, ծափս հարկանելով. և ամենեքեան համարէին լեսբացւոյն տանել զմրցանակն, սակայն հարցին և զիս ։ Իսկ ես, որպէս ուսեալն էի 'ի Մենտորէ, ետու պատասխանի՝ թէ թշուառագոյն 'ի մարդիկ է թագաւոր, որ բարեբաստիկ զանձն վարկանի 'ի թշուառացուցանել իւրում զայլս. զի կրկնակի այնպիսին կուրութեամբն իւրով գտանի թշուառ. մի՝ զի անգէտ է անձին թշուառութեան, և միւս ևս՝ զի երկնչի գիտել զայն ։ Ճշմարտութիւն չկարէ ընդ ամբոխ մարդելուզացն անցանել հասանել մինչև յաթոռ նորա. բռնակալեն 'ի վերայ նորա կիրք, տգէտ է

պարտուց խրոց, չիք նորա առեալ զճաշակ բա-
րերարելոյ, և ոչ հարեալ 'ի սուրբ սէր առաքի-
նութեան: Աշուառ է այնպիսին, և արժանի իսկ
Թշուառութեան, և յաւելու օր քան զօր 'ի
Թշուառութիւն. դիմէ նա 'ի կորուստ անձին,
և 'ի պատրաստի ունին դեւք մատնել զնա 'ի պա-
տուհաս անվախճան: Յայնժամ առեամն առ
հասարակ խոստովան եղև, զի յաղթեցի իմաս-
նոյն լեսբացւոյ, և ծերքն վկայեցին բանից իմոց
ըստ բուն իսկ իմաստից Միտուլայ խօսեցեալ:

Երրորդն ապա 'ի մէջ մատուցեալ խնդիր՝ Թէ
ո՛ քան զո՛ լաւագոյն իցէ 'ի Թագաւորաց, աշխար-
հակա՞լ միապաղթ 'ի մարտի, թէ անպատերազմա
փորձ՝ որ 'ի խաղաղութեան գիտիցէ վարել ի-
մաստութեամբ զժողովուրդն: Բազումք նախա-
մեծար համարէին զԹագաւոր միապաղթ, 'ի
վերայ ածեալ թէ զի՞նչ շահ 'ի բարւոք տեսչու-
թեանէն 'ի խաղաղութեան, եթէ 'ի յարձակել
հինից չգիտիցէ Թագաւոր մարտնչել 'ի վերայ
աշխարհին. զի թշնամին յաղթական նուաճեսցէ
զժողովուրդն 'ի ծառայութիւն: Իսկ այլք ընդ-
հակառակն լաւագոյն համարէին զԹագաւոր
խաղաղասէր, որ քանզի երկնչի 'ի զինուց՝ զա-
մենայն փոյթ 'ի մէջ առնու զառաջս ունելոյ
զպատերազմի: Եւ այլք դարձեալ ասէին՝ Թէ
Թագաւոր աշխարհակալ հնարի յաճախել ընդ-
իւրումն զփառս ժողովրդեան, և իշխան զնա այ-
լոց կացուցանէ ազգաց, ուր Թագաւոր խաղաղա-

սէր նուաճէ զնա յամօթապարտ վատութեան ։ Այս իբրև հարցին զիս, խօսել կալայ և ասեմ.

Թագաւոր՝ որ 'ի խաղաղութեան ևեթ կամ 'ի պատերազմի գիտիցէ վարել զժողովուրդ իւր, և չիցէ կարող յերկուսին ևս, կիսամասնեայ է նա թագաւոր ։ Սակայն զաջողակն ևեթ 'ի մարտի զթագաւոր 'ի կշիռ եղեալ ընդ իմաստուն թագաւորի՝ որ թէպէտ անհմուտ 'ի մարտ, այլ 'ի կարևոր ժամանակի գիտիցէ մղել զայն 'ի ձեռն զօրավարաց իւրոց, նախամեծար զնա քան զնա համարիմ ։ Թագաւոր պատերազմասէր զակատեալ միշտ 'ի պատերազմունս առ 'ի տարածանել զպետութիւն իւր և զփառս, խուժան աւերանաց ածէ զաշխարհսն ։ Զի՛նչ օգուտ իցէ ժողովրդեան նուաճել թագաւորի իւրոյ զազգս և զազգինս, եթէ չիցէ ինքն բարեբաստիկ ընդ նովաւ ։ Այն զի երկայն պատերազմաց զհետ գան և չարիք յոլովք, նոցին իսկ յաղթականացն 'ի շփոթս անդ զառանցեալ ։ Յուշ լիցի քանի՛ ծանրագնի եղև Ելլադայ յաղթանակել 'ի վերայ Տրովադայ. զի զամս տասն մնաց նա անտէրունչ անթագաւոր ։ Ամենայն ինչ վեր 'ի վայր դղրդի պատերազմաւ, անկանին և օրէնք և մշակութիւն և արուեստք. և լաւագոյնք իսկ 'ի թագաւորաց զայնու աղմկաւ ստիպին 'ի մեծագոյնն 'ի չարեաց, ներել ապերասան համարձակութեան և զչարս վարել 'ի գործ ։ Քանի՛ք 'ի չարագործաց, 'ի ժամանակի խաղաղութեան պարտաւորք

պատժոց, 'ի մրցումունս պատերազմաց վասն յանդգնութեանն վարձատրին։ Աշխարհական արբեցեալ 'ի փառաց, ոչինչ ընդհատ քան զպարտեալսն կործանէ զարդ. իւր յաղթական։ Թագաւոր անբաժ 'ի բարեմասնութեանց՝ որ 'ի ժամանակի խաղաղութեան են կարեւոր, չկարէ տալ ժողովրդեան իւրում 'ի վայելումն զարգասիս յաղթութեան մարտի. որպէս ոք զի պաշտպանիցէ զանդաստանս իւր 'ի յափշտակութենէ դրացւոյն, և զհորայսն իսկ զբաւիցէ, այլ չգիտիցէ վարել զայն և սերմանել առ 'ի ժողովել զհունձս։ Յաւեր յապականութիւն և 'ի կործանումն թուի այնպիսին ծնեալ, և ոչ 'ի յարդարել զբարեկենդանութիւն ժողովրդեան իմաստուն տեսչութեամբ։

Մատիցուք արդ առ Թագաւոր խաղաղասէր։ Ապաքէն չէ նա բաւական յաշխարհակալութիւնս մեծամեծս, և կամ զի տպաւորագոյնս տացէ՝ չաղմկէ նա զբարեկենդանութիւն ժողովրդեան իւրոյ առ 'ի նուաճել զազգս յանիրաւի։ Նաև եթէ արդարև կարող իցէ նա բարուք առաջնորդել 'ի խաղաղութեան, ոչ իւիք կարօտի 'ի պահպանել զժողովուրդ իւր յերեսաց թշնամեաց։ Այլ թէ որպէս, լուարուք։ Քանզի արդար է նա հեզ և բարեհամբոյր ընդ սահմանակիցս իւր, չտայ երբէք նոցա պատճառս խռովելոյ զխաղաղութիւն. հաստատարիմ է 'ի դաշինս, և սիրեն զնա նիզակակիցք իւր՝ վստահացեալ 'ի նա ան-

կասկած: Եթէ իցէ ոք 'ի սահմանակիցս նորա անխաղաղասէր գոռոզ և ամբարտաւան, այլք 'ի նոցանէ առ հասարակ կասկածեալ 'ի խռովասէր դրացւոյն, և չունելով ինչ խէթ 'ի խաղաղասէր թագաւորէն, միաբանին ընդ բարւոյն՝ զի մի՛ հարստահարեսցին 'ի չարէն: Ուղղութիւն հաւատարմութիւն և հեզութիւն կացուցանեն զնա իրաւարար որոց շուրջ զիւրև բնակեն պետութիւնք: Իսկ ուր թագաւոր յանդուգն ատելի է այլոց ամենեցուն թագաւորաց և նշաւակ զինուց նիզակակցութեան նոցա, նա փառաւորի որպէս հայր և պաշտպան յամենեցունց 'ի նոցանէ:

Այսքիկ են բարեմասնութիւնք նորա առ արտաքինս. իսկ 'ի ներքս կարևորագոյնք ևս: Զի եթէ բարւոք առաջնորդէ նա 'ի խաղաղութեան, յայտ է զի իմաստնագոյն վարի օրինօք. խափանէ զգեղխութիւն զմեղկութիւն և զամենայն արուեստս տածիչս ախտից, ծաղկեցուցեալ զպիտանիսն առ կարևոր պէտս կենաց, և մանաւանդ սովորեցուցեալ զժողովուրդ իւր յերկրագործութիւն՝ որով զեղուն առատապէս պիտոյք. և ժողովուրդն ուսեալ աշխատասէր անպաճոյճ 'ի կեանս և սակաւապէտ, դիւրաւ զպարէնսիկն հայթայթելով 'ի մշակութենէ անդաստանացն, աճէ և բազմանայ: Անդ է տեսանել ժողովուրդ անբաւ, ազգ քաջառողջ հուժկու և կորովի, ոչ կնատեալ 'ի հեշտութենէ, կիրթ յառաքինու-

թիւն, ոչ 'ի հրապոյրս վաստ և փափկասուն կենաց զակատեալ, արհամարհող մահու, որ զմեռանելն լաւ համարի քան զկորուստ ազատութեանն՝ յոր վայելէ ընդ տեսչութեամբ իմաստուն թագաւորի, որ ընդ բանիւ և ոչ թէ ընդ իւրև հնազանդեցուցանէ զժողովուրդ իւր: Այլ թէ հէն սահմանակից 'ի վերայ յարձակեսցի, թերևս ազգն այն ոչ գտցի քաջավարժ՝ ոչ 'ի բանակ հարկանել, ոչ 'ի ճակատ յարդարել, և ոչ 'ի պաշարումն քաղաքաց զկազմածս մեքենայից ուղղել. այլ բազմութեամբն և արիութեամբ և ժուժկալութեամբն 'ի վտանգս և սովորութեամբն յաղքատութիւն և կորովութեամբն 'ի մրցումն և անձկուն յարկածից առաքինութեամբն գտցի անպարտելի: Իսկ եթէ չգիտիցէ թագաւոր ինքնին զօրավարել՝ զօրավարս կացուսցէ հմուտս, վարեալ նոքօք՝ անկորուստ զիւրն պահելով զիշխանութիւն, և նորաստ 'ի կռիւ զնիզակակիցս իւր առեալ զազգս. և որք ընդ ձեռամբ նորա իցեն, լաւ համարեսցին զմահ քան մնանել ընդ լծով բռնաւոր և անիրաւ թագաւորի. և դիք իսկ փոխանակ նորա մարտիցեն: Տես ինձ քանի պատուպարանք 'ի վտանգս իսկ մեծամեծս պատրաստ կան նմա: Նա ուրեմն թագաւոր խաղաղասէր՝ որ անհմուտն իցէ մարտի, թէպէտ և թերի գտանի՝ չկարելով նուլ զմի 'ի կարևորագոյն պաշտամանց իւրոց և յաղթել թշնամեաց, սակայն գեր 'ի վերոյ է քան զթագաւոր աշխար-

հակալ՝ որ վերջացեալ 'ի բարեմասնութեանց կա-րևորաց 'ի խաղաղութեան, քաջ ևեթ իցէ 'ի պատերազմի ։

Տեսանէի յայնժամ դժպհի լեալ բազմաց յատենի անդ զբանս իմ. զի առաւելագոյնք 'ի մարդկանէ շլացեալք 'ի պայծառ յաղթութեանց և յաշխարհակալութեանց, նախամեծար զայնոսիկ առնեն քան զանխռովական զանդորրաւէտ և զանշարժ խաղաղութիւն և զբարեկարգ տեսչութիւն ժողովրդեան ։ Բայց ծերքն առ հասարակ վկայեցին, զի համաձայն Մինովայ խօսէի. և երիցագոյնն 'ի նոցանէ գոչեաց. Ահա ընտն պատգամք Ապողոնի քաջածանօթք բնակչաց կղզւոյս. քանզի Մինովայ հարցեալ 'ի դիցն՝ եթէ ցե՞րբ զաւակի իւրում սահմանեալ էր թագաւորել ըստ օրինադրութեան իւրում, ընկալաւ պատասխանի՝ թէ դադարեսցէ թագաւորութիւն 'ի զաւակէ նորա յորժամ հիւր 'ի կղզի այսր հասցէ թագաւորեցուցանել զօրէնս նորա ։ Մեք կասկածէաք՝ թէ գուցէ օտարազգի ոք հասեալ կալցի զԿրետէ. բայց արկածք Իդոմենեայ, և իմաստութիւն Ողիսեան զաւակին՝ որ խորագոյնս քան զամենայն որդիս մարդկան օրինացն Մինովայ գտանի, յայտ առնեն մեզ զիմաստ պատգամացն ։ Ընդէ՞ր, զի՞ կամք, զի՞ յապաղեմք պսակել զոր հրամանք դիցն սահմանեն մեզ 'ի թագաւոր ։

# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ

## ՀԻՆԳԵՐՈՐԴԻ ԴՐՈՑՆ

1 Կրէտէ. իտ. Քանտիա. տճկ. Կիրիտ. կղզի 'ի միջերկրական ծովու, հռչակաւոր վասն ընտիր այգեացն: Էին անդ 'ի վաղ ժամանակս քաղաքք հարիւր:

2 Իդա լեառն հռչակաւոր 'ի Կրետէ, ուր սնաւ Արամազդ:

3 Ի կրետացւոց անտի ուսաւ Յունաստան զօրէնսդրութիւն և զհրահանգս զինուորութեան, որ են կարևոր մասունք քաղաքականին:

4 Դեմետրէ դուստր Կռոնոսի և Ռեայ, քոյր Արամազդայ և Պլուտոնի, դիցուհի արմտեաց և պտղոց երկրի, որ և ուսոյց մարդկան զերկրագործութիւն:

5 Սպանդարամետ, որ և Դիոնիս կամ Բաքոս, որդի Արամազդայ և Սեմելեայ, դիք գինւոյ: Սա տարաշխարհիկ ուղևորեալ, ուսոյց մարդկան զայգեգործութիւն, զկուլթս և զվաճառականութիւն. հեթանոսք զոհէին նմա զխոզ և զնոխազ. 'ի նշանակ անմտութեան և վաւաշոտութեան արբշիռ մարդկան:

6 Բաւիղ կամ Լաբիւրինթ, շինուած որմապատ մոլորաշաւիղ, յոր 'ի մտանելն դժուարին է յոյժ ելսն գտանել: Երկու եղեն բաւիղք հռչակաւորք. եգիպտականն կառուցեալ 'ի Փսամմետիքեայ, և կրետականն՝ զոր ըստ նմին ձևոյ կառոյց Դեդալոս: Եւ էր Դեդալոս որդի Միկիոնի, հայր Իկարեայ, ձեռարուեստ ճարտար աթենացի, որ եկեալ 'ի Կրետէ՝ եմուտ 'ի ծառայութիւն Մինովսայ արքայի, և ըստ հրամանի նորա շինեաց զբաւիղն. յորում ապա արգելաւ և ինքն որդւովն հանդերձ Իկարեաւ առ 'ի պատուհաս: Բայց թևս իւր հնարաւորեալ 'ի թռիչս, փախեաւ անտի. իսկ զհնարս առագաստից, որովք փախեաւ նա ընդ ծով 'ի Կրետեայ:

7 Ստիքս. տես Գիրք Դ. ծան. 8: Ըստ առասպելաց հոգիք անթաղ մնացելոց թափառական շրջէին զափամբ գետոյս, ոչ կարելով անցանել ընդ այն:

8 Նեմեսիս դիցուհի, վրէժխնդիր անօրէնութեանց, դուստր Արամազդայ և Ճակատագրի:

9 Երկիր սալենտեանց է արեւելեան մասն գաւառին Ո-դրանդայ 'ի սահմանս Նէապօլսոյ, յեզր յոնիական ծովու :

10 Կռփամարտք էր ազգ ինչ մենամարտութեան նախնեաց, յորում մրցէին բռնցի՝ կռուփս հանելով միմեանց : Ձեռք մարտկացն զինեալ էին 'ի Թաթպանս կազմեալս 'ի փոկոց եր-կաթագամ կամ կապարապատ :

11 Լէսբոս. իտ. Մէթէլինօ. տճկ. Միդիլլի. կղզի յԱրշիպե-ղագոս, ընդ մէջ Զմիւռնիայ և Նեղցին Կալիպօլեայ, հռչակա-ւոր վասն որ 'ի նմա պաշտամանցն Ապողոնի :



# ԱՐԿԱԾՈՒՔ ՏԵԼԵՄԱՔԱՅ



## ԳԻՐՔ ՎԵՑԵՐՈՐԴ

# ՆԱԽԱԴՐՈՒԹԻՒՆ

Պատմէ Տէլէմաք զհրաժեշտ իւր 'ի թագաւորելոյ կրետացւոց առ 'ի դառնալ յԻթակէ, և զառաջարկել զՄենտոր 'ի թագաւորութիւն, և զնորին իսկ հրաժարելն. և զտալ համօրէն ազգին իշխանութիւն Մենտորի ընտրել զոք թագաւոր, և զներբողել նորա զառաքինութիւնս Արիստոդեմեայ, և զնորին զթագաւորելն անդէն: Զմուտս իւրեանց ապա 'ի նաւ առ 'ի գնալ յԻթակէ, և զՊիսիգոնի առ ողջք ցասման Աստղկանն նաւաբեկս զնոսա վարել 'ի կղզի անդր, ուր Կալիփսէ հիւրընկալէրն զնոսա:

# ԱՐԿԱԾՔ ՏԵԼԵՄԱՔԱՅ



## ԳԻՐՔ ՎԵՑԵՐՈՐԴ

Ի դիցանուէր անտառէն ելեալ ծերոյն փութանակի, և զահերեցն 'ի նոցունց զձեռանէ իմմէ առեալ՝ յայտ արար ժողովրդեանն, որ դէտակն կալեալ մնայր 'ի լուր վճռոյն, զի ինձ անկ էր մըրցանակն: Նա զոյգ ընդ բանիցն լսելի լինէր շշունջ խառնաձայն ամբոխին, գոչելով ամենեքեան խընդութեամբ, և ծովեզերբք առ հասարակ և լերինք շուրջանակի կրկնէին անդրէն բարբառ, թէ թագաւորեսցէ մեզ որդին Ոդիսեայ հանգունանեալն Մինովայ:

Իսկ իմ վայրկեան մի զկայ առեալ, և առաջ նշանացի առնէր ձեռամբ՝ խնդրելով լսել ինձ, և Մենտոր ասէր ցիս յականջս յանկարծ. Հրաժարիցես 'ի հայրենեացդ. 'ի տենչ փառաց թագաւորութեանն մոռասցես զՊենելոպէ՝ որ 'ի քեզ ևեթ կայ ապաստան, և զմեծն Ոդիսեւս սահմանեալ 'ի դից դառնալ առ քեզ: Բանք նորա ազդեալ

'ի խորս սրտի իմոյ, քաջալերեցին զիս ընդդէմ հրապուրանաց գահասիրութեան։ Եւ 'ի դադարել բազմամբոխ հրապարակին 'ի խոր լռութիւն, խօսեցայ և ասեմ. Արք կրետացիք, չեմ ես արժանի իշխելոյ 'ի վերայ ձեր։ Պատգամդ՝ զոր ասէք, գուշակել ապաքէն գուշակէ զդադարել թագաւորութեան 'ի զաւակէ Մինովայ յորժամ հիւր 'ի կղզի այսր հասցէ թագաւորեցուցանել զօրէնս իմաստուն արքային, այլ ոչ և զայն՝ թէ հիւրն այն թագաւորեսցէ։ Նշեմ իսկ ես ինքն հիւրն այն գուշակեալ պատգամաւն. և քանզի գալով չափ գուշակութեանն, հասեալ իմ 'ի կղզի այսր՝ խելամուտ եղէ հարազատ իմաստից օրէնացն, ցանկամ արդ զահակիցս զնոսին ընդ որում դուքն ընտրեսջիք։ Այլ ես լաւ համարիմ զհայրենին իմ զաղքատին կղզեակ զԻթակէ քան զհարիւր քաղաքս Կրետեայ, և քան զփառս և զմեծութիւն չքնաղ թագաւորութեանդ։ Թողէք գնալ ինձ զհետ ճակատագրին հրամանաց. ոչ 'ի խնդիր թագաւորութեան մարտեայ 'ի հանդէս խաղուցդ, այլ զի մեծարանաց և կարեկցութեան ձերոյ գտայց արժանի, և ձեռն տայցէք ինձ դառնալոյ վաղ 'ի հայրենիս իմ։ Լաւ իցէ ինձ հնազանդել հօր իմում Ոդիսեայ, և մխիթարել զմայրն իմ զՊենելոպէ, քան թագաւորել տիեզերաց։ Ահա յայտնեցի ձեզ ո՛ կրետացիք, զծածուկս սրտի իմոյ. հարկ է ինձ մեկնել 'ի ձէնջ, այլ շնորհապարտ գտայց ձեզ մինչև ցմահ։ Այո, մինչև

ցշունչ վախճանին սիրեսցէ Տելեմաք զկրետացիս, և նախանձաւոր փառացն նոցա որպէս իւրոցն լիցի:

Այս իբրև դադարեցի 'ի խօսելոյ, շշունջ խառնաձայն զօրէն մրրկածուփ կոհակաց ծովու լսելի լինէր 'ի հրապարակին: Ոմանք համարէին զիս մի 'ի դից 'ի կերպարանս մարդոյ յայտնեալ. այլք ասէին տեսեալ զիս այլուր. և ոմանք աղաղակէին՝ բռնի թագաւորեցուցանել զիս: Յայնժամ անդրէն յառաջ մատուցի զբանս. և լուռ կացին ամենեքին, յուսացեալք զի թերևս յանձն առնուի յորմէ վայրկեան մի յառաջ հրաժարեցի: Այս ասեմ.

Ներեցէ՛ք ինձ, ո՛ կրետացիք, ասել զոր խորհիմ. իմաստնագոյն քան զամենայն ազգս գիտեմ զձեզ, այլ զմի 'ի զգուշութեանց իմաստութեան թերի 'ի ձեզ գտանեմ: Պարտ է ձեզ, ոչ որ բարւոքն ճառէ զօրինաց՝ զայն ընտրել, այլ որ անդրդուելի առաքինութեամբն արկանէ զայնոսիկ 'ի գործ: Մանուկ եմ ես դեռ անփորձ, ընդ բռնութեամբ կրից զրաւեալ. և 'ի դէպ է ինձ ուսանել հնազանդութեամբ զհրամանատրութիւն, քան այժմէն հրամայել: Մի ապա խնդրէք զյաղթողն յասպարիզի մտօք և ուժով, այլ որ անձամբ անձին գիտիցէ յաղթել. զայն ոք խնդրեսցէ՛ք, յորոյ 'ի սիրտ դրոշմեալ իցեն օրէնք ձեր, և ամենայն կեանք նորա իցեն կատարումն օրինացդ. զայն ոք, որոյ ոչ բանք՝ այլ գործք շարժեսցեն զձեզ յընտրութիւն:

Զարմացան ծերքն ընդ բանս իմ, և 'ի յա-ձախել դղրդատեաց ժողովոյն՝ ասէին ցիս. Եւ քանզի չներեն մեզ դիք յուսալ թագաւորելոյ քո 'ի վերայ մեր, գէթ օգնական լիջիր մեզ յըն-տրել զայր՝ որ թագաւորեցուսցէ զօրէնս մեր. գի-տիցե՞ս դու զայր, որ այդու պայմանաւ հրամայիցէ մեզ: Ետու անդէն պատասխանի՝ թէ գիտեմ զայր մի, որ ետ ինձ զամենայն՝ որ ինչ մեծարէք դուք յիս. իմաստութիւն նորա 'ի շրթունս իմ բարբառէր, նա թելադրեաց ինձ զամենայն զոր լուայքդ: Յայնժամ ամենեցուն աչք հայէին 'ի Մենտոր, զի կալեալ զձեռանէ նորա՝ առաջի առ-նէի զնա ժողովոյն. պատմէի զխնամսն նորա ընդ իս 'ի մանկութենէ իմմէ, և յորո՛ց վտանգաց զեր-ծոյց զիս, և յո՛ր աղէտս սատունջամութեանց խրատուց նորա մատնեցայ:

Ի սկզբան անդ անտես լեալ էր նա յամենե-ցունց պարզ և անպաճոյճ զգեստուքն, և վասն զգուշաւորութեանն և անբարբառ լռութեան, և վասն լուրջ անժպիտ կերպարանացն: Այլ իբրև ակնկառոյց եղեն 'ի նա, չգիտեմ որպիսի ինչ վեհ արութիւն 'ի դէմս նորա, բոց փայլակ-նաձև յաչս նորա, և կորով 'ի դուզնաքեայս իսկ 'ի շարժուածս նորա նկատէին: Հարցին ցնա բազում ինչ, և հիացեալ ընդ պատասխանիս նորա՝ հաստատեցան կացուցանել զնա թագա-ւոր: Իսկ նորա բացէ 'ի բաց հրաժարեալ, ասէ. Սիրելի է ինձ քաղցրութիւն սոսկական

կենաց քան զփառս թագաւորութեան. և ընտիրք 'ի թագաւորաց թշուառք գտանին, զուն ուրեք կարացեալ գործել զբարին՝ զոր կամին. այլ զչարն՝ զոր ատեան՝ զայն գործեն յաճախ, պատրեալք 'ի մարգելուզաց: Նա եթէ թշուառ է ծառայութիւն, ոչ ինչ նուազ և որ թագաւորէն՝ է թշուառ. զի թագաւորութիւն ոչ այլ ինչ է, բայց ծառայութիւն այլակերպեալ. թագաւոր հպատակէ ամենեցուն, որոց կիրօտի առ 'ի հնազանդեցուցանել զժողովուրդն. երանի որում չիցէ հարկ հրամայելոյ այլոց: Հայրենեաց և եթ պարտիք նուիրել զազատութիւն մեր, վատնելով յօգուտ աշխարհին 'ի յանձնել նորա մեզ զիշխանութիւն:

Յայնժամ կրետացիք հիացեալք, հայցէին 'ի նմանէ զո՛ ընտրել: Իսկ նա ասէ. Զայր՝ որ զձեզ քաջ ճանաչիցէ, քանզի պարտի հրամայել ձեզ, և որ երկիցէ վարել 'ի վերայ ձեր իշխանութիւն: Որ թագաւորութեան ցանկայ, չգիտէ զինչ այն իցէ. և որպէս լնուլ կարիցէ զպարտս իւր, որ ոչն զայնասիկ ճանաչէ: Այնպիսին վասն անձին խնդրէ թագաւորել. իսկ ձեզ զայնպիսի ոք պարտ է ընտրել, որ առ սէր ձեր յանձն առցէ թագաւորել: Յապուշ եղեալ ամենեցուն 'ի տեսիլ հիւրոցն երկոցունց հրաժարելոյ 'ի թագաւորութենէ, որում այլք հետամուտ լինէին, խնդրէին գիտել՝ թէ ընդ ում եկեալ էր նոցա 'ի Կրետէ: Լաւսիկրատ՝ որոյ ածեալ էր զնոսա 'ի

նաւահանգստէ անտի 'ի կրկէս խաղուցն, եցոյց նոցա զԱզայէլ՝ ընդ որում Մենտոր և ես եկեալ էաք 'ի Կիպրոսէ: Յաճախեցին և ևս զարմանք նոցա 'ի լսել՝ զի ստրուկ Ազայէլի լեալ էր Մենտոր, և զի Ազայէլի տեսեալ զիմաստութիւն նորա և զառաքինութիւն՝ արարեալ էր զնա իւր խորհրդական և մտերիմ բարեկամ; և զի որ 'ի ստրկութենէ ազատեալ էր՝ չառնոյր յանձն թագաւորել. և զի դարձեալ 'ի Դամասկոսէ Ասորուց գայր Ազայէլ ուսանել զօրէնս Մինովայ՝ այնպէս վառեալ 'ի սէր իմաստութեան:

Ասեն ծերքն ցԱզայէլ. Չիշխեմք հրաւիրել զքեզ 'ի թագաւորութիւն, համարիմ զքեզ գիտելով Մենտորի. զի և ոչ իսկ արժան համարիցիս դու թագաւորել մարդկան, որ առ ոչինչ թուին քեզ. և չկամիցիս արդեօք ստանալ վշտօք՝ որ յարակից են թագաւորութեան՝ զմեծութիւնս և զճաճանչ թագի և ծիրանեաց, զորս արհամարհես: Ազայէլ ասէ. Մի այդպէս, ո՛ կրետացիք, չարհամարհեմ զմարդիկ, քաւ լիցի: Գիտեմ իսկ քանի՛ մեծ իցէ վաստակել առ 'ի լաւութիւն և 'ի բարօրութիւն նոցա. այլ վաստակն այն լի է վշտօք և վտանգօք: Ճաճանչն այն վեր 'ի վերոյ ինչ է, և զունափառ ևեթ մարդկան խտտղէ զաչս. սուղ են կեանք, և աւագութիւնք ոչ միայն չյագեցուցեալ զախտս՝ այլ և գրգռեն զնոսա: Եկի ես յերկրէ հեռաստանէ ոչ 'ի խնդիր մնոտեաց, այլ զի ուսայց արհամարհել զգահն.

մնայք խաղաղութեամբ ։ Ինձ ոչ այլ ինչ ցանկալի է, բայց դառնալ յանդորրաւէտ 'ի մենաւոր կեանս իմ, ուր իմաստութիւն ճարակ է սրտի իմոյ, և յոյս վարձուց առաքինութեան՝ որ մնան ինձ յերանաւէտ 'ի կեանս յետ մահու՝ սփոփէ զաղէտս ծերութեան իմոյ ։ Իսկ եթէ այլում իմիք մարթէր ինձ ցանկալ, ոչ թագաւորութեան ցանկայի, այլ չմեկնելոյ երբէք յարանցս յայսցանէ յերկոցունց ։

Յայնժամ աղաղակեցին կրետացիք առ Մենտոր, և ասեն. Ասա մեզ, ո՛ իմաստնագոյնդ և մեծ 'ի մահկանացուաց, ասա մեզ զո՛ ընտրեսցուք թագաւոր. մի՛ լիցի քեզ գնալ 'ի բաց, մինչ չև ցուցեալ մեզ զարժանին ընտրութեան ։ Իսկ Մենտոր ասէ. Մինչ էի ես 'ի խուռն հանդիսականացն, տեսի ծերունի զոմն քաղաքացիս՝ որում ոչ ինչ փոյթ զտեսանելոյն էր ։ Հարցի զանուն նորա, և կոչէր Արիստոդեմ. լուայ զի երկու որդիք էին նորա ընդ մարտիկսն, և չերևէր հաճ ընդ այն. զմինջէն ասէր չկամել նմա զվտանգս թագաւորութեան, և զմիւսմէն՝ թէ հայրենասիրութիւն չներէր իւր կամել նմա զթագաւորութիւն ։ Արով 'ի միտ առի զի զմի յորդւոցն սիրէր նա առաքինաբար վասն լաւութեանն, և զմիւսոյն չտածէր զյոռութիւն ։ Յաւելի հետազօտել, և հարցի զկենաց ծերունւոյն. և մի 'ի քաղաքայնոցդ պատմեաց ինձ, զի զամս բազումս զինուորեալ դորա՝ դեռ զերաշխէպան 'ի մար-

մնի իւրում կրէ․ այլ առաքինութիւն անկեղծ և ատեցող մարդահաճութեան դժպհի զդա արար Իդոմենեայ, վասն որոյ և ոչ էառ զնա թագաւորն ընդ իւր յարշաւանսն 'ի Տրովադա, երկուցեալ թէ գուցէ տայր նմա խրատս իմաստունս՝ որոց չկամէր նա անսալ, և նախանձեալ իսկ ընդ փառսն՝ զոր ստանայր արդեօք այրն քաջ։ Չյիշեաց զվաստակս նորա, եթող զնա աստ 'ի կարօտութեան, արհամարհեալ յաչս թանձրամիտ և վատ մարդկան՝ որք զգանձս ևեթ մեծարեն։ Բայց նա գոհ յաղքատութեան իւրում կեայ զուարթագին յանկեան ուրեք կղզւոյս, պարապեալ 'ի մշակել զանդաստան իւր։ Մի յորդւոց նորա վաստակակից է նմա․ և կաթոգին ընդ միմեանս սիրով երանաւէտ վարեն կենցաղ, սակաւապէտ կենօք և աշխատանօք հայթայթեալ լիուլի զկարևորս անպաճոյճ կենաց։ Նա աւանիկ ծերունին զգօն բաշխէ աղքատ դրացեացն զաւելորդս 'ի պտղոյից անձին և որդւոյ իւրոյ․ պատրաստէ վաստակս մանկտւոյն, յորդորէ զնոսա և հրահանգէ․ իրաւարար վիճից դրացեացն կացեալ և հայր գերդաստանաց շուրջ բնակելոց։ Միայն թշուառութիւն նմա առանձին միւս որդի նորա գտանի անսաստ խրատուցն հայրենի․ որում երկայնամտեալ ժամանակս բազումս, և ոչ կարացեալ ածել զնա 'ի զգաստութիւն, վարեաց զնա 'ի տանէ․ և զառածաւ նա յախտսն 'ի փառամոլութիւն և 'ի զեղխութիւն։

Ահաւասիկ, ո՛վ կղերոսացիք, որ ի՛նչ պատմեցաւն ինձ զառնելն. ձեզ է ստուգել զիրսն: Սակայն եթէ արդարև իցէ այրդ այդ համգոյն նկարագրելն, առ ի՛նչ համդէպք խաղուցդ, ընդէ՞ր իցէ զամբոխ եկացդ անծանօթից համախմբել. է 'ի միջի ձերում, որ ճանաչէ զձեզ և ճանաչի 'ի ձէնջ. որ փորձն է պատերազմի, ոչ ընդդէմ նետից միայն և գեղարդեան նահատակեալ՝ այլ և ընդդէմ արհաւրաց կարօտութեան. որոյ ոչ յանձն առեալ մթերել զանձս մարդահաճութեամբ՝ աշխատասիրէ, և զխոտէ իսկ թէ քանի՛ պիտանի է ժողովրրդեան երկրագործութիւն. որ զարշի 'ի պերճանաց, և որ անմեղկելին է 'ի կոյր որդեսիրութենէ. զմիոյ յորդւոցն սիրելով զառաքինութիւն և զմիւսոյն դատապարտելով զյոռութիւն. և միանգամայն իսկ ասացեալ, որ արդէն իսկ հայր է ժողովրդեան: Ահա ձեզ թագաւոր, եթէ արդարև ցանկայք զի իմաստնոյն Մինովայ թագաւորեսցեն 'ի վերայ ձեր օրէնք:

Զայն եբարձ ամենայն ժողովուրդն և ասէ. Ճշմարտիւ այդ այդպէս է, զամենայն ինչ ստուգութեամբ զԱրիստոդեմեայ ասացեր, և արժանի է նա թագաւորելոյ: Յայնժամ հրաման ետուն ծերքն կոչել զնա, և խնդրեցաւ 'ի խռան անդ՝ ուր ընդ սինլքոր խուժանին կայր: Ինքն եկաց նա խաղաղութեամբ. և իբրև ասացին նմա զի ընտրեցաւ թագաւոր, ասէ. Երիւք ընդունելի է ինձ պայմանօք ընտրութիւնդ. մի՛ զի յետ եր-

կուց տանց օրէն իցէ ինձ 'ի բաց կալ 'ի թագաւորութենէ, եթէ ոչ առ 'ի լաւն գտայց ձեզ ձեռնտու, և ոչ հպատակիցէք օրինաց. երկրորդ՝ զի ազատ իցեմ կալ և մնալ 'ի սակաւապէտ և յանպաճոյճ կեանս. և երրորդ՝ զի մի տացի որդւոց իմոց բարձ և աւագութիւն, և յետ վախճանի իսկ կենաց իմոց անխտիր և նոքա որպէս զայլս 'ի քաղաքայնոց ըստ վաստակոց իւրեանց պատուեսցին:

Եւ զայս իբրև ասաց, հնչեցին օդք 'ի բարբառ ցնծութեան. և գահերէց ծերունեացն, որք օրէնացն էին աւանդապահք, էած զարտախուրակն արքունի զգլխովն նորա. և մատուցանէ զոհս Արամազդայ և այլոց վեհից դից: Եւ արար մեզ Արիստոդեմ պարգևս, ոչ ըստ արքունական պերճութեան՝ այլ ազնուական պարզութեամբ: Ազայելի եւ զմատեան օրինացն Մինովայ ինքնագիր յօրինագրէն դրոշմեալ, և զխմբագիր պատմութեան կրետացւոց անդստին 'ի Սատուռնեայ ' և յոսկեղէն դարէ սկսեալ: Հրամայեաց և ևս ածել 'ի նաւ նորա յամենայն ազգի ազգի ընտիր պտղոց Կրետեայ, որ ոչ գտանէին յԻթակէ. և մատոյց ևս նմա զամենայն նպաստս, որոց կարօտէր:

Եւ քանզի փութայաք մեք 'ի չու, հրամայեաց պատրաստել մեզ նաւ՝ հանդերձ բազմութեամբ քաջաց թիավարաց և արանց սպառազինաց. յաւել և հանդերձանի և պաշար բազում: Եւ ահա

շնչէր հողմ աջողակ առ 'ի նաւել մեզ յԻթակէ, բայց Աղայելլի հակառակ էր հողմն այն, և հարկ եղև նմա յամել: Ետես նա զչու մեր, զիրկս է-արկ մեզ գոռալմամբ, ոչ ևս ակն ունելով տեսանել զմեզ, և ասէր. Արդար են դիք, տեսցեն զբարեկամութիւն մեր յառաքինութիւն ևեթ հաստատեալ, և ածցեն զմեզ դարձեալ առ միմեանս. դաշտքն Երանաւէտք, յորս միայն արդարոց ժառանգել 'ի մահու խաղաղութիւն անվախճան, տեսցեն զհոգիս մեր անմեկնելիս 'ի միմեանց 'ի սպառ. յանկարծ և աճիւն իմ խառն ընդ ձերոցդ ամփոփիցէր: Եւ 'ի բարբառելն զայսոսիկ՝ հեղոյր ուղխս արտասուաց, և հառաչմունք հեղձամղձուկ զնա առնէին: Ոչ ինչ նուազ հեղաք և մեք արտասուս. և էած նա զմեզ մինչև 'ի նաւ անդր:

Իսկ Արիստոդեմ խօսեցաւ ընդ մեզ և ասէ. Վասնզի դուք եղերուք պատճառք թագաւորութեանս իմոյ, յուշ լիցին ձեզ վտանգքն՝ յորս արկէք զիս, և հայցեցէք 'ի դից՝ տալ ինձ զիմաստութիւն ճշմարիտ, զի ըստ առաւելութեան իշխանութեանս իմոյ յաւելլից քան զայլս յառաքինութիւն: Այլ ես խնդրեմ 'ի նոցանէ ածել զձեզ ողջամբք 'ի հայրենիս ձեր, նկուն առնել անդ զհեստութիւն թշնամեաց ձերոց, տեսանել անդ 'ի խաղաղութեան թագաւորել զՈդիսևս ընդ սիրելւոյն իւր Պենելոպէ: Ահա ետու քեզ, Տելեմաք, նաւ ամրակառոյց կազմ թիավարօք և

սպառազինօք, որ օգնեսցեն քեզ ընդդէմ անօրէն հալածչաց մօր քո: Իսկ քեզ, ով Մենտոր, որ անկարօտդ ես իմաստութեամբդ քով, զինչ այլ կարիցեմ մաղթել. երթայք 'ի միասին, կեցջիք միմեամբք երանաւէտք, և մի մոռասջիք զԱրիստոդեմ, և եթէ երբէք իթակացւոցդ պիտանի իւիք կարասցեն գոլ կրետացիք, վստահ լերուք յիս ցյետին շունչ կենաց իմոց: Ասաց և գիրկս էարկ զմեօք. և ընդ շնորհակալիս խառնեցաք մեք զարտասուս:

Յայնժամ փարեալ զառագաստիւք մերովք հողմք խոստանային մեզ աջողակ նաւարկութիւն. Իդա ոչ ևս լեառն, այլ իբրև զմի 'ի բլրոց յաչս մեր թուէր. ծածկէր ծովափին յաչաց մերոց, և պեղոպոնեսեան ° ծովեզերք թուէին յառաջ մատչել ընդդէմ մեր: Եւ ահա ամպրոպ մթին մրրկաբեր պատեալ զերկին, դղրդեաց զալիս ծովու. գիշեր 'ի տունջեան եղև, և զմահ առ ոտն նկատեաք: Դու ինքն, ով Պոսիդոն, երեքժանեաւդ ահաւորաւ յարուցեր զամենայն զբօսանս պետութեան քո 'ի վերայ մեր: Քանզի այսպէս հաւատարմացոյց ինձ յայնժամ Մենտոր զաղտնեացն դից խորհրդազգաց. զի Աստղիկն 'ի վրէժ արհամարհանացն՝ զոր արարաք նմա 'ի կիթերական մեհենին, երթեալ առ Պոսիդոն՝ բողոքեաց առ նա, արտօսր 'ի չքնաղ աչացն կաթեցուցանելով, և ասէ. Համբերիցե՞ս ամբարշտացդ խաղ առնելոյ զինև անպատուհաս. դիք ինքնին հպատակեն

զօրութեան իմում, և դոքա ժայռհք իշխեն եպերել որ ինչ 'ի կղզւոջ իմում գործին. պանծան ընդ իմաստութիւն իւրեանց անմեղկելի, և անմտութիւն համարին զսէր։ Յուշ լիցի քեզ, զի 'ի սահմանս պետութեան քո ծնայ. զի՞ կաս, ընկեր խորասույզ յանդունդս քո զարդ երկոսին՝ որոց ոչ ես հանդուրժեմ։

Եւ մինչդեռ բանքն 'ի բերան նորա կային, յարոյց Պիտոնն երկնաքէզ զալիս. և ցնծայր դիցուհին, անշուշտ զկորուստ մեր վարկուցեալ։ Նաւուղիղն խառնեալ գոչէր յուսահատ ընդդէմ հողմոց, որ բուռն մղէին զմեզ 'ի ժայռս. բեկեալ կայմն 'ի մրրկէ, և ահա լուաք զխորտակել զատին բախեալ ընդ խութս սեպացեալս. 'ի ներքս խուժէին ալիք, սուզանէր նաւն, և աղաղակ նաւաստուոյն աղիողորմ յերկինս հասանէր։ Իսկ ես փարեալ զՄենտորիւ, ասեմ. Ահա հասեալ 'ի վերայ մեր մահ. պարտ է մեզ արիաբար դիմադրաւել. 'ի բազմադէմ վտանգաց ապրեցուցին զմեզ դիք առ 'ի մատնել զմեզ աստ 'ի կորուստ. մեռցուք իմ Մենտոր, մեռցուք. քաղցր է ինձ մահակից գոլ ընդ քեզ. 'ի զուր իցէ մեզ ոգորել ընդ ալիս։

Պատասխանի ետ Մենտոր և ասէ. Ճշմարիտ արիութիւն ոչ ինչ վհատի. չէ բաւական դիմադրաւել անխռով 'ի մահ, այլ պարտ է և անվեհեր ընդդէմ նորին ոգորել։ Բուռն հարցուք զմիոջէ 'ի տախտակացս. և մինչ ամբոխս արանցդ

վտանգաց և խռովելոց աշխարհէ զկորուստ իւր՝ ոչ ինչ խնդրելով հնարս ապրանաց, փութացուք մեք փրկել զկեանս մեր։ Եւ զոյգ ընդ բանիցն ձեռն 'ի տապար արկեալ՝ հատ զկայմն բեկեալ՝ որ անկեալ խոնարհեալ յալիս՝ հակէր առ 'ի կողմն զնաւն։ Ընկալ կայմն 'ի ծով, և արկ նա ընդոստ զանձն զնովաւ 'ի մէջ կոհակացն վայրենեաց, խրախուսելով զիս յանուանէ զհետ իւր։ Որպէս ծառ ստուարաբուն 'ի դաշնակցելոց ընդդէմ իւր շուրջ բախեալ 'ի հողմոց, կայ անդրդուելի խորարմատ կանգնեալ՝ սաղարթաց ևեթ նորին տատանելով 'ի մրրկէ, ըստ նմին օրինակի և Մենտոր ոչ միայն արի և անսասան՝ այլ և հանդարտ և անխռով, թուէր սաստել ալեաց և ծովու։ Հա՛պա, փութացայ զհետ նորին. զի ո՞ իսկ ոչ արիանայր՝ խրախուսեալ 'ի նմանէ։

Ձիաւորեալք 'ի վերայ ծովածուփ փայտին՝ որ զօրավիգն լինէր մեզ, յառաջ խաղայաք. զի եթէ հարկ լեալ էր մեզ 'ի լող ապաստանել անհանգիստ, պարտասէաք ընդ հուպ ոգեսպառք։ Բայց շրջէր զերանն ստէպ 'ի մրրկէն, և ծովասոյզ լեալ կլանէաք զդառն ալիս՝ որ հոսէին ընդ բերան ընդ ռնգունս և ընդ ականջս մեր. և մարտ եդեալ ընդդէմ կոհակաց՝ դարձեալ վերստին 'ի հեծան անդր աշտանակէաք։ Եւ մերթ կոհակ լեռնաբերձ թաւալէր զմեօք, և մեք պինդ կայաք զի մի՛ գուցէ միակ ապաւէնն մեր կայմն յուժգին բախմանէն սաղապեալ ընդ մեօք՝ զերծանէր 'ի բաց։

Մ՛ինչդեռ յարհաւիրս յայսոսիկ ալէկոծէաք, Մ՛ենտոր որպէս այժմն 'ի դադարումն աստ բազմեալ կայ անխռով՝ սովին հանդարտութեամբ ասէր ցիս. Կարծիցես, Տելեմաք, թէ կեանք քո մատնեալ իցեն հողմոց և ալեաց, և անհրաման 'ի դից կարիցեն դոքա կորուսանել զքեզ. ամենևին ոչ։ Ապա ուրեմն 'ի դից, և ոչ 'ի ծովէ, պարտ է քեզ երկնչել. 'ի խորոց անդնդոց կարող է աջ Արամազդայ ձգել հանել զքեզ 'ի վեր. և 'ի դիւցընկէց բարձանց, եթէ գեր 'ի վերոյ իսկ քան զաստեղս անցեալ կայցես, կարող է անդնդասոյզ առնել զքեզ, և 'ի յորձանսն բոցեղէնս խաւարաբորբ տարտարոսին գահավիժել։ Սքանչանայի 'ի լուր բանից նորա՝ որ դոյզն ինչ սփոփէին զիս, այլ տագնապ մտաց չներէր ինձ պատասխանել. և չտեսանէաք իսկ զմիմեանս։ Ողջ գիշերն 'ի բուռն սարսռացեալ դողայաք 'ի ցրտոյ կիսամեռք, ոչ իսկ գիտելով ուր մրրիկն վարէր զմեզ։ Յետոյ ուրեմն սկսան հանդարտել հողմք, և ծով ահեղագոչ, որպէս որ զզայրոյթ դառնութեան թափեալ՝ 'ի յոգս ևեթ աղմկելոց կրիցն տատանիւ պարտասեալ 'ի զայրացմանէն, այնպէս կերկերեալ ալեօքն մռմռայր, և հետք ևեթ կոհակացն 'ի նմա երևէին որպէս ակօսք 'ի դաշտ արօրադիր։

Այգն այնուհետև աւետաբեր արփիաճաճանչ տունջեան՝ գայր հասանէր բանալ արեգական զդրունս երկնից։ Արևելք բոցափայլ պայծառացեալ, և աստեղք ցայնվայր քօղարկեալք՝ ծա-

զեալ վերստին, դարձեալ յերեսաց արեգականն ծածկէին: Նշմարէաք զերկիր 'ի հեռուստ, անդր հողմք վարէին զմեզ. յայնժամ սկսաւ յոյս 'ի սրտի իմում արծարծանել: Չերևէր ոք ուրեք յուղեկցաց մերոց. վհատեցան արդեօք նոքա, և մրրիկ հանդերձ նաւաւն ընկլոյզ զնոսա: Ի մերձենալ մեր 'ի ցամաք, մղէին զմեզ ալիք 'ի ժայռս սեպացեալս՝ ուր հասանէր մեզ կորուստ, բայց դուն գործէաք զծայր կայմին ընդդէմ ժայռիցն առարկանել, և վարէր զայն Մենտոր որպէս հմուտ նաւապետ ղեկավարէ: Եւ այսպէս յահագին ժայռիցն զերծեալ, գտաք 'ի ծովափն ուրեմն դիւրամատոյց և տափարակ, ուր 'ի լոյղ անաշխատ ելաք ընդ աւազուտն: Անդ տեսեր զմեզ աստուածուհիդ վեհ, բնակեալդ 'ի կղզւոջս. անդ հաճեցար ասպնջական լինել մեզ:



# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ

## ՎԵՑԵՐՈՐԴԻ ԳՐՈՑՆ

1 Սատուռնոս կամ Կռոնոս, որդի երկնից և Վեստայ, հայր Արամազդայ Պոսիդոնի և Պղուտոնի. որ արտաքսեալ յերկնից յերեսաց Արամազդայ, փախեաւ յԻտալիա՝ ածեալ անդր ընդ իւր զդարն ոսկի:

2 Պելոպոնէս. իտ. Մօրէա. տճկ. Մօրա: Է ցամաք կղզի կցեալ ընդ հիւսիսային կողմն Յունաստանի կորնթեան նեղցաւն:



# ՆԱԽԱԴՐՈՒԹԻՒՆ

Կալիփսէ սքանչացեալ ընդ արկածս Տելեմաքայ՝ զամենայն հնարս 'ի գործ արկանէ հրապուրանօք սիրոյ, որպէս զի կալցի զնա առ իւր 'ի կղզւոջն։ Մենտոր կշտամբողական խրատուք զերծուցանէ զՏելեմաք 'ի խորամանկ հնարից դիցուհւոյն, և յերեսաց Երեայ մանկան՝ որ յԱստղկանէ ածեալ նմա յօգնութիւն։ Սակայն Տելեմաք հարկանի 'ի սէր յաւերժհարսին Եւքարեայ, ընդ որ Կալիփսէ զառաջինն նախանձեալ՝ և ապա սրտմտի ընդ երկոսին իսկ տարփաւորս միմեանց, և երդնու 'ի Ստիւքս զելս Տելեմաքայ 'ի կղզւոյն։ Գայ Երոս մխիթարել զդիցուհին, և գրգռէ զյաւերժհարսունս հրձիգ առնել զնաւն կառուցեալ 'ի Մենտորէ, յորժամ նա ածէր զհետ իւր անդր զպատանին։ Հրճուի պատանին 'ի սրտէ ընդ այրեցումն նաւին. և Մենտորի զգացեալ զայն, մղէ գահավիժէ զնա 'ի ծով, և ինքն զհետ նորա 'ի լող անկեալ՝ փութայ հասանել 'ի նաւմի, որ մերձ զծովափամբն քերէր։

# ԱՐԿԱԾՈՒՔ ՏԵԼԵՄԱՔԱՅ

## ԳԻՐՔ ԵՕԹՆԵՐՈՐԴ

Այլ իբրև դադարեաց Տելեմաք 'ի խօսելոյ, յաւերժահարսունքն առ հասարակ՝ որք յակճիռս կային 'ի լուր՝ սկսան հայել ընդ միմեանս ասելով. Ո՞յք արդեօք իցեն արքդ սիրելիք դից, ո՞ երբեք այսպիսի լուաւ դէպս հրաշալիս. զաւակն Ոդիսեայ այժմէն իսկ քան զհայր իւր գերազանցէ ճարտարախօսութեամբ իմաստութեամբ և արիութեամբ. որպիսի՜ բերէ դա կերպարան, որպիսի՜ գեղ, քանի՜ քաղցրութիւն և համեստութիւն հանդերձ վեհ ազնուականութեամբ: Եթէ ոչ գիտէաք զդա որդի մահկանացուի, էր իսկ կարծել զԴիոնիս կամ զՀերմէս՝ և կամ զինքն իսկ զմեծն Ապողոն: Իսկ Մենտորդ այդ որպիսի՜ ոք իցէ. անպաճոյճ աննշան և իբրև զմի ոք 'ի ռամկաց երևեալ վեր 'ի վերոյ, այլ 'ի մօտոյ նկատեալ՝ գերաբուն իմն քան զհասարակաստեղծ մարդիկ:

Իսկ Կալիփսէ 'ի լուր բանից նոցա չկարէր
ծածկել զյոյզս սրտին. աչք իւր յածեալ շրջէին
անդադար ընդ Մենտոր և ընդ Տելեմաք: Մերթ
խնդրէր 'ի պատանւոյն երկրորդել զերկայնապա-
տում արկածս իւր, և մերթ դարձեալ կարծէր
զպատմութիւնն: Յարուցեալ ապա լուրջ և ան-
ժպիտ դիմօք, առեալ ածէ միայնիկ զՏելեմաք
յանտառ ուրեք մրտենեաց, զամենայն հնարս 'ի
կիր արկանելով առ 'ի գիտել թէ մի արդեօք 'ի
դից անտի ոք էր Մենտոր ընդ մարդկային կեր-
պարանօք ծածկեալ: Բայց Տելեմաք չգիտէր
ասել ինչ նմա. քանզի Աթենասայ յուղեկիցն լի-
նել ընդ նմա 'ի դէմս Մենտորի՝ չէր յայտնեալ
նմա զանձն, չվստահացեալ 'ի խորհրդապահու-
թիւն մանկականի տիոց նորա. և զի դարձեալ
կամէր փորձել զնա 'ի վտանգս ծանունս, եթէ
ծանուցեալ էր պատանւոյն զդիցուհին առ ըն-
թերակաց իւր՝ խիզախէր օգնականութեամբն
նորա, և ոչ ինչ դժուարին լինէր նմա արհամար-
հել զահագին իսկ զվտանգս: Վասն որոյ չկասկա-
ծէր նա թէ Աթենաս էր՝ որ առաջնորդէրն նմա.
և 'ի դերև ելին ամենայն հնարք Կալիփսեայ որ-
սալոյ 'ի բերանոյ նորա որ ինչ ցանկայրն գիտել:
Բայց յաւերժահարսանցն պար առեալ զՄեն-
տորիւ՝ հարցուածս նմա մատուցանէին, ոմն զհան-
գամանաց ուղևորութեան նորա յԵթովպիա,
այլ ոք զտեսելոցն 'ի նմանէ իրաց 'ի Դամասկոս,
և այլ ոք դարձեալ՝ թէ ե՞ր նորա ծանուցեալ զՈւ-

դժնեաս նախ քան զպաշարումն Տրովադայ։ Իսկ նա հեզութեամբ պատասխանէր ամենայնի. և բանք նորա թէպէտ և պարզք, բայց ախորժելիք էին յոյժ։ Արգելեաց զխօսակցութիւն նոցա, 'ի վերայ հասեալ Կալիփսէ. և մինչդեռ յաւերժահարսանցն ծաղկունս հաւաքելով՝ երգ 'ի բերան առեալ զքօսեցուցանէին զՏելեմաք, էառ նա մեկուսի զՄենտոր առ 'ի գիտել ինչ 'ի նմանէ։ Ոչ այնպէս ախորժ իջանէ նինջ անուշակ 'ի վերայ արտեւանաց ծանրացելոց և անդամոց կթուցելոց առն պարտասելոյ, որպէս ողոք բանք դիցուհւոյն իջանէին 'ի սիրտ Մենտորի առ 'ի կախարդել զնա. այլ զօրութիւն իմն գերաբուն վանէր զամենայն ձիգն նորա, և խաղ առնէր զհրապուրանօք նորա։ Որպէս ժայռ երկնաբերձ սեպացեալ՝ որ ծաղր առնէ զվայրենի մրրկօք, այնպէս Մենտոր արձանացեալ կայր 'ի խորհուրդս իւր գերիմաստ՝ թողլով Կալիփսեայ յաճախել զթախանձանսն։ Էր զի յուսացուցանէր իսկ զնա, իբր 'ի նեղ անկեալ, 'ի վեր հանել զճշմարտութիւն. այլ 'ի պահու յորում կարծէր Կալիփսէ հասանել ըղձիցն, 'ի դերև ելանէր ամենայն ակընկալութիւն նորա. և որ ինչ համարէրն զբռամբ ածեալ՝ անդէն և անդ անհետ լինէին, և հակիրճ պատասխանեաւ Մենտորի ընկղմէր նա անդրէն 'ի ծուփս տարակուսանաց։

Եւ այսպէս հանապազորդեալ դիցուհւոյն, մերթ ողոքէր զպատանին, և մերթ հնարէր սառ-

տուցանել զնա յառաջնորդէն՝ զոր ոչ ևս յուսայր ձգել ՚ի բանս իւր: Օգնական իւր զգեղեցկագոյնս ՚ի յաւերժահարսանց անտի առնոյր առ ՚ի լուցանել ՚ի սիրտ պատանւոյն զհուր սիրոյ. այլ հզօրագոյն նմա օգնական եհաս մի յաստուածուհեաց: Աստղիկ, որ յիշէրն տակաւին զարհամարհանս՝ զոր Մենտոր և Տելեմաք արարին պաշտամանց նորա ՚ի Կիպրոս, զչարէր տեսանելով զյանդգնութիւն զերկոսին զերծեալս ՚ի հողմոց և յալեաց ՚ի մրրկել Պոսիդոնի զծով: Բողոք կալաւ նա սրտառուչ առ Արամազդ. իսկ հայրն աստուածոց ժպտեալ, չկամեցաւ յայտնել նմա զի Աթենաս ՚ի դէմս Մենտորի փրկէր զզաւակն ուդիսական, այլ թոյլ ետ Աստղկան ձեռնարկել ՚ի հնարս վրէժխնդրութեան:

Մեկնեցաւ յՈլիմպեայ դիցուհին, հեծեալ ՚ի կառս իւր լծեալս յաղաւնեաց, մոռացեալ զխունկս անուշունս՝ որ ծխէին ՚ի բագինս նորա ՚ի Պափոս ՚ի Կիթերա և յԻդալիա: Կոչէ առ ինքն զորդեակն իւր, և գեղ նորահրաշ յաւելեալ առ վրշտին ՚ի դէմս իւր, բարբառի առ նա և ասէ. Տեսանես որդեակ իմ զմահկանացուսդ զերկոսին, որ արհամարհեն զզօրութեամբ մերով. ո՞ պատուհետև լիցի մեզ երկրպագու: Երթ, հա՛ր նետիւք քովք զանազգակ սիրտս երկաքանչիւրոցն. Էջ ընդ իս ՚ի կղզի անդր, ուր զքեն արարից ես Կալիփսեայ: Նա զոյգ ընդ բանիցն խաղացեալ ընդ օդս՝ ծածկեալ յամպ ոսկեձաձանչ, հաս առ

Կալիփսէ՝ որ միայնակ կայր յեզր աղբերն հեռի 'ի քարայրէն, և առէ ցնա. Դիցուհիդ չարաբաստիկ, ապաշնորհն Ողիսեւս արհամարհեաց զքեզ, և որդի նորա խստագոյն քան զնա՝ ոչ ինչ ընդհատ պատրաստէ քեզ նախատինս. այլ ահա հասանէ սէր առ 'ի խնդրել զվրէժ քո: Թողից զնա առ քեզ, և կացցէ մնասցէ ընդ յաւերժհարսունս քո՝ որպէս անդ ուրեմն Բաքոս սնեալ 'ի յաւերժհարսանց 'ի Նաքսոս: Տեսցէ զնա Տելեմաք որպէս զմի 'ի մանկտւոյ, և ոչ ինչ կասկածեալ զնմանէ՝ զչափ առցէ զօրութեան նորա: Բայց, և յանկարծ ոսկեփայլ անդրէն պարածածկեալ, եթող զհետ իւր բուրումն անուշահոտ ամբրոսականն՝ յորմէ լցաւ անտառն առ հասարակ դիցուհւոյն:

Այն հանդեաւ մանկիկն սէր 'ի գիրկս Կալիփսեայ. և թէպէտ աստուածեղէն վիճակեալ բնութեան, սակայն զգաց դիցուհին բոցոյ հրատին՝ որ խլրտէր 'ի սիրտ իւր. և առ սուղ ինչ սփոփումն՝ ետ զմանկիկն Եւքարեայ յաւերժհարսին, որ կայր նմա առընթեր. այլ աւաղ, քանի՛ առաւ զիրդ եղև նմա ընդ այն: Ի սկզբան անդ թուէր մանկիկն հեզ և անմեղ, սիրելի քան զբնաւս անկեղծ և շնորհալի. 'ի զուարթտեսիլ իւր 'ի գեղ զօշոտիչ և յարածիծաղ՝ թուէր բերկրանաց և եթ գոլ ընծայաբեր. այլ որ 'ի գրգուանս նորա ոք վստահանայր, թոյն ինն անդէն զգայր յանձին: Օ՛ ի մանկիկն նենգաւոր և խաբուսիկ առ 'ի դաւանս ևեթ գգուէր. և ծաղր

նորա չարեացն և ևեթ նշանակ էր գործեցելոց կամ զորս պատրաստէրն գործել։ Բայց չիշխէր նա մատչել 'ի Մենտոր, զահի հարեալ 'ի լուրջ և 'ի խիստ կերպարանաց նորա. զգայր իսկ զի անխոցելի էր այրն անծանօթ, և երգիծանել 'ի նա նետք իւր ոչ զօրէին։ Իսկ յաւերժհարսունքն զգացին անդէն զհուրն 'ի խաբեբայ մանկանէն հարեալ, այլ զխոցսն կարեվէրս՝ որ ճարակէր 'ի սիրտս նոցա՝ ծածկէին զգուշութեամբ։

Բայց Տելեմաք իբրև ետես զմանկիկն զի խաղայր ընդ յաւերժհարսունսն, հարաւ 'ի գեղ նորա. և զմայլեալ քաղցրութեամբ նորա՝ գիրկս արկ նմա, մերթ 'ի վերայ ծնգացն և մերթ 'ի ծոց իւր գգուելով զնա, մինչև զգաց աղմուկ 'ի սրտին՝ առանց զպատճառս գիտելոյ զաղմկին։ Այլ որչափ գգուէր զնա յանդէտս, այնչափ ևս առաւել սիրտ նորա յուզեալ խանդաղատէր, և ասէր ցՄենտոր. Տե՛ս ինձ քանի՛ աննմանք են յաւերժհարսունքս կանանց կիպրացւոց, որոց ցոփութիւն ծանրատաղտուկ զգեղ նոցա գործէր. իսկ սոցայս գեղեցկութիւն անմահական՝ անմեղութիւն իմն 'ի դէմս բերելով և համեստութիւն և պարզութիւն, ձգէ յինքն զսիրտ։ Այլ 'ի բարբառելն զայս՝ շառագունէր, և ոչ զվասնէրն իմանայր զշառագունանացն. չկարէր լռել կալ, այլ 'ի սկսանելն խօսել՝ ոչ ևս զօրէր զկարգ խօսիցն յառաջ ածել, այլ հեղձամղձուկ լինէր, և աղօտ իմն և մերթ անիմաստ իսկ բարբառէր։

Պատասխանի ետ նմա Մենտոր և ասէ. Մտանգքն որ 'ի Կիպրոս, ով Տելեմաք, ոչ ինչ են առ սոքիմբք՝ յորոց չերկնչիս։ Ախտք այլանդակք սոսկումն ածեն, և անասնամիտ ցոփութիւն զրգռէ զայրոյթ. վտանգաւորագոյն յոյժ է գեղ ցածումն, 'ի սիրել ուրուք զայն՝ կարծէ սիրել զառաքինութիւն, և տակաւ յանզգաստից 'ի հրապոյրս պատիրս կրից զառածեալ, 'ի բոցածաւալ բորբոքել հրոյն՝ յայնժամ ապա իրազեկ լինի։ Փախիր Տելեմաքէ, փախիր 'ի յաւերժհարսանցդ, որք առ 'ի դիւրաւ ևս պատրել զքեզ՝ ցածունք ձևանան. զգոյշ լեր 'ի վտանգաց մանկականի տիոցդ, և առաւել ևս զգոյշ յանձանօթ մանկանեդ։ Դա ինքն է սէր՝ 'ի մօրէն իւրմէ յԱստղկանէ 'ի կղզի այսր ածեալ առ 'ի խնդրել զվրէժ անարգանացն, զոր արարեր պաշտաման նորա 'ի Կիթերա. 'ի դիմանէ Կալիփսէ հարեալ 'ի սիրտ՝ տարփայ քեզ. դա ինքն հուր 'ի սիրտ յաւերժհարսանցդ բորբոքէ նաժշտաց դիցուհւոյն. և դու իսկ հէք պատանեակ, յանգէտս իմն դովաւ վառեալ բորբոքիս։

Բայց Տելեմաք ընդմիջէր ստէպ զխօսս Մենտորի, և ասէր. Ընդէ՞ր իցէ մեզ մեկնել աստի. ոչ ևս կենդանի իցէ Ոդիսևս, այլ վաղու ևս թաղեալ ընդ ալեօք. իսկ Պենելոպէ զուր ակնկալեալ ցարդ դարձի նորա և իմումս՝ տեղի արդեօք տուեալ իցէ սիրեխացն, և Իկարոսի հօր նորա ստիպեալ զնա այլում լինել կնութեան։ Իւ

ընդէր իցէ ինձ դառնալ յԻթակէ. Թերևս առ 'ի տեսանե՛լ զնա զօղեալ 'ի նոր հարսանիս, և հաւատադրուժ առ հայրն իմ լեալ: Մոռացեալ իսկ իցէ իԹակացւոց զՈդիսեւս, և 'ի խնդիր ևեթ մահու լիցի մեզ անշուշտ դառնալ անդր. զի տարփաւորացն Պենելոպեայ կալեալ իցէ զմուտս նաւահանգստին, առ 'ի կորուսանել զմեզ 'ի դառնալս մերում:

Կրկնեալ անդրէն Մենտորի, ասէ. Ահա սա-դրանք զաչացու կրից. Ճարտար փաստաբանես 'ի նպաստ նոցին, և զաչս 'ի բաց դարձուցանես առ 'ի չտեսանելոյ որ ինչ դատապարտ զնոսա առ-նեն, հանճարեղդ առ 'ի խաբել ևեթ անձամբ զանձն և 'ի լռեցուցանել զխիղճ մտացդ: Յուշ լիցի քեզ որ ինչ արարին դիք առ 'ի դարձուցա-նել զքեզ 'ի հայրենիս քո. որպէս եկեր 'ի Սի-կիլիոյ, զիարդ արկածքն 'ի վերայ քո հասեալք յԵգիպտոս՝ դարձան յանկարծ 'ի յաջողութիւն, և ե՛րբ 'ի Տիւրոս 'ի մահահրաւէր վտանգաց զերծոյց զքեզ ձեռն աներևոյթ: Յայսքանեաց աստի սքանչելեաց չառնո՞ւս դեռ ևս 'ի միտ որ ինչ քեզ 'ի ճակատագրէն պատրաստեալ նսեհ: Այլ առ ի՞նչ բարբառիմ. անարժան ես բախտին: Գիտացից ես մեկնել զնալ աստի. իսկ դու, իմաստնոյ և քաջի հօր վատ որդի, կացցես աստ 'ի մեղկ և յանարգ կեանս ընդ կանանցդ, և հակառակ կամաց դիցն արասցես որ ինչ դժպա-տեհ անձին հայր քո վարկաւ:

Ի խոր խոցեցաւ պատանին յարհամարհական բանից աստի. գոռովէր ընդ Մենտոր, զիղջ ընդ ամօթոյ զգայր յանձին. երկնչէր 'ի ցասմանէ և մեկնելոյ 'ի բաց գերահանճարի առնն, որում այնքան երախտեաց շնորհապարտ գտանէր. այլ նորածինն այն 'ի նմա կիրք, անծանօթ իսկ նմին, փոխեալ էր զբնութիւն նորա: Արտասուալից աչօք ասէր ցՄենտոր. Ո՜ ի՞նչ ապա, չհամարի-ցե՞ս ինչ զանմահութիւն՝ զոր խոստանայ ինձ դիցուհին: Մենտոր ասէ. Ես ոչ ինչ համարիմ որ ինչ ընդդէմ է առաքինութեան և հրամանաց դից. առաքինութիւն կոչէ զքեզ 'ի հայրենիս քո՝ տեսանել զՈդիսեւս և զՊենելոպէ, առաքինութիւն արգելու քեզ չլինել անձնատուր անմիտ կրից. և դիք, որ յայնքանեաց զերծուցին զքեզ 'ի վտանգաց՝ պատրաստեալ քեզ փառս հանգոյն փառաց հօր քո, հրամայեն մեկնել 'ի կղզւոյս: Սէր միայն, բռնաւոր անարգ, կաշկանդէ զքեզ աստ. աղէ, և զի՞նչ քեզ շահ յանմահական կենաց՝ առանց ազատութեան և առաքինութեան և զուրկ 'ի փառաց. Թշուառագոյն կեանքդ այդ կացուսցեն զքեզ այնու իսկ զի իցեն անվախճան:

Հառաչանօք ևեթ առ այսոսիկ պատանին առնէր պատասխանի. մերթ ցանկայր զի Մենտորի կորզեալ զնա բռնի 'ի կղզւոյն ածէր 'ի բաց, և մերթ զի մեկնէր անտի վաղագոյն Մենտոր, և զերծանէր ինքն յանհամբոյր բարեկամէն՝ որ

զախտ նորա կշտամբէր ։ Յայտնիկ ներհակակիր խորհուրդս յուզեալ տատանէր սիրտ պատանւոյն, և ոչ 'ի միում զկայ առեալ. համգոյն ծովու, որ յամենայն հողմոց կոծեալ տատանի ։ Անկեալ դնէր նա ստէպ առ ափն ծովուն անշարժ, և յաճախ ևս 'ի խորդնսեմաստուեր անտառի, հեղլով ուղխս դառինս արտասուաց և առիւծաբար մռընչելով ։ Հաշէր մաշէր, և աչք իւր սորեալ տաշորէին 'ի հուր փաղաղիչ. այլագունեալ կթուցեալ և անշքացեալ, ոչ ևս ճանաչէր պատանին ։ Դեղեցկութիւն զուարթութիւն և վեհ արխութիւն անցին գնացին 'ի նմանէ. և զոր օրինակ ծաղիկ փթթեալ 'ի վաղորդայն՝ բուրէ հոտ անոյշ 'ի դաշտի, և տակաւ ընդ երեկս թարշամեալ՝ գունատի 'ի բազմափայլ երանգոյն, խամրի և ցամաքի, և զգլխակն գեղեցիկ խոնարհեալ՝ ոչ ևս զօրէ 'ի վեր կալ կանգուն, այսպէս զաւակն ոդիսեան նուաղեալ և առ դուրս մահու հասեալ կայր ։

Մենտոր իբրև ետես զի չկարէր պատանին զդէմ ունել բռնութեան կրիցն, մտաբերեաց 'ի հնարս զերծուցանելոյ զնա 'ի մեծէ վտանգէն ։ Գիտէր զկաթոգին սէր Կալիփսեայ ընդ պատանւոյն, և զի ոչ ինչ ընդհատ սիրէր պատանին զօրիորդն յաւերժահարսն զԵւքարիս. զի սէր անագորոյն առ 'ի կեղեքել զսիրտ մահկանացուաց, բազում այն է՝ զի ոչ փոխադարձ գործէ զտարփանս ։ Խորհեցաւ Մենտոր արկանել նախանձ

'ի Կալլիփսէ. Նուքարեայ հանդերձեալ էր եղանել ընդ պատանւոյն յորս, ասէ Մենտոր ցԿալլիփսէ. Տեսանեմ ախորժակս ինչ որսոց 'ի Տելեմաք անսովորս, որով ամենայն ինչ այլ անախորժ թուի նմա: անտառք եւեթ եւ լերինք ամայիք սիրելի լեալ են նմա. դու արդեօք դիցուհիդ ազդեցեր զայդ եռանդն առաւելով 'ի պատանիդ:

Արտմտեալ յոյժ 'ի բանից անտի Կալլիփսէ, եւ ոչ եւս հանդուրժեալ՝ ասէ. Պատանիդ այդ արհամարհոտ փափկութեանցն Կիպրոսի՝ չզօրէ ընդդէմ դոյզն ինչ գեղոյ ուրուք 'ի նաժշտացս իմոց: Զիարդ իշխէ դա պանծալ 'ի գերահրաշ արութիւնս, որ մեղկի վատութեամբ 'ի հեշտութիւն, եւ բնաւորաբար իմն բերմամբ սիրէ վարել կենցաղ անփառունակ 'ի մէջ կանանւոյ: Ուրախ եղեւ Մենտոր ընդ նախանձընդդէմ սրտմտութիւն դիցուհւոյն, եւ ոչ եւս յաւել ինչ այլ՝ առ 'ի չտալոյ նմա կասկած. բայց միայն պատճառէր վիշտ եւ տրտմութիւն: Մերկանայր այնուհետեւ դիցուհին զկիրս իւր 'ի վերայ ամենայնի՝ զոր տեսանէրն, եւ ոչ եւս դադարէր 'ի գանգատելոյ. բայց որոցն դէպք, որում կանխագեկոյցն լեալ էր 'ի Մենտորէ, յաւելին զսրտմտութիւն նորա 'ի սպառ. քանզի գիտաց զի հնարէր այնու Տելեմաք խուսել յերեսաց այլոց յաւերժհարսանց՝ առ 'ի խօսել ընդ Նուքարեայ: Զրոյցք իսկ էին՝ միւսանգամ եղանելոյ նոցա յորս, եւ գուշակէր դիցուհին՝ զի նոյն առաջին պատճառք էին որոցն.

և առ 'ի խափանել զխորհուրդ Տելեմաքայ, յայտ արար զի կամէր և ինքն ուսակից լինել նմա. այլ ապա յանկարծ ոչ ևս կարացեալ նուաճել զզայրոյթ իւր, ասէ.

Մանուկ ժպիրհ, եկիր ուրեմն գտանել աստ ապաստան յերեսաց վրէժխնդրութեան դից, և յարժանահաս պատուհասէ նաւաբեկութեան՝ զոր պատրաստէր քեզ Պլուտոն: Մտեր ուրեմն 'ի կղզի այսր անմատոյց մարդոյ մահկանացուի, առ 'ի թշնամանել զզօրութիւն իմ և զսէր՝ զորոյ ետու քեզ զառհաւատչեայ: Դիք երկնաւոր և սանդարամետականք, լուարո՛ւք աստուածուհւոյս հեքի. հասէ՛ք 'ի պատուհասել զհաւատադրուժս զայս զապերախտ և զամպարիշտ: Եւ դու, անողոքելի և անիրաւ քան զհայր քոյին, դժնդակագոյնս քան զնորայն և երկարատև կրեսցես չարիս. մի և մի լիցի քեզ տեսանել անդրէն զհայրենիս քո զաղքատն և զգծուծ Իթակէ, զոր ոչ ամօթ համարեցար նախամեծար քան զանմահութեան առնել շնորհ: Եւ աւանիկ կորիցես ծովակուր հեռի 'ի հայրենեացդ, և դիակն քո ալեծուփ անկցի 'ի ծովեզր այսր աւազուտ անյոյս 'ի թաղմանէ. և աչք իմ տեսցեն զայն մատնեալ 'ի կուր անգեղաց: Տեսցէ զայն և սիրուհին քո, տեսցէ այո, և կեղեքեսցի սիրտ նորա. և ցնծացայց ընդ ծանրաթախիծ սուգ նորա:

Եւ 'ի բարբառել զայսոսիկ դիցուհւոյն, աչք

իւր արփիառուշաք և հրացայտք այսր անդր ան-
դադար շլշլշէին խոժոռք և դժնէհայեացք.
այտք նորա զդողանի հարեալ պիսակս առեալ և
կապուտակեալ՝ հետ ընդ հետ այլագունէին, և
դալուկն ստէպ մեռելատիպ զդիմօքն գայր: Ոչ
ևս յորդաբուղխ հոսէին յաչացն արտասուք. զայ-
րոյթ և յուսահատութիւն զաղբերակունս նոցա
ցամաքեցոյց, և հազիւ շիթք ինչ ընդ ծնօտսն
իջանէին. և բարբառ նորա կերկերեալ դողդոջ
և ընդհատ: Զայն ամենայն նկատէր Մենտոր,
և ոչ ևս խօսէր ինչ ընդ պատանւոյն՝ իբր ընդ
անբուժելւոյ ախտաժիտի վարելով ընդ նմա.
բայց միայն երբէք երբէք ակնարկէր 'ի նա ախ-
տակցաբար:

Զգայր Տելեմաք թէ քանի յանցաւոր էր և
բարեկամութեանն Մենտորի անարժան, և չիշ-
խէր զաչս 'ի վեր առնուլ՝ զի մի աչաց նորա հան-
դիպէին, որոյ լռութեամբն իսկ կշտամբէր:
Մտաբերէր գնալ անկանել զպարանոցաւ նորա,
և խոստովան լինել զյանցանսն. այլ մերթ ա-
մօթ տարապարտ նահանջէր զնա, և մերթ եր-
կիւղ 'ի բաց կալոյ 'ի վտանգէն՝ զոր ոչն կամէր.
զի քաղցր թուէր վտանգն այն, և չև ևս խրա-
խուսէր յաղթել խօլական կրիցն:

Դիք առ հասարակ և դիցուհիք ակնկառոյցք
'ի խոր լռութեան կային յՈլիմպեայ 'ի կղզի
անդր, տեսանել թէ ո՛ յերկոցունց՝ սէր թէ Ա-
թենաս՝ կալցի զյաղթութիւն: Սիրոյ ընդ յա-

վերժհարսունման խաղալով, հուր յամենեսին իսկ արկեալ էր. Աթենաս 'ի կերպարանս Մենտորի զանբաժանելին 'ի սիրոյ զնախանձ ընդդէմ նորին իսկ սիրոյ 'ի ճակատ հանէր։ Իսկ Արամազդ տեսող ևեթ կամէր գոլ մարտին, և ոչ միումն եղեալ կուսակից։

Բայց Եւքարեայ կասկածեալ՝ թէ գուցէ խոյս տացէ պատանին 'ի բաց, բիւր ազգի ազգի հնարս հնարէր առ 'ի պարաւանդել զնա անխուսելի։ Կամէր ելանելոյ նոցա միւսանգամ յորս, և էր նա զգեցեալ 'ի ձև Արտեմեայ. և Աստղկան և Երեայ այնպիսի գեղ 'ի դէմս նորա յաւելեալ, զի ստուերածս գեղոյ նորին իսկ դիցուհւոյն Կա-լիփսեայ ածէր։ Յոր հայեցեալ Կալիփսեայ 'ի հեռուստ, և ապա դարձեալ ակնարկեալ յինքն 'ի հայելւոջ ականակիտ աղբերն, ամաչեաց ընդ տեսիլ պատկերին. և մեկնեալ 'ի խորս խորոյ քարայրին, այսպէս ընդ ինքն բարբառէր.

Զուր ուրեմն ջանացայ խափանել զտարփա-ւորսն զերկոսին, որսակից նոցին կամելով լինել։ Յաւելւ՞յց արդ 'ի նոսա . . . այլ առ ի՞նչ, թերևս առ 'ի յաղթանա՛կ սիրուհւոյն, զի գեղեցկագոյն ինև զանձն ընծայեցուսցէ, և զպատանին 'ի տե-սիլ իմ և ևս յինքն յարեցուսցէ։ Աւա՜ղ, զի՞նչ հէքս արարի . . . մի՛ այդպէս, չերթայց ընդ նոսա, այլ նոքին իսկ մի՛ երթիցեն, գիտացից խափանել զնոսա. երթայց առ Մենտոր յաղերս՝ 'ի բաց տանել զնա աստի, դառնալ յԻթակէ։ . . . Աւ

զի՞նչ խօսիմ. աւա՜ղ, և զի՞նչ լինիցի ընդ իս՝ 'ի մեկնել պատանւոյն : . . . Ո՞ւր իցեմ, զի՞նչ առնել իցէ ինձ. ով անողորմ Աստղիկ, խաբեցեր դու զիս, պարգև նենգաւոր ինձ պարգևեցեր : Մանուկ մեղանչական, սէր ժանտաժուտ. տարածեցի առ քեզ զգիրկս իմ յուսով եթէ կելոյ բարեբաստիկ ընդ Տելեմաքայ, իսկ դու աղմուկ եթէ յաւելեր 'ի սիրտ իմ և վիշտ յուսահատ : Յաւերժհար-սունք իմ ստահակեալք, և աստուածութիւն իմ ոչ ևս օգնէ ինձ՝ բայց միայն առ 'ի գործել անվախճան զաղէտս իմ: Ո՜հ, իցի՜ւ թէ դոյր ինձ հնար անձին առնել և զերծանել 'ի վշտաց աստի : Մնացիս պատանի դու, զի ինձ անմարթ է մեռանել. առից զվրէժ ապերախտութեան քո, տեսցէ զայն յաւերժահարսն քո, դէմ յանդի-ման աչաց նորա հարից զսիրտ քո : . . . Այլ ցնո-րիմ. ով հէք Կալիփսէ, և զի՞նչ կամիցիս, կորու-սանե՞լ զանմեղ պատանին՝ զոր դու քեզէն արկեր 'ի վիհ թշուառութեան. ես ինձէն լուցի զբոցն անշէջ 'ի սիրտ ողջախոհ պատանւոյն. պա՜րտ էր ինչ ապականել զսիրտ զայն, յորում անմեղու-թիւն գերաշխարհիկ, առաքինութիւն չքնաղ, ստոկումն յախտից, և վեհ արութիւն ընդդէմ ամօթապարտ հեշտութեան ասպնջականէին : Սակայն թողուլ լքանէր նա զիս, եթէ ոչ զսիրտ նորա գրաւէի : Աղէ, չիցէ՞ պարտ նմա և արդ իսկ թողուլ լքանել զիս, և կամ արհամարհեալ զինև՝ կեալ առ սէր ոսոխին իմոյ : Այո, արժանիս ո-

որոց գործեցի՝ կրեմ վիշտս։ Ա՛րդ Տելեմաքէ, անց յայնկոյս ծովուդ, թող զԿալիփսէ անմխիթար 'ի դժոխըմբեր կեանս՝ անզբաւելի 'ի մահուանէ, թող զնա անմխիթար, լի ամօթով և յուսահատ ընդ պանծացելումն 'ի քեզ Աքարեայ։

Զայսոսիկ Կալիփսէ միայնակ 'ի քարայրին բարբառեալ, ոստեաւ ապա յանկարծ 'ի դուրս՝ ձայնելով. Ո՞ւր ես Մենտոր, ա՞յսպէս զգուշանաս պատուիրանսն՝ որ ահա ընկճի յախտէ. դու 'ի քուն կաս, մինչ սէր դարանի քեզ արթուն. ոչ ևս հանդուրժեմ ընդ վատ անհոգութիւնդ։ Ո՞չ թէ 'ի սպառ կացցես անխռով 'ի տեսիլ անարգելոյ պատանւոյդ զհայր իւր, և արհամարհելոյ զիւր վեհ ճակատագիր. Ինձ թէ քեզ յանձն է պատանիդ 'ի ծնողացն. ես բուժել հնարիմ զախտ դորա, և դու անգործ կաս։ Այն 'ի խորս անտառից կաղամախք ստուարք պատկանաւորք 'ի նաւափայտ. անտի Ոդիսեւս կառոյց իւր նաւ, զնաւ 'ի կղզւոյս։ Գտցես 'ի նմին խուկ վայրի 'ի քարայր մի խորին զամենայն գործի կարևոր 'ի կառոյցս նաւու։

Ասաց և ստրջացաւ. բայց Մենտոր և ոչ վայրկեան մի կացոյս, փութացաւ 'ի քարայրն, եգիտ զգործիսն, եհար զկաղամախս, և առ օրին կառոյց նաւ ամենակազմ 'ի թիավարել. քանզի զօրութիւն և ճարտարութիւն իմաստահւոյն Աթենայ ոչ կարօտի երկայն ժամանակաց առ 'ի

հրաշակերտել։ Իսկ Կալիփսէ կայր 'ի վարանս մտաց անհնարինս․ կամէր 'ի գնին կալ աջողութեան վաստակոցն Մենտորի, և դարձեալ չկարէր թողուլ զԵւքարիս ազատ 'ի յորս ընդ պատանւոյն։ Զմերէր նմա նախանձ թողուլ զտարփուորսն զերկուսին հեռի յաչաց, այլ գուն գործէր զարշաւանս որսոյն դարձուցանել անդր՝ ուր նաւակառոյցն լինէր Մենտոր։ Ունկն դնէր, լսէր զհարուածս ուռան և տապարի, և բաղխիւն իւրաքանչիւր զոսկերս նորա դողացուցանէր, և խիթայր միանգամայն թէ գուցէ ցնորք մտացն գողանային յաչաց նորա զնշան ինչ կամ զակնարկութիւն պատանւոյն առ օրիորդն յաւերժահարսն։

Բայց Եւքարիս խաղ առնէր հեգնելով զՏելեմաք, և ասէր․ Զերկնչիս 'ի կշտամբանաց Մենտորի, զի առանց նորա ելեր յորս։ Հէքդ և թշուառ, որ ընդ ձեռամբ այդպիսւոյ կեաս դժնեայ դաստիարակի, որ անողոքելի խստութեամբ թշնամի ամենայն բերկրանաց զանձն ընծայեցուցեալ, ոչ ներէ քեզ վայելել յայնոսիկ, համարեալ քեզ 'ի մեղս և զկարի իսկ վայելուչն։ Օրէն էր քեզ ընդ ձեռամբ նորա կալ մինչ չև յարբունս հասեալ, և մինչդեռ չկարէիրն անձամբ անձին առաջնորդել․ բայց յետ բազմապատիկ հանդիսից զգօնութեանդ՝ ոչ ևս պարտ է քեզ զօրէն տղայոյ ընդ դաստիարակաւ կալ։

Հրապոյրք յաւերժհարսինն խորամանկք ազդեալ 'ի սիրտ պատանւոյն, զրգռէին զնա 'ի զայ-

րոյթ ընդդէմ Մենտորի՝ զորոյ ցանկայրն Թօթափել զլուծ։ Խօսէր յերեսաց նորա. և ոչ բանիցն Նարբարեայ առնէր պատասխանի, յուզեալ 'ի վարանս։ Յայսպիսում մտաց տագնապի երկուստեք տատանեալ մինչև 'ի վախճան որսոցն, ապա ընդ երեկս հասանեն 'ի խորշ մի անտառին, ոչ ինչ 'ի բացեայ 'ի տեղւոջէն՝ ուր վաստակեալն էր Մենտոր զօրն ողջոյն։ Նա իբրև ետես Կալիփսէ 'ի հեռուստ զի ահա կազմեալ էր նաւն, մթագնեցան աչք նորա որպէս օրհասականի 'ի մէգ թանձրախիտ։ Ծունկք նորա կթուցեալք դեդևէին, և քիրտն ցուրտ ընդ անդամս նորա իջանէր. խոնարհեցաւ յենուլ 'ի յաւերժհարսունս՝ որ շուրջ զնովաւն կային. և 'ի կարկառել Նարբարեայ զձեռն իւր յօգնականութիւն, մերժեաց զնա՝ խոժոռ 'ի նա ակնարկեալ։ Իսկ պատանեակն տեսեալ զնաւն, և զՄենտոր ոչ ևս, քանզի մեկնեալ էր նա անտի 'ի կատարել զվաստակն, եհարց ցաստուածուհին՝ թէ ո՞ւր էր նաւն այն, և առ ինչ կազմեալ։ Զկարաց դիցուհին առնել անդէն պատասխանի. այլ ապա ասէ. Ու 'ի չու Մենտորի ետու կառուցանել զդա. ոչ ևս կարասցէ նեղել զքեզ բարեկամդ դժպհի, որ խանդացեալ ընդ անմահութիւն քո՝ հակառակ կայ բարեբաստութեանդ քում։

Զայն իբրև լուաւ, գոչեաց պատանին. Նա թողո՞ւ զիս Մենտոր, վճարեալ ուրեմն է վասն իմ. եթէ 'ի նմանէ լքանիմ, չունիմ զայլ ոք բաց

'ի քէն՝ իմս Եւքարիս ։ Սողեաց բանս այս ընդ շրթունս նորա 'ի յոյզս կրից ․ և ծանեաւ նա զվրիպակն, 'ի յեղակարծումն պահու ոչ զգաստ եղեալ խնամոց բանին ։ Սարկեալ կացին ամենեքին ընդ բանս նորա ․ իսկ Եւքարիս շառագունեալ, զաչս 'ի վայր արկեալ, խռովեալ, յետկուսէ կայր, չիշխելով գալ յերևան ․ բայց թէպէտ և ամաչեցեալ, սակայն հրճուէր 'ի սրտի ։ Իսկ պատանին ոչ ևս անձին զգայր, և չհաւատայր իսկ զայնպիսի յանդուգն բարբառեալ բանս ․ երազ թուէր նմա այն, այլ երազ այնպիսի՝ ընդ որ զամօթի հարեալ տագնապէր ։

Յայնժամ Կալիփսէ զայրագին քան զառիւծ որդեկորոյս ընթանայր մոլորաշաւիղ ընդ անտառն, և ո՛չ գիտէր յո՛ երթայր ․ մինչև անդրէն դարձեալ գտաւ առ դուրս քարանձաւեայ բնակութեանն՝ ուր սպասեալ մնայր նմա Մենտոր, և ասէ ցնա ․ Ելէք 'ի բաց 'ի կղզւոյ աստի իմմէ արք օտարականուտք՝ որ եկիք աղմկել զխաղաղութիւն իմ ․ կորիցէ յերեսաց իմոց պատանիդ ժպիրհ, և դու, յանդուգն ալևոր, առցես զչափ աստուածասաստ բարկութեանս իմոյ՝ եթէ ոչ այժմէն իսկ հանցես զդա աստի ։ Ո՛չ ևս տեսից զերեսս դորա, և մի 'ի յաւերժհարսանց աստի ոք խօսել ընդ դմա կամ հայել իսկ կարասցէ 'ի դա, 'ի ստուգական երդուեալ իմ յայլս՝ երդումն դից իսկ ահարկու ։ Բայց քո չև իսկ լցեալ է աղետիցդ չափ, մանուկ ապաշնորհ ․ ելցես դու աստի

առ 'ի պատահել նորանոր արկածից. խնդրեսցի վրէժ իմ, և ապաշաւեսցես դու ընդ կորուսանել քո զԱպղիփսէ, այլ 'ի զուր: Պխիղոն դեռ ևս ծանրացատումն ընդ հօր քում՝ որ դատնացոյցն զնա 'ի Սիկիլիա, և զրգռեալ յՆչողկանէ՝ զոր դու 'ի Սիւդրոս Թշնամանեցեր, յաւելցէ ածել զքև մրրիկս: Տեսանելով տեսցես զհայր քո, զի չև է մեռեալ, այլ ոչ ծանիցես դու զնա. և խաղալիկ լեալ խուժադուժ բախտին՝ ապա թէ բնակեսցես ընդ նմա յԱթակէ: Ա՛րթ զնա արդատր 'ի բաց. զիք երկնաբնակք խնդրեսցեն զվրէժ իմ 'ի քէն, և 'ի մէջ ալեաց կախեալ զժայռէ, հարեալ 'ի շանթից, կարդացցես 'ի զուր զԱպղիփսէ՝ որ ցնծասցէ ընդ քոյդ պատուհաս:

Այլ 'ի կարդալ զանէծս զայսոսիկ՝ յուզեալ անդրէն 'ի կրից, 'ի հակառակ խորհուրդս զատածանէր. զի սէր զարթոյց դարձեալ 'ի սիրտ նորա զխղճս ունելոյ առ իւր զպատանին. և ասէր ընդ միտս իւր. Եկեսցէ նա, և կացցէ աստ ընդ իս. Թերևս յետոյ ապա ծանիցէ որ ինչ արարի ընդ նա, զի ոչ եթէ կարիցէ Աքսարիս համազօր ընդ իս պարգևել նմա զանմահութիւն: Ո՛վ կոյրդ ամենևին Ապղիփսէ, որ անձնատամատն երդմամբ քով լեալ՝ զքեզ կաշկանդեցեր. զիք ստուգականք՝ յորս երդուար, ոչ ևս թողուն քեզ տեղի ակնկալութեան: Այլ թէպէտ այսուքիկ ոչ լսելի էին բարբառք, այլ 'ի դէմս նորա նշմարէին

ճիւաղք դժոխայինեայք, և սևաթորմին Կոկի-տեայ թուէր 'ի սրտէ նորին ծխել ժահր թու-նալից:

Զահի հարաւ Տելեմաք. և զգաց զայն դի-ցուհին, զի զինչ ոչ գուշակէ սէր մայրենախանձ. և արհաւիրք պատանւոյն յաճախէին զանձկեցու-թիւն նորա: Զօրէն իմն աստուածապարպարկաց մոլելոց՝ որք լնուն զայերս 'ի ճիչ, զլերինս բար-ձունս Թրակիոյ հնչեցուցանելով, ընթանայր նա ընդ անտառս գեղարդն 'ի ձեռին՝ խրախոյս տալով յանտերժից առ հասարակ հարսանց զհետ իւր, և յետս կացելոցն սպառնացեալ: Նոքա 'ի սաստիցն զարհուրեալ՝ զհետ տային գունդա-գունդ, և Եւքարիս ընդ նոսա արտասուալից ակնարկելով 'ի բացուստ 'ի Տելեմաք՝ ընդ որում ոչ ևս իշխէրն բարբառել: Մռնչէր 'ի տեսանելն զնա առ իւր դիցուհին. և ոչ միայն անողոքելի 'ի հլութենէ յանտերժհարսինն, այլ զրգռէր և ևս 'ի զայրոյթ՝ տեսանելով զԵւքարիս թաղծու-թեամբն յաւելեալ 'ի գեղ:

Բայց Տելեմաք կայր մեկուսի ընդ Մենտորի. և փարեալ զծնգօք նորա, քանզի ոչ ևս իշխէր զկնի արկանել կամ ակնարկել իսկ 'ի նա, ողխ արտասուաց յաչացն իջուցանէր. կամէր բարբա-ռել, այլ հեղձամղձուկ լինէր և չգտանէր տալ պա-տասխանի. զինչ առնել էր նմա, զինչ առնէր, և զինչ իսկ կամէր: Եւ ապա առ ուրեմն գոչեաց. Ո՛վ ճշմարիտ իմ հայր, Մենտոր, զերծո զիս

*յանհնարին չարեացս. զի ոչ ևս կարեմ, ոչ մեկնել 'ի քէն, և ոչ զհետ քո գալ. զերծո զիս յանհնարին աղետից, զերծո զիս յինէն, հա՛ր սատակեա զիս:*

*Յայնժամ Մենտորի անկեալ զպարանոցաւ նորա, մխիթարեալ քաջալերեաց զնա, և խրատէր համբերել անձին՝ առանց զկիրսն գգուելոյ, և ասէ. Հանճարեղին Ոդիսեայ զաւակ, զոր սիրեցին և սիրեն դիք. առհաւատչեայ սիրոյ նոցա համարեսն քեզ արկածքդ ահագինք: Որոյ չիցէ զտկարութեան իւրոյ և զբռնութեան կրիցն առեալ զփորձ, չէ իմաստուն. զի չև ևս ճանաչէ զանձն, և ոչ զգոյշ կայ յանձնապաստանութենէ: Որպէս զձեռանէ քումմէ կալեալ, ածին զքեզ դիք յափն անողորմոց՝ առ 'ի ցուցանել քեզ զահագին խորութիւն նորա, առանց զահավիժելոյ անդր. 'ի միտ առնուս արդ զոր ոչն էր քեզ մարթ առնուլ 'ի միտ, եթէ չէիր ընդ փորձ իրացն անցեալ: Ի զուր էր խօսել ընդ քեզ զնենգութեանց սիրոյ, որ փաղաքշէ առ 'ի կորուստ, և ընդ վեր 'ի վերոյ քաղցրութեամբ նորա դժնդակագոյն դարանի թոյն դառնութեան: Եկն մանկիկն այն գեղեցիկ, ծիծաղէր խայտայր, և շնորհք սփռէին 'ի նմանէ. տեսեր զնա, յափշտակեցաւ նա զսիրտ քո, և դու ախորժանօք թողեր նմա զայն: Պատճառէիր անգիտանալ զվէրս սրտիդ, խնդրէիր պատրել զիս, և զքեզ իսկ փաղաքշել, և ոչ կասկածէիր ինչ. արդ ահա արգասիք յանդգնու-*

թեան քո, արդ յուսահատեալ՝ մահու ևեթ լինիս 'ի խնդիր։ Պիցուհին ցնորեալ, զդժոխագնեայցն ժամուց բերէ զնմանութիւն. Նաւքարխ տաշտրի 'ի բոց անողորմ քան զերկուոս մահու, և յաւերժհարսունքդ առ հասարակ նախանձընդդէմ զրգռեալք առ 'ի կեղեքել զիրեարս. ահա որ ինչ նենգաւորն գործէ սէր, որ այնպէս ախորժակն թուի։ Զօրացիր անդրէն, տես քանի՜ սիրեն զքեզ դիք՝ որ այսպիսի գեղեցիկ բանան քեզ ուղի փախստեան յերեսաց սիրոյ, առ 'ի դառնալ քեզ 'ի ցանկալի հայրենիս քո։ Նաւքն իսկ դիցուհին սաստիկ 'ի բաց առնել զքեզ. կազմ է նաւն 'ի ջուր, զի՞ յամեմք 'ի կղզւոջս՝ ուր առաքինութեան չիք դադար։

Նա զոյգ ընդ բանիցն առեալ զձեռանէ պատանւոյն՝ ձգէր զնա 'ի ծովափն. իսկ նա դժուարաւ քայլ զհետ գնայր, հայելով ստէպ յետս կոյս։ Պիտէր տեսանել զհեռանալ սիրուհւոյն. և ոչ ևս զդէմս նորա նշմարելով՝ հայէր 'ի գեղեցիկ հիւսակս վարսիցն, 'ի հանդերձն զեղածփեալս, և 'ի գնացսն նազելիս, և համբուրել զհետս զարշապարաց նորա ցանկայր։ Նա յանտեան իսկ լինել նորա յաչաց իւրոց՝ ունկն դնէր տակաւին, և կարծէր լսել զձայն նորա. տեսանէր զանտեան կենդանապատիր յաչս իւր նկարեալ, համարէր խօսակից գոլ ընդ նմա, ոչ գիտելով ուր էրն, և ոչ զբարբառ Մենտորի լսելով։

Նա ապա ուր ուրեմն որպէս 'ի խոր քնոյ զգա-

տուացեալ, ասէ ցՄ՝ենտոր. Կամիմ գալ զհետ քո, այլ չև ևս ետու Եւքարեայ ողջոյն հրաժարական. լաւ իցէ ինձ մեռանել քան թէ այսպէս ապաշնորհ մեկնել 'ի նմանէ. մնա ինձ, և դարձայց տեսից զնա 'ի յետին նուագ, և առից 'ի նմանէ հրաժեշտ անդարձ: Թող ինձ զի գէթ ասացից զնա. Հարան յաւերժական, դիք անկարեկիրք նախանձոտք իմում բարեբաստութեան հարկ առնեն ինձ մեկնիլ 'ի քէն. այլ լիցի նոցա բառնալ յինէն զկեանս, քան զյիշատակ քո 'ի մտաց իմոց: Երբեա ինձ հայր զվերջին զայս և զարժանահայց սփոփումն. ապա թէ ոչ՝ այժմէն իսկ առ յինէն զոգի իմ: Չեն և չեն ինձ կամք, ոչ կալ մնալ 'ի կղզւոջս, և ոչ մատնել զանձն 'ի սէր: Ոչ ևս զգամ սէր 'ի սրտի, այլ գութ բարեկամութեան և շնորհապարտ գոհութիւն առ Եւքարիս. շատ իցէ ինձ տալ նմա միւսանգամ ողջոյն հրաժարական, և ապա եկից անդէն զկնի քո:

Ասէ ցնա Մ՝ենտոր. Ողորմիմ քեզ, քանզի մոլեգինք են 'ի քեզ կիրք, զի և ոչ զգաս նոցին. կարծես զքեզ յանդորրու, և մահ խնդրես անձին. ասես զքեզ աննկուն 'ի սիրոյ, և չկարես մեկնել 'ի յաւերժհարսնէդ՝ զոր սիրես. կոյր և խուլ առ ամենայն, զնա միայն տեսանես, և զբարբառ ևեթ նորին լսես: Ցնորեալն 'ի տենդէ՝ չզգայ ախտին. կուրացեալդ Տելեմաք, յօժարես դու թողուլ զՊ՝ենելոպէ՝ որ սպասեալ մնայ քեզ,

զՈդիսևս՝ զոր մնայ քեզ տեսանել, զԻթակէ՝ ուր պատրաստեալ կայ քեզ արքայութիւն, զփառս և զվեհ հանեհ՝ զոր խոստացան քեզ դիք բազմապատիկ սքանչելիս վասն քո հրաշակերտեալ. կամիս դու 'ի բոլորից սատի հրաժարել 'ի բարեաց, առ 'ի կեալ անարգաբար ընդ Եւքարեայ։ Եւ արդ կարիցես ասել՝ թէ չիցէ քո 'ի նորայն հարեալ 'ի սէր. զի՞ այդ խռովեալ կաս, ընդէ՞ր մահ խնդրես, առ ի՞նչ այդպէս զառանցանօք ընդ դիցուհւոյն խօսէիր։ Ոչ իբր ստի և պատրողի մեղադրեմ քեզ, այլ զկուրութիւն քո ողբամ։ Փախիր, Տելեմաքէ, փախիր դու 'ի բաց. փախըստեամբ և եթ յաղթի սէր, և ճշմարիտ արիութիւն ընդդէմ այնպիսւոյ ոսոխի՝ այն իսկ է երկիւղ և փախուստ, և փախուստ հապճեպ՝ առանց պարապոյ յետս հայելոյ։ Յիշիցես ապաքէն քանի խնամս անդստին 'ի մանկութենէ քումմէ կալայ քեզ, և 'ի քանի վտանգաց խրատուք իմովք զերծար. անսա ինձ, և կամ թող զի լքից զքեզ։ Ո՜հ, քանի վիշտ էր ինձ տեսանել զքեզ դիմեալ 'ի կորուստ. ո՜հ, քանի տագնապ էր ինձ յորժամ չիշխէի խօսել ընդ քեզ. ոչ այնպէս մայր քո, որ ծնաւն զքեզ, տառապեցաւ յերկունս։ Լռէի, աղեկիզէի, հեղձամղձուկ զհառաչանս իմ ածնէի, մնալով դարձի քում առ իս։ Որդեակ իմ, սիրեցեալ որդեակ, մխիթարեա զսիրտ իմ, տուր ինձ զսիրելին ինձ քան զիմ աղիս, տուր ինձ զՏելեմաքէ՝ զոր կորուսի, տուր

քեզ իսկ զքեզ։ Եթէ իմաստութիւն 'ի քեզ յաղթեսցէ կրից, կեցցիս ես և կեցցիս բարեբաստիկ. իսկ եթէ սէր յաղթեալ իմաստութեան՝ զհետ իւր զքեզ առեալ ձգիցէ, ոչ ևս Մենտոր զօրեսցէ կեալ։

Եւ 'ի բարբառելն զայսոսիկ՝ յառաջ խաղայր նա 'ի ծովափն կոյս. և պատանին զհետ ևս անզօր 'ի գնալ ինքնին, բայց զհետ ձգեալ՝ երթայր անդիմադարձ։ Յայնժամ որ 'ի Մենտորն կերպարանէր Աթենաս, այծենակամճիւն անտեսաբար զպատանին պարածածկեալ, և շող աստուածեղէն սփռեալ զնովաւ, խրախոյս 'ի սիրտ նորա ազդեաց՝ որպիսի չէր նորա զգացեալ յանձին յոմէ հետէ 'ի կղզւոջն էր։ Հասին յեզր ուրեք կղզւոյն, ուր սարաւանդ կարկառէր 'ի ծով՝ ժայռ յարակոծ 'ի փրփրադէզ կոհակաց։ Դիտէին 'ի բարձուէ անտի՝ թէ էր 'ի տեղւոջ իւրում լաստափայտն նորակերտեալ. բայց, աւա՜ղ, տխուր տեսարան։ Սիրոյ սրտմտեալ 'ի տեսանել զծերունին անծանօթ, որ ինքն անթափանց 'ի նետից նորա՝ զպատանին իսկ պատսպարէր, լալով առ սրտին զայրոյթ՝ դիմեաց առ Կալիփսէ, որ թափ առեալ 'ի նսեմ անտառին շրջէր։ Հառաչեաց դիցուհին 'ի տեսիլ մանկանն, և բացան անդրէն վէրք սրտի նորա առ հասարակ։ Եւ ասէ ցնա մանուկն. Աստուածուհիդ գոլով՝ նկո՞ւն լինիցիս յապիկար մահկանացուէ, որ գերեալ կայ 'ի կղզւոջդ. Եւ ո՞ր արձակես զդա 'ի բաց։ Պատասխանի ետ դիցու֊

հին. Մաշուէր մանուկ, ոչ ևս լուսոյ հրապուրանաց քոց. դու բարձեր յինէն զքաղցր և զանդորր խաղաղութիւն, և զահավէժ արկեր զիս ՚ի վիհս աղետից։ Չիք հնար. երդուայ՝ թողուլ զպատանին. ինքն իսկ ամենակալն Արամազդ չիշխէ անցանել զահագին երդմամբն. ելցէ Տելեմաք ՚ի կղզւոյս, ե՛լ և դու մանուկ եղեռնաւոր, դու ինձ վնասակարագոյն քան զնա գտար։

Յայնժամ սիրոյ սրբեալ զարտասուս աչաց իւրոց, ՚ի ժպիտ ժանտ և երգիծական ասէ. Այո՛ ահա խոչ անկոխելի առաջի մեր. յիմ վերայ հոգդ այդ. մի լինիր դու երդմնազանց, և մի արգելուր զչու պատանւոյն. այլ ոչ յաւերժհարսանցդ քոց և ոչ իմ ՚ի ստիւգական երդուեալ է յաւիտ՝ արձակել զնա ՚ի բաց. սադրեցից նոցա հրդեհել զնաւն՝ զոր արագ արագ կառուցեալ ՚ի Մենտորէ. ժրութիւն նորա, որ ապշեցոյցն զքեզ, լիցի ՚ի դերև. և նա ինքն յապշութիւն մատնեսցի, և ոչ ևս մնասցեն նմա հնարք թափելոյ ՚ի ձեռաց քոց զպատանին։

Ի հրապուրական բանից աստի խլրտեցաւ յոյս և խնդութիւն ՚ի սիրտ Կաղիպսեայ. և որպէս սիւգ զովարար յեզր վտակի հանգուցանէ զխաշն տօթակէզ, այսպէս հրապոյրք մանկանն սփոփեցին զյուսահատ թախիծս դիցուհւոյն։ Պարզեցան դէմք նորա, քաղցրացան ականողիք. և վայրիկ մի տեղի ետուն ՚ի նմանէ հոգք անդոհականք՝ որ զսիրտ նորա կեղեքէին. զկայ էառ,

ժպտեցաւ, գգուեաց զմանուկն փաղաքշօտ. և 'ի գգուել անդ զնա՝ յաւել պատրաստել խոր վիշտս նորանորս: Իսկ նա գոհ և զուարթ ընդ համոզումն դիցուհւոյն, երթայր համոզել և զյաւերժհարսունս՝ որ վայրավատին. ընդ լերինս ցրուեալ էին որպէս զայծերամակ, զոր գայլ սովալլուկ հալածէ մղեգլին յերեսաց հովուի: Կոչեաց զնոսա 'ի մի վայր, և ասէ. Ահ ձեզ է տակաւին Տելեմաք, փութայք հրձիգ առնել զնաւդ՝ զոր ժպիրհն կառոյց Մենտոր առ 'ի փախուստ: Եւ նոյնժամայն լուցեալ նոցա ջահս՝ դիմեցին 'ի ծովեզր անդր, զօրէն մղեղոյ աստուածապարտակաց հերարձակք մռնչելով ձիչ բարձեալ: Եւ ահա ցոլանայր բոցն, լիզանէր ծախէր զկաստափայտն կիզանուտ օծեալ 'ի ձիւթ. և մրրիկ ծխոյ խառն ընդ բոցոյն ելանէր բարձրանայր յամպս դիզանէր:

Զայն հրդեհ տեսանէին Տելեմաք և Մենտոր 'ի բարձուէ ժայռին, և զյաւերժհարսանցն լսէին ևս զաղաղակ: Ախորժ իմն ընդ տեսիլն խլրտէր 'ի սիրտ պատանւոյն չև ևս ապաքինեալ. և զգայր Մենտոր զի կիրք նորա որպէս խանձող ծածկեալ ընդ մոխրով՝ երբէք երբէք ծխէին, հրացայտ կայծակունս արձակելով: Ասէ պատանին. Ահա արդ վերստին 'ի կապանս անկեալ գտանիմ, ոչ ևս մնայ մեզ յոյս մեկնելոյ աստի: Դիտաց Մենտոր զմօտալուտ վտանգ 'ի նոյն կիրս անդրէն զդառածանելոյ պատանւոյն, և զի ոչ ևս պարտ էր և ոչ վայրիկ մի դանդաղել: Ետես 'ի բացէ զկայ

տանել 'ի ծովու նաւ մի՝ որ չիշխէր 'ի կղզի անդր մերձենալ, զի զխոտէն նաւավարք առ հասարակ անմոռաց զվայրն 'ի մահկանացուաց. և մղեալ անդէն զպատանին՝ որ 'ի քարափն ժայռին նստէր, և զանձն ևս զհետ նորին արկ 'ի ծով: Աստանեցաւ Տելեմաք 'ի գահավէժ անկմանէն, և կլեալ զաղտաղտուկ ալիս, և կոհակակոծ տատանեալ, եկն 'ի միտս իւր. և տեսանելով ձեռնտու իւր զՄենտոր առ 'ի լող, ոչ ևս խորհէր ինչ՝ բայց միայն մեկնել 'ի բաց յեղեռնական 'ի կղզւոյն:

Յաւերժհարսունք՝ որք զբռամբ կարծէին զնոսա ածեալ, ձիչ բարձին զայրագինս՝ ոչ կարացեալ խափանել զփախուստ նոցա. և Կալիփսէ անմխիթար դարձեալ 'ի քարայր իւր, լնոյր զայն կականաւ: Իսկ Մանուկն սէր՝ որ զյաղթանակ իւր ետես շրջեալ յամօթապարտ 'ի կորանս, սաւառնաթև ընդ օդս յԻդալական թռեաւ յանտառս, ուր անողորմ մայր նորա սպասէր նմին. և անողորմագոյն քան զմայրն ինքն իսկ որդին սփոփէր ընդ նմա, բերկրելով ընդ չարիսն՝ զոր գործեաց:

Բայց Տելեմաք ըստ հեռանալ 'ի կղզւոյն՝ առաւելագոյն զգայր յանձին խրախոյս և սէր յառաքինութիւն հանդերձ հրճուանօք, և գոչէր առ Մենտոր. Արդ 'ի միտ առնում զոր ասէիրն, և որ չհաւատալի ինձ թուէր մինչ չև զփորձ առեալ, զի փախստեամբ ևեթ է յաղթել ախտից: Հայր իմ, մեծ արարին դիք ընդ իս գութ՝ 'ի պարգևել զքեզ ինձ ձեռընկալու. արժանի էի զրկելոյ

'ի քէն, և մնալոյ անօգնական։ Ոչ ևս այսուհետև, ոչ 'ի ծովէ զանգիտեմ, ոչ 'ի հողմոց և ոչ 'ի մրրկաց. այլ 'ի կրից ևեթ յիմոց երկիւղ է ինձ, և քան զամենայն նաւաբեկութիւնս ահաւորագոյն է ինձ սէր։



# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ

## ԵՕԹՆԵՐՈՐԴԻ ԳՐՈՑՆ

1 Հերմէս որդի Արամազդայ և Մայեայ, գտակ արուեստից բազմաց, դիք ճարտարախօսութեան, վաճառականութեան, և հուզկահարութեան, թարգման և պատգամաւոր դից։ Նկարի թեւաւոր յոտս և 'ի գլուխ իւր։

2 Յաւերժահարսունք բնակեալք 'ի Նաքսոս վասն սնուցանելոյ իւրեանց զԲաքոս՝ փոխեալ 'ի յերկինս, պատկերացան 'ի բազմաստեղս։



# ՆԱԽԱԴՐՈՒԹԻՒՆ

Ադովամ եղբայր Նաբաւայ, հրամանատար նաւուն տիւրացւոյ, ընդունի մարդասիրապէս զՏելեմաք և զՄենտոր. և ծանուցեալ զՏելեմաք, պատմէ նմա զեղերական մահ Պիգմալիոնի և Աստարբեայ, և զգահակալել Բալէազարու՝ որ 'ի բռնաւոր հօրէն մերժեալն էր սադրանօք նորին իսկ Աստարբեայ։ Ադովամ առնէ նոցա ճաշ, և անդ Աքիտովաս քաղցրաձայն երգովք համախմբէ զնաւուն զպար Տրիտոնից և զՆերեայց և զայլոց դից ծովայնոց. և Մենտորի առեալ քնար, քաղցրագոյն ևս քան զԱքիտովաս նուագէր նովաւ։ Պատմէ ապա Ադովամ զհրաշս Բետիկայ, և նկարագրէ զքաղցրախառն օդս և զայլ գեղեցկութիւնս երկրին՝ ուր բնակիչք կեան խաղաղաւէտ պարզաբարոյք կենցաղավարեալ։

# ԱՐԿԱԾՔ ՏԵՂԵՄԱՔԱՅ

## ԳԻՐՔ ՈՒԹԵՐՈՐԴ

Նաւն զկայ առեալ 'ի ծովուն, յոր դէմ եդեալ զնայլին 'ի լոյղ Մենտոր և Տելեմաք, էր փիւնիկեցի՝ որ երթայր յԷպիրոս: Փիւնիկեցւոց՝ որ էին 'ի նաւին՝ տեսեալ իսկ էր զՏելեմաք յուղևորել նորա ընդ Եգիպտոս, այլ ոչ ծանեան զնա 'ի ծուփս ալեաց: Իբրև մօտ 'ի նաւ անդր հասանէր Մենտոր, ցոր վայր լսելի լինէր բարբառ, 'ի վեր առեալ զգլուխ իւր ընդ մկանունս ջուրցն գոչեաց մեծաձայն. Նաւերարք առ ամենայն ազգս փիւնիկեցիք, շնորհել մեզ կեանս՝ 'ի ձերմէ խնդրեմք մարդասիրութենէդ: Եթէ երկիւղածք 'ի դիցն իցէք, ընկալարուք զմեզ 'ի նաւ ձեր. եւ թիցուք յոր վայր և երթայցէք: Պատասխանեաց նաւապետն. Մտադիւր ընդունիմք զձեզ, չեմք ինչ անտեղեակք որ ինչ մարդասիրութեան առ թշուառս՝ թէպէտ և անծանօթս՝ իցեն պարտք: Եւ ընկալաւ զնոսա 'ի նաւ:

Ելանել ելին անդր՝ այլ ոգեսպառ, և արձանացեալ կային անշարժք վասն երկարաձիգ ճգամբքն ոգորելոյ ընդ ալիս։ Տակաւ ապա ոգի առեալ փոխեցին զհանդերձս իւրեանց, զի էին ողողեալ և շուրջ քամէին 'ի նոցանէ ջուրք։ Եւ իբրև զօրացան և կարէին խօսել, փիւնիկեցիք առ հասարակ խռնեալ զնոքօք՝ հարցանէին զարկածից նոցա, և նաւապետն եհարց և ասէ. Զիա՞րդ եղև ձեզ մտանել 'ի կղզի այդր՝ ուստի գայք, զի աստուածուհի անողորմ 'ի դմա տիրապետեալ՝ չներէ ումեք այդր մտանել. և քարաժայռք շուրջ պատեն զդա ահագինք՝ զորս կոծեն ալիք զայրագինս, և չիք մտել այդր՝ բայց 'ի մրրկաց ընկեցիկ լեալ։

Պատասխանի ետ Մենտոր և ասէ. Մեք իսկ նաւաբեկութեամբ անդր անկաք. Հելլէնք եմք ազգաւ, և հայրենի գաւառ մեր Իթակէ՝ կղզի մերձ յԵպիրոս, ուր դուքդ երթայք։ Եթէ չկամիք թողուլ զմեզ անդ յԻթակէ՝ ընդ որ անցանելոցդ էք, շատ է մեզ գնալ ընդ ձեզ յԵպիրոս. են մեր անդ բարեկամք՝ որք ձեռն տացեն մեզ անտի յԻթակէ զսուղ անցումն առնել, և շնորհապարտք լիցուք ձեզ 'ի սպառ՝ ձեօք զամենացանկալին տեսանելով անդրէն խնդագին զհայրենիս։

Զայսոսիկ Մենտոր բարբառէր, լուռ ևեթ կալով պատանւոյն. քանզի սխալանօքն, զորս 'ի կղզւոջ անդ Կալիփսեայ գործեաց, ևս քան զևս էր զգօնացեալ։ Ոչ ևս վստահէր յանձն. գիտէր

զի կարօտէր իմաստութեան խրատուցն Մենտորի. և բանիւք զնա հարցանել ոչ կարացեալ, ակնկառոյց կայր 'ի նա յակնարկութեանցն գէթ ջանացեալ գուշակել զկամս նորա:

Նաւապետին փիւնիկեցւոյ պշուցեալ 'ի Տելեմաք՝ թուէր իմն այնպէս տեսեալ զնա այլուր. այլ ընդ աղօտ յոյժ յիշատակաւն ոչ կարացեալ ստուգութեամբ 'ի վերայ կալ տեսութեանն՝ ասէ. Ներեա ինձ հարցանել զքեզ՝ եթէ յիշիցես տեսեալ զիս ուրեք յառաջագոյն, որպէս թուի ինձ թէ տեսեալ իցեմ զքեզ. զի ոչ անծանօթ տեսիլ դիմացդ հարաւ յաչս իմ. բայց թէ ո՞ւր տեսեալ է իմ զայն ես ոչ յիշեմ, յիշատակաւ քով թերևս զարթուցես և զիմս:

Պատասխանի ետ Տելեմաք զուարճախառն հիացմամբ և ասէ. Ի նոյն կիրս կամ և ես յոր դու ինքն 'ի տեսանելդ զիս: Տեսեալ է իմ զքեզ և ճանաչեմ. բայց 'ի Տիւրոս թէ յԵգիպտոս՝ ասել զայն ոչ ունիմ: Ընդ յայնժամ փիւնիկեցին՝ որպէս այր որ ընդ այգն զարթուցեալ 'ի քնոյ և զբացական տեսիլս անրջական փախստեայ երազոցն տակաւ 'ի յուշ ածիցէ՝ գոչեաց յանկարծ. Դու ինքն ես Տելեմաք ընդ որում յօդիւ բարեկամութեան կապեցաւ Նարբալ 'ի դառնալս մերում յԵգիպտոսէ: Եղբայր եմ ես Նարբալայ, յորմէ՝ որպէս ոչինչ երկբայիմ՝ բազում ինչ լուեալ իցէ քո զինէն: Յետ արշաւանացն որ յԵգիպտոս՝ թողի զքեզ առ նմա. զի ինձ հարկ էր հա-

տանել անցանել ընդ ծովս և մինչև 'ի Հերակլեան արձանսն դիմել 'ի հանքաւաւորենցն Բետիկէ։ Նոյնպէս 'ի հարևանցի ևեթ տեսեալ՝ չէին ինչ զարմանք զի ոչ իսկ և իսկ ծանեայ արդ զքեզ։

Պատասխանի ետ Տելեմաք և ասէ. Քաջ իսկ տեսանեմ ահա զի դու ինքն ես Մենտոր. հազիւ տեսեալ իմ զքեզ յայնժամ՝ և ապա 'ի բանից Նարբալայ ծանեայ զքեզ։ Խնդութիւն մեծ է ինձ առնուլ 'ի քէն լուրս զբարեկամէն որ սիրելին իցէ ինձ միշտ։ Ասա՞ նա տակաւին 'ի Տիւրոս, և ոչինչ 'ի կասկածանաց խուժադուժ Պիգմալիոնի կրեաց դժնդակս։ Կարճեաց զբանս նորա Ադովամ և ասէ. Գովասջիր Տելեմաք զի յաջողեաց քեզ բաղդն տուեալ 'ի ձեռս առն որ զամենայն փոյթ և զխնամս կալցի զքէն. և մինչ չև դարձուցեալ իմ զքեզ յԻթակէ՝ ոչ երթայցես յԱպիրոս. և եղբայրն Նարբալայ ոչ ինչ ընդհատ քան զնա կալցի ընդ քեզ բարեկամութիւն։

Եւ մինչդեռ խօսէր, յարեաւ հողմն աջողակ. և հրամայեաց խարիսխ վերացուցանել, առագաստ պարզել, թի վարել, հերձանել զխորս։ Եւ առեալ մեկուսի զՏելեմաք և զՄենտոր, սկսաւ խօսել, և ասէ ցպատանին. Պատմեցից քեզ արդ զոր հարցերդ։ Պիգմալիոն ոչ ևս է 'ի միջի, արդարադատ դիք ազատեցին 'ի նմանէ զերկիր. որպէս ոչ վստահէր նա յոք՝ նոյնպէս և ոչ ոք 'ի նա վստահանայր։ Լաւք հեծէին ևեթ, և

շատ համարեալ խուսել յանգթութեանց նո-
րա՝ չիշխէին յառնել ընդդէմ նորա. իսկ չարք
անկեաց զկեանս իւրեանց համարէին՝ առանց
զրաւելոյ զնա 'ի կենաց: Չէր ոք 'ի Տիւրոս
զերծ 'ի հանապազօր կասկածանաց նորա. Թիկ-
նապահք իսկ նորա առաւել կրէին վտանգ. զի
'ի ձեռս նոցա էին կեանք նորա, և զնոցանէ ա-
ռաւել քան զայլոց կասկածէր. և առ դոյզն ինչ
կասկած՝ փոխանակէր զկեանս նոցա ընդ ապահո-
վութեան իւրում: Այսու օրինակաւ 'ի խնդիր
ապահովութեան կենաց, առաւել ես 'ի վտանգ
զկեանս իւր արկանէր: Որք միանգամ աւանդա-
պահքն էին կենաց նորա, հանապազ յերկիւղի
կային յերեսաց կասկածանաց նորա. և ոչ էր
մարթ զերծանել նոցա յարհաւրաց անտի, բայց
միայն ընդ կենաց նորին կարճելով զդժնդակ
կասկածանսն:

Անօրէնն Աստարթէ, զորմէ լսէիրն խօսելոյ
յառաջ, նա ինքն նախ 'ի կորուստ բռնաւորին
մտաբերեաց: Վարեալ էր նա 'ի սէր երիտա-
սարդի ուրումն տիւրացւոյ մեծատան, որում ա-
նուն էր Յովազար. և յուսայր ամբառնալ զնա
'ի գահ: Այլ 'ի կատարումն խորհրդոյն չարախօ-
սեաց յունկն արքայի՝ զի անդրանիկն յերկոցունց
արքայորդւոց Փաղայէլ, առ 'ի վաղագոյն զհայ-
րենի աթոռն ժառանգելոյ, դարան գործէր կե-
նաց նորա. եգիտ և վկայս սուտս առ 'ի հաստա-
տութիւն դաւաճանութեանն: Վէգ բռնաւորն

'ի մահ մատնեաց զորդին անպարտական. իսկ զկրտսերն զՆաւէազար արձակեաց 'ի Սամոս իբր առ 'ի հրահանգս հելլէն դպրութեանց և բարուց, այլ ստուգիւ առ 'ի հեռացուցանել զնա սադրանօք Աստարբեայ, թէ գուցէ ընդ դժկամակեալսն միաբանեսցէ: Եւ ընդ մեկնել նորա 'ի նաւահանգստէն՝ նաւաստին կաշառակուրծ յանողորմ կնոջէն զգիշեր իւր օգնական առեալ, նիւթեաց նմա դաւ՝ նաւակոծ 'ի ծայրս մատնեալ ալեաց զպատանին արքայորդի, և ինքն պրծեալ 'ի լող 'ի մակոյկս օտարս՝ որ անդ սպասեալ մնային:

Բայց պոռնկութիւնք Աստարբեայ ամենեցուն ծանօթք՝ 'ի բռնաւորէն եւեթ ծածկէին. և կարծէր նա թէ զինքն միայն սիրիցէ. և որ այնպէս կասկածոտն էր, կուրացեալ 'ի սպառ 'ի սիրոյ՝ վստահէր անկասկած 'ի կինն ժանտ: Ի ժամանակին յայնմիկ գրգռեալ յագահութենէ՝ բարուրս խնդրէր առ 'ի մահ Յովազարայ, որում մոլեգին տռփայր Աստարբէ. բայց բռնաւորն առ 'ի գրաւել եւեթ զգանձս պատանւոյն՝ 'ի սպանութիւն նորին մտաբերէր: Եւ մինչդեռ կասկածանք տռփանք և ագահութիւն զսիրտ նորա կեղեքէին, աճապարեաց Աստարբէ զրաւել զնա 'ի կենաց: Քանզի կարծելով յայտնեալ բռնաւորին զեղեռնաւոր սէր իւր ընդ պատանւոյն, և զի դարձեալ զագահութիւն եւեթ բաւական համարէր 'ի հրապուրել զբռնաւորն յանողորմ սպանութիւնն, եդ 'ի մտի կանխել անյապաղ զկո-

րուստ նորա ։ Տեսանէր զաւազանի դրանն յօժարամիտ 'ի մխել զձեռս իւրեանց 'ի բռնաւորն, լսէր հանապազօր զնորանոր խորհուրդս դաւաճանութեան նոցա. բայց երկնչէր յայտնել ումեք զխորհուրդ իւր կասկածանօք մատնութեան. վասն որոյ ապահովագոյն վարկաւ դեղել զնա ։

Սովոր էր բռնաւորն ճաշել ընդ Նստարբեայ միայնակ, և իւրովի զճաշն պատրաստէր՝ ոչ յայլ ումեք վստահացեալ ։ Ի խորս արքունեացն ծակախիթ լինէր առ 'ի ծածկել բնաւին զկասկածանս իւր, և անտես յայլոց համբերձել զկերակուրն. ոչ ևս խնդրէր համադամս, և ոչ ճաշակել իշխէր որ ինչ ոչն իւրովի կարէր համբերձել ։ Վասն որոյ ոչ միայն խորտիկք 'ի խոհակերաց համեմեալք, այլ և գինի, հաց և աղ, ձէթ և կաթն, և այլն ամենայն պարէն հանապազօր ոչ հարկանէին զպէտս նորա ։ Մ՚իրգ՝ զոր ինքնին ձեռօք իւրովք 'ի պարտիզէ արքունեացն կթէր, և ունդք՝ զորս ինքնին սերմանէր և ժողովէր և եփէր, այն էր նորա կերակուր. և ջուր յաղբերէ, զոր յարքունիս անդ ամփափակեալ պահէր, զայն իւրովի առեալ ըմպէր ։ Այլ թէպէտ զամենայն վստահութիւն ցուցանէր Նստարբեայ, սակայն և 'ի նմանէ զգուշանայր, նմա նախ մատուցանէր 'ի ճաշակ և յարբումն յամենայնէ, զոր առնոյր 'ի ճաշ, որպէս զի մի առանց նորա լիցի դեղակուր, և մի երկարակեաց յուսասցի նա քան զինքն լինել ։ Նայլ նորա առեալ դեղթափ 'ի

պատուաւոյ ումեմնէ, որ ժանտ քան զնա ինքն էր և գիտակից տուփանաց նորա, ոչ ևս երկեաւ թունել զարքայ. և այսպէս զխորհուրդն չարութեան եհան 'ի գլուխ ։

Այն ինչ սկսանէին ճաշել, դղրդեաց պառաւն յանկարծ զդուռնն ։ Բռնաւորն՝ որ յար 'ի կասկածանս էր հինից 'ի վերայ իւր հասանելոյ, խռովեալ 'ի դուռն անդր ընթացաւ՝ տեսանել թէ իցէ՞ անդրափակ ։ Ի բաց մեկնեցաւ պառաւն. իսկ բռնաւորն սասանեալ կայր ոչ գիտելով զդղրդմանն պատճառ, այլ և ոչ իշխեաց բանալ ըզդուռնն առ 'ի գիտել ինչ ։ Յայնժամ Աստարբէ քաջալերեալ ողոքեալ զնա, թախանձէր դառնալ 'ի սեղան անդր, վաղ իսկ խառնեալ թոյն 'ի բաժակն ոսկի 'ի դիմել նորա 'ի դուրս ։ Մինչ չև զայն արբեալ բռնաւորին, եւս նման որպէս սովորն էր 'ի ճաշակ. և ճաշակեաց Աստարբէ աներկիւղ, վստահ յանդեղայն ։ Այլ և բռնաւորին արբեալ զայն, արագ արագ նուաղեալ անկանէր յերկիր ։

Աստարբէ, որ քաջ գիտէր՝ զի առ դոյզն ինչ կասկած մարթէր բռնաւորին սպանանել զնա, սկսաւ զօձիս պատառել, զհերս խզել, և կական բարձեալ փարէր զբռնաւորաւն՝ որ յոգիսն էր ապաստան, և առեալ զնա 'ի գիրկս՝ թանայր զնա վտակայեղց արտասուօք. զի յատուկ կնոջն դիւրահոս էին արտասուք ։ Այլ իբրև ետես անկեալ զնա 'ի զօրութենէ և 'ի շունչ վախճանին հասեալ, երկեաւ թէ գուցէ յինքն անդրէն զզօ

ըութիւնն ժողովեալ՝ մահակից իւր զնա արարացէ, զգգուանան և զգութ գորովոյ շրջեալ 'ի մոլեգին կատաղութիւն, անկար զնովաւ և խեղդամահ զնա արար։ Կորզեալ ապա 'ի մատանէ նորին զվաւերականն արքունի, և բարձեալ զթագն 'ի գլխոյն, կոչեաց 'ի ներքս զՅովազար, և մատոյց նմա զայնոսիկ։ Կարծէր զի զակատեալքն առ հասարակ 'ի սէր իւր կուսակիցք լինէին նմա, և զհոմանին իւր քարոզէին թագաւոր. այլ որք առաւելն փութային հաճոյ լինել նմա, էին վատք և վարձկանք անընդունակք անկեղծ սիրոյ. որոց ոչ էր արիութիւն, և երկնչէին յայնցանէ՝ զորս Բստարքեայ յարուցեալ էր ընդդէմ իւր. և առաւել ևս երկնչէին 'ի գոռոզութենէ 'ի մեղմեխանաց և յանգթութենէ անպարիշտ կնոջն, և ամենայն որք առ 'ի փրկութիւն իւր ցանկայր կորստեան նորա։

Յայնժամ լի եղեն արքունիքն աղմկաւ և արհաւրօք, և ամենայն ուրեք լսելի լինէր բարբառ՝ թէ մեռաւ արքայ։ Կէսք զարհուրեալ, այլք 'ի զէն ընթանային. թուէին ամենեքին տագնապեալք ընդ ելս իրացն, այլ խնդամիտք առ հասարակ ընդ գոյժն։ Համբաւն երագաթռիչ շրջթանց 'ի շրթունս ընթացեալ ընդ ամենայն կողմանս մեծի քաղաքին տարածեցաւ. և չգտանէր և ոչ մի որ զմահ թագաւորին ապաշաւէր. զի մահուամբ նորա ազատէր և սփոփէր ամենայն ժողովուրդն։ Բայց Արբաւ, քանզի էր այր ա-

ռազմինի, սոսկացեալ ընդ եղեռնն՝ ողբայր զաղէտս թշնաւորին, որ անձնատուր եղև 'ի ձեռս անօրէն կնոջն, և լաւ համարեցաւ լինել թշնաւոր խուժադուժ քան հայր ժողովրդեան՝ որպէս պարտն է Թագաւորի։ Խորհեցաւ յօգուտ աշխարհին, և միաբանեաց ընդ իւր զլաւ որեարն ընդդէմ Աստարբեայ, ընդ որով մնայր նոցա տեսանել զերուԹիւն խիստ քան զոր կրէինն ցայն վայր։

Գիտէր Նարբալ զի Բալէազար 'ի մատնելն ալեաց՝ չէր լեալ հեղձամահ. զի Թէպէտ համբաւաբերք մահու նորա կարծէին զնա մեռեալ, այլ նա զիշերախառն անտես 'ի նոցունց պրծեալ 'ի լող, և 'ի վաճառականաց կրետացւոց մարդասիրապէս ընկալեալ էր 'ի նաւ։ Բայց չէր նորա իշխեալ դառնալ առ հայր իւր, կասկածելով 'ի նմանէ նիւԹեալ իւր զկորուստն, և երկնչելով յանագորոյն նախանձուէ նորա. և 'ի խորամանկ հնարիցն Աստարբեայ. այլ դեգերէր ծպտեալ ընդ ծովեզերս Ասորւոց, ուր վաճառականացն կրետացւոց Թողեալ էր զնա. ուր և հարկ իսկ լեալ էր նմա խաշնարածուԹեամբ հայԹայԹել զկեանս իւր։ Բայց եգիտ նա հնարս զգացուցանելոյ Նարբալայ զանցս իւր, ոչ ինչ երկմտեալ հաւատալ զգաղտնիս իւր և զկեանս այնմ՝ որոյ վկայեալ էր յամենեցունց առաքինուԹիւն։ Նարբալայ Թէպէտ և անիրաւուԹիւնս 'ի հօրէն կրեալ, սակայն սիրեաց զորդին և օգնէր նորա խնամկալաւ, զգուշացեալ ևեԹ զի մի՛ դրժեսցէ նա որ-

դիւական սպարտուցն, և յորդորելով երկայնամտել ձախողակ բաղդին։

Բաղէշազարայ առաքեալ էր առ Նաբատ, զի յորժամ 'ի դէպ թուեսցի նմա կոչել զմեզ՝ յղեսցէ իւր մատանի ոսկի, ազդ առնել զպատեհ դարձին իւրոյ։ Բայց Նաբատայ ոչ 'ի դէպ թուէր առ կենդանութեամբն Պիգմալեայ կոչել զնա, քանզի և կենաց իւրոց և արքայորդւոյն հասանէր վտանգ 'ի խիստ խուզարկութենէ բռնաւորին։ Իսկ 'ի զրաւել հիքին 'ի կենաց ըստ արժանի իւրոցն ապիրատութեանց, փութացաւ Նաբատ առաքել զմատանին ոսկի առ Բաղէշազար. և նորա անդէն վաղվաղակի յուղի անկեալ, եհաս առ դուրս Տիւրոսի 'ի պահուն՝ յորում աղմկէր քաղաքն վասն յաջորդութեան գահուն։ Մտադիւր ընկալան զնա աւագանին տիւրացի հանդերձ ամենայն ժողովրդեամբն. քանզի սիրէին զնա, ոչ վասն հօրն՝ որ ատելի էր ամենեցուն, այլ վասն հեզ և զգօն բարուց նորա։ Աղէտք իսկ նորա բազմամեայք յաւելուլին գեղանշոյլ ևս զբարեմանութիւնս նորա պայծառացուցանել, և 'ի գորով ածել ընդ նա զտիւրացիս առ հասարակ։

Ժողովեաց Նաբատ զպետս ժողովրդեան, և զատեան ծերակուտին, և զքուրմս մեծի դիցուհւոյն փիւնիկեցւոց. և ողջունեցին զԲաղէշազար թագաւոր իւրեանց, և քարոզ կարդայր՝ կեցցէ արքայ Բաղէշազար. զնոյն և ժողովուրդն առ հասարակ ձայնիւ ցնծութեան աղաղակէր։ Ազդ եղև

Աստարբեայ բարբառ աղաղակին մինչև 'ի խորս ապարանիցն, ուր ամրացեալ կայր ընդ իւրումն վատասիրտ և վատանուն հոմանւոյ: Արք անզգամք, որք արբանեկէին նմա առ կենդանութեամբն Պիգմալեայ, թողեալ լքեալ էին զնա. զի չարք 'ի չարաց երկնչին, կասկածեն զմիմեանց, և դժուարի է նոցա տեսանել զիրեարս հասեալ յաւագութիւն. քանզի գիտեն զի նմանիք իւրեանց որք զեղծք չարաչար վարին իշխանութեամբն և բռնանան: Վասն որոյ լաւագոյն համարին զիշխանութիւն լաւաց, զի յուսան հանդիպել 'ի նոցանէ հեզութեան և ներողամտութեան: Ոչ ևս ոք էր ընդ Աստարբեայ բաց 'ի գործակցաց ժամանաժուտ եղեռանցն, որոց չէր այլ ինչ ակնկալութիւն՝ բայց պատժոց պատուհասի:

Բռնադատեցին զզօրսն ապարանիցն. և որք 'ի ներքս էին անօրէնքն ոչ իշխեալ զդէմ ունել ընդ երկար, 'ի փախուստ մտաբերեցին: Աստարբէ 'ի կերպարանս ստրկի խառն 'ի խուռն հնարէր զերծանել 'ի բաց. այլ յումեմնէ 'ի զինուորացն ծանուցեալ՝ ձերբակալ եղև, և հազիւ կարաց Նարբալ զերծուցանել զնա յերեսաց մոլեգնութեան ամբոխին՝ որ 'ի քարշ ածեալ ընդ տիղմ կամէր յօշոտել զնա: Յայնժամ խնդրեաց խօսել ընդ Բալէազարու, յուսացեալ պատրել զնա գեղովն և խոստմամբ յայտնելոյ նմա գաղտնիս մեծամեծս: Չկարաց Բալէազար մերժել զխնդիր նորա. և իբրև յանդիման եղև նմա Աստարբէ, այն

պխսի ցածութիւն յանձին և հեզութիւն բերել՝ որ մարթէին ողոքել զսիրտ գազանացեալ։ Շնթէր շողոմէր փաղաքշանօք. առաջի առնէր զկաթողին ընդ իւր զսէր Պիգմալեայ, և զանձին նորին յաղերս ածէր՝ խնայել յինքն. կարդայր զդէս յօգնութիւն, իբր երկիւղածութեամբ զնոսա պաշտեալ. ուխտս արտասուաց խղճուցանէր, անկանէր փարէր զոտիւք նորոյ արքային. և կասկածաւորս նմին և ատելիս հնարէր առնել զհաւատարիմագոյնս իսկ յաւագանւոյն։ Ամբաստանէր զԱստարբալ դաւակից լեալ ընդդէմ Պիգմալեայ, և հրապուրեալ զամբոխն առ 'ի յինքն ձգել զթագաւորութիւն, և զսն իսկ գործեալ առ 'ի զրաւել զարքայորդին դեղով 'ի կենաց։ Յօդէր կարկատէր բարուրս զըպարտանաց և զայլոց առ հասարակ տիւրացւոց առաքինասիրաց, և հանաքէր զՆարէազար հանգոյն հօրն չարախորհուրդ և կասկածոտ։ Այլ նորա ոչ ևս ժուժկալեալ ընդ ապիրատ խորամանկութիւն կնոջն, լռեցոյց զնա. և հրամայն եւո թիկնապահացն ածել զնա 'ի բանտ, իմաստնագոյնեցն 'ի ծերունեաց յանձն արարեալ զդատաստան նորա։

Ընտեցաւ եկն 'ի յայտ եղեռնն սոսկալի դեղակուր առնելոյ նորա և հեղձուցանելոյ զՊիգմալիոն, և բովանդակ կեանք նորա՝ յաջորդութիւն անընդհատ նորաշան եղեռնութեանց։ Այո ծերակոյտն դատակնիք՝ զոր օրէնք 'ի Փիւնիկէ սահմանեն ոճրագործաց, յուշիկ 'ի վերայ

կայծականց այրեցուածս ։ Այլ իբրև հատաւ ամենայն յոյս նորա, մոլեգնեալ իբրև զմի 'ի ժանտից դժոխազնեայց, եկուլ զմահաղեղն՝ զոր առ իւր կրէր հանապազ առ 'ի դէպս չարաստանջ մահագնալ զիւրովին ։ Զգացեալ բանտապահացն՝ զի տուայտէր նա 'ի ցաւս սաստիկս, կամէին օգնել նմա. այլ նա լուռ ևեթ կացեալ՝ մերժէր զափոփանս ցաւոցն ։ Յուշ առնէին նմա զցասումն արդարադատ դից. այլ նա փոխանակ կորանաց և ապաշաւելոյ ընդ ոճիրս իւր, ժպրհէր արհամարհանօք իբր ոտնհար դիցն լինելով ակնարկէր ընդ երկինս ։

Կատաղութիւն և ամպարշտութիւն նկարեալ էին 'ի մեռելատիպ դէմս նորա. ոչ ևս զնշմարանս անգամ բերէր զգեղոյն՝ որով զքաղաքամն թշուառացոյց. եղծեալ էր վայելչութիւն նորա 'ի սպառ ։ Աչք նորա անմշոյլք յակնակապիճսն թաւալէին. պրկումն և ձգտումն սաստիկ զշրթամբքն անկեալ, ահագին բերանաբացեալ, երեսքն կնճռեալ և այլանդակեալ, և խորշոմք դժոխատեսիլք 'ի նոսա գործեալ, դալուկն կապուտակ և ցուրտ մահահամբոյր տիրէին ընդ մարմինն ։ Այլ եթէ երբէք զգայր նա անձին՝ կաղկանձէր ևեթ, մինչև փչեաց նա զոգին՝ թողեալ լիոտ սոսկմամբ և արհաւրօք զտեսօղս ։ Անձն ամպարիշտ հոգի նորա 'ի ձորս վայրոց, ուր Դանայիդք[3] անագորոյնք ջուր 'ի կարաս հոսեն 'ի ծակ միշտ անդադար, ուր Իքսիոն[4] մինչև 'ի սպառ գլէ զանիւ, ուր Տանտալէայ[5]

պապաքեալ շրթանց չիք ճաշակել զմշտահոս զխու-րեամբք զայլոս, ուր Սիսիփոս [6] մնավաստակ թա-ւալէ ժայռ ընդ զառ 'ի վեր՝ ուստի անդրէն վայ-րաքերի, ուր Տիտիոս [7] տանջի 'ի սպառ՝ անյագ անգեղ զընդերսն միշտ յարաբուսիկս կրծելով։

Բաղէազար զերծեալ 'ի ձիւաղէ անտի, զոհու-թիւն մատոյց դից անթիւ զոհիւք. և սկիզբն թագաւորութեան իւրոյ արար հակառակ ամե-նևին բռնաւորութեանն Պիգմալեայ։ Խնամ կալ-եալ յարուցանել անդրէն զվաճառականութիւն, որ երթայր և անկանէր. արար իւր խորհրդական զՆարբալ, այլ ոչ 'ի նմանէ առաջնորդի, զի ա-խորժէ իւրովի տեսանել զամենայն, լսէ զայլևայլ կարծիս, և ապա վճռէ որպէս լաւագոյն թուի նմա։ Սիրելի է նա ժողովրդեան. ժառանգելով զսիրտս նոցա՝ ժառանգէ առաւելագոյն յոյժ գանձս քան զորս հայր նորա անողորմ զօշաքա-ղութեամբն մթերեաց. զի չիք ոք՝ որ ոչ գոյիւ-չափ տացէ նմա զկեանս իւր տեսանելով զնա 'ի կարօտութեան. վասն որոյ առաւել քան զորս բառնայն՝ ժառանգէ զինչս զորս թողու առ իւրա-քանչիւր։ Չեն նմա պէտք թիկնապահաց, քան-զի սէր ժողովրդեան հզօրագոյն քան զնոսա ունի զնովաւ պահ։ Չիք ոք 'ի ժողովրդենէ՝ որ ոչ երկիցէ ընդ կորուստ նորա, և ոչ զանձն իւր դիցէ 'ի կշիռ վասն կենաց բարւոյ թագաւորին։ Կեայ նա երանաւէտ, և երանաւէտ ընդ իւր զժողո-վուրդն առ հասարակ. երկնչի նա թէ զուցէ ծա-

նունս պահանջէ հարկս 'ի ժողովրդենէ, և ժողովուրդն՝ թէ գուցէ չիցէ բաւական զոր մատուցանէն: Ընձեռէ ժողովրդեանն լիութիւն. և ոչ ժողովուրդն խեռէ լիութեամբն և ստամբակի, քանզի աշխատասէր է և պարապէ 'ի վաճառաշահ, և պատկառ կայ օրինաց նախնեաց: Փիւնիկէ 'ի ծայր մեծութեան և փառաց գերակայի, 'ի ձեռն Բալէազարայ այսքանեաց հանդիպեալ բարեբաստութեանց:

Նարբալ 'ի ձեռանէ նորա վարէ իշխանութիւն. եթէ տեսանէր նա արդ զքեզ, Տելեմաքէ, որպէս ցնծայր և մեծապարգև զքեզ մեծարէր. և քանի՛ բերկրութիւն լինէր նմա յուղարկել զքեզ փառօք 'ի հայրենիս քո: Իսկ թերևս ցանկացեալն 'ի նմանէ պատրաստի բաղդ, գնալ յԻթակէ, և նստուցանել զորդին Ոդիսեայ յաթոռ, որպէս զի թագաւորեսցէ նա անդ իմաստութեամբ որպէս Բալէազար 'ի Տիւրոս:

Եւ իբրև դադարեաց Ադովամ 'ի խօսելոյ, հիացեալ Տելեմաքայ ընդ դէպսն պատմեալս 'ի նմանէ, և առաւել ևս ընդ բարեկամութիւնն՝ զոր 'ի կարիս իւր եգիտ առ նմա, գիրկս արկեալ փարէր զնովաւ: Եւ ապա եհարց զնա փինիկեցին՝ թէ զիա՞րդ եղև նմա մնանել 'ի կղզին Կալիփսեայ. և պատմեաց նմա Տելեմաք զչու իւր 'ի Տիւրոսէ, զանցս իւր ընդ Կիպրոս, թէ որպէս գտեալ ապա զՄենտոր՝ նաւեաց ընդ նմա 'ի Կրետէ, զհանդէս մրցանացն յընտրութիւն ար-

քայի յետ փախստեանն Իդոմենեայ, զցասումն Աստղկան, զնաւաբեկութիւն իւրեանց, զմարդասէր հիւրընկալութիւն Կալիփսեայ, զնախանձ ընդդէմ կիրս դիցուհւոյն ընդ ումեմն 'ի յաւերժահարսանցն իւրոց, և թէ որպէս Մենտոր մղեաց ընկէց զնա ընդ իւր 'ի ծով 'ի տեսանել զնաւն փիւնիկեցի։

Եւ 'ի կատարել բանիցն ետ Ադովամ պատրաստել ձայն մեծ. և առ 'ի ցոյց մեծի խնդութեանն յաւել զամենայն ազգի ազգի վայելս 'ի կոչունս անդր։ Ուր 'ի ժամ կոչնոցն, զոր պաշտէր մանկտին փիւնիկ պայծառազգեաց և ծաղկապսակ, այրէին խունկք արաբիկք անուշահոտք. զբազմոցս թիավարաց զբաւէին նուագածուք, և երբէք երբէք լռեցուցանէր զնոսա Աքիտովաս քաղցրանուագ ձայնիւն և քնարաւ, որ 'ի խրախճանս դից էր արժանաւոր, և ախորժ 'ի լուր իսկ Ապողոնի։ Տրիտոնք և Ներէիդք և ամենայն որ ընդ իշխանութեամբն Պոսիդոնի դիք, և նհանգք իսկ ծովայինք յանդնդախոր 'ի Ջրասոյզ սորոցն երամովքն 'ի վեր երևեալ շուրջ զնաւաւն պարէին՝ քաղցրութեամբ նուագացն զմայլեալք։ Պուռնդ փիւնիկեցի մանկունս չքնաղագեղ, զգեցեալ բեհեզ նուրբ և ծիրանափայլ, նախ զընիկ զիւրեանց աշխարհին, և ապա զԱյգիպտացւոցն և զՅունաց յօրինէին զկաքաւ. և երբէք երբէք հնչեցուցանէին շեփորք մինչ 'ի ծովեզերս հեռաստանեայս զաղխս։ Լռութիւն գիշերոյ, ծով խաղաղաւէտ,

Ճառագայթք լուսնի ծածանեալք համասփիւռ ընդ ծուփս մկանանց, և կապուտակն երկնից աստեղանշոյլ, գեղեցկագոյն ևս գործէին զտեսարանն ։

Ծուարձանայր պատանին աշխոյժ և զգայուն ՚ի վայելս բերկրանացն, այլ չիշխէր տալ այնուցիկ զսիրտ իւր. զի զփորձ առեալ կորանօք ՚ի կղզւոջն Կալիփսեայ՝ թէ քանի՛ դիւրաբորբոք է մանկութիւն, կասկածէր ՚ի հրճուանաց և ՚ի կարի իսկ անմեղանչականաց, և ամենայն ինչ կեղակարծ թուէր նմա ։ Հայէր ստէպ ՚ի Մենտոր, և դիտէր ՚ի դէմս նորա և յաչս զինչ արժան էր նմա առնել ՚ի խորախուճան ։ Իսկ նա թէպէտ և ախորժէր ընդ խէթս մտաց պատանւոյն, և չտեսանելոյն առնէր զայն, այլ կարեկից լեալ նմա՝ ասէ ժպտելով. Գիտեմ առ իմէ երկնչիցիս, և գովեմ զերկիւղ քո. այլ ոչ է պարտ անցանել ըստ չափ ։ Ուրուք քան ամենայն ումեք ցանկալի են ինձ զբօսանք քո, եթէ միայն չիցեն ախտաբործարծք և մեղկիչք. պարտ է քեզ ընտրել բերկրութիւնս սփոփիչս և որոց իշխեսցես ՚ի վայելելն, և մի՛ նոքին ՚ի քարշ զհետ իւրեանց ածիցեն զքեզ ։ Բերկրանս քեզ ըղձանամ զզօնականս և զգուշաւորս, որք ոչ զմիտս ՚ի քէն բառնայցեն, և մի՛ զքեզ վայրենւոյ հաւասարեսցեն երբէք ։ Ժամ է արդ սփոփելոյ քեզ ՚ի վշտացդ. վայելեսջիր մտադիւր առ սէր ասպնջականիդ ՚ի խնջոյս, զոր ընծայէ քեզ. բերկրեաց, Տէլեմաքէ,

բերկրեաց. իմաստութիւն չպահանջէ ինչ խիստ և բռնազբօս, ինքն ընձեռէ ճշմարիտ բերկրանս, ինքն գիտէ ներգործել զայնոսիկ անապակս և երկարատևս, և զխաղ և զխնդութիւն խառնել ընդ զբաղանս լուրջս և ծանունս. ինքն վաստակօք պատրաստէ զբերկրութիւն, և բերկրանօք սփոփէ զվաստակս. և ոչ ամօթ համարի երևել զուարթ ուր արժանն իցէ։

Այս զոյգ ընդ բանիցն առեալ Մենտորի քնար՝ այնպէս ճարտար նուագէր, զի Աքիտովաս շարժեալ ՚ի նախանձ՝ թողոյր առ զայրոյթ զիւրն ՚ի ձեռաց արկեալ զքնար։ Աչք նորա հրացայտ, դէմք այլայլեալ առ տագնապ սրտին և առ ամօթոյ, զոր ամենեցուն մարթէր նկատել՝ եթէ ոչ ՚ի լուր քնարին Մենտորի էին զմայլեալ։ Զի չնչել անգամ ոչ ոք համարձակ իշխէր անդանօր, զի մի լռութիւնն աղմկեալ այնուիկ՝ զողանայր յերգոցն ինչ աստուածայնոց. և յար յերկիւղի կային անձկանօք, զի մի լինէր վաղ երգոցն վախճան։

Նախ զվեհին Արամազդայ զհօրն անմահից և մահկանացուաց երգեաց զօրհնութիւնս, որ յակնարկել յօնից նորա սասանին տիեզերք. ապա զԱթենաս ՚ի գլխոյ նորին ծնեալ, ասեմ իսկ զիմաստութիւն երկնեալ ՚ի միտս նորա, և ՚ի լոյս եկեալ առ ՚ի հրահանգս հլու մարդկան։ Այս այնպէս հոգեշարժ և երկիւղած զայսցանէ յօրինէր նուագս, զի բազմականացն ամենեցուն ՚ի դիւցընկեց ՚ի բարձունս թուէր վերաբերեալ ՚ի տե-

սիղ աստուածոյն, որոյ ականողիք քան զորոտ-ընդոստ շանթիւն առաւել են թափանցիկք: Նուագեաց ապա և զաղէտս պատանւոյն Նարկի-զեայ [9], որ յիմարեալ 'ի գեղ իւր՝ դիտելով հա-նապազ զայն յալիս աղբեր, և ծիւրեալ յըղձից, փոխեցաւ 'ի ծաղիկն իւր անուանակիր: Նա և յե-տոյ ապա զչքնաղագեղին երգեաց զԱդոնեայ [10] մահ աղիողորմ, զոր կինճ վայրենի յօշյօշ պա-տառեաց, և կենագործել զնա ոչ կարաց Աստ-ղիկն 'ի նորին խանդակաթ 'ի սէր՝ սրտառուչ ող-բովք զերկինս լցեալ:

Նա որք միանգամ անդն կային 'ի լուր երգոցն, չկարէին ժոյժ ունել զուարճախառն արտասուաց: Նա իբրև լռեաց յերգոցն, փսփսկեցին հիացեալք հայէին ընդ միմեանս. մին ասէր. Սա ինքն է Որ-փէոս՝ որ քնարաւն զգազանս ամեհիս զգօնացոյց, և զմայրիս և զժայռս զհետ իւր 'ի ձայն երգոցն ածեալ ձգէր. որ և զԿերբեր [11] կախարդեաց, և զԻքսիոնի և զԴանայեանց վայրիկ մի զտանջանս դադարեցոյց, և զանողոքելին Պղուտոն 'ի գորով եած՝ արձակել զչքնաղագեղն 'ի դժոխոց զԵւ-րիդիկէ [12]: Նայլ ոք անդուստ աղաղակէր. Ոչ այդպէս, այլ Լինոս է դա որդի Ապողոնի: Նա այլ ոք դարձեալ՝ Թէ Խաբիք, Ապողոն ինքնին է դա: Ոչ ինչ նուազ քան զնոսին ապշեալ կայր և Տելեմաք, գիտելով իսկ ոչ զայնպիսի ճարտարու-թիւն Մենտորի յերգ և 'ի քնար:

Աքիտովայ պարապ առեալ ցայնվայր Թագու-

ցանկալոյ զնախանձ իւր, սկսաւ ապա գովել զՄենտոր. այլ 'ի գովել անդ շատագովնեալ, չկարէր զխօսսն կատարել։ Իսկ Մենտորի տեսեալ զնա զի խռովէր, կարճեաց զխօսս նորա՝ քաջալերելով զնա, և դրուատելով որ ինչ 'ի նախ դրուատեաց էր արժանի։ Բայց Աքիտովաս ևս քան զևս տրտմէր, տեսանելով զի առաւել ևս ցածութեամբն քան քաղցրութեամբ երգոց գերազանցէր քան զինքն Մենտոր։

Յետ այսորիկ Տելեմաք ասէ ցԱդովամ. Յիշեմ զի ասէիր ուղևորեալ քո 'ի Բետիկէ յետ մեկնելոյ մերոյ յԵգիպտոսէ։ Դժուարինք 'ի հաւատալ պատմելին զԲետիկեայ սքանչելիք. Ճըշմարիտք իցեն պատմեալքն, աղէ ասա։ Ադովամ ասէ. Արժելի է ինձ նկարագրել քեզ զերկիրն աշխարհաքարոզ, արժանի քումդ հարցասիրութեան, և գերազանցեալ քան զհամբաւն։ Եւ սկսաւ պատմել այսպէս [13]։

Երկիրն այն արգաւանդ, ուր բարեխառն է երկինն և հանապազօր ջինջ և անամպ, 'ի Բետիս գետոյ ընկալաւ զանուն՝ որ անցեալ ընդ այն յովկիանոսն երթայ անկանի 'ի ծովն մերձ 'ի Հերակլեայ արձանսն, 'ի տեղի՝ ուր ծով զայրագին փլուզեալ երբեմն զամբարտակս իւր, անջրպետեաց զԹարշիշ 'ի մեծէն Ափրիկեայ։ Ամենայն բարութիւնք ոսկի դարուն թուին յարակայեալ յերկիրն յայն. ձմեռունք եղկք են անդամնօր, և ոչ երբէք դառնահողմք փչեն անդ հողմք հիւսի

սայլինք. և զամառայնոյ մեղմեն զտօթ զեփիւռք զովարարք, որ զմիջաւուրբ շնչեալ հանապազ քաղցրախառնեն զօդս: Երջանիկ իմն ընդ ամն ողջոյն է անդ տեսանել զուգաւորութիւն գարնայնոյ ընդ աշնան, որ թուին աջակիցք իրերաց յօրինել պար: Հովիտք և դաշտք հարթածաւալք երկիցս 'ի տարւոջ մատուցանեն հունձս. և զճանապարհս ցանկեն երկուստեք սարդենիք և նռնենիք և յասմիկք, և որ այլ ևս թուփք մշտադալարք և յարափթիթք: Ծածկեն զլերինս երամակք խաշանց, որ մատուցանեն զասր նուրբ՝ ցանկալի ազգաց առ հասարակ ծանօթից: Կան 'ի գեղեցկանսիհ երկրի անդ և ոսկեհանք և արծաթահանք. այլ բնակիչք երկրին պարզամիտք, և պարզմտութեամբն բարեբաստիկք, ոչ արժան համարին գրել ընդ մեծութիւնս իւրեանց զարծաթ և զոսկի, զայն ևեթ վարկուցեալ մեծութիւն՝ որ զպէտս կարևորս կենաց մարդկան տնօրինէ:

Ի սկզբան անդ վաճառականութեանս մերոյ ընդ նոսա, գտաք զոսկին և զարծաթ 'ի նոյն պէտս առ նոսա 'ի կիր արկեալ, յոր ինչ զերկաթն, մինչև 'ի խոփս արօրոյ ձուլեալ. քանզի չունելով նոցա ընդ այլ ազգս տուրևառ, չէին նոցա պէտք դրամոց: Գրեթէ առ հասարակ հովիւք են կամ հողագործք. սակաւք 'ի նոսա գտանին ձեռագէտք, զի կարևորաց ևեթ 'ի սոյգ պէտս մարդկան արուեստից ներեն. մանաւանդ զի և բազումք,

թէպէտ և հովիւք կամ մշակք, պարապեն և յարուեստս կարևորս անպաճոյճ և սակաւապէտ կենաց իւրեանց։

Կանայք նոցա մանեն զասրն գեղեցիկ, և կերպաս անտի նուրբս և ձիւնափայլս ոստայնանկեն. նոքա թրեն հաց, և խոհակերեն. և ոչ ինչ դժուարին է նոցա վաստակն, զի կերակուր ընակչաց երկրին միրգ է և կաթն, և դուն ուրեք խահ։ Տրեխս թեթևս 'ի մորթոյ խոյոց 'ի պէտս իւրեանց գործեն, և արանց իւրեանց և որդւոց։ Ամանս մաշկեայս կազմեն մանապատս կամ 'ի կեղևոց ծառոց. կարեն զձորձս ընտանեաց և լուանան. կոկիկ և բարեկարգ զտունն զամենայն ունին։ Պճնազարդք իսկ են ձորձք նոցա. զի 'ի քաղցրախառն նահանգին փերթ ինչ ևեթ նուրբ և թեթև կերպասու, ոչ հատեալ և ոչ ձևեալ, 'ի ծալս վերուստ 'ի վայր երկայնաձիգս արկանեն զանձամբ առ 'ի ծածկոյթ, իւրաքանչիւր ըստ կամի յարդարեալ զայն զիւրև։

Արանց բաց յերկրագործութենէ և 'ի հովուելոյ խաշինս չիք այլ արուեստ, բայց հիւսնել զփայտ և դարբնել զերկաթ. և յերկաթոյ իսկ զբեթէ ոչ այլ ինչ դարբնեն, բայց միայն զանօթս երկրագործութեան։ Ամենայն որ 'ի ճարտարապետութիւն պատկանին արուեստք՝ առ ոչ ինչ են նոցա պիտանացու. զի ոչ կառուցանեն նոքա ապարանս, առաւելագոյնս իմն հանճարեալ 'ի սէր երկրի զանկատարումն՝ շինել աստ տուն երկարատև,

յոյժ քան զկեանս մեր. այլ շատ համարին պա-
տսպարել վարկպարազի յարկածից օդոց։ Իսկ
զայլ ամենայն արուեստս որ մեծարին առ Հե-
լէնս առ Եգիպտացիս և առ այլ ամենայն բար-
գաւաճեալ ազինս, տեսեան որպէս գիւտս նան-
րասիրութեան և մեղկութեան։ Ի լսել Նո-
ցա զայլոց ազգաց զշինուածս հոյակապս, զպալատս
ոսկեղէնս և արծաթեղէնս, զկերպասս ասղնէ-
գործեալս ոսկւով և ականք պատուականօք,
զընտիր ընտիր իւղեփեցութիւնս, զհամա-
դամ խոհարարութիւնս, և զնուագարանս՝ ո-
րոց ներդաշնակութիւնք կախարդեն զլսելիս,
ասեն. Աւա՛ղ ազգացն այնոցիկ՝ որ այդչափ աշխա-
տութիւնս և հնարս 'ի կիր արկանեն առ 'ի զեղ-
ծումն իւրեանց. աւելորդքդ այդոքիկ մեղկեն
արբեցուցանեն և խոշտանգեն զստացիչս ի-
րեանց. իսկ որ վրէպքն իցեն յայնցանէ, հրապու-
րին առ 'ի ստանալ զայնոսիկ զրկանօք և բռնու-
թեամբ։ Արժա՞ն իցէ համարել ստացուածս,
որ վնասակարք են մարդկան. մի թէ բնակիչք
աշխարհացդ այնոցիկ առողջագո՞յնք իցեն քան
զմեզ և զօրաւորք, կամ երկայնակեա՞ցք քան զմեզ,
կամ առաւել ընդ իրեարս միաբանք, և կամ ա-
զա՞տ և անդորր և զուարթ քան զմեզ վարիցեն
կեանս։ Այս աւանիկ հարկ է նոցա նախանձընդ-
դէմն զոլ միմեանց, հաշել և մաշել վատ և անարգ
մախանօք, յար 'ի տագնապի կալ փառասիրու-
թեամբ երկիւղիւ և ագահութեամբ՝ անճաշակք

'ի վայելից անապականն և անխառն բերկրանաց. զի ընդ գերութեանց կամ կարծեցելոց կարեացն, յորոց համարին զբարեբաստութիւն իւրեանց։

Եւ յառաջ ածեալ Ադովամայ զբանն, ասէր. Այսպէս ահա խնամատարութեան բեթիկեցիքդ, 'ի բնութենէ ևեթ անարուեստ դաստիարակեալք յիմաստութիւն։ Պաշտէին նոքա 'ի մերմէ քաղաքականութենէս, և պարտ է խոստովանել զի նոցայն գերազանցէ ցանկալի պարզութեանն։ Հասարակաց վարէին կեանս, առանց լքաբաժին առնելոյ զերկիր. տանուտէր իւրաքանչիւր հրամայէ 'ի տան իւրում որպէս արդարև թագաւոր, և իշխանութիւն է նմա պատուհասելոյ զորդիս իւր և զթոռունս յանցաւորս. այլ մինչ չև պատուհասեալ, հարցանէ զխնամանիս իւր։ Բայց դան ուրեք պէտք լինին պատուհասի. զի անմեղութիւն բարուց, հաւատարմութիւն, հլութիւն, և ատելութիւն չարեաց բնակեն յերանաւէտ երկրին։ Աստրէա [14], զորմէ աւանդեն յերկրէ յերկինս խոյս տուեալ, թուի տակաւին աստ 'ի սորա առ նոսա ապաստանեալ։ Ոչ են նոցա պէտք ատենից, զի խիղճ մտաց դատաւոր է նոցա։ Հասարակաց է նոցա ամենայն ինչ. պտղաբերութիւն ծառոց, արմտիք երկրի, և կիթ անդէոց, այնպիսի առատ պատրաստեն նոցա մեծութիւնս, զի ազգն այն սակաւապէտ և զգաստ՝ չկարօտի բաշխից առ իւրաքանչիւր պէտս։ Ի բարեբաստ գաւառին ազգատոհմ իւրաքանչիւր ոչ

'ի միում ուրեք զկայ առեալ, այլ տեղւոջէ 'ի տեղի՝ 'ի սպառել բերոց և 'ի չգտանել անդ ճարակ խաշին՝ փոխէ զվրան իւր ։ Եւ այսպէս շրջելով ինչ նոցա սեփական առ 'ի պաշտպանել զայն յերեսաց այլոց, սիրեն զերեարս որպէս զեղբարս, և չիք ինչ՝ որ արգիլել զսէր նոցա կարիցէ. մերժումն մնոտի մեծութեանց և պատիր բերկրանաց պարպանէ զխաղաղութիւն նոցա զմիաբանութիւն և զազատութիւն. ազատք են ամենեքին, և ամենեքին հաւասարք ։

Չեն առ նոսա աստիճանք աւագութեան, բայց միայն զոր խոհական աղեաց ընծայէ փորձ, և կամ հանճար նորանշան՝ որ ծերունեացն կատարելոց առաքինութեամբ զարդոյգ հասանէն հաւասարէ ։ Ոչ նենգութեան և զրկանաց, ոչ հաւատադրժութեան և դատափետութեանց, և ոչ մարտից պատերազմաց լսելի լինին երբէք բարբառք անողորմք և ժանտաժուտք յերկիրն յայն սիրելի դէց ։ Արիւն մարդկեղէն ոչ ներկեաց զերկիրն զայն, և խաշանց իսկ դուն ուրեք հեղեալ անդ արիւն. 'ի լուր արիւնռուշտ ճակատամարտից, հինախաղաց աշխարհակալութեանց, և վեր 'ի վայր դղորդմանց այլոց աշխարհաց, հիացեալ և յապուշ հարեալ. ասեն. Եւ չիցե՞ն դոքա մարդկանացուք՝ որ փութան զմիմեանս մատնել 'ի մահ. սուղ իսկ են կեանք, և երկարատև՞ք թուին նոցա. մի՞ թէ առ 'ի գիշատե՞լ զիրեարս և առ 'ի թշուառութիւն միմեանց ընկալան զկեանս ։

Ձկարէ իսկ ազգն այն հաստ լինել՝ թէ որպէս զարմանալիք թուին աշխարհակալք որք զինքնակալութիւնս մեծամեծս նուաճեն։ Քանզի յիմարութիւն է, ասեն, համարել բարեբաստիկս զորս իշխեն այլոց. զի իշխանութիւն յաճախէ հոգս, եթէ բարւոք և արդարութեամբ ոք իշխել կամիցի։ Այլ զի՞նչ բերկրութիւն իցէ բռնադբօսելով իշխել այլոց. այր իմաստուն հազիւ թէ յանձն առնուցու հրամայել հլու ժողովրդեան, որում մտեսուչ զնա դիք կացուցանիցեն, կամ ազգի՝ որ աղաչիցէ զնա լինել իւր հայր և իմաստնակալ։ Իսկ որ բռնի կամիցի առաջնորդել ժողովրդոց, թշուառութիւն մեծ յանձն առնու ձախողակի փառասիրութեամբ ունելոյ զնոսա 'ի գերութեան։ Աստուածասաստ բարկութիւն շարժեալ ընդդէմ ազգի մարդկան, յարուցանէ 'ի 'ի վերայ երկրի աշխարհակալս՝ կործանել զթագաւորութիւնս, և արկանել ամենայն ուրեք արհաւիրս, յաճախել աղէտս և յուսահատութիւն, և զազատ մարդիկ կացուցանել ստրուկս։ Որ փառս խնդրէ, շատ իսկ ժառանգեսցէ զայն 'ի յանձանձելն իմաստութեամբ զորս դիք 'ի ձեռս նորա աւանդեն. կարծիցէ՞ թերևս բռնութեամբ և անիրաւութեամբ գոռոզութեամբ յափշտակութեամբ և հարստահարութեամբ սահմանակից ազգաց հանդիպել գովութեան։ Ոչ է և չէ արժան մտաբերել 'ի պատերազմ, բայց միայն 'ի վերայ ազատութեան։ Այսանի՞ որ չիցէ տարուկ

այլոց, և ազատ իսկ իցէ յանմիտ փառասիրութենէ նուաճելոյ զայլս 'ի ստրկութիւն։ Աշխարհակալքդ այդոքիկ անուանիք, այդքանեօք զրուատեալք փառօք, նմանք են գետոց յորդելոց զափամբք, որ վեհափառք արդարև երևին, այլ աւերեն գերփեն զանդաստանս բերրիս փոխանակ առոգանելոյ։

Յետ այս ամենայն նկարագիր Բետիկեայ սքանչացեալ Տելեմաք, յաւել առնել հարցուածս հետաքրքիրս, և ասէ ցԱդովամ. Եւ ըմպե՞ն բետիկեցիքդ գինի։ Ադովամ ասէ. Ոչ ըմպեն, զի և ոչ հնձանահարութիւն է առ նոսա. իբր ոչ եթէ առ 'ի չգոյէ խաղողոյ, զի չիք երկիր ազնուագունից քան զնոցայն բերող ողկուզաց. այլ շատանան ճաշակել զբեր որթոյ որպէս զայլս 'ի պտղոց։ Երկնչին իսկ նոքա 'ի գինւոյ, ապականարար զնա համարեալ մարդկան, և թոյն իմն՝ որ մոլեգնէ զմարդ, և կենդանւոյն զնա անբան կացուցանէ։ Եւ առանց իսկ գինւոյ հնար է, ասեն, ունել մարդոյ առողջութիւն և կորով. իսկ գինեաւ վտանգ է նմա ապականելոյ զառողջութիւն և զբարս քաղցունս։

Տելեմաք ասէ. Ցանկալի է ինձ գիտել և զկարգ ամուսնութեան նոցա։ Ադովամ ասէ. Այր իւրաքանչիւր միայն է կին, և զնոյն մինչև ցմահ պարտի ունել. հաւատարմութիւն առն ընդ կնոջ փառք են առ նոսա, որպէս առ այլս յազգաց հաւատարմութիւն կնոջ ընդ առն. և չիք ազգ

համեստ իբրև զնոսա, և սրբութեան առագաստի նախանձաւոր : Կանայք նոցա գեղեցիկք են և հաճոյք, այլ անպաճոյճք ամօթխածք և ժրագլուխք • հարսանիք առ նոսա խաղաղաւէտք բազմածնունդք և անբիծք • այր և կին թուին մի յանձն յերկուս մարմինս կեալ : Բաժանեալ է նոցա հոգ ընտանեկան • զարտաքինս առ հասարակ յանձնանձէ այրն, թողեալ ’ի կին իւր զամենայն զործ՝ առտնին : Սփոփումն այն իւրոյ է կին, և ամենայն փոյթ նորա է հաճոյ լինել նմա • առժանի մտերմութեան նորա զանձն ընծայէ, և առաքինութեամբն առաւել քան գեղով իւրով սիրելի լինի նմա : Այս ճշմարիտ բերկրութիւն հարսանեկան սիրոյ նոցա ձգի ընդ կեանս նոցա • զգաստութիւն նոցա և ժուժկալութիւն և կեանք անարատք երկարակեացս զնոսա առնեն և ազատս յախտից • է տեսանել առ նոսա ծերունիս անցեալս զհարիւրամենիւք և հարիւրեւքսանամեայս կայտառս դիմօք և դեռ ’ի յուժի :

Արկնեալ անդրէն Տելեմաքայ ասէ • Միւս եւս ինչ մնայ ինձ գիտել, զիա՞րդ դոքա ազատ կան ’ի պատերազմելոյ ընդ սահմանակից ազգս : Ադովամ ասէ • Պատսպարէ զնոսա բնութիւն յայլոց ազգաց, աստի ծով և անտի զլերինս բարձունս հիւսիսոյ պարիսպ ածեալ • և դարձեալ զի ազգք սահմանակիցք ակն ածեն յառաքինութենէ նոցա : Բազում այն է, զի այլք յազգաց գժտեալ ընդ միմեանս՝ զնոսա ընտրեն իւրեանց իրաւ-

րար, և նոցա ատամողեն զերկիր և զքաղաքս՝ զո-
րոց իցեն վէճք. զի ոչ ոք կասկածէ ինչ զազգէն
իմաստնոյ, որոյ չէք զոք երբէք անիրաւեալ։ Ծի-
ծաղին նոքա 'ի լուր մարտնչելոյ թագաւորաց
զսահմանաց աշխարհին իւրեանց, և ասեն. Իցէ՞
իսկ վտանգ թէ պակասեսցէ մարդկան երկիր.
յաւելու միշտ այն քան զկար մշակութեան նոցա։
Յորչափ կայցէ ուրեք անդաստան ազատ և ան-
գործ, մեք զմերն իսկ ոչ յանձն առցուք պաշտ-
պանել յերեսաց դրացեաց՝ որ գայցեն գրաւել
զայն։ Չիք առ նոսա ոչ գոռոզութիւն, ոչ ամ-
բարհաւաճութիւն, ոչ նենգութիւն, և ոչ իղձ
տարածանելոյ զիշխանութիւն իւրեանց։ Վասն
որոյ և ոչ շուրջ զնոքօք բնակեալ ազգք, ոչ ու-
նելով երկիւղ 'ի նոցանէ, և ոչ յոյս երկեցուցա-
նելոյ զնոսա, թողուն զնոսա 'ի խաղաղութեան։
Զի ազգն այն լաւ համարի վտարանդի յերկրէ
իւրմէ գնալ 'ի բաց, և մեռանել իսկ, քան յանձն
առնուլ զծառայութիւն. նմին իրի այնչափ դժուա-
րին է նուաճել զնոսա, որչափ հեռի են 'ի նոցա-
նէ իղձք նուաճելոյ զայլս։ Այս է որ հաստատէ
անշարժ զխաղաղութիւն ընդ նոսա և ընդ սահ-
մանակիցս նոցա։

Յաւել ապա Ադովամ թէ որպէս փիւնիկեցիք
առնէին վաճառաշահ ընդ բետիկեցիս, և ասէ.
Զարմացան նոքա 'ի տեսանել եկաւորս յերկրէ
հեռաստանէ ընդ ալիս ծովու, և թողին մեզ
կանգնել քաղաք 'ի կղզւոջն Գադէս. ասպնջակա-

նեցին զմեզ անարդարապէս, և բաժանեցոյց զմեզ զգոյից իւրեանց ընկալեալն ձրի: Ինքնայօժար մատուցանէին մեզ և զարն յաւելեալ ՚ի համբարոց պիտոյից իւրեանց, յղեալ իսկ առ մեզ անտի ՚ի պարգև բեռինս մեծամեծս. զի քաղցր է նոցա ընծեռել օտարաց որ ինչ աւելին է նոցա: Իսկ զբոյս թողին ՚ի մեզ բովանդակ առանց ինչ ընդ բանս ածելոյ, զի չէին նոցա պիտանացու. քանզի ոչ իմաստութիւն թուէր նոցա հետազօտել այնքան վաստակօք յընդերս հողոյ զայն ինչ, որ ոչ զմարդկան կարէ յարդարել զբարեբաստութիւն, և ոչ զկարևոր պէտս նոցա հարկանել: Արատ իսկ տային մեզ՝ մի յայս երկրի իջանել, այլ հերկել ևեթ զայն՝ առ ընդունելոյ ՚ի նմանէ զկարևորս ՚ի սնունդ, և ժողովելոյ անտի զբերս՝ որ պատուականագոյնք են քան զոսկի և քան զարծաթ. զի այսոքիկ ՚ի գլխոս ևեթ պարենից կենաց խնդրին:

Ախորժէաք առէկ հրահանգել զնոսա ՚ի նաւարկութիւն, և զորդիս նոցա ածել ՚ի Փիւնիկէ. այլ ոչ յանձն առին ներել մանկտւոյ իւրեանց ՚ի մերս կրթիլ ՚ի կենցաղ. քանզի ասէին՝ թէ ուսցին նոքա այդպէս կարօտել ամենայնի, յորոց դուքդ արդ չկարէք հրաժարել, և ՚ի բաց կացցեն յառաքինութենէ առ ՚ի զտանել զայդոսիկ չարահնար արուեստիւք. նմանեսցին քաջուան որերոյ, որոց կորուսեալ զկիրթ հետևակելոյ՝ պատգարակաւ իբրև զհիւանդս շրջիցեն: Իսկ ընդ նաւարկութիւն զարմանալ զարմանան վասն Ճարտարու-

թեան արուեստին, այլ միաստակար զայն համարին արուեստ. Ո՜վ եթէ մարդկանդ այդմիկ պտղաբերէ, ասեն, երկիր զլիութիւն բաւականին առ 'ի կեանս, էր՞ իրիք 'ի տար աշխարհ գնան 'ի խնդիր. բաւականին առ 'ի ընէ չիցէ՞ դոցա բաւական. 'ի դէպ իսկ հասցէ դոցա Նաւաբեկութիւն, զի 'ի խնդիր մահու շրջին 'ի մէջ մրրկաց առ 'ի յագուրդ օգտամարաւ վաճառականութեան, և առ 'ի ճարակ ախտից մարդկան։

Հիացեալ կայր Տելեմաք 'ի լուր բանիցն Ադովամայ, և բերկրէր զի գոյր յաշխարհի ազգ այնպիսի զգօն և երջանիկ, հետևող արդար խրատուց բնութեան և ասէր. Որպէ՜ս, քանի՜ հեռի են բարք դոցա 'ի նախրասէր և 'ի փառասէր բարուց կարծեցելոց իմաստնագունից ազգաց։ Ո՛րանի զեղծեալ գտանիմք, զի չհաւատալի թուի մեզ պարզմտութիւն դոցա բնական. առասպելս վերլեցկայարմար համարիմք զբարս ազգիդ, այլ երազս խօլականս անշուշտ դոքա զմերս համարեսցին։



# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ

## ՈՒԹԵՐՈՐԴԻ ԳՐՈՑՆ

1 Եպիրոս. լտ. Ալպանիա. թձ. Առնաւուտլուք. սահմանակից Եղլադայ մերձ 'ի ծոցն ադրիական:

2 Բէտիկէ, մասն Սպանիոյ, որ արդ կոչի Անտալուսիա և Կրանատա: Նախնիք համարէին զայն անդր քան զամենայն ծովս, զի անծանօթք էին նոցա այլ ծովք բաց 'ի միջերկրականէն և մասանց Ովկիանու՝ որք պատին զԵւրոպաւ:

3 Դանայիդք դստերք յիսուն Դանաւոսի արքային Արգիացւոց, որք սպանին զայրս իւրեանց. վասն որոյ ըստ առասպելին վաստակեն անդուլ 'ի սանդարամետս լնուլ ջրով զկարաս ծակ:

4 Իքսիոն որդի Փլեգիասայ արքային Թեսաղացւոց, որ վասն տռփանացն ընդ Հերայ՝ ամպահարեալ յԱրամազդայ էջ 'ի դժոխս, և Թաւալէ անդ ըստ առասպելաց անիւ մշտահոլով:

5 Տանտալոս որդի Արամազդայ 'ի Փլետայ յաւերժհարսնէ: Սա կոչումս դիցն տարեալ, եդ 'ի սեղան խահագործեալ զմարմին որդւոյ իւրոյ Պելոպայ՝ զոր իւր իսկ սպանեալ էր: Զոր գիտացեալ Արամազդայ՝ փայլակնահար իջոյց զնա 'ի դժոխս. ուր պարանոցաթաղ 'ի ջուրս՝ կայ մշտածարաւ ըստ առասպելաց:

6 Սիզիփոս եղուզակ յԱտտիկէ, սատակեալ 'ի Թեսեայ. զորմէ առասպելեն դատապարտեալ 'ի դժոխս թաւալել յար ընդ զառ 'ի վեր վէմ ստուար՝ որ գլեալ վայրաբերի:

7 Տիտիոս որդի Արամազդայ յԵղարայ. որոյ բռնաբարեալ զԼետով սպանաւ նետահար յԱպոլոնէ, և էջ 'ի դժոխս, ուր անգղ ահագին ըստ առասպելաց կրծէ հանապազ զլեարդ նորա յարաբուսիկ:

8 Ներէիդք, դստերք Ներեայ, յաւերժհարսունք ծովայինք:

9 Նարկիս պատանի գեղեցիկ, որ արհամարհեաց զԱրձագանգ և զայլ յաւերժհարսունս տարփացեալս իւր:

10 Ադոնիս կամ Թամուզ, որդի Գինիրայ արքային Կիպրացւոց, սիրելի լեալ Աստղկան, և փոխեալ 'ի նմանէ յանեմոն ծաղիկ կարմիր, 'ի մեռանելն 'ի ժանեաց վարազու յորս 'ի լերինն Իդայ:

11 ԿԵՐԲԵՐ առասպելեալ շուն եռագլխի, պահակեր դժոխոց։

12 ԵՒՐԻԴԻԿԷ կին Որփեայ քերթողի, որ 'ի խնդիր հարսին իւրոյ իջեալ 'ի դժոխս, և նախ քան զելս յահագին խորոցն՝ ակնարկեալ 'ի նա ընդդէմ հրամանացն Պլուտոնի, կորոյս զնա։

13 Նկարագիրս այս Բեատրիկեայ ոչ 'ի մտաց քերթողիս յօդուածոյ ինչ է, այլ ըստ առաւելագոյն մասին աւանդեալ 'ի Սարաբոնէ և յայլոց հին մատենագրաց։

14 ԱՍՏՐԷԱ, դուստր Արամազդայ և Թեմիսի, դիցուհի արդարութեան. զոր յոսկի դարուն կեղծեն իջեալ յերկնից 'ի յերկիր. և 'ի զառածանել մարդկան 'ի չարիս՝ դարձ արար միւսանգամ յերկինս։



# ԱՐԿԱԾՈՒՔ ՏԵԼԵՄԱՔԱՅ



## ԳԻՐՔ ԻՆՆԵՐՈՐԴ

# ՆԱԽԱԴՐՈՒԹԻՒՆ

Աստղկանն չև ևս յագեցեալ ոխութիւն ընդ Տեղեմաքայ, խընդրէ յԱրամազդայ կորուսանել զնա. բայց քանզի չէր ճակատագրեալ կորնչել նմա, խորհի դիցուհին ընդ Պիսիդոնի ՚ի հնարս հեռացուցանելոյ զնա յԻթակայ, ուր ածէրն զնա Ադովամ. և ՚ի ձեռն դիցակերպ պատկեր ցնորից կախարդէ զնաւապետն զԱթամաս. որ յԻթակէ կարծելով հասեալ՝ մտանէ հողմունոյց առագաստիւք ՚ի Նաւահանգիստն սալենտացւոց։ Իդոմենէս Թագաւոր նոցա ընդունի զՏեղեմաք ՚ի Նորակերտ քաղաք իւր՝ ՚ի պահու յորում հանդերձի զոհ Արամազդայ մատուցանել առ ՚ի յաղթութիւն մարտին ընդ մանդուրացիս։ Քրմին զընդերս զոհիցն դիտելով՝ քաջայոյս առնէ զԻդոմենէս, ընծայաբերս յաղթութեանն զերկոսին զհիւրսն համարելով։

# ԱՐԿԱԾՈՑ ՏԵԼԵՄԱՔԱՅ

## ԳԻՐՔ ԻՆՆԵՐՈՐԴ

Եւ մինչդեռ այսպէս Տելեմաք և Մենտոր, մոռացեալք զքուն և ոչ զհասարակել գիշերոյ զգացեալ՝ զքանիւք անկանելին, ոխերիմ ոք ՚ի դիւց մոլորեցուցիչ մերժէր զնոսա յԻթակեայ՝ ՚ի զուր Աթամասայ նաւապետէ անդր զնաւն ուղղելով։ Քանզի Պլուտոն, Թէպէտ և հաշտ ընդ փիւնիկեցիս, չհանդուրժէր տեսանել զՏելեմաք խուսափեալ ՚ի մրրկէն՝ որ ընկեցն զնա ՚ի ժայռս կղզւոյն Կալիփսեայ։ Զայրագին ևս Աստղկան ցասուցեալ ընդ յաղթանակ պատանւոյն՝ որ պարտեացն զսէր և զամենայն հրապոյրս նորա, եթող առ զայրոյթ սրտին զԿիթերա զՊափոս զԻդալիա, և զամենայն սպասս պաշտամանց՝ որ նուիրէին նմա ՚ի Կիպրոս, և գարշեցեալ ՚ի վայրացն՝ ուր արհամարհեաց պատանին զտէրութիւն նորա, ել ՚ի լուսաձեւ կատար Ողիմպեայ՝ ուր ակմբահօյլ բոլորեալ զգահոյիւք Արամազդայ բազմէին

դիք ։ Աստի ակնարկեալ նշմարեն նոքա զաստեղս թաւալեալս ընդ ոտիւք իւրեանց, զգունտ երկրի որպէս կոշտ մի հողոյ, զծովս անբաւածաւալս որպէս կայլակս ջուրց որովք հողակոշտս այս թրմի, զթագաւորութիւնս մեծամեծս որպէս հատս աւազոյ ցանեալս զծովաւ, և զազգս անհամարս և զբանակս հզօրս որպէս մրջիւնս աղմկեալս առ 'ի բառնալ զունդ յարդի յիրերաց ։ Զի և զկարևորօք, վասն որոց իրաց յուզեալ տագնապին մահկանացուք տկարք, ծիծաղին դիք և խաղս զայնոսիկ համարին տղայոց. և որ յաչս մարդկան կարծեցեալ մեծութիւն փառք զօրութիւն և ներհուն քաղաքականութիւն, ոչ այլ ինչ գերաբուն էիցն թուին՝ բայց թշուառութիւն և տկարութիւն ։

Անդ Արամազդ գեր 'ի վերոյ քան զխոնարհ զայս երկիր եդ զաթոռ իւր անդրդուելի. աչք նորա նկատեն զխորս անդնդոց, և զերիկամանց սրտի. յակնարկել նորա քաղցր և զուարթ՝ խաղաղութիւն և խնդութիւն ծաւալին ընդ տիեզերս. իսկ 'ի շարժել վարսից գլխոյ նորա՝ սասանին երկինք և երկիր. և 'ի փայլակնացայտ լուսոյ փառաց նորա դիք իսկ շլացեալք, ահիւ և դողութեամբ մատչին 'ի գահոյս նորա ։

Անդր ամենեքին երկնախումբ կաճառք ժողովեալ կային, և ահա Աստղիկն պայծառացեալ բոլորեքումբք գեղեցկութեանն մասամբք՝ որոց ինքն է աղբիւր՝ յանդիման լինէր Արամազդայ ։

Օթոց նորա ծածանէր գերանշոյլ քան զամենայն երփն երփն երանգոց, որովք Հիրիկ՝ փայլէ ընդ ամպս մթինս՝ աւետել մահկանացուաց զարհուրելոց զդադարումն ամպրոպաց և զարփիաճաճանչ տունջեանն զդարձ։ Օսպեր զպարեգօտ նորա կամարն գերահռչակ, յորում Շնորհք՝ դրօշադեալ կան. և զվարս դիցուհւոյն վարկպարազի յետկուսէ ծամանկալ ոսկի ամփոփէր։ Հիացան դիք առ հասարակ ընդ գեղ նորա՝ իբր այն ինչ զնա տեսանելով, ակնախտիղ շլացեալք հանգոյն մահկանացուացս աչաց՝ յորժամ Փեբոս յետ երկայն գիշերոյ դառնայ 'ի ծագել ճառագայթարձակ։ Հայէին ընդ միմեանս զարմացեալք, և ստէպ անդրէն 'ի դիցուհին աչք նոցա դառնային. բայց Թացեալս տեսանէին զաչկունս նորա յարտասուաց, և վիշտս դառինս 'ի դէմս նորա նկարեալ։

Իսկ նա յառաջ մատչէր 'ի գահ անդր Արամազդայ գեղեցկաձեւ և Թեթեւաքայլ զօրէն հաւու ընդ լայնատարր երկին Թռուցելոյ։ Ախորժ 'ի նա ակնարկեալ հայրն անմահից՝ և քաղցր 'ի ժպիտ յարուցեալ զիրկս էարկ նմա, և ասէ. Ո՞ր ինչ է քո տրտմութիւնդ, դուստր իմ սիրելի. չկարեմ հայել անկարեկիր յարտասուս քոյին. մի երկնչիր մերկանալ ինձ զսիրտ քո որ գԹամն 'ի քեզ և գորովիմ։ Պատասխանի ետ դիցուհին, 'ի խորոց սրտէ հառաչմամբ զքաղցր բարբառոյն բեկբեկելով. Ո՛վ հայրդ անմահից և

մահկանացուաց, անգիտանայցես զպատճառս վըշտաց իմոց որ ամենատեսդ ես։ Ոչ շատացաւ Աթենաս հիմնայատակ զհոյակապն առնել զՏրովադա՝ որում պաշտպան կայր, և առնուլ վրէժ 'ի Պարեայ՝ ։ որ զիմն քան զնորայն ընտրեաց զգեղեցկութիւն. այլ և զանողորմին Ոդիսեայ, զկործանողի քաղաքին զորդի, ածէ ընդ ծով և ընդ ցամաք յաղթական։ Ինքն առաջնորդէ նմա, վասն որոյ և յաստուածախումբ ակմբիս չէ 'ի միջի։ Ածեալ 'ի նմանէ յանդուգն պատանին և 'ի Կիպրոս առ 'ի թշնամանել զիս, արհամարհեաց զզօրութիւն իմ, ծխել անգամ խունկ 'ի սեղան իմ չէառ յանձն, զարշեցաւ 'ի պաշտամանց՝ որ ընծայլին ինձ անդ, և փակեաց զսիրտ իւր առ ամենայն հեշտութիւնս նուիրականս ինձ։ Ի զուր Պոսիդոն առ 'ի պատուհասել զնա յարոյց ընդդէմ նորա ըստ աղերսանաց իմոց զհողմն և զալիս. ահագին նաւաբեկութեամբ ընկեցիկ լեալ նա 'ի կղզին Կալիփսեայ, յաղթանակեաց և ընդդէմ սիրոյ՝ զոր յղեցի անդր առ 'ի շարժել 'ի գորով զսիրտ նորա։ Ոչ առոյգ մանկութիւն և ոչ հրապոյրք դեղոյն Կալիփսեայ և յաւերժհարսանց նորա, և ոչ նետք հրամուխք սիրոյն յաղթել կարացին հնարից Աթենասայ, որ առ տարաւ զնա 'ի կղզւոյն. և ահա կամ ամօթով 'ի մանկանէ միոջէ պարտեալ։

Մխիթարեաց զնա Արամազդ, և ասէ. Յիրաւի, դուստր իմ, Աթենաս ինքնին պատսպարէ

զսիրտ հելլէն պատանւոյն 'ի Նեստից որդւոյ քո, և նա ինքն պատրաստէ նմա փառս՝ որոց ոչ ոք 'ի մանկտւոյ արժանի գտաւ: Անհաճոյ է ինձ արհամարհել նորա զսեղանս քո, այլ և ոչ մարթ է ինձ ընդ քոյով արկանել զնա ընդ իշխանութեամբ: Տաց առ սէր քո՝ թափառել նմա այլ ևս ընդ ծով և ընդ ցամաք տարագիր 'ի հայրենեացն մատնեալ ամենայն ազգի ազգի աղետից և վտանգաց. այլ ոչ ներեն ճակատագիրք՝ կորնչել նմա, և ոչ առաքինութեան նորա նկուն լինել 'ի հեշտութեանց՝ յորս դու հրապուրես զմարդիկ: Ափոփեա՛ց, դուստր իմ. շատ լիցի քեզ, զի այնքանիս ընդ քև դիւցազունս և դիս նուաճեալ ունիս: Եւ զոյգ ընդ բանիցն ժպիտ վեհ և վայելուչ 'ի դիմաց հօրն անմահից ելանէր առ դիցուհին, և ճառագայթք յաչաց նորա փայլակնացայտք հատանէին. և 'ի համբուրել նորա սիրատարփ զդիցուհին, ծաւալէր համափիւռ ընդ Ողիմպ բուրումն ամբրոսական անուշահոտ: Խայտաց սիրտ դիցուհւոյն 'ի գգուանաց վեհագունին դից, և ընդ արտասուս և ընդ թախիծ փայլէր 'ի դէմս նորա ցնծութիւն. արկ զքօղ իւր զերեսօք առ 'ի ծածկել զշառագունանան և զտագնապ խորհրդոց: Ատեանն դիցախումբ ծափս եհար ընդ պատգամն Արամազդայ. և Աստղիկ էջ անյապաղ առ Պոսիդոն, խորհել ընդ նմա 'ի հնարս խորնդրելոյ վրէժ 'ի Տելեմաքայ:

Նա 'ի լուր պատգամացն ասէ. Ոչ ինչ զան-

խուլ է յինէն հրամանն անողորմ ճակատագրին․ և եթէ չիցէ մարթ անդնդասոյզ կորուսանել զպատանին, գէթ զամենայն արկածս հասուսցուք նմա՝ յամեցուցանել զդարձ նորա յԻթակէ։ Չկարեմ ձեռն տալ 'ի կորուստ նաւուն փիւնիկեցւոյ, յորում է․ սիրելի է ինձ փիւնիկեցին ժողովուրդ իմ, չիք ազգ՝ որ հանգոյն նմին յարգիցէ զսահմանս պետութեան իմոյ։ Նա զծով արար զօդ միաբանութեան ամենայն ազգաց երկրի, նա նուէրս հանապազ 'ի բագինս իմ մատուցանէ․ արդար է նա և իմաստուն և ժիր 'ի վաճառաշահ, և ամենայն ուրեք սփռէ դիւրութիւն և առատութիւն։ Չկարեմ, ով դիցուհի, և ոչ զմի 'ի նաւաց նորա մատնել աւերաց․ թողից ևեթ մոլորել նաւապետին, և հեռանալ յԻթակայ՝ յոր դէմ եղեալն է։

Հաճեցաւ դիցուհին ընդ խոստումն նորա, և ընդ հենգն ժպտեալ, սլացաւ կառօքն ընդ ծաղկաւէտ մարգագետինս Իդալիոյ՝ ուր Շնորհք Խաղք և Խնծիղք * ցնծային ընդ դարձ նորա, գեղապարեալ զնովաւ ընդ ծաղկունս՝ որ բուրեն անդ .քաղցրահոտ։ Արձակեաց վաղվաղակի Պոսիդոն զմի 'ի խաբեբայից անտի դից համանմանն երազոց․ բայց միայն զի երազք խաբեն 'ի քուն, իսկ նա մոգէ զուշ և զուրուշ 'ի յարթմնի։ Աստուածն այն եղեռնագործ շուրջ պար առեալ 'ի բիւրաւորաց խաբուսիկ ոգւոց՝ որք զնովաւ թևածէին, հաս սրսկեաց զարտևանամբք նաւապետին

աւիշ նուրբ թովչական, մինչդեռ կայր նա 'ի գնին պայծառութեան լուսնոյ և ընթացից աստեղաց, և դիտէր զծովեզր Իթակեայ՝ նշմարելով մերձ զհրուանդանս նորին սեպացեալս :

Աթամասայ ոչ ևս այնուհետև տեսանէին աչք յոր ինչ հայէրն, այլ երկին մ՛յլ և երկիր մ՛յլ երևութանային նմա, և աստեղք զարտուղեալք յընթացիցն և յետս ընկրկեալք : Այլ իմն ազգ թուէր նմա գունդ երկնից առնուլ շրջան, և ստորևս առ հասարակ այլակերպեալ : Միւս այլ Իթակէ անէակ ընդ առաջ լինէր նմա առ 'ի խաբս, մինչ նա յէականէն 'ի բաց գնայր. և որչափ 'ի ծովեզր անդր 'ի պատիր դիմէր, նոյնչափ պատկերն պատիր յետս խուսափէր. և փախստէին զհետ մտեալ, զփախստեանն անգիտանայր զօրինակ : Մերթ թուէր նմա լսել զխառնաձայն ամբոխ աղաղակի նաւահանգստին, և որպէս պատուէր ընկալեալն էր՝ պատրաստէր մատչել գաղտ 'ի կղզեակ անդր հուպ 'ի մեծն, առ 'ի ծածկել 'ի տարփաւորաց Պենելոպեայ դաւակցելոց ընդդէմ Տելեմաքայ զդարձ պատանւոյն արքայորդւոյ : Իսկ մերթ զանգիտէր 'ի ժայռից՝ որ զծովեզերբն կային, և թուէր նմա լսել զկոծումն ալեաց՝ որ 'ի ժայռս անդր խորտակէին. և ապա դարձեալ նշմարէր զերկիրն դեռ ևս բացակայ, և լերինք նորա երևէին նմա 'ի հեռուստ որպէս ամպք փոքրիկք՝ որ մթագնեն երբէք երբէք զերեկս երկնից ընդ արևմուտս : Այսպէս Աթա

մաս ցնորէր, և ազդեցութիւն խաբուսիկ դիցն՝ որ զաչս նորա դիւթէր՝ արկանէր զնովաւ սուկումն նորանշան. Թուէր իսկ նմա երազել, և չհամարէր զանձն յարթմնի:

Բայց Պիսիդոն հրաման ետ հողմոց շնչել յարևելից, մղել վարել զնաւն 'ի ծովափունս Ակրեկոռնեայց. և շնչեցին հողմք ուժգին, արկին նոյնհետայն զնաւն 'ի ծովեզերս անհարկեալս յաստուածոյն: Այն ինչ այգն զառաւօտն մերկանայր, և աստեղք փախստեայք 'ի ճառագայթից արեգական և նախանձաւորք նոցին խուսափէին սուզանել զաղօտ նշոյլս իւրեանց յովկիան, գոչեաց նաւապետն. Հասաք ուր ուրեմն մերձ յԻթակէ, ուրախ լեր Տելեմաքէ. ահա ժամ մի, և տեսցես զՊենելոպէ, թերևս և զՈդիսևս դարձեալ յաթոռ իւր:

Ի գոչիւն աղաղակին զարթեաւ պատանին՝ որ զքնով անկեալ կայր անշարժ. յոտն եկաց, ել 'ի խելս նաւուն, գիրկս արկ նաւապետին, և ծանրաքուն թերաբաց աչօքն հայեցեալ 'ի ծովեզր անդր 'ի մերձակայ՝ յոգւոց եհան, զի ոչ զհայրենեացն իւրոց տեսանէր զծովեզր, և աղաղակեաց. Աւա՜ղ. ո՞ւր իցեմք, չէ և չէ դա ցանկալին իմ Իթակէ. խաբիս դու ո՛ Աթամաս, հեռաստանեայդ յերկրէ քումմէ ոչ քաջածանօթ գտանիս քեզ ծովեզր: Պատասխանի ետ Աթամաս և ասէ. Ոչ այդպէս, չխաբիմ 'ի տեսիլ ծովափանց կղզւոյդ. յաճախ 'ի նաւահանգիստ այդր մտեալ է իմ, և

ճանաչեմ զամենայն զժայռ և զխութ դորին ոչ ինչ ընդհատ 'ի ծովեզերաց Տիւրոսի: Տես զհրուանդանդ կարկառեալ, հայեաց 'ի քարաժայռդ աշտարակաձև սեպացեալ. ո՞չ լսիցես զգոչիւն ալեացդ կոծելոց ընդ ժայռս՝ որ գոգցես ինձ սպառնան կործանել 'ի ծով. և ո՞չ զմեհեանդ տեսանիցես զԱթենասայ՝ մինչև 'ի յամպս ամբարձեալ. ահա ամրոցն և արքունիք հօր քո Ոդիսեայ:

Արկնեալ անդրէն Տելեմաքայ ասէ. Սաքիս ո՛ Աթամաս, տեսանեմ այդ՝ ծովեզր բարձրաւանդակ, այլ սարահարթ. և նշմարեմ անդ քաղաք, այլ ոչ զԻթակէ: Ո՛վ դիք, ա՞յսպէս խաղ առնէք զմարդիկ: Եւ զայգ ընդ բանիցն բացան աչք Աթամասայ, լուծան հմայքն, ետես նա զծովեզրն որպէս և էր, ծանեաւ զպատրանսն, և գոչեաց. Այո՛ Տելեմաքէ, 'ի դիցն ուրեմն ոք դիւթեաց զաչս իմ. զԻթակէ կարծէի տեսանել, և պատկեր նորին յար և նման լինէր ինձ յանդիման, այլ արդ եղև ամենայն իբրև զերազ աներևոյթ: Քաղաք այլ տեսանեմ, և իցէ դա արդեօք Սալենտ՝ [6] զոր Իդոմենէս փախստական 'ի Կրետեայ հիմնեաց յՀրեկորնեայս. տեսանեմ զպարիսպս նորա Թերակատարս, և զնաւահանգիստն չև ևս ամրացեալ 'ի սպառ:

Եւ մինչդեռ Աթամաս զնորակերտ քաղաքին զարդիւ շինուածոյն դիտէր, և Տելեմաք զթշուառութիւն իւր աշխարէր, հողմն 'ի Պիսիդեայ յարուցեալ վարեաց զնաւն առագաստալիր 'ի ծոց ու-

րեք՝ ուր ամրացան մերձ 'ի նաւահանգիստն։ Բայց Մենտոր, յորմէ ոչ ինչ զանխուլ էին ոչ վրէժ-խնդրութիւն Պոսիդեայ և ոչ Աստղկանն անո-ղորմ դաւ, ժպտէր և եթ ընդ ցնորս նաւապետին։ Եւ իբրև հասին 'ի ծոց անդր, ասէ Մենտոր ցՏելեմաք. Ահա փորձէ զքեզ Արամազդ, այլ ոչ 'ի կորուստ քոյին. նա աւանիկ մատուցանէ զքեզ 'ի փորձ, առ 'ի բանալ առաջի քո զասպա-րէզ փառաց։ Յուշ լիցին քեզ նահատակութիւնք Հերակլեայ, և յարութիւնս հօր քո լեր ակնկա-ռոյց. որ ոչն գիտիցէ համբերել, չէ և չէ իսկ մեծասիրտ. պարտ է քեզ երկայնմտութեամբ և արիութեամբ պարտասեցուցանել զբաղդն դժըն-դակ, որ հալածէ զքեզ։ Լաւ է ինձ երկիւղ յահագին սպառնալեացն Պոսիդեայ, քան զոր 'ի փառաքուշ գգուանաց դիցուհւոյն կրէի երկիւղ յարգելուլ նորա զքեզ 'ի կղզւոջն։ Ո՜վ իմ կամք, մնասցուք 'ի նաւահանգիստդ՝ ուր բնակէ ազգ բա-րեկամ, որեար Յոյն։ Իդոմենէս հալածեալ 'ի բախտէն, գթասցի 'ի տառապեալս։ Եւ մտին անդէն 'ի նաւահանգիստն Սալենտեայ, ուր նա-ւուն փիւնիկեցւոյ ոչ ինչ դժուարին եղև մուտ. զի փիւնիկեցիք հաշտք են ընդ ամենայն ազգս վաճառականութեամբն։

Հայէր պատանին զարմացմամբ 'ի քաղաքն նորակերտ՝ հանգոյն դեռաբուսիկ տնկոյ, որ 'ի քաղցրածաւալ ցօղ գիշերոյ սնեալ, և 'ի գեղա-նշոյլ ճառագայթից արեգական ընդ առաւօտն

զուարթացեալ, աճէ, ուռճանայ, զգողտրիկ պտկունսն արձակէ, տերևի ղալարագեղ, պարզէ զանուշահոտ ծաղկունս իւր երփն երփն երանգօք, և 'ի պահս իւրաքանչիւր զանազան 'ի դէմս բերէ գեղեցկութիւն: Ըստ նմին օրինակի ծաղկէր դաստակերտն նոր Իդոմենեայ առ ծովեզերքն, զոր հանապազ և ժամ 'ի ժամէ բարգաւաճեալ հոյակապ շինուածովք, և նաւելոց ընդ ծով օտարականաց ընծայեր հեռուստ 'ի տեսիլ զհրաշակերտս ճարտարապետութեան նորանորս՝ որ ամբառնայրն անդ երկնաբերձ: Հնչէր ծովեզրն 'ի խառնաձայն ամբոխ գործաւորացն և յուռնադրորդ բախմանէ. ճռնչէին ճախարակք ճօպանն, որք զկոփածոյս ձգէին զվէմս 'ի վեր՝, խրախոյս 'ի գործ տային գործավարք 'ի ծագել այգուն. և Իդոմենէս արքայ պատուէրս անձամբ ամենայն ուրեք տուեալ, ժիրաժիր յառաջ վարէր զգործ շինուածոյն:

Ընդ հասանել նաւուն փիւնիկեցւոյ 'ի նաւահանգիստ անդր, հիւրընկալան կրետացիք զՏելեմաք և զՄենտոր ամենայն մարդասիրութեամբ, և փութացան ազդ առնել թագաւորին զգալուստ որդւոյն Ոդիսեայ: Եւ իբրև լուաւ զայն Իդոմենէս, ասէ. Եթէ արդարև ճշմարիտ իցէ գալուստ որդւոյն Ոդիսեայ բարեկամին իմոյ սիրելւոյ և դիւցազին իմաստնոյ՝ որ 'ի ձեռն նորա զՏրովադա կործանեցաք, ածէք զնա այսր առ իս, և ցուցից նմա քանի սիրելի էր ինձ հայր նորա:

Եւ ածին անդէն զպատանին. և պատմեաց նա զանուն իւր, խնդրելով զասպնջականութիւն։ Պատասխանի ետ նմա Թագաւորն քաղցր և զուարթ դիմօք, և ասէ. Եթէ չէր իսկ լուեալ զանուն քոյին, սակայն ճանաչէի արդեօք զքեզ. նոյն և զինքն իսկ տեսանեմ 'ի քեզ զՈդիսևս, ահա աչք նորա հրացայտք և անյողդողդք, ահա դէմք նորա 'ի սկզբնատեսիլ երևմանն լուրջ և զգոյշ՝ այնքան թերելով յինքեան աշխոյժս և շնորհս։ Ծանօթ իսկ է ինձ ժպիտդ այդ խորա-զգաց, շարժուած անպաճոյճ, և զրոյց քաղցր պարզ և ողջք՝ որ յանգգաստից հանէ զմիտս։ Դու ապաքէն որդի ես Ոդիսևայ, այլ իմ իսկ նոյն ինքն ես որդի։ Որդեակ իմ, սիրելի որդեակ. ո՞ր դէպք 'ի ծովեզր այսր ածին զքեզ. 'ի խնդի՞ր արդեօք հօր քո սիրելւոյ. աւա՜ղ, չունիմ զնմանէ զրոյց. բաղդն և զնա և զիս հալածեաց, նմա հասուցեալ զաղէտս չտեսանելոյ անդրէն զհայրենիս իւր, իսկ ինձ տեսանելոյ զիմն լի ցասմամբ դիցն ընդ իս։

Եւ 'ի բարբառելն զայսոսիկ՝ պշուցեալ հայէր յուղեկից պատանւոյն, զի ոչ անծանօթ թուէին նմա դէմք Մենտորի, այլ չյիշէր զանուն նորա։ Պատասխանի ետ Տելեմաք արտասուելով և ասէ. ՙՆերեա, տէր արքայ, ցաւոց սրտիս՝ զոր չկարեմ ծածկել 'ի պահու, յորում պարտ էր ինձ ուրախ լինել և գոհացող վասն բարերարութեանցդ քոց։ Կարեկցութիւն քո ընդ կորուստ Ոդիսևայ գուժէ ինձ զաղէտս չկարելոյ գտանել

զհայր իմ, զորոյ զհետ 'ի բազմաց հետէ շրջիմ 'ի խնդիր ծովէ 'ի ծով. այլ սրտմտութիւն դից չներէ ինձ տեսանել զնա անդրէն, և ոչ գիտել թէ նաւաբեկեա՞լ իցէ, և ոչ իսկ դառնալ յԻթակէ՝ ուր Պենելոպէ հաշի և մաշի անձկանօք զերծանելոյ յերեսաց տարփաւորացն իւրոց։ Կարծէի գտանել զքեզ 'ի Կրետէ, գիտացի անդ զպատահարս քոյին զդժնդակս, և խորհէի իսկ ոչ՝ գալ յԵրեկողմնեայս 'ի նորակերտ թագաւորութիւն քոյին. այլ բախտն՝ որ ծաղր առնէ զմահկանացուօք, և որ հալածէ զիս ամենայն ուրեք հեռի յԻթակայ, արկ զիս 'ի ծովեզերս քոյին։ Յամենայն չարեաց, զորս հասոյց նա ինձ, մոռադիւրագոյն կրեմ զայս. զի թէպէտ և տարագիր 'ի հայրենեացս վարեալ, այլ զազնուականագոյնն 'ի թագաւորս տեսանեմ։

Զայն իբրև լուաւ Իդոմենէս, գիրկս արկ նմա խանդաղանօք. և ածեալ զնա յարքունիս իւր, ասէ. Իսկ այդ ո՞վ է ծերունիդ խոհական ընդ քեզ, թուի ինձ տեսեալ զնա երբեմն։ Պատանին ասէ. Մենտոր է սա բարեկամ Ողիսեայ, որում յանձնեաց նա զիս 'ի մանկութենէ. և ոչ կարեմ յանդիման առնել բանիւ, քանի՛ շնորհապարտ սմա գտանիմ։ Յայնժամ Իդոմենեայ յառաջ մատուցեալ, և ձգեալ զձեռն իւր առ Մենտոր, ասէ. Տեսեալ իսկ է մեր զմիմեանս. յիշեցե՞ս զգալ քո 'ի Կրետէ, և զխրատս բարեաց՝ զորս ետուրն ինձ. այլ յայնժամ եռանդն մանկականի

տիոց և իղձք մնոտեաց ընդ քարշ ածէին զիս. Հարկ եղև ինձ թշուառութեամբս իմով զգաստանալ և ուսանել որ ինչ ոչն կամէի հաւատալ։ Եցիւ թէ լուեալ էր իմ քեզ յայնժամ ծերունիդ խոհեմազարդ։ Այլ իմ յապուշ կրթին միտք 'ի տեսանել զքեզ զրեթէ ոչ ինչ այլափոխեալ յետ այսքան ամաց, նոյն դէմք առոյգ, նոյն հասակ ուղղորդ, նոյն կորով մարմնոյ, այլ ևեթ քոյին փոքր մի ծաղկեալք։

Պատասխանի ետ Մենտոր և ասէ. Եթէ մարդահաճոյ ոք էի, արքայդ Հզօր, զնոյն և ես ասէի՝ տեսանել 'ի քեզ զգեղ մանկութեան, որ անդ ուրեմն նախ քան զպաշարումն Տրովադայ փայլէր 'ի դէմս քո. այլ լաւ իցէ ինձ անհաճոյ լինել քեզ քան աղարտել զճշմարտութիւն։ Սակայն յիմաստութենէ բանիցդ 'ի միտ առնում՝ զի չես դու սիրեցող մարդահաճութեան, և չիք վտանգ 'ի խօսելոյ առ քեզ անկեղծ՝ զճշմարտութիւն։ Կերպարանափոխ լեալ տեսանեմ զքեզ, և դժուարին էր ինձ ճանաչել զքեզ. գիտեմ իսկ քաջ զի 'ի բազում վշտացդ կրելոց գտանիս նուաղեալ, բայց և բազումն վշտակրութեամբդ այդուիկ շահեցար՝ ստացեալ զիմաստութիւն։ Սփոփին խորշումք երեսաց 'ի կրթել սրտի և 'ի կազդուրել յառաքինութիւն։ Առաւելագոյն յոյժ հաշին թագաւորք քան զայլս 'ի մարդկանէ. 'ի ձախողակս՝ տագնապք մնաց և վաստակք մարմնոյ ճեպեն 'ի վերայ նոցա զծերութիւն. իսկ 'ի յա-

Ջողուածս գրգանք մեղկ կենաց սաստիկ ևս մաշեն զնոսա քան զՃգունս մարտի. զի չիք ինչ վնասակարագոյն առողջութեան քան զառածանել 'ի հեշտախտութիւն: Վասն որոյ թագաւորաց 'ի խաղաղութեան և 'ի մարտի վշտօք կամ գըրգանօք կանխեն քան զհասակն ալիք. կեանք զգաստ և չափաւոր, պարզ և զերծ 'ի հոգոց և 'ի կրից, բարեկարգ և ժիր, անծերանալի 'ի մարմնի առն իմաստնոյ ունին զառոյգ մանկութիւն, որ առանց զգուշութեանցս այսոցիկ խուսափէ երագաթռիչ 'ի թևս ամաց:

Իդոմենևս զմայլեալ 'ի լուր բանիցն Մենտորի՝ ցանկայր յերկարագոյն նուագօք լսել նմա, բայց հասին պաշտօնեայք ազդ առնել՝ զի ժամ էր մատուցանելոյ զոհ Արամազդայ: Գնացին զհետ արքայի և Տելեմաք և Մենտոր շուրջ պատեալ 'ի խուռնէ քաղաքայնոց, որք այր զարամբ ելանէին 'ի վերին հիւրոցն երկոցունց, և ասէին ընդ միմեանս. Հրաշք են արքդ երկոքին. պատանին աչխոյժ և սիրելի զամենայն շնորհս գեղոյ և զմանկութեան բերէ 'ի դէմս իւր և 'ի բոլոր անձին, այլ գեղեցկութիւն նորա չունի ինչ մեղկ և կանացի. 'ի գեղածաղիկ մանկութեան երևի ուժեղ և կորովի և պնդակազմ 'ի վաստակս: Իսկ միւսն թէպէտ և ալևոր, այլ չև ևս նուազեալ յուժոյ. տեսիլ նորա 'ի սկզբան անդ ոչ այնպէս շքեղ թուէր և վեհափառ, այլ 'ի նկատել զնա 'ի մօտոյ՝ տեսանեմք յանշուք դէմս նորա զկնիք իմաստու-

թեան և առաքինութեան ընդ գերահրաշ ազ-
նուականութեան։ Յիջանել դիցյերկիր 'ի խո-
նարհ հաղորդել ընդ մարդկան, զայսպիսեաց ան-
շուշտ առին զկերպարանս հիւրոց ուղևորաց։

Հասին 'ի մեհեան Արամազդայ, զոր Իդոմե-
նեայ վասն ընդ դիցն ազգակցութեան շքեղաշուք
յօրինեալ էր։ Շուրջ պատէին զայն կրկին
կարգք սեանց յասպեայց, որոց խոյակք էին ար-
ծաթիք. որմք համակ դրուագեալ էին կճեայ
քանդակօք, 'ի տեսիլ ածելով զայլակերպութիւն
Արամազդայ 'ի ցուլ, զյափշտակել նորա զԵւ-
րոպէ [7], և զանցումն ընդ ալիս 'ի Կրետէ։ Թուէր
թէ և ընդ օտար կերպարանաւն պաշտօն ընծայ-
ել աստուածոյն։ Էր անդ քանդակեալ և ծնունդ
և մանկութիւն Մինովայ, և ապա իմաստնոյ ար-
քային 'ի կատարեալ հասակի օրէնսդրութիւն
առ 'ի յարակայել զբարգաւաճանս կղզւոյն։ Դի-
տէր անդ Տելեմաք և զդէպս երևելիս պաշար-
մանն Տրովադայ, ուր Իդոմենեայ զմեծի զօրա-
վարի ստացեալ էր զփառս։ Խնդրեաց նա 'ի պատ-
կերս անդ պատերազմաց զհայր իւր, և եգիտ զնա՝
զի աստ գերի ածէր զձիանն Հռեսոսի [8] այն ինչ
սպանելոյ 'ի Դիոմեդեայ [9], անդ ընդ Այասայ [10]
վիճէր զզինուցն Աքիլլեայ յանդիման համա-
խումբ յունական բանակին, և ապա 'ի մահահոտ
երիվարէն [11] դիմէր արտաքս 'ի կոտորած բիւրա-
ւորաց տրովացւոց։ Նոյնէն և անդ ծանուցեալ
զնա պատանւոյն 'ի հռչակեալ արութեանցն՝ զո-

րոց յաճախ լուեալ էր խօսելոյ և 'ի Մենտորէ իսկ, այլայլեցան դէմք նորա, շրջեցաւ գոյն երեսացն, և արտասուք հոսէին յաչաց նորա: Եւ թէպէտ դարձուցանէր նա զերեսս իւր 'ի բաց առ 'ի ծածկելոյ զկիրսն, ետես զայն Իդոմենէս, և ասէ ցնա. Մի՛ ամօթ համարիր ցուցանել մեզ զգարով սրտիդ ընդ փառս և ընդ աղէտս հօր քո:

Բայց ամբոխն խռնէր ժողովէր յընդարձակ գաւիթսն կամարակապս 'ի կրկնապատիկ սեանց շուրջանակի զմեհենաւն: Գունդ մանկտւոյ և պար օրիորդաց երգէին անդ օրհնութիւնս որոտողին Արամազդայ. 'ի գեղեցկագունից էին մանկունքն ընտրեալ, վարսք նոցա զուսովքն գեղածփեալ, գլուխք նոցա վարդապսակք և իւղաթուրմք, և սպիտակազգեացք առ հասարակ: Իդոմենէս ցուլս հարիւր մատուցանէր շանթընկեցին աստուածոյն, կարդալով զօգնութիւն նորա վասն պատերազմին՝ զոր մղէր ընդ սահմանակիցս իւր ընդ մանդուրացիս. ծխէր արիւն զոհիցն, և 'ի լայնատարր նուիրանոցս ոսկեղէնս և արծաթեղէնս ամենուստ աղբիւրանայր:

Ծերունին Թէոփանէս սիրելի դից քուրմ մեհենին, ծածկեալ զգլուխ իւր 'ի ժամ նուիրանացն քղանցիւ պատմուճանին ծիրանւոյ, հմայեաց 'ի ջերաջերմ ընդերս զոհիցն, և 'ի սրբոյ եռատանւոյն ձայնարկեալ՝ ասէ. Ո՞յք ոմանք իցեն, ով դիք, հիւրքդ երկոքեան երկնառաքք. առանց դոցա լիցի մեզ պատերազմն 'ի բեկումն, և Սա֊

լեռն չեւ 'ի վերայ հիմանցն 'ի վեր ամբարձեալ տապալեսցի. տեսանեմ դիւցազն պատանեակ, որում առաջնորդէ իմաստութիւն կալեալ զձեռանէ: Աւելի ինչ շրթանց մահկանացուաց ոչ շնորհի բարբառել:

Եւ 'ի խօսել նորա զայսոսիկ՝ աչք նորա դժնէհայեացք եւ հրացայտք այլ ընդ այլոյ թուէին զմերձակայսն տեսանել. դէմք նորա բոցագոյն, անձն խռովեալ այլ յայլմէ լեալ, հերքն քստմնեալ 'ի վեր դիզացեալ, փրփրերախ, բազկատարած արձանացեալ, ձայն նորա սաստկայոյզ գեր քան զբարբառ մարդկեղէն հնչէր ուժգնակի եւ հեղձամղձուկ լեալ, եւ զաւիւնն աստուածազդեցիկ բովանդակել յինքեան ոչ հանդարտեալ, գոչեաց անդրէն. Արքայդ բարեբաստիկ, զինչ է զոր տեսանեմս. քանի՛ աղէտք անցեալք զմեօք, քանի՛ երանաւէտ 'ի ներքս խաղաղութիւն, քանի՛ ամբոխք արտաքոյ պատերազմաց, քանի՛ քաջայաղթ արութիւնք: Նահատակութիւնք քո, Տելեմաքէ, հայրենականացդ գեր 'ի վերոյք. գոռոզ թշնամին հեծէ դիտապաստ ընդ բազմախողխող սուսերաւդ քով. դղուինք պղնձիք, մարտկոցք անմատոյցք ահա յոտին քում կործան անկանին: Տո՛ւր վեհ դիցուհիդ, տո՛ւր զի հայր սորին.... Հիւրդ պատանեակ, տեսցես ուր ուրեմն...

Եւ մինչդեռ բանքս այսոքիկ 'ի բերան նորա կային, պապանձեցաւ կարկեալ եկաց 'ի հիացման:

Զահի հարաւ ամբոխին առ հասարակ. և Իդո-մենէս ահաբեկեալ չիշխէր հարցանել զթերին պատգամացն ։ Ինքն իսկ պատանին ապշեալ՝ հա-զիւ իմանայր զբանսն, և չհաւատալի Թուէին նմա պատգամքն ։ Մենտոր ևեթ յաստուածային ազ-դեցութենէն անխռով, ասէ ցԻդոմենէս. Տե՛ս դու որ ինչ 'ի դիցն սահմանեալ քեզ բախտ. ընդ ազգի ընդ որում և մարտիցես, քո լիցի յաղ-Թութիւն, և շնորհապարտ որդւոյ բարեկամին քոյոյ վասն յաջողութեան զինուց քոց գտցիս ։ Մի ինչ ընդ այդ նախանձ 'ի միտս քո անկցի. այլ ընկալ 'ի բարի որ ինչ դիք շնորհեն քեզ նո-վաւ ։

Իդոմենէս չև ևս անձին զգացեալ յարհաւ-րացն, խնդրէր բարբառել՝ այլ լեզու նորա կայր անշարժ ։ Կանխեաց Տելեմաք և ասէ ցՄեն-տոր. Ոչ ինչ զսիրտ իմ այդքան աւետիք փառաց յուզեալ վրդովէն, այլ զի՞նչ յետինն այն աւե-տեր բարբառ տեսանել ինձ, զհա՞յրն իմ արդեօք եթէ զԻթակէ. աւա՜ղ, և ընդէ՞ր ոչ լի բովան-դակ զպատգամն ետ, և աւանիկ յաւել ինձ վա-րանս ։ Ոդիսևս, հայր իմ, դո՞ւ արդեօք իցես՝ զոր մնայ ինձ տեսանել. Ճշմարի՞տ իցէ, թէ զանձն իմ խաբեմ ։ Մարգարէդ անողորմ որ ծիծաղիսդ զինև՝ ոտնհար հիքիս լեալ. միւս այլ բարբառ թէ յաւելուիր, լինէի 'ի սպառ ես երանաւէտ ։

Յայնժամ ասէ ցնա Մենտոր. Պահացող լեր զդիցն վասն որոց յայտնեն, և մի հետազօտեր որ

ինչ կամիցին ծածկել. զի յանդուգն հետաքննու-թիւն՝ կորստեան է արժանի։ Բարեխնամ իմաս-տութեամբ դից ծածկեն 'ի տկար մահկանացուաց ճակատագիրք նոցա 'ի գիշեր աննշոյլ. օգուտ է նախագիտել որ ինչ 'ի կամս մեր է, առ 'ի բարւոք գործել զայն. այլ ոչ ինչ նուազ է օգտակար ան-գիտանալ որ ինչ ոչ 'ի կամս մեր է, այլ 'ի դից սահմանեալ մեզ։ Նա յորդորեալ պատասխանին 'ի բանից աստի, բռնադատեաց զանձն։ Իսկ Ի-դոմենէս, որ զգաստացեալն էր յապշութենէ միոյն, սկսաւ օրհնել զմեծն Արամազդ՝ որ զպա-տանին Տելեմաք և զիմաստունն զՄենտոր առա-քեաց առ 'ի տալ 'ի ձեռն նոցա յաղթութիւն ընդդէմ Թշնամեաց։ Նա զհետ զոհիցն արարեալ կոչունս մեծահաց, խօսեցաւ ապա ընդ հիւրսն երկոսին և ասէ.

Այո, 'ի դառնալ իմում 'ի պաշարմանէն Տրո-վադայ 'ի Կրետէ՝ չև ևս հմուտ էի թագաւորե-լոյ. և ոչ ինչ զանխուլ են 'ի ձէնջ, բարեկամք իմ սիրելիք, արկածքն՝ որ բարձին յինէն զթագա-ւորութիւն կղզւոյն մեծի. զի ասէք երթեալ ան-դէն յետ իմոյ ելանելոյ անտի։ Բայց տակաւին բարեբաստ զանձն համարիմ եթէ դժնդակագոյն հարուածք բախտին լեալ իցեն ինձ 'ի խրատ և 'ի զգուշութիւն։ Հատի անցի ընդ ծով որպէս փախստեայ, հալածական 'ի վրէժխնդրութե-նէ դից և մարդկան. մեծութիւնք իմ առաջինք նշաւակելի ևս և դժոխըմբեր զկործանումն իմ

գործելին ինձ ։ Եկի ընդ Թերամիս [12] իմ ապաստա֊
նել 'ի ծովեզր այսր ամայի, ուր ոչ այլ ինչ էր՝
բայց երկիր խոպան ծածկեալ 'ի փուշ և 'ի տա֊
տասկ, մայրիք հասակակիցք աշխարհի, և ժայռք
անմատոյցք՝ գազանաց ամեհեաց խշտիք ։ Հարկ
եղև ինձ վայրաբնակել աստ փոքու գնդաւ զօրու
և ընկերաց, որոց յանձն առեալ էր վշտակրել ընդ
իս ․ և զերկիրս զայս վայրենի համարեցայ ինձ 'ի
հայրենիս, ոչ ևս յուսացեալ տեսանել զկղզին ե֊
րանաւէտ՝ յորում ետուն ինձ դիք ծնանել 'ի Թա֊
գաւորութիւն ։ Աւա՛ղ, ասէի ընդ միտս իմ, քա֊
նի՜ ահաւոր օրինակ առ 'ի խրատ արքայից անա֊
կընկալ յեղափոխութեամբս արձանանամ ․ ար֊
ժան էր ամենեցուն՝ որոց իշխեն աշխարհի՝ տե֊
սանել զիս, առ 'ի խրատել ինև ։ Անվտանգ նոքա
զանձինս համարին՝ գեր 'ի վերոյ քան զայլս 'ի
մարդկանէ կալով ․ այլ առաւելագոյն 'ի բարձրու֊
թենէ անտի հասանէ նոցա վտանգ ։ Ահարկու
էի Թշնամեաց, և սիրելի ժողովրդեան ․ իշխէի
ազգի հզօրի և պատերազմողի, և համբաւոյ
յաշխարհս հեռաւորս հռչակեալ էր զանուն իմ ։
Թագաւորէի 'ի բերրի և 'ի բազմազուարճ կղզւոջ ․
հարկատու ճոխութեանցն իւրեանց լինէին ինձ
ամի ամի քաղաքք հարիւր, և բնակիչք նոցա մե֊
ծարէին զիս ազգակից Արամազդայ՝ որ յերկրի
անդ նոցա ծնեալ, և սիրէին զիս որպէս զԹոռն
իմաստնոյն Մինովայ՝ որոյ օրէնք հզօրս զնոսա
կացուցին և երջանիկս ․ Ո՛չ ինչ այլ պակասէր ինձ

'ի բարեբաստութիւն, բայց գիտել զգուշութեամբ վայելել 'ի նոսին. այլ ամբարտաւանութիւն և մարդահաճութիւն, որոց ունկն մատուցի, կործանեցին զաթոռ իմ: Այսպէս անկցին ամենայն թագաւորք յիղձս իւրեանց և 'ի խորհուրդս մարդահաճոյից:

Ի տուէ հնարէի երևել զուարթ և քաջայոյս առ 'ի խրախուսել զեկեալսն ընդ իս, և ասէի. Եկայք շինեսցուք քաղաք նորակերտ, մխիթարել նովաւ 'ի վերայ ամենայնի՝ զոր կորուսաք. ազգք բնակեալք զմեօք տան մեզ առ այս օրինակ: Ահա Տարենտոն աստ առ մեզ կառուցեալ. Փաղաս [13] ընկերօքն իւրովք սպարտացւովք արկ զհիմն նորոյ թագաւորութեանս: Աստ և Փիլոկտետ [14] 'ի սմին ծովեզեր կանգնեաց քաղաք մեծ, Պետիլիա զայն անուանեալ: Եւ Մետապոնտ [15] ըստ նոցին օրինակի բնակէ աստ գաղթականն: Մատասաճիցուք քան զտարաշխարհիկ թափառականսդ գտանիցիմք. ոչ ոխերմագոյն ինչ ընդ մեզ իցէ բախտըն:

Բայց 'ի հնարել իմ այսպիսեօք քաջալերել բանիւք զընկերս, կրէի 'ի սրտի տագնապ մահառիթ: Սփոփէի 'ի մեկնել յինէն տունջեան, և 'ի գալ ծածկել գիշերոյ զիս 'ի խաւարի, յորում համարձակ ողբալ կարէի զճակատագիր իմ աղեղորմ՝ ուղխք կրկնաւորակ աղի արտասուաց իջանէին յաչաց իմոց, և քուն քաղցրանինջ հատեալ էր 'ի սպառ յարտևանաց իմոց: Ի վաղիւ անդր

դարձեալ ժիրաժիր ձեռն 'ի գործ առնէի ։ Ահա վասն այսորիկ տեսանես զիս , Մենտոր , կանուխ զառամեալ ։

Եւ իբրև կատարեաց Իդոմենէս պատմել զվիշտըս իւր , խնդրեաց զօգնութիւն նոցա վասն առաջիկայ մարտին , և ասէ ․ Ես ինքնին յուղարկեցից զձեզ յետ պատերազմին յԻթակէ ․ առ այժմ արձակեմ նաւս ընդ ամենայն ծովեզերս հեռաւորս՝ ածել զրոյց զՈւղիսեայ ․ և ուր ուրեք 'ի ծագաց երկրի՝ որ ծանօթք են մեզ՝ վարեալ իցէ նա՝ 'ի մրրկէ կամ յաստուածասաստ բարկութենէ , գիտացից դարձուցանել զնա ․ տացեն դիք զի կենդանի միայն իցէ նա տակաւին ։ Իսկ յուղարկաւորս ձեզ տաց զընտիրս յամենայն նաւաց կառուցելոց 'ի Կրետէ , որոց ատաղձք անդստին 'ի լեռնէն Իդայ՝ ուր խանձարուրք են Արամազդայ՝ անտի իսկ հատեալ են ․ և մի՛ նաւափայտն դիցանուէր կորիցէ յալիս , մրրիկք և ժայռք խնայեսցեն նմա երկիւղիւ ․ և ինքն իսկ Պիսիդոն , 'ի բորբոքել բարկութեան իւրոյ , մի՛ իշխեսցէ յարուցանել զնովաւ զալիս ։ Վստահք ուրեմն լերուք , զի դարձջիք ողջամբ և յաջողութեամբ յԻթակէ , և ոչ ևս ոք 'ի դից ոտոխաց կարասցէ առնել զձեզ ծովէ 'ի ծով վտարանդի ։ Սուղ և դիւրին աստի անդր է ուղիդ , արձակեցէք արդ 'ի բաց զնաւդ փիւնիկեցի՝ որով եկիքդ ․ մի՛ յայլ ինչ խորհիցիք՝ բայց 'ի ստանալ զպարծանս հաստատելոյ զնորակերտս զայս պետութիւն Իդո-

մենեայ առ 'ի սփոփումն թշուառութեանցն իւրոց ։ Սովին քաջութեամբ, զաւակդ Ոդիսեայ, արժանի հօր քո լինիս դու որդի ։ Նա և թէ երբէք խիստ ճակատագիր 'ի նսեմաստուեր կայս Պղուտոնի արդէն իսկ զնա իջուցեալ իցէ, համայն Եղլադա զարմացմամբ մեծաւ կարծեսցէ զնա տեսանել 'ի քեզ ։

Մինչ չև Իդոմենեայ կատարեալ զբանսն, 'ի վերայ եած Տելեմաք. Հա՛պա, արձակեսցուք զնաւն փիւնիկեցի, զի՞ յապաղեմք, 'ի զէն ընթասցուք, հարցուք զթշնամիս քո՝ որ այսուհետև մեր իսկ են թշնամիք ։ Եթէ յաղթօղք գտաք պատերազմեալք 'ի Սիկիլիա վասն Ակեստեայ տրովացւոյ թշնամւոյ Յունաց, ո՞չ առաւել ևս արիասցուք խրախուսեալք 'ի դիւց 'ի պատերազմել մերում՛ 'ի վերայ միոյ 'ի դիւցազանց Հելլենաց՝ որք զՊրիամու քաղաքն կործանեցին ։ Պատգամն, զոր արդ իսկ լուաք, բառնայ 'ի մէնջ զամենայն տարակոյս ։



# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ

## ԻՆՆԵՐՈՐԴԻ ԳՐՈՑՆ

1 Իրիս կամ Ծիածան դուստր Թաւմասայ և Էլեկտրայ , պատգամաւոր դիցուհւոյն Հերայ :

2 Շնորհք կամ Խարիտեայք էին երրեակ դստերք Արամազդայ և Աստղկան . անուանք նոցա Եւփրոսինէ , Թալիա , և Ագլայիա :

3 Էրիս դիցուհի գժտութեան զչարեալ՝ զի ոչ հրաւիրեցաւ ընդ այլ դիս 'ի խնճոյս հարսանեաց Պեղէոսի և Թետեայ , 'ի վրէժ քինու արկ 'ի խնճոյս անդր խնձոր ոսկի՝ գրեալ 'ի նմա ԳԵՂԵՑԿԱԳՈՒՆԻՆ : Վիճեցան վասն այնր Հերա Աստղիկ և Աթենաս , և ընտրեցին դատաւոր գեղոյ իւրեանց զՊարիս զորդի Պրիամու արքային Տրովադայ : Պարեայ գեղեցկագոյն զԱստղիկն դատեալ , առեալ եղև երկուց այլոց դիցուհեացն . յորմէ առին պատճառս այնչափ աղէտք տրովացւոց և յունաց :

4 Ճակատագիրն համարէր առ հեթանոսս ծնեալ 'ի համապարփակ վհէն . և նկարի սափոր 'ի ձեռին յորում են բախտք մարդկան , և ընդ ոտիւք նորա գունտ երկրի : Վճիռք նորա անդարձք համարէին և բոլորից դից պատկառելի :

5 Խաղք և Խնծիղք զաստուածական առնուին պաշտօն առ հեթանոսս :

6 Սմինթոն մայրաքաղաք երկրին սալմնտացւոց , որ արդ կոչի երկիր Ոդրանդեայ 'ի Փուլիա , 'ի սահմանս Նէապօլսոյ :

7 Եւրոպէ դուստր Ագենորայ արքային փիւնիկեցւոց , քոյր Կադմոսի : Զոր յափշտակեալ Արամազդայ 'ի կերպարանս ցլոյ ,ած 'ի Կրետէ . և յանուն իւր կոչեցաւ մի 'ի չորից մասանց աշխարհի :

8 Հռեսոս արքայ Թրակացւոց , նիզակակից տրովացւոց ընդդէմ Յունաց , մատնութեամբ Տոլոնի տրովացւոյ սպանաւ յառաջնումն գիշերի մարտին 'ի Դիոմեդեայ . և 'ի վառնել զօրաց նորա 'ի սուր և 'ի փախուստ , երիվարք նորա սպիտակք ոչ կարացին ըմպել զալիս Քսանթեայ և ոչ ճարակել յարօտս Տրովադայ , որ ըստ պատգամաց էր նշանակ անառիկ մնալոյ Տրովադայ :

9 Դիոմեդէս. ալքայ Ետոլիոյ, քաջագոյն 'ի Յոյնս յետ Աքիլլեայ և Այասայ. որ մարտեաւ ընդ Ենեայ և Եկտորի, և զՊալլադիոնն անդրի երկնաւաք յափշտակեաց:

10 Այաս որդի Տելամոնի վիճեալ ընդ Ոդիսեայ վասն զինուցն Աքիլլեայ, և յաղթեալ 'ի ճարտարխօսութենէ նորա, չոքաւ զիւրովքն. և յարենէ նորա բուսաւ յակինթն ծաղիկ:

11 Մահահոփ Երիվար. Յետ տասնամեայ պաշարման քաղաքին տրովացւոց, իբրև անհնարին լինէր Յունաց առնուլ զայն, խրատ ետ նոցա Պալլաս դիցուհի՝ շինել երիվար մեծ անարդիւ փայտակերտ, և դարանեցուցեալ 'ի նմա արս սպառազէնս՝ թողուլ զայն և 'ի բաց գնալ: Տեսեալ տրովացւոց զերիվարն ահագին, և համարեալ զայն պարգև երկնաւաք, խրամատեցին զպարիսպ քաղաքին, և անիւս 'ի ներքոյ ձիոյն եդեալ՝ ածին մուծին զայն 'ի քաղաքն. Եւ 'ի գիշերի խուժեալ սպառազինացն 'ի դուրս, հուր հարին զքաղաքն, և ձայն ետուն մեկնելոցն Յունաց, որոց գունդագունդ դիմեալ 'ի քաղաք անդր, յաւէր դարձուցին զայն:

12 Թերափք էին ընտանի դիք հեթանոսաց, անդրիք փոքրիկք կախեալք զորմոց՝ որոց նոքա առանձին պաշտօն մատուցանէին:

13 Փալաս էած զպարթենիացիս 'ի Սպարտայ յԻտալիա. որք 'ի ծովեզերս Կալաբրիոյ կառուցին զՏարենտոն քաղաք:

14 Փիլոկտետ որդի Փէանայ, հաւատարիմ բարեկամ և ընկեր Հերակլեայ. որ և երդուաւ նմա 'ի մեռանելն Հերակլեայ՝ չյայտնել ուրեք զտեղի թաղմանն, և ընկալաւ 'ի նմանէ զնետս մուխս յարիւն վիշապին թունաւորի:

15 Մետապոնտ քաղաք 'Նէապօլսոյ 'ի տարենտեան ծոցի:



# ՆԱԽԱԴՐՈՒԹԻՒՆ

Իդոմենէս պատմէ Մենտորի զպատճառս պատերազմին ընդ Մանդուրացիս. զի նոքա թողին նմա 'ի սկզբան անդ 'ի ծովեզերս երեկորնեայս հիմնել զդաստակերտ իւր, խոյս տուեալ 'ի լեռնակողմանս մերձակայս. և զի ապա նեղեալ յասպատակութենէ իւրոցն՝ յղեցին պատգամաւորս երկուս 'ի ծերունեաց, կռել դաշինս. և զի ոմանց յիւրոցն անցանելով ըստ դաշինսն յանդէտս, գրգռեցին զազգն 'ի պատերազմ։ Ի պատմել Իդոմենեայ զայսոսիկ, Մանդուրացիք 'ի զէն ընթացեալ՝ գան հասանեն առ դրունս Սալենտեայ։ Նեստոր Փիլոկտետ և Փաղաս, զորս Իդոմենէս ոչ իւր և ոչ թշնամեացն իւրոց կարծէր կուսակիցս, գումարին ընդ Մանդուրացիս։ Մենտոր երթայ միայնակ առաջի առնել թշնամեաց պայմանս հաշտութեան։

# ԱՐԿԱԾՔ ՏԵԼԵՄԱՔԱՑ



## ԳԻՐՔ ՏԱՍՆԵՐՈՐԴ

Բայց Մենտոր հեզ և հանդարտ ակնարկեալ
'ի պատանին՝ որ խրախուսանօքն քաջութեամբ 'ի
պատերազմի, ասէ. Սիրելի է ինձ տեսանել 'ի քեզ
զգեղեցիկ փառասիրութիւնդ, զաւակդ ողիսա-
կան. այլ յուշ լիցի քեզ, զի հայր քո 'ի պատե-
րազմին Տրովադայ ոչ այլով ինչ զայնպիսի փառս
ստացաւ առ Յոյնս՝ բայց իմաստնագոյն 'ի նոսա
երևեալ: Աքիլլէս իսկ անյաղթն և անխոցելի,
որ ամենայն ուրեք ուր և մարտնչէրն՝ արհաւիրս
ածէր և մահուանս, չկարաց առնուլ զՏրովադա,
անկաւ և նա առ պարսպօք քաղաքին, և յաղ-
թանակեաց Տրովադա 'ի վերայ յաղթողին
Հեկտորի: Բայց Ոդիսեւս, յորում խոհակա-
նութիւն առաջնորդէր քաջութեան, զհուր և
զսուր ած 'ի քաղաքամէջ անդր տրովադացւոց, և
բազուկք նորա կործանեցին զբարձրաբերձ զամ-
բարտաւան աշտարակսն՝ որք զամն տասն սպառ-

նայէին կորուստ նիզակակցութեան Ելլադայ առհասարակ։ Որչափ Աթենաս գեր 'ի վերոյ է քան զԱրէս, այնչափ արութիւն խոհական և յառաջատես գերազանցէ քան զյախուռն և զմոլեգին քաջութիւն։ Տեսցուք ապա նախ զհանգամանս մարտիս, զոր մնայ մեզ մղել. ոչ խուսեմ 'ի վտանգաց, այլ թուի ինձ՝ թէ պարտ իցէ մեզ, ո՛ Իդոմենէս, գիտել թէ արդեօք իցէ պատերազմդ, ընդ որս է մեզ պատերազմել, և իցէ՞ն քեզ զօրք բաւական առ 'ի յոյս յաղթութեան։

Պատասխանի ետ Իդոմենէս և ասէ. Յորժամ հասաք 'ի ծովեզերս յայսոսիկ, էին աստ մանդուրացիք՝ ազգ վայրենի անտառաբնակ, որ կէին յորսոց վայրի և յինքնեկ մրգաց ծառոց։ Ի տեսիլ նաւաց մերոց և զինուց ահաբեկեալք, խոյս ետուն նոքա 'ի լերինս. զօրականն հետազօտ վայրացս և հետամուտ եղջերուաց՝ պատահեաց փախստէիցն վայրենեաց։ Առաջնորդք նոցա ասացին. Թողաք ձեզ զծովակողմն ցանկալի, և մեզ մնան 'ի բնակութիւն լերինք ևեթ դժուարամատոյցք. գոնեա աստ թողէ՛ք զմեզ ազատս 'ի խաղաղութեան։ Թափառականք էք վայրավատինք տկարագոյնք քան զմեզ, կարող եմք սատակել զձեզ զանխուլ իսկ յընկերաց ձերոց. այլ քաւ լիցի մեզ մխել զձեռս մեր յարիւն մեզ նմանող մարդկան. երթայք խաղաղութեամբ, և յուշ լիցի ձեզ զի 'ի մարդասիրութենէ մերմէ-

շնորհին կեանք ձեր, և զի ազգ՝ զոր դուք բերոս կոչէք և վայրենիս՝ զայս ձեզ խրատ հեզութեան և վեհանձնութեան տան ։

Մ՚երքն այսպէս ՚ի բարբարոսացն ՚ի բաց արձակեալք՝ դարձան ՚ի բանակն, և պատմեցին որ ինչ ընդ նոսա անցք անցեալ էին ։ Յայնժամ զինուորացն մերոց զչարեալ և ամօթ համարեալ կրետացւոց շնորհապարտս գտանել վայրենեաց ոմանց՝ որ յաչս նոցա թուէին արջք քան թէ մարդիկ, ելին անդրէն յորս բազմագոյնք քան զառաջինն և սպառազինեալք. և պատահեալ վայրենեացն, յարձակեցան ՚ի նոսա. և սաստկացաւ պատերազմն, և նետք աստի և անտի տեղային իբրև զտարափս կարկտի տեղեալ ընդ դաշտ ՚ի մրրկի ։ Հարկ եղև վայրենեացն ամփոփել յետս ՚ի լերինս անդր իւրեանց դժուարաժայռս, ուր մերքն չիշխէին դիմագրաւել ։

Յետ սակաւ միոյ առաքեցին առ իս մանդուրացիք զերկուս ՚ի խոհեմագունից ծերունեաց իւրեանց յաղերս խաղաղութեան, ընծայաբերելով զկողոպուտս ՚ի գազանաց սատակելոց մորթս, և պտուղս յարդեանց երկրի իւրեանց ։ Եւ մատուցեալ զընծայսն ասեն. Արքայ քաջ, սուր յաջում և ոստ ձիթենւոյ ՚ի միւսում ձեռին մատչիմք առ քեզ ։ (Զի այնպէս իսկ մատչէին) ։ Ահա սուր, ահա խաղաղութիւն. ընտրեա զոր կամիս. այլ մեզ ցանկալի է խաղաղութիւն, և յայն սակս իսկ ոչ ամօթ համարեցաք թողուլ

ձեզ զցանկալի վայրս մեր ծովեզերեայս՝ ուր արեգակն արգաւանդ գործէ զերկիր, պտուղս ընտիր ընտիրս արդիւնաւորեալ։ Քաղցր է մեզ խաղաղութիւն քան զամենայն բերս երկրի. վասն այնորիկ տեղի տուաք 'ի լերինս բարձրաբերձս յարածածուկս 'ի ձեանց և 'ի սառամանեաց, ուր ոչ գոյ տեսանել զգեղ գարնայնոյ, և ոչ զաշնայնոյն մրգաց լիութիւն։ Պարշիմք 'ի գազանութենէ անտի, որ ընդ գեղեցիկ անուամբ իշխանութեան և փառաց՝ յարձակի հինաբար ապականել զգաւառս, և հեղուլ զարիւն մարդկան՝ որ միմեանց եղբարք են առ հասարակ։ Եթէ զհետ անտի փառաց զակատեալ իցես, չնախանձիմք ընդ քեզ. այլ ողբամք զքեզ, և աղօթեմք առ դիս պահել զմեզ 'ի հանգոյն մոլեգնութենէ։ Եթէ դպրութիւնք՝ զորս ջանին մեծաւ ուսանին Հելլէնք, և քաղաքականութիւն՝ յոր պանծան, ոչ այլ ինչ 'ի նոսա ազդիցեն՝ բայց զանիրաւութիւնդ զայդ դժնդակ, երանի՛ մեզ զի գտանիմք զերծք յայդցանէ։ Պարծանս համարիմք մեզ տգէտք գոլ և անյոյնք, բայց արդարք մարդասէրք հաւատարիմք, անփոյթք շահուց, գոհք սակաւուք, և արհամարհողք անտի փափկութեանց՝ որ կարօտս առաւելագունից կացուցանեն զմարդիկ։ Մեծարոյք են առ մեզ առողջութիւն, սակաւապիտութիւն, ազատութիւն, կորով մարմնոյ և մտաց, երկիւղածութիւն 'ի դիս, բարք ընկերասէրք, մտերմութիւն ընդ բարեկամս,

հաւատարմութիւն ընդ ամենեսին, զգաստութիւն 'ի յաջողուածս, արիութիւն 'ի ձախողակս, խրախոյս 'ի բարբառել համարձակ զճշմարտութիւն, և սոսկումն 'ի մարդահաճութենէ ։ Այսպիսիք են քո ազգք սահմանակիցք և դաշնաւորք ։ Այլ 'ի ցասմանէ դիցն կուրացեալ՝ մերժեցեր զխաղաղութիւն, ուսցիս անագան զի որ հեզագոյնքն են 'ի խաղաղութեան՝ ահարկուք ևս գտանին 'ի պատերազմի ։

Այլ 'ի բարբառել ծերունեացն առ իս՝ պշուցեալ հայէի 'ի դէմս նոցա անյագ ։ Արկայնամորուսք նոցա անյարդար, հերք կարճագոյնք ալեւրեալք, յօնք թաւք, աչք փայլունք, հայեցուած և կերպարան անյողդողդ, զրոյց զգօն և մեծասաստ, և ձեռք պարզք և անպաճոյճք ։ Հանդերձք նոցա մաշկեղէնք, կօշկեալք զուսով, հողանի թողուլին զաջ նոցա ջլուտ և աճառուտ քան զմերոցս ըմբշաց։ Պատասխանի ետու նոցա, ընտրեալ զխաղաղութիւն. և կռեցաք դաշինս ընդ միմեանս անկեղծ, երդուեալ 'ի դիս առ հասարակ. և արձակեցի զարսն հանդերձ պարգևօք. բայց դիք, որ տարագիր կացուցին զիս 'ի թագաւորութենէ հարցն իմոց, չև ևս դադարէին 'ի հալածելոյ զիս ։ Արտորդք մեր, որոց ոչ էր մարթ գիտել անդէն զուխտ հաստատութեանն՝ զոր արարաք, պատահեցին նոյնօրին բազմութեան բարբարոսացն՝ որ դառնային ընդ պատգամաւորս 'ի բանակէ մերմէ. և 'ի վերայ յարձակեալ զայրագին՝ զկէսս

'ի նոցանէ սպանելն, զայլս փախստական վարեցին յանտառս: Բստի ահա դողդեցաւ պատերազմն. և եղեն խուժադուժքն 'ի մտի՝ թէ չէք այլ ևս վստահել 'ի խոստմունս մեր, և ոչ յերդմունս:

Այս առ 'ի յաւելուլ 'ի զօրութիւն, միաբանեցին ընդ իւրեանս զՕկրեցիս [2] զապուլեցիս [3] զլուկանացիս [4] զբրուտացիս [5] զկրոտոնացիս [6] զներիտացիս [7] զմեսապացիս [8] և զբրունդուսեցիս [9]: Լուկանացիք հասեալ գան գերանդաւորէն կառօք. ապուլեցիք լախտ 'ի ձեռին ոստախիտ և երկաթասայր, առն իւրաքանչիւր ստանձնեալ զկողոպուտ գազանի սատակելոյ յիւրմէ. հսկայաձևք են, և մարմինք նոցա հուժկուք 'ի տաժանաւոր կրթութեանց՝ յոր պարապեն՝ ահ արկանեն տեսողաց: Լոկրեցիք գաղթականք Յունաց զմայրաքաղաքին իւրեանց բերեն տակաւին 'ի դէմս զտիպ, և մարդասիրագոյնք են քան զայլս. բայց ընդ խիստ հրահանգս յունական զօրաց բերեն զկորով խուժադուժ և զխստամբեր կեանս, որովք են անպարտելիք: Ապահանս կրեն թեթևս որորահիւսս մաշկապատս, և սուսերս երկայնս: Բրուտացիք հանգոյն եղջերուաց և այծեմանց են թեթևընթացք. գոգցես խոտն առանց կքելոյ զդեղ դալար ընդ գարշապարօք, և հազիւ հետս 'ի փոշւոջ թողեալ, յական թօթափել խոյանան 'ի վերայ թշնամեաց, և հանգիստարագ 'ի բաց սրանան: Կրոտոնացիք քաջաղեղունք, զորոց զլայնալիճս սակաւք 'ի Հելլենաց ձգել կարեն զաղե

ըմպանս. և եթէ տացի նոցա մուտ ’ի հանդէս մերոցս մրցանաց, տարցին անշուշտ զմրցանակն: Նետք նոցա մխեալ են ’ի հիւթ բուսոց թունաւորաց, զորոց յաւեռնեան [10] ափունս ասեն բուսանել, մահաբեր թունից ’ի նոսա ներգոյացեալ: Իսկ ներիտացիք մեսապացիք և բրունդուսեցիք կորովիք մարմնով և անարուեստ քաջութեան վիճակեալք. շռինդն աղաղակի նոցա, մինչև յանկս հնչեցեալ ’ի տեսիլ թշնամեաց, արհաւիրս գործէն: Պարսաւորք քաջաձիգք՝ որք ստուերացուցանեն զերկին ’ի տարափս քարանց, այլ խառն ’ի խուռն մղեն մարտ: Հաւասիկ քեզ, Մենտոր, որ ինչ հարցանէիրն. ծանեար արդ ուստի պատերազմն գրգռեալ, և ո՛յք ոմանք իցեն թշնամիք մեր:

Իբրև զայս ամենայն լուաւ Տելեմաք, ոչ ևս ժոյժ ունելով փութայր ’ի զէն. բայց Մենտորի հանդարտեցուցեալ զնա, ասէ ցԻդոմենէս. Զի՞ ապա և լոկրեցիք, եկք ’ի յունաստանէ, գումարեն ընդ խումբս ընդդէմ Յունաց. և ընդէ՞ր այդչափ այլ ևս զաղթականք Սպարտայ բարգաւաճեալք ’ի ծովեզերսդ ոչ զնոյն կրեն պատերազմ: Չև ևս դադարեալ ասես դից, ո՛վ Իդոմենէս, ’ի հալածելոյ զքեզ. այլ ես ասեմ, չև կարացեալ նոցա խորտակել զքեզ. չև է քո ուսեալ ’ի չարեացդ կրելոց՝ ի՞ւ պարտ իցէ զառաջս ունել զպատերազմաց: Որ ինչ դու քեզէն զբարբարոսացդ պատմեցեր զպարզմտութենէ՝ շատ իսկ է ’ի ցոյց, զի

մարթէր քեզ կեալ ընդ նոսա խաղաղութեամբ. այլ գոռոզութիւն և ամբարտաւանութիւն զնասակարագոյնս 'ի վերայ ածեն պատերազմունս: Մարթ էր քեզ տալ նոցա և առնուլ 'ի նոցանէ պատանդս. դիւրին իսկ էր յուղարկաւորս ընդ հրեշտակսն արձակել զոմանս 'ի զօրականնէդ յապահովութիւն: Նա և յետ մարտին իսկ վերստին գրգռելոյ՝ պարտ էր քեզ աղերսել զնոսա 'ի խաղաղութիւն, ցուցանելով զյարձակելոցն անգիտութիւն ուխտի դաշանցն. պարտ էր մատուցանել նոցա զամենայն երաշխաւորութիւն ըստ կամաց նոցա, և սահմանել պատուհաս դրժողաց ուխտին: Այլ զի՞նչ ապա 'ի գրգռել մարտին պատահեաց:

Պատասխանի ետ Իդոմենէս. Ամօթ համարեցայ յաղերս խոնարհել բարբարոսաց: Նոքա ձեպ 'ի ձեպոյ ժողովեալ զամենայն հասակն կարող 'ի զինուորութիւն, խնդրեցին նպաստ 'ի կռիւ յամենայն ազգաց շուրջ բնակելոց՝ կասկածաւորս նոցա և ատելիս կացուցեալ զմեզ: Յապահովագոյն թուեցաւ ինձ յայնժամ փութալ առնուլ զկիրճս լերանցամէջս ամայիս 'ի պահապանաց. կալաք զայնոսիկ անաշխատ, և մարթէր մեզ անտի զխուժադուժսն 'ի նեղ արկանել: Ետու կանգնել անդ աշտարակս, առ 'ի նետաձիգ լինել 'ի թշնամիս՝ որ 'ի լերանց անտի յերկիր մեր յարձակիցին, և մեք կարասցուք, երբ և կամք իցեն, դիմել յերկիր նոցա և աւերել զամուրս նոցա.

Ըստ այսմ օրինակի հնար է մեզ սակաւաձեռն
զօրօք զգէմ ունել զանթիւ բազմութեան թըշ֊
նամեաց, որ շուրջ կան զմեօք. զի դժուարին է
մեզ յոյժ այսուհետև խօսել ընդ նոսա 'ի խաղա֊
ղութիւն. եթէ թողցուք 'ի նոսա զաշտարակս,
ասպատակեսցեն զմեզ անտի. քանզի համարին
զայնոսիկ ողեակս կանգնեալ 'ի մէնջ առ 'ի նուա֊
ճել զնոսա:

Արկնեալ անդրէն Մենտորի ասէ. Ըմբայդ֊
իմաստուն, որ ախորժես լսել համարձակ զճըշ֊
մարտութիւն, և չես դու 'ի վաշտաց անտի՝ որ
զանգիտեն 'ի լրոյ նորա, որոց չիք արիութիւն
ուղղելոյ զանձինս, և զիշխանութիւն իւրեանց 'ի
պաշտպարան թերութեանց և եթ իւրեանց 'ի
կիր արկանեն, գիտասջիր զի խուժադուժքն այ֊
նոքիկ զարմանահրաշ տուեալ են քեզ խրատ զա֊
լով յաղերս հաշտութեան: Մինթէ առ տկա֊
րութեա՞ն ինչ աղերսէին, կամ պակասէ՞ր նոցա
քաջութիւն և զօրաւիգն. նա աւանիկ ազգ պա֊
տերազմող, և զամենայն ազգս սահմանակիցս ու֊
նի իւր 'ի թիկունս օգնականութեան: Իսկ ընդէ՞ր
խաղաղասիրութեան նորա չիցես նմանող. ամօթ
տարապարտ և ճախողակի փառասիրութիւն ար֊
կին զքեզ յայս աղէտս չարեաց: Իբր ահի պատ֊
ճառս տալոյ դաւողութեան թշնամւոյն՝ հզօրա֊
ցուցեր զնա, յարուցանելով ընդ նմա 'ի վերայ
քո զազգս բազումս խիզախս և անիրաւ գնացիւք:
Ո՜ ինչ օգնեն քեզ աշտարակքդ՝ յորս պանծաս,

բայց 'ի բռնադատել զազգս սահմանակիցս 'ի կործանել կամ 'ի կորուսանել զքեզ՝ առ 'ի զերծանել 'ի մօտալուտ ծառայութենէ : Յամրութիւն քո կառուցեր զաշտարակսդ, և դժնդակագոյն ամենն դոքա քեզ վտանգ. ապահովագոյն ամրոց պետութեան է արդարութիւն, խաղաղասիրութիւն, հաւատարմութիւն, և վստահութիւն սահմանակից ազգաց չյափշտակելոյ նոցա զերկիր իւրեանց : Պարիսպք հաստակառոյցք 'ի յեղակարծ պատահարաց կործանին անկանին. յողդողդ և յեղյեղուկ է բախտ 'ի պատերազմի, այլ սէր և վստահութիւն դրացեաց քոց ընդ խաղաղասիրութիւն քո՝ անյաղթելի զքեզ կացուցանեն, և ոչ ոք յարձակեսցի 'ի սահմանս քո : Իսկ եթէ երբէք անիրաւ ոք 'ի սահմանակցաց իշխեսցէ յարձակել, այլք առ հասարակ նախանձաւորք 'ի պահպանութիւն նորա՝ զէն առցեն անդէն մարտնչել փոխանակ նորա: Պատսպարան այդքանեաց ազգաց, որոց հարկ էր առ 'ի շահ իւրեանց զքոյդ պաշտպանել, հզօրագոյն զքեզ կացուցանէին քան զաշտարակսդ՝ որք անհրաժեշտ ամենն 'ի վերայ քո չարիս : Եթէ զգուշացեալ էր քո յառաջագոյն 'ի նախանձաւորութենէ ազգաց շուրջանակի, բարգաւաճէր դաստակերտ քոյին 'ի խաղաղութեան, և իրաւարար իւրեանց կացուցանէին զքեզ ազգք Եսպերիոնեայք :

Խորհեսցուք արդ 'ի հնարս, թէ որպէս զառաջիկայից չարեաց մարթ իցէ մեզ առնուլ զա-

ռաջս։ Պաղթականաց բազմաց Նիկողայ'' ասացեր բնակել զծովեզերբքս։ Յօժարք արդեօք իցեն դոքա հասանել քեզ յօգնութիւն. չիցէ դոցա մոռացեալ, ոչ զմեծանունն Մինովս որդի Արամազդայ, և ոչ զնահատակութիւնս քո 'ի տրովականն պատերազմին՝ ուր 'ի դէպս բազում հանդիսացար ընդ Իշխանս Յունաց վերամարտիկ լեալ 'ի վերայ Նիկողայ առ հասարակ։ Նա ընդէր ոչ փութաս միաբանել զդոսա ընդ քեզ։

Իդոմենեւս ասէ. Ի մտի եդեալ է նոցա և ոչ միում յերկոցունց կողմանց լինել ձեռնտու. իբր ոչ եթէ չիցեն յօժար ձեռն տալ ինձ, այլ անդրատին 'ի սկզբանէ կարի իմն պայծառութիւն քաղաքիս երկեցոյց զնոսա։ Ոչ միայն Յոյնք, այլ և այլք յազգաց առ հասարակ կասկածեցին՝ թէ գուցէ հակառակ ինչ ազատութեան իւրեանց մտաբերիցեմք, յետ նուաճելոյ զխուժս լեռնաբնակս՝ անդր ևս ձգտեալ զփառասիրութիւն աշխարհակալութեան։ Առանց յերկարելոյ իսկ ասացից, ամենեքին հակառակ են մեզ. որք ոչն իսկ յայտնի տան ընդ մեզ պատերազմ, պարտութեան մերում ցանկան. և նախանձընդդէմ հակառակութիւն բառնայ 'ի մէնջ զամենայն նիզակակցութիւն։

Մենտոր ասէ. Ծայրայեղ մոլորութիւն, կործանես զզօրութիւն քոյին՝ առ 'ի հզօրագոյն երեւել. ահարկու գոլով և ատելի սահմանակցաց քոց արտաքոյ, սպառես 'ի ներքս զզօրութիւն քո՝ զա-

մենայն ձիգն գործեալ 'ի ժուժկալութիւն մեծի
պատերազմիդ։ Ո՛վ հէք և թշուառ Իդոմենեւս,
զոր աղէտք իսկ չկարացին լռով խրատել. պա՛րտ
իցէ ինչ քեզ դարձեալ վերստին կործան անկա-
նել առ 'ի խրատ զգուշութեան 'ի չարեաց, որ
սպառնան արքայից հզօրաց։ Թո՛ղ ինձ զհոգդ
զայդ, և դու ասա ինձ ստուգութեամբ՝ ո՛ր այն
քաղաքք իցեն Հելլենաց որք ոչ յանձն առնուն
նիզակակից լինել քեզ։
Իդոմենեւս ասէ. Նախկին Տարենտոն, զոր
Փաղաս յառաջ քան զամս երիս կառոյց։ Ժո-
ղովեաց նա 'ի Լակոնիա[12] մանկտի բազում ծնեալ
'ի կանանւոյ, որոց մոռացեալ էր զարս իւրեանց
երթեալս 'ի պատերազմն Տրովադայ. որք 'ի
դառնալ արանցն՝ խորհեցան ցածուցանել զըմբրտ-
մութիւն նոցա, ուրանալով զորդիսն։ Բազմու-
թիւն մանկտւոյն անհայր և անմայր, գողունի
հարսանեաց ծնունդ, կեայր ապերասան. և խըս-
տութիւն օրինաց սանձահարեաց զհամարձակու-
թիւն նոցա։ Յարեցան նոքա 'ի Փաղաս, այր
յանդուգն անվեհեր և փառամոլ, որ գիտաց
հնարիւք յինքն զնոսա յանկուցանել. և եկն 'ի
ծովեզր այսր ընդ մանկտին լակոնացի, և կա-
ռուցին զՏարենտոն երկրորդ Լակեդեմոն։ Բաժ-
լուր և Փիլոկտետ, որ զայնպիսի փառան 'ի տրո-
վական մարտին ստացեալ էր զհերակլեան նետան
անդր ածելով, կանգնեաց ոչ կարի հեռի զպա-
րիսպս Պետիլեայ[13]. որ թէպէտ և ոչ հզօր իբրև

զՏարենտ, այլ իմաստնագոյն ևս վարս տեսչութեամբ: Մերձ առ մեզ բնակէ և Մետապոնտ [14], զոր հանճարեղն կառոյց Նեստոր [15] ընդ պիղոսացիս:

Մենտոր ասէ. Այո՛ որպէս, Նեստոր առ քև Արեկոմնեայս, և դու չզգուշացեր միաբանել զնա ընդ քեզ. զՆեստոր՝ որ 'ի նուագս բազումս ետես զքեզ նահատակեալ ընդդէմ տրովացւոց, և որ բարեկամն էր քեզ: Իդոմենէս ասէ. Կորուսի զբարեկամութիւն նորա խորամանկութեամբ ազգացս, որ անուամբ ևեթ են խուժադուժք. Ճարտար հնարիւք պատրեցին զնա, իբր թէ բռնակալել կամիցիմ զԱրեկոմնեայս համօրէն: Մենտոր ասէ. Լուծցուք մեք զպատրանս նորա. ետես զնա Տելեմաք 'ի Պիլոս նախ քան զգաղթել նորա, մինչ չև զերկայն ուղևորութիւնս զայս արարեալ 'ի խնդիր Ոդիսեայ: Չև իցէ նորա մոռացեալ զՈդիսևս, և ոչ զգութ սիրոյն ընդ որդի նորա Տելեմաք: Բայց գործ է փարատել 'ի մտաց նորա զկասկած. զի 'ի կասկածանաց այտի ազգացդ, որ շուրջ բնակեն զքև, խանձեալ է պատերազմդ. և ոչ է մարթ շիջուցանել զդա, բայց զձախողակի կարծիսն փարատելով: Դարձեալ ասեմ, թող ինձ զհոգդ զայդ:

Յայնժամ Իդոմենէս գիրկս արկեալ Մենտորի, առ փղձուկ սրտին չկարէր բարբառել. և ապա ուր ուրեմն ասէ. Ով զերահանճար ծերունիդ, զոր առաքեցին դիք ուղղել զսխալանս իմ. ապա-

քէն չնորհէր ումեք զհամարձակախօսութիւնդ զայդ, և չէր մարթ այլում ումեք խոնարհեցուցանել զիս յաղերս խաղաղութեան. 'ի մտի եդեալ էր իմ կորնչել և կամ յաղթել ամենայն թըշնամեաց իմոց, այլ արժան իսկ է իմաստուն խրատուց քոց անսալ, և մի իմոցս կրից: Երանի՜ քեզ Տելեմաքէ, զի ոչ լիցի քեզ զառածանել իբրև զիս 'ի մոլորութիւն՝ այսպիսի ունելով քեզ առաջնորդ: Ի քեզ, Մենտոր, զամենայն ինչ առնեմ ապաստան. 'ի քեզ ամենայն իմաստութիւն դից գանձեալ կայ. չմարթէր Աթենասայ իսկ օգտակարագոյն քան զայս տալ խորհուրդ: Երթ, տո՛ւր խոստումն, դի՛ր դաշն, անօրինեաջի՛ր զամենայն որ ինչ իմ է. հաճոյ է Իդոմենեայ որ ինչ քեզ թուիցի պատշաճ:

Եւ մինչ դեռ զայս խօսէր, ահա յանկարծ լսելի եղեն շառաչիւն կառաց, խրխնջիւն երիվարաց, գոչիւն ահեղ մարտամբոխ որերոյ, և հնչիւն փողոց պատերազմականաց՝ որ զօդս դղրդեդէին: Եւ ամբոխն աղաղակէր. Ահա թշնամիք, շրջան առեալ 'ի բացէ զպահակօք, գան պաշարել զՍալենտոն: Ծերք և տղայք ահաբեկեալ գոչէին. Վա՜յ, ընդէ՞ր զցանկալի հայրենիս մեր թողաք զպտղաւէտն Կրետէ, և զհետ եկաք չարաբաստիկ արքային ընդ անդունդս ծովու, կանգնել քաղաք՝ որ արդ յաճիւն դառեսցի հանգոյն Տրովադայ: Ի բարձանց նորակերտ պարսպացն տեսանէին 'ի լայնածաւալ դաշտին զշողալ սպա-

ռազինութեանցն, որ ակնախտիղ 'ի ցոլացմանէ ճառագայթից արեգական փայլէին սաղաւարտք և վահանք և ասպարք թշնամեաց: Ծածկէր երկիրն 'ի նիզակախուռն բազմութենէ, որպէս եննական[16] արտորայք 'ի բազմախուռն հնձոց՝ զորս պատրաստէ Դեմետրէ 'ի տօթակէզ ամարայնի 'ի Սիկիլիա փոխարէն վաստակոց մշակին: Սաղ իսկ երևէին կառք գերանդազէնք, և դիւրաւ էր ճանաչել զազգ իւրաքանչիւր գումարեալ 'ի պատերազմն:

Եւ Մենտոր բարձր 'ի կատար աշտարակի միոջ առ 'ի դիտել, և Իդոմենէս և Տելեմաք ելին զհետ նորա: Անտի հայեցեալ ետես յայսկոյս զՓիլոկտետ և յայն կոյս զՆեստոր ընդ որդւոյ իւրում Պիսիստրատայ. քանզի դիւրածանօթ էր Նեստոր պատկառելի ալեօքն, և գոչեաց Մենտոր. Դու կարծէիր, ո Իդոմենէս, զի Փիլոկտետ և Նեստոր չլինէին եւեթ նպաստ քեզ 'ի կռիւ. ահա զէն առեալ գան և նոքա ընդդէմ.քո, և եթէ ոչ խաբիմ, սպարտացիք են՝ որ գեղեցիկ կարգաւ և յուշիկ այլ գունդքդ յառաջ խաղան. որոց Փալաս առաջնորդէ: Ամենեքին առ հասարակ գումարեալ են 'ի վերայ քո. չիք ոք յազգաց բնակելոց զծովեզերբքդ՝ զոր չիցէ քո գրգռեալ 'ի թշնամութիւն, թէպէտ և ակամայ:

Եւ զոյգ ընդ բանիցն էջ Մենտոր շտապաւ յաշտարակէ անտի, դիմեաց 'ի դուռն քաղաքին՝ ընդ որ յառաջ գային թշնամիք, և հրամայեաց

բանալ զայն ։ Իսկ Իդոմենեայ պակուցեալ ընդ սաստն իշխանակերպ , չիշխէր և ոչ իսկ հարցանել զխորհուրդս նորա ։ Այլ արգել Մենտոր նշանացի մի ումեք գալ զհետ իւր . և խաղաց գնաց ընդդէմ թշնամեաց , որք հիացեալ կային՝ տեսանելով զնոս միայնակ յառաջամատոյց ։ Ամբարձ ուղէշ ձիթենւոյ 'ի նշան խաղաղութեան . և իբրև մօտ եհաս՝ ուստի լսելի լինէր բարբառ նորա , խնդրեաց 'ի մի վայր ժողովել զօրագլխաց առ հասարակ ։ Այլ 'ի համախմբել նոցա , խօսեցաւ և ասէ .

Ով քաջազունք , զորս գումարեալ տեսանեմ յազգաց բարգաւաճելոց 'ի բարեբաստ երկրի աստ Արեկորնեայց . գիտեմ զի վասն հասարակաց ազատութեան եկեալ էք , և գովեմ զնախանձ ձեր . այլ եթէ ներէք , ցուցից ձեզ դիւրագոյն ևս հնարս ազատութեան և փառաց ազգացդ առ հասարակ առանց հեղման արեան ։ Հանճարեղդ Նեստոր , զոր տեսանեմս 'ի ժողովի աստ , չես ինչ անտեղեակ քանի աղէտս ածեն պատերազմունք՝ որոց արդարութեամբ իսկ զէն առնուն , դիցն պաշտպանեալք օգնականութեամբ ։ Քան զամենայն պատուհաս , որովք աստուածասաստ բարկութիւն հարկանէ զերկիր , մեծագոյն է պատերազմ ։ Յիշիցես քաջ որ ինչ Յոյնք զամս տասն կրեցին առ պարսպօք հիքլին Տրովադայ . քանի հերձուածք 'ի զօրավարս , որպիսի յեղափոխութիւնք բախտի , քանի նախճիրք անդամոր յու-

նական արեան 'ի Հեկտորէ գործեալ. և յամենայն իսկ 'ի քաղաքս հզօրս որ աղէտք ոչ գործեցան 'ի բազմամեայ արշաւանս Թագաւորաց ։ Այլ 'ի դառնալ իսկ նոցա կէսք առ հրուանդանաւն Կափարեայ [17] նաւաբեկեալ, այլք չարաչար ևս մահու 'ի գիրկս հայրենեացն կորեան ։ Ո՛վ դիք, սրտմտութիւն ձեր զինեաց ուրեմն զՅոյնս 'ի գերապանծ պատերազմն ։ Ոգջք երեկոյնեայ, մաղթեմ 'ի դից՝ չտալ ձեզ երբէք յաղթութիւն այնպիսի աղէտաւոր ։ Նձինացաւ այս Տրովադա. այլ յաւ ևս էր Յունաց եթէ տակաւին կայր նա 'ի փառս իւր, և վաշուէրն Պարիս վայելէր 'ի չարաշուք հարսանիւն Հեղինեայ ։ Այլ դու Փիլոկտետ, որ այդչափ ամս թշուառութեամբ քեալ կայիր 'ի Լեմնոս [18], չերկնչիս նոցին վշտաց դարձեալ համոզիլ 'ի համգունաստիպ պատերազմի ։ Ապաքէն և ազգք Լակոնացիք զչափ առին զչարեաց բազմամեայ հեռաւորութեան իշխանաց իւրեանց և զօրավարաց երթելոց ընդդէմ Տրովադայ ։ Այլ դուք՝ որք յԱրեկոնեայս անցիք՝ ազգք Յունաց, ոչ ապաքէն յաղետից տրովադական մարտի վարեցայք այսր վտարանդի ։

Զայսոսիկ Մենտորի բարբառեալ, 'ի Պիղոսացիս անդր յառաջ մատչէր. և Նեստորի ծանուցեալ զնա, մատեաւ առ նա յողջոյն, և ասէ. Խնդութիւն է ինձ, Մենտոր, տեսանել զքեզ նախ 'ի Փոկիս [19], մինչդեռ մանուկն էիր հնգետասանամեայ, և անդստին իսկ ծանեայ զհանդերձեալ իմաստութիւն քո՝ որում հասեր ։ Նայլ

զի՞նչ դէպք 'ի կողմանս յայսոսիկ ածին զքեզ, և ընդէ՞ր հնարս խորհիս զրաւ առնելոյ մարտիս: Իդոմենեւս հարկեցոյց զմեզ 'ի զէն. մեզ խաղաղութիւն էր ցանկալի, և իւրաքանչիւր ումեք 'ի մէնջ շահ մեծ էր ցանկալ խաղաղութեան. այլ ոչ ես մարթ էր մեզ վստահել 'ի նա, զի ուխտազանց գտաւ առ մերձաւորագոյնս 'ի սահմանակցաց իւրոց: Ուխտ հաշտութեան ոչ ես օգնէ 'ի խաղաղութիւն, այլ 'ի զօրաւիգն նմա առ 'ի քակտել զնիզակակցութիւն մեր՝ որ միայն է մեզ ապաւէն: Յայտնի արար նա ամենայն ազգաց զփառամոլ խորհուրդ իւր նուաճելոյ զնոսա 'ի ծառայութիւն, և չթողաց մեզ այլ հնար պահ ունելոյ ազատութեանս մերում, բայց միայն կործանել զնորաստունկ թագաւորութիւն նորա: Անհաստատութիւն նորա հարկ առնէ մեզ կործանել զնա, և կամ յանձն առնուլ զլուծ նորա: Եթէ կարիցես վստահ առնել զմեզ 'ի նա, և անկասկած 'ի խաղաղութիւն, ազնիւք առ հասարակ՝ զորս տեսանես աստ՝ լիցուք կամակար զէնընկեցք, և մտադիւր զպարտութիւն յանձն առցուք յիմաստութենէ քումմէ:

Պատասխանի ետ Մենտոր, և ասէ. Ոչ ինչ զանխուլ է 'ի քէն, հանճարեղդ Նեստոր, զի յիս Ոդիսեւս յանձն արար զորդի իւր զՏելեմաք: Պատանին անձկաւէտ 'ի խնդիր հօր իւրոյ՝ անց առ քեզ 'ի Պիլոս, և հիւրընկալար դու զնա ամենայն խնամօք՝ որոց մարթէր նմա ակն ունել 'ի հաւատարիմ բարեկամէ հօր իւրոյ, և զորդի իսկ

քոյին յուղարկ առձակեցեր ընդ նմա ։ Երար նա այս բազում երկայն ուղեգնացութիւնս ընդ ծով, եւտես զՍիկիլիա, զԵգիպտոս, զԿիպրոս և զԿրետէ. և 'ի կամել նորա դառնալ յԻթակէ՝ արկին զնա հողմք, մանաւանդ թէ դիք, 'ի ծով-եզերս յայսոսիկ. և 'ի դէպ ժամանակի հասաք այսր, զերծուցանել զքեզ յարհաւրաց ահագին մարտիդ ։ Ոչ ես Իդոմենէս, այլ իմաստնոյն Ոդի-սեայ որդի և ես երաշխաւոր եմք ուխտին դաշանց ։

Եւ 'ի խօսել Մենտորի ընդ նմա շուրջ պա-տեալ 'ի զօրաց ազգացն դաշնակցելոց, Իդոմենէս և Տելեմաք ընդ կրետացիսն առ հասարակ զօրս սպառազէնս 'ի գնէին կային 'ի բարձանց պարսպացն Սալենտեայ՝ դիտելով զելս բանիցն Մենտորի, և ըղձանային լսել զհանճարեղ զրուցատրութիւն երկոցունց ծերունեացն ։ Քանզի Նեստոր մեծա-րէր քան զամենայն Թագաւորս Ելլադայ հըմ-տութեամբ և ճարտարխօսութեամբ. նա էր՝ որ 'ի պատերազմին Տրովադայ զհրաբորբոք սրտմտու-թիւն Աքիլլեայ, զգոռոզութիւն Ագամեմնոնեայ[20], զվայրագութիւն Այիասայ[21], և զյանդուգն խրա-խոյս Դիոմեդեայ ողոքէր ։ Որպէս զմեղր 'ի շըր-թանց նորա կաթէր քաղցր յորդորակ. նորին և եթ բարբառ լսելի դիւցազանցն բոլորեցունց, ամենեքին լռէին 'ի բանալ նորա զբերան իւր, և նա միայն ցածուցանել կարող էր 'ի բանակի անդ զհեռ անհամբոյր ։ Երկանք ցրտագին ծերու-թեան սկսանէին ազդել 'ի նա, այլ զրոյցք նորա

էին տակաւին հզօրք և անուշակք. Ճառ. արկեալ
զանցից անցելոց, խրատէր զմանկտին փորձովք խու-
րովք. յուշիկ պատմէր, այլ բարեքիկ: Սակայն
ծերունին այն, զարմանալի ընդ ամենայն Ելլա-
դա, թուէր թափուր յամենայն պերճախօսու-
թենէ իւրմէ և 'ի փառաց առաջի Մ՝ենտորի:
Ծերութիւն նորա երևէր նկուն և թառամ ա-
ռաջի ալեաց Մ՝ենտորի, յորում ամք խնայեալ
էին 'ի զօրութիւն պնդակազմ բնութեանն:
Ոսկերք Մ՝ենտորի, թէպէտ և հանդարտք և
պարզք, բայց հզօրք էին և մեծաստատք. իսկ
Նեստորին նուազեալք 'ի զօրութենէ: Բանք նո-
րա հակիրճ ճիւղ և կոճղի. ոչ երբէք երկրոր-
դէր զբանս, և ոչ պատմէր ինչ բաց 'ի կարևորաց առ
խնդիրն առաջարկեալ: Եթէ հարկ էր զնովին
բանիւք գալ առ 'ի տպաւորել զայն 'ի միտս ու-
նկնդրաց և առ 'ի համոզել զնոսա, նորանոր դար-
ձուածովք բանից և այլասացութեամբք զնոյնս
յեղյեղէր. և ախորժելի իմն և զուարթ ըստ այ-
տոյից լսելեաց, ուր ուրեք կամէրն, զբանսն յօրի-
նէր: Երկոքին նոքա առք աւագամեծարք թառ
խանդաղատելի առաջի բազմութեան ազգացն ժողո-
վելոց կացուցանէին: Եւ մինչդեռ նիզակակիցքն
առ հասարակ ընդդէմ Սալենտեայ գումարեալ
ազգք այր զարամբ եղանէին՝ 'ի տեսիլ նոցա, և ջա-
նային իմն լսել զհանճարեղ բանս նոցա, Իդոմենէս
հանդերձ իւրովքն հնարէր դիտել անձկայր գու-
շակել 'ի ձևոց նոցա և 'ի կերպարանաց զելս իրացն:

## ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ

### ՏԱՍՆԵՐՈՐԴԻ ԳՐՈՑՆ

1 Մանֆրէտօնիա ժողովուրդ Ապուլիոյ 'ի Նէապօլիս. որոյ վայր բնակութեանն կոչի արդ Գարգանօ կամ Անճէլօ:

2 Լուչերիա գաղթականք 'ի Փոկկիս գաւառէ յունաստանի, բնակեալք 'ի Կալաբրիա Նէապօլսոյ:

3 Ապուլիա մասն թագաւորութեան Նէապօլսոյ, որ արդ կոչի Փուլիա:

4 Լուկանիա գաւառ 'ի Նէապօլիս:

5 Բրուտտիա, ազգ Իտալիոյ, բնակեալք 'ի ցամաք կղզին Կալաբրիոյ՝ որ յայնկոյս. որ և կազմէ զծոցն կոչեցեալ արդ Կօլֆօ տի Ճիօյա:

6 Կրոտոն ծովեզերեայ քաղաք Կալաբրիոյ 'ի մուտս տարենտեան ծոցոյն:

7 Նէրիտոն, որ արդ կոչի Նարտօ, քաղաք փոքրիկ 'ի Նէապօլիս, յերկրին Օտրանդեայ:

8 Մէսսապիա, որ արդ կոչի Օտրանտօ, մասն Ապուլիոյ 'ի Նէապօլիս:

9 Բրընտուսիոն, որ արդ կոչի Բրինտիզի, քաղաք ծովեզերեայ 'ի Մեսապիա, անուանի քան զամենայն նաւահանգիստս Իտալիոյ:

10 Աւէռնոն և լիճ Աւեռնեայ յերկրին Նէապօլսոյ, որ ըստ քերթողաց է մի 'ի սանդարամետական լճաց:

11 Բազումք էին գաղթականք Եղլադայ բնակեալք յարևելեան ծովեզերս Իտալիոյ, որ կոչէր մեծ յունաստան. և գաղթականաց չէր ինչ կցորդութիւն ընդ մայրաքաղաքս՝ յորոց գաղթէին:

12 Լակոնիա գաւառ 'ի Պեղոպոննէս, որ արդ կոչի Ծակոնիա:

13 Պետիլիա քաղաք 'ի Կալաբրիա, որ արդ կոչի Փօլիքաստրօ:

14 Մետապոնտ քաղաք առ տարենտեան ծոցով:

15 Նեստոր որդի Նելէոսի, արքայ Պիլոսի, որ է Նաւարին քաղաք 'ի Մորէա. այր գերահռչակ վասն խոհականութեան իւրոյ և ճարտարխօսութեան, և վասն երկայնակեցութեանն զամս երեքարիւր:

16 Ենն քաղաք Սիկիլիոյ 'ի միջավայր կղզւոյն, որ արդ

կոչի Քամարօ Ճիօվաննի․ հռչակաւոր վասն որ անդ մեհենին Դեմետրեայ:

17 Կաթարինա արեւմտեան ծայր կղզւոյն Պելոպոնեսեայ, որ արդ կոչի Քաթօփինձէ՛րա, առ որով նաւակոծեցան Յոյնք 'ի դառնալն 'ի Տրովադայ:

18 Լէմնոս կղզի Յունաց յԵգէական ծովու, որ արդ կոչի Սթալիմենէ:

19 Փոկիս գաւառ Աքայիոյ 'ի յունաստան:

20 Ագամեմնոն որդի Ատրէոսի, արքայ արգիացւոց և Միկե-նաց, զօրավար բանակին Յունաց. որ յետ դառնալոյ փառօք 'ի տրովական մարտէն, սպանաւ 'ի տան յԵգիստեայ հոմա-նւոյ կնոջ իւրոյ Կլիտեմնեստրայ:

21 Էաս այր քաջ, որդի Ոյիլեայ արքային Լոկրեցւոց, որ տառապեցոյց զԿասանդրէ 'ի մեհենին Պաղլասայ յետ առման Տրովադայ. վասն որոյ ամպահարեալ պատուհասեցաւ: Այլ է սա 'ի տելամոնեանն Էասայ:



# ԱՐԿԱԾՔ ՏԵԼԵՄԱՔԱՅ



## ԳԻՐՔ ՄԵՏԱՍԱՆԵՐՈՐԴ

# ՆԱԽԱԴՐՈՒԹԻՒՆ

Տելեմաքայ տեսանելով զՄենտոր շուրջ պատեալ 'ի զօրապետաց նիզակակցելոց, ցանկայ գիտել որ ինչ անցք անցանէին անդ. տայ բանալ զդրունս Սալենտեայ, և երթայ առ Մենտոր: Երթ նորա օգնէ ընդունելի առնել նիզակակցաց զդաշինս խաղաղութեան, զորս Մենտոր 'ի գիմաց Իդոմենեայ առաջարկեալ էր նոցա: Մտանեն արքայք նիզակակիցք բարեկամաբար 'ի Սալենտա, և Իդոմենէս ընդունի զամենայն որ ինչ 'ի նոցանէ պայմանեալն էր. տան և առնուն պատանդս, և զոհս միաբան մատուցանեն ընդ քաղաքն և ընդ բանակն 'ի հաստատութիւն ուխտի դաշանցն:

# ԱՐԿԱԾՔ ՏԵԼԵՄԱՔԱՅ



## ԳԻՐՔ ՄԵՏԱՍԱՆԵՐՈՐԴ

Բայց Տելեմաք խօսեալ անժոյժ 'ի միջոյ ամբոխին, դիմեաց 'ի դուռն՝ ընդ որ Մենտորի ելեալն էր, և հրաման ետ սաստիւ բանալ զայն առաջի իւր։ Իսկ Իդոմենևս մինչդեռ կարծէրն զնա առ իւր, յապուշ հարաւ տեսանելով զնա 'ի բանակին՝ ահա հասեալ առ Ադրաստոս։ Ծանեաւ զնա Ադրաստոս, և ընթանայր ընդ առաջ նորա, բայց յուշիկ և ծանրաքայլ․ իսկ պատանին դիմեաց 'ի գիրկս նորա, և կախեալ զպարանոցէ նորա անբարբառ, ուր ուրեմն ապա գոչեաց․ Հայր իմ, զի ոչ ինչ խղճեմ հայրակոչ լինել քեզ․ աղէտք կորստեան հօրն իմոյ հարազատի, և հայրագութ բարերարութիւնք քո առ իս, արդեն յիս զորով որդիական։ Հայր իմ, սիրեցեալ հայր․ աչք իմ, որ տեսանեն զքեզ միւսանգամ, յանկարծ տեսանէին և զՈդիսեւս․ չիք ինչ յետ կորստեան նորա ինձ սփոփումն, բայց գտանել զնա 'ի քեզ։

Այլ կարաց Մենտոր անթաց աչօք լսել զբանս զայսոսիկ. և զպատանւոյն իսկ տեսանելով զարտասուս գեղայօրէն ընդ ծնօտսն ծաւալեալ, ցընծայր 'ի սրտէ: Վայելչութիւն դիմաց և քաղցրութիւն և անվեհեր արիութիւն անծանօթի պատանւոյն՝ որ դիմագրաւ ընդ գունդս թշնամեաց անդր հասանէր՝ ապշեցոյց զնիզակակիցսն առ հասարակ զօրս, և ասէին. Ո՞չ որդի է սա ծերունւոյն, որ եկն խօսել ընդ Մենտորի. ապաքէն զնոյն իմաստութիւն 'ի ներհական տիս է տեսանել, 'ի միումն նորափթիթ ծաղկեալ, 'ի միւսումն պտղալից հասունացեալ: Իսկ Մենտորի ուրախ լեալ 'ի տեսանել զգորով Մենտորի 'ի վերայ պատանւոյն, և զայն պատեհ առեալ, ասէ. Ահա որդի սիրելւոյն Յունաց առ հասարակ Ողիսեայ, և մտերմին քո ով գերահանձարդ Մենտոր. ահա զսա մատուցանեմ քեզ 'ի պատանդ. զպատուականագոյն առհաւատչեայ ուխտին Իդոմենեայ: Գիտես քաջ զի դժուարըմբեր է ինձ զհետ կորըստեան հօրն կորուսանել և զորդին, և 'ի տառապելոյն Պենելոպեայ կրել կշտամբանս 'ի զոհել զորդի նորա փառասիրութեան նորոյ արքային Սալենտեայ: Պատանդս այս ինքնամատոյց, զոր խաղաղասէր դիք առաքեցին ձեզ, ազգք և ազինք սատանօր հանախմբեալք, լիցի սկիզբն ուխտին անշարժ խաղաղութեան:

Իբրև ահա 'ի լուր բարբառոյ խաղաղութեան շշունջ խառնաձայն ընդ ռազմն բանակին ընթա-

նայր. զօրքն առ հասարակ յայլևայլ ազգաց ժո-ղովեալք մինչէին սովորութեամբ՝ դժկամա-կեալք ընդ յամել իւրեանց 'ի յարձակումն, և համարէին Մենտորի ոչ առ այլ ինչ ձգնել բա-նիւքն՝ բայց առ 'ի մեղկել զգայրոյթ իւրեանց, և զերծուցանել զորսն 'ի ձեռաց: Եւ մանաւանդ մանդուրացիք չհանդուրժէին, կարծելով միւսան-գամ փորձ փորձել Իդոմենեայ առ 'ի պատրանս. կարծէին սուտ զխօսս Մենտորի, երկուցեալք թէ գուցէ 'ի հանճարեղ բանից նորա հերձուած 'ի նիզակակիցսն անկանէր. և կասկածէին իսկ զՅունաց առ հասարակ, որք էին 'ի բանակին: Իսկ Մենտորի զգացեալ զայն, ջանայր յաճա-խել զկասկած նոցա՝ առ պատառակտել զազգսն 'ի միմեանց: Խօսեցաւ ընդ նոսա և ասէ.

Ապաքէն իրաւունք են մանդուրացւոց բողոք ունելոյ, և պահանջելոյ 'ի Յունաց զտուգանս անիրաւութեանցն՝ զորս կրեցին. այլ ոչ է ար-ժան զի և Յոյնք, որք հաստատած զծովեզերբս բնակեն, իցեն կասկածելիք և ատելիք նախնի բնակչաց երկրիս: Յունաց պարտ իսկ է միաբան ընդ իրեարս գոլ, զի ակնածելի լիցին այլոց. բայց զգոյշ լինել արժան է, և մի երբէք հասանել նոցա զվիճակ սահմանակցաց: Արդարև Իդոմե-նէս ձախողակի արկ 'ի ձեզ կասկած, այլ զիւրէն է փարատել զկասկածանսդ. ահա Տելեմաք և ես ինքնանուէրք 'ի պատանդ, առհաւատչեայ հա-ւատարմութեանն Իդոմենեայ կացցուք ընդ ձե-

ռամբ ձերով մինչև լցցէ նա զամենայն զխոստմունս իւր։ Եւ արդ ամբարձեալ Մենտորի զբազուկս իւր, յաւելու. Եւ որ առաւելագոյնս զարմացուցանէ զձեզ, արք մանդուրացիք, ոչ ապաքէն այն իսկ է զի դուռնք կրետացիք կալան նենգաւ զպահակս լերանց ձերոց, և կարեն անտի երբ և կամիցին յարձակել ուր դուքդ ամրացեալ էք՝ թողեալ ՚ի նոսա զդաշտավայրն ծովեզերեայ։ Պահակքդ, զորս կրետացիք ամրացուցին բարձրաբերձ աշտարակօք՝ լցեալ զինուս սպառազէն բազմութեամբ, դոքա ուրեմն իրաւացի պատճառք են պատերազմիդ. և իցէ՞ ինչ այլ, աղէ ասացէք։

Յայնժամ զօրավարն մանդուրացւոց յառաջ մատուցեալ, ասէ. Ո՜հ ինչ առնել էր մեզ, և ոչ արարաք առ ՚ի խափանել զպատերազմդ. վկայ են մեզ դիք զի ոչ երբէք հրաժարեցաք ՚ի խաղաղութենէ, բայց միայն յորժամ խաղաղութիւնն ինքնին խոյս ետ ՚ի միջոյ անդադար վասն անխաղաղասէր կրետացւոցդ փառամոլութեան, և վասն ոչ ևս կարել մեզ վստահել յերդմունս նոցա։ Ազգ յետսամիտ, որ բռնադատեաց ՚ի հարկ դժնդակ դիմելոյ ՚ի վերայ նորա ոգի ՚ի բուռն, ոչ այլազգ կարելով խնդրել զփրկութիւն մեր՝ բայց սպառսպուռ կորստեամբ նոցա։ Յորչափ կալցին դոքա զպահակսդ, լիցի միշտ վտանգ յարձակելոյ դոցա զերկիր մեր և ՚ի ծառայութիւն զմեզ նուաճելոյ։ Եթէ արդարև խաղաղութեամբ կամիցին դոքա կալ ընդ սահմանակիցս, շատ համարեսցին որ ինչ

կանոնկար թողաք դոցա . և ոչ մտաբերէին ունել զմտաւ սահմանաց մերոց, եթէ չէր նոցա խորհուրդ փառաւոր ընդդէմ ազատութեանս մերոյ: Զմոռացէս դու զդոսա ծերունիդ խոհական, և մեք իսկ ծանր տուգանօք ծանեաք զդոսա: Դադարեաց, սիրեցեալդ 'ի դից, խափանել զպատերազմդ կարևոր և արդար՝ որով միայն լցի երեկորնեայց ժառանգել խաղաղութիւն անսասան: Ազգ ապաշնորհ, ազգ խաբեբայ և անողորմ, զոր ցասումն դից առաքեաց այսր՝ վրդովել զխաղաղութիւն մեր, և պատուհասել զյանցանս մեր: Այլ կարձեցէք 'ի մէնջ զպատուհասդ, ով դիք, և խնդրեցէք առդ զվրէժ մեր . ցուցէք զարդարութիւն ձեր և 'ի վերայ թշնամեաց մերոց:

Յայս բան դղրդեցաւ ժողովն ամենայն, և թուէին ինձ Արէս և Բելլոնա՝ ընթանալ ընդ ռազմն բանակին, և բորբոքել 'ի սիրտ զօրականին զբոց մարտի՝ զոր Մենտոր շիջուցանել ջանայր: Արկանեալ անդրէն Մենտորի ասէ . Եթէ խոստմունս ևեթ արարեալ էր իմ, մարթ էր ձեզ չվստահել . այլ հաւաստիս մատուցանեմ ձեզ ականերևս . եթէ ոչ շատ համարիք 'ի պատանդ հանդերձ ինև զՏելեմաք, մատուցից ձեզ և յաւագաց քաջազանց կրետացւոց ընտիրս երկոտասան: Այլ արժան է զի և դուք տայցիք պատանդս . զի և Իդոմենէս ցանկայ խաղաղութեան, այլ խնդրէ զայն աներկևան և առանց նուաստութեան . խնդրէ զայն որպէս զձեզ զգօնութեամբ

և հեզութեանն , և ոչ առ մեղկասիրութեան և առ վատութեան յերեսաց ահի սպառնալեաց մարտից : Պատրաստ է նա 'ի կորուստ կեանս 'ի յաղթութիւն , այլ նախամեծար առնէ զխաղաղութիւն քան զմեծապայծառ յաղթանակ : Ա- մօթ համարի երկնչել 'ի պարտութենէ , այլ երկնչի յանիրաւութենէ, և ոչ ամաչէ ուղղել զսխալանս իւր : Զէն 'ի ձեռին հրաւիրէ զձեզ 'ի խաղաղութիւն , առանց պահանջելոյ պայմանս զոռոզութեանց , զի ընդունայն համարի զխաղաղութիւն բռնազբօս : Ընտրէ նա խաղաղութիւն երկաքանչիւրոց կողմանց հաճոյական , որով դադարեսցէ ամենայն հեռ և նախանձ , և բարձցի ամենայն կասկած : Եւ զի՞ յերկարեմ . Իդոմենէս ըստ ցանկութեան սրտի ձերոյ խորհի , մինչ և եթ համոզել զձեզ 'ի նոյն . և ոչ այս դժուարին իցէ , եթէ անխռով միօք և անյոյզք 'ի կրից յօժարեսջիք լսել ինձ :

Լուարո՛ւք ինձ արդ ազգք քաջազունք , և դուք զօրագլուխք հանճարեղք և համախոհք՝ լուարո՛ւք որ ինչ 'ի դիմաց Իդոմենեայ առաջի առնեմ : Ոչ արժան մնանել նմա յերկիր սահմանակցաց իւրոց , այլ և ոչ սահմանակցաց նորա մնանել յերկիր նորա . յանձն առնու նա , զի պահակք՝ զօրս ամրացոյց բարձրաբերձ աշտարակօք՝ կացցեն 'ի ձեռս զօրաց , որք ոչ միում և ոչ միւսում կողման իցեն կուսակիցք : Նեստոր և Փիլոկտետ , Հելլէնք ազգաւ՝ բայց ոսոխք էք

Իղոմենեայ, ոչ է մարթ կասկած կուսակցութեան ընդ նմա ունել զձէնջ. եթէ օգուտ հասարակաց խաղաղութեան և ազատութեան Եբեկորնեայց ցանկալի է ձեզ, լերուք աւանդապահք կրձիցն՝ լուցելոց պատերազմի: Ոչ ինչ ընդհատ օգուտ է ձեզ պահել անկործան յերեսաց նախանձի Եբեկորնեայց զՍալենտոս՝ հաստատուած նոր 'ի Յունաց համազգոյն ձերոցդ բնակեալ աստ, քան զերծուցանել 'ի յափշտակութենէ Իղոմենեայ զսահմանս դրացեաց նորա. կալայք 'ի կշիռ զերկաքանչիւր զնժարին, և փոխանակ հուր և սուր ածելոյ 'ի վերայ ազգի՝ զոր պարտիքն սիրել՝ ստացարուք զպարծանս դատաւոր և խրատարար կալոյ 'ի մէջ նոցա: Ասիցէք թերևս համբուրելի ձեզ զպայմանքս գոլ, եթէ վստահել ևեթ 'ի հաւատարմութիւն Իղոմենեայ մարթ իցէ. այլ տացի ձեզ և վստահութիւնդ այդ:

Պատանդքն, զորոց ասացի, Լիցին երկաքանչիւրոց կողմանց առհաւատչեայ՝ մինչև պահակքն աւանդեսցին ձեզ: Ահա փրկութիւն Եբեկորնեայց առ հասարակ, ահա և փրկութիւն Սալենտեայ և Իղոմենեայ 'ի ձեռս ձեր է. չե՞ ևս իցէք հաւանք: Ումէ՞ տակաւին կասկածիցէք, մի թէ զձէ՞նջ: Չիշխէք վստահել յԻղոմենէս. բայց Իղոմենէս այնչափ հեռի է 'ի դրժելոյ ձեզ, զի վստահի իսկ 'ի ձեզ. այո, վստահի նա 'ի ձեզ զհանգիստ զկեանս և զազատութիւն ժողովրդեան իւրոյ և զանձին: Եթէ արդարև խնդրէք

զխաղաղութիւն երանաւէտ, ահաւասիկ ձեզ· չիք պատճառ մերժելոյ զայն: Յաւելում դարձեալ, մի կարծիցէք առ ահի եկեալ զԻդոմենեա յաղերս խաղաղութեան. իմաստութիւն և արդարութիւն ածեն զնա յայն, և չէ ինչ նմա փոյթ՝ եթէ զարգասիս առաքինութեան 'ի վատութիւն նմա համարիցիք: Սխալեաց 'ի սկզբան, այլ արդ պարծանս իւր համարի ճանաչել զսխալանսն և կանխել յաղերս. վատութիւն է և մնափառութիւն և թանձրամիտ տգիտութիւն օգտի անձին՝ հնարել ծածկել զսխալանսն, ջատագով նոցին գոլով յանդգնութեամբ կացեալ: Որ խոստովանի թշնամւոյն իւրում զյանցանսն, և զոյժս յանձն առնու, յայտ առնէ՝ զի չէ մարթ նմա յանցանել վերստին, և զի պարտ է թշնամւոյ նորա երկնչել 'ի գգօն և յանյողդողդ գնացից նորա՝ եթէ ոչ յանձն առնուցու զխաղաղութիւն: Զգոյշ լերուք. զի մի արդ ընդ հակառակն նա 'ի ձէնջ կորեսցէ անխրատութիւն. եթէ մերժէք զխաղաղութիւն և զարդարութիւն՝ որ ինքնամատոյց լինին ձեզ, նոքին իսկ խնդրեսցեն վրէժս 'ի ձէնջ. և որք ցասուցեալն էին ընդ նմա դիք, պատերազմակից լիցին նմա ընդդէմ ձեր. և Տելեմաք և ես լիցուք վերամարտիկք արդարութեան: Ակայ զդիս առ հասարակ զերկնաւորս և զանդնդարամետականս իրաւացի առաջարկութեանցս այսոցիկ կոչեմ:

Նա զայս ասացեալ, ամբարձ ակներև ամե-

նայն ժողովրդոց զոստ ձիթենւոյ 'ի նշան խաղա-ղութեան ։ Օրագլուխք՝ որք տեսանէին զնա 'ի մօտոյ՝ ապշեալ կային, շլացեալք յաստուա-ծային բոցոյն՝ որ յաչաց նորա փայլատակէր. տեսիլ նորա մեծասաստ և մեծավայելուչ, գեր 'ի վերոյ քան զդիւցազանց առ հասարակ երևելոց առ մարդիկ. և քաղցրութիւն բանից նորա և զօրութիւն յափշտակէր զսիրտս բոլորից, և էր հանգոյն իմն կախարդասար հմայից՝ որովք 'ի խոր լռութեան գիշերոյ կասէին ընդ երկրին լուսին և աստեղք, ցածնու ծով զպայթացեալ. լռէին հողմք և ալիք, և նահանջէին զնացք սրընթաց գետոց ։

Մենաւոր 'ի միջի անդ ազգացն կատաղելոց կայր արձանացեալ իբր զՈրփէոս պար առեալ 'ի վագերց, որոց մոռացեալ զվայրենութիւն՝ 'ի ձայն քաղցր բարբառոյ նորա գային լիզուին զոտս նո-րա, քծնեալք զնովաւ և նուաճեալք ։ Եւ յան-կարծ խորին եղև լռութիւն ընդ բանակն ողջոյն. հայէին ընդ խրոխտս զօրավարք, ոչ կարելով զդէմ ունել զառնին, և ոչ թէ ով ոք էրն՝ գուշակել ։ Անշարժ կային զօրքն առ հասարակ պշուցեալք 'ի նա. ոչ ոք իշխէր բարբառել, առ 'ի չխափա-նելոյ զբանսն՝ եթէ գուցէ յաւելոյր ինչ ։ Եւ թէպէտ չգոյր ինչ 'ի յաւելուլ, սակայն ցան-կային այլ ևս լսել նմա. և ամենայն բանք նորա դրոշմեալ կային 'ի սիրտս նոցա ։ Աւելի 'ի խօ-սելն իւրում և արժանահաւատ զանձն ընծայե-ցուցանէր. և ամենայն ոք յակնձիւս կայր 'ի լուր

դուզնաքէիցն իսկ բանից, որ ելանէին 'ի բերա-
նոյ նորա ։

Յետ ընդ երկար լռութեան շշուկն աղօտ գնայր և տարածանէր ընդ բանակն, ոչ 'ի խառնաձայն աղաղակէ ամբոխի մնչելոյ առ ցասմանս, այլ 'ի քաղցր և 'ի հաշտ յորդորմանաց ։ Ի դէմս իսկ ամենեցուն էր տեսանել զուարթութիւն իմն և ողոք, և զէնքն ինքնին 'ի ձեռաց զայրացելոցն մանգուրացւոց անկանէին ։ Պատշաճացեալն Փալաս, հանդերձ սպարտացւովքն, 'ի գութ շարժեալ՝ զարմանայր ընդ սրտին գորովել. և այլք առ հասարակ սկսան հառաչել առ խաղաղութիւնն բարեբաստիկ առաջարկեալ նոցա ։ Փիլոկտետ, առ փորձ աղխտիցն քան զայլս դիւրագորով, չկարէր ժոյժ ունել արտասուաց. իսկ Նեստոր 'ի յուզմանէ սրտին ընդ բանս Մենտորի՝ ոչ կարացեալ բարբառել, գիրկս էարկ նմա գորովանօք. և զօրքն առ հասարակ իբր 'ի նշան աղաղակի գոչէին. Զէնընկէցս զմեզ առնես, ծերունիդ գերահանճար. հաշտութիւն, հաշտութիւն ։

Յայնժամ Նեստորի կամելով բարբառել, գունդքն առ հասարակ չհանդուրժեալ՝ թէ գուցէ առարկիցէ ինչ, դարձեալ միւսանգամ գոչեցին. Հաշտութիւն, հաշտութիւն ։ Անհնարին եղև զօրապետաց լռեցուցանել զնոսա, բայց գոչելով միաբարբառ ընդ նոսա. Հաշտութիւն, հաշտութիւն ։ Եւ տեսեալ Նեստորի զի չմարթէր կարկաբանել ինչ, ասաց ևեթ. Տե՛ս իմն, Մենտոր,

քանի՛ զօրաւորք են առաքինւոյ բանք. 'ի բարբառել իմաստութեան և առաքինութեան՝ ցածնուն կիրք, և արդար վրէժխնդրութիւն փոխի 'ի բարեկամութիւն և 'ի տենչ յարատևական հաշտութեան: Ընդունիմք զայն որպէս և առաջարկեսդ: Յայնժամ զօրավարք առ հասարակ ձգեցին զձեռս 'ի նշան հաւանութեան:

Պնդեաց Մենտոր 'ի Սաղենտոս՝ հրամայել բանալ զդրունս քաղաքին, և ազդ առնել Իդոմենեայ, ելանել հանկարծակի արտաքս: Նոյն Մենտոր գիրկս արկեալ Տելեմաքայ, ասէր. Անմատնագունին 'ի Յոյնս սիրեցեալ զաւակ, տացեն քեզ դիք լինել իմաստուն իբրև զնա, և բարեբաստիկ քան զնա: Պտտեցէ՞ս լինել զողջունել նորա. յիշատակ հօր քո, զորոյ զտիպս կերպարանացն 'ի դէմս բերես, չիջոյց 'ի մեզ զբոց սրտմտութեան: Փաղանթ իսկ, թէպէտ և դաժանաբարոյ էր նա և խստասիրտ, և չէր իսկ տեսեալ նորա զՈւլիսէս, յուզեցան գութք ընդ աղէտս պատանւոյն և ընդ հօր նորա. և մինչդեռ ստիպէին ինքն և այլք զպատանին 'ի պատմել զպատահարս իւր, եհաս Մենտոր ընդ Իդոմենեայ, և ամենայն մանկտին կրետացի ընդ նմա:

Ի տեսիլ Իդոմենեայ արծարծանէր անդրէն զայրոյթ ազգացն դաշնաւորելոց, այլ Մենտոր առգել զհրոյն բորբոքումն՝ ասելով. Ո՛հ կամք, զի՞ յապաղեմք 'ի կռել զուխտն սուրբ՝ որում վկայք լիցին դիքն և պաշտպանք: Նոքին իսկ խնդրես-

ցեն վրէժս յամբարշտէն՝ որ ժպրհեցի անցանել զայնուիկ. ամենայն աղէտք մարտին սոսկալիք, հեռի յուխտապահիցն անմեղաց, անկցին յուխտադրուժ և յեղեռնաւոր 'ի գլուխ փառամոլին՝ որ առ ոտն կոխեացէ սուրբ զիրաւունս ուխտին. եղիցի նա 'ի նզովս դից և մարդկան, մի վայելեսցէ յարգասիս դրժանացն: Մանուք դժոխայինք 'ի կերպս ահագինս յարձակեալք 'ի նա, խարդաւանեսցեն զնա յուսահատ 'ի կատաղութիւն. անկցի դիտապատ, և գէշ իւր անթաղ մնասցի 'ի կեր շանց և անգեղաց: Իջցէ 'ի դժոխս, և յանդնդախոր վիհս տարտարոսին հեծեսցէ նա միշտ կատաղել չարաչար քան զՏանտալոս և քան զԻքսիոն և զԴանայեանս: Այլ խաղաղութիւնս այս կացցէ անշարժ որպէս զերկնաբերձ զժայռն ատղասեան ². և ամենեքեան մեծարեսցեն զայն, և վայելեսցեն յարգասիս նորա յազգէ մինչև յազգ: Նուանք այնոցիկ, որ երդնուցուն զայն, յիշեսցի սիրով և պատկառանօք 'ի Թոռանց մերոց մինչև 'ի Թոռնեայս: Այս խաղաղութիւնս այս յարակայեալ հաւատարմութեամբ և արդարութեամբ, լիցի նախատիպ հանուրց առ յապայ ազգաց և ազանց՝ որոց դէպ լիցի կռել ընդ իրեարս ուխտ խաղաղութեան. և ազգք ամենայն, որ երանաւէտք ըղձանան լինել, փոյթ յանձին կալցին նմանողք ազգաց գոլ երեկոմնեայց:

Այս զայս իբրև ասաց, երդուաւ Իդոմենէս և ամենայն Թագաւորք ընդ նմա զխաղաղութիւն

ըստ դաշանցն սահմանելոց. և ետուն միմեանց պատանդս երկոտասան։ Ինքնամատոյց եղև Տէլեմաք ընդ պատանդս Իդոմենեայ. իսկ Մենտորի ոչ յանձն առնէին արքայք նիզակակիցք կալ ընդ պատանդս, այլ ընդ Իդոմենեայ, որպէս զի առաջնորդեսցէ նմա և խորհրդակցաց նորա մինչև 'ի կատարումն ամենայն դաշանցն։ Զենին ապա երինջս հարիւր ձիւնափայլս ընդ քաղաքն և ընդ բանակ, և զուարակս նոյնպէս ալխատակս հարիւր, որոց եղջիւրք ոսկեզօծք նարօտիւք էին զարդարեալ։ Հնչէին շուրջանակի լերինք յահագին բառաչմանէ զոհիցն, որք 'ի սայր սրոյ սուսերին տապաստ անկանէին. և արիւն ջերմաջերմ շուրջ ծաւալէր։ Հեղոյր ուղխօրէն գինի ծաղկահոտ 'ի քաւութիւն. և լերդահատք զննէին զդողդոջ ընդերս զոհից. և 'ի բագինս անդ քուրմք այրէին խունկս, որոց ծուխ թանձրախիտ հոտ անուշութեան բուրէր ընդ դաշտավայրն ողջոյն։

Իսկ զօրք երկոցունց բանակացն ոչ ևս ընդ ակամբ ընդ միմեանս հայելով, ձեռս արկեալ խօսակիցք լինէին զանցից իւրաքանչիւր. և հանգուցեալք 'ի վաստակոց՝ սկսանէին անդստին ճաշակել զքաղցրութիւն խաղաղութեան։ Նազուկք 'ի նոցանէ՝ որոց ընդ Իդոմենեայ լեալ էր 'ի պաշարման Տրովադայ, ծանեան զայնոսիկ 'ի զօրացն Նեստորի՝ որոց ընդ նմա 'ի պատերազմ անդր երթեալ էր։ Գիրկս արկեալ միմեանց սիրով, պատմէին իրերաց որ ինչ անցք ընդ իւրեանս անցեալ

մէնջ իղձք պատերազմի վասն սնոտի փառաց և աշխարհակալութիւն յերկիր դրացեաց։ Այլ զի՞նչ առնել իցէ որում սահմանակից բռնաւոր ոք գտանի, որ ոչ գիտէ այլ օրէնս՝ բայց զօգուտ անձին, և խնդրէ պարապ յափշտակելոյ զերկիր օտար։ Ոչ զԻդոմենեայ ասեմ, քաւ լիցի, ոչ ևս զնմանէ կասկած է ինձ. այլ Ադրաստ արքայ Դաւնեաց՝ նա կասկածելի է մեզ։ Թշնամանէ նա զդիս, և զմարդիկ առ հասարակ համարի ծնեալ ՚ի ծառայութիւն իւր՝ սպասաւորել փառաց իւրոց. չէ նա հայր և թագաւոր ժողովրդեան, այլ ստրուկս իւր խնդրէ և երկրպագուս, աստուածայինս ՚ի նոցանէ պահանջեալ պաշտօն։ Յարդ բաղդն դաչացու օգնական եղև անիրաւութեանց նորա. փութացաք ելանել նախ ՚ի վերայ Սալենտեայ, պարտել զտկարագոյնն ՚ի թշնամեաց մերոց՝ որ դեռ այն ինչ զկայ առնոյր առ ծովեզերբս, առ ՚ի դարձուցանել ապա զզէնս մեր ընդդէմ հզօր թշնամւոյն։ Այժմէն իսկ կալաւ նա քաղաքս բազումս զնիզակակցաց մերոց, և երկիցս ՚ի ճակատամարտի յաղթեաց Կրոտոնացւոց։ Զամենայն ինչ օրէն համարի ՚ի լրումն փառասիրութեան իւրոյ. զօրութիւն և դաւ հաւասար են առաջի նորա, առ ՚ի նուաճել ևեթ զթշնամիս։ Կուտեաց գանձ սաստիկ, զօրք նորա քաջակիրթք են և փորձք, և զօրավարք հմուտք ՚ի պատերազմ, և կանոնաւոր ամենեքին զինուորեալք նմա. ինքն իսկ հսկէ անդուլ ՚ի վերայ ամենեցուն, որ առ-

բաննեկէն հրամանաց իւրոց: Պատուհասէ խըս-տիւ զգոյզն ինչ յանցուած, և վարձատրէ առատապէս զվաստակս ծառայութեան: Արիութիւն նորա խրախուսէ զզօրս 'ի քաջութիւն. և եթէ արդարութիւն և հաւատարմութիւն ուղղէին զգործս նորա, գտանէր թագաւոր անթերի. այլ ոչ 'ի դիւց երկնչի նա, և ոչ 'ի կշտամբանաց խղճի մտաց: Արհամարհէ նա զհամբաւ, և համարի զայն ճիւաղ ահացուցիչ տկարամտաց. չիք ինչ յաչս նորա հաստատուն և տիրապէս բարի, բայց մթերել զանձս, լինել ահարկու, և առ ոտն կոխել զազգ մարդկան: Բանակ նորա հասցէ ընդ հուպ յերկիր մեր. և եթէ նիզակակցութիւն ամենեցուն մեր ոչ զօրացուցէ զմեզ զդէմ ունել զօրութեան նորա, չիք մեզ յոյս ազատութեան: Ոչ ինչ ընդհատ 'ի մէնջ կարևոր է և Իդոմենեայ զինուորել ընդդէմ բռնաւորին, որ ոչն հանդուրժէ տեսանել զոք ազատ 'ի սահմանակիցս իւր: Ի պատահելս մերում, նոյն աղէտք հասցեն Սալենտեայ. փութացուք ապա 'ի միասին ընդդէմ նորա:

Եւ մինչդեռ նա զայն խօսէր, դէմ եդեալ գնային 'ի քաղաքն. զի Իդոմենէս աղաչեաց զարքայս և զզօրագլուխս, անդ զգիշերն զայն ագանել:

## ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ

### ՄԵՏԱՍԱՆԵՐՈՐԴԻ ԳՐՈՑՆ

1 Բէլլոնա *աստուածուհի պատերազմի, որպէս և Արէս աստուած մարտի:*

2 Ատլաս *արքայ Մաւրիտանիոյ քաջ աստեղաբաշխ առասպելեալ 'ի ժայռ երկնաբերձ, իբր թէ յուս իւր զերկինս կրելով:*

3 Ադրաստ *թագաւոր Արգոսի և Դանայեաց՝ որ էին ժողովուրդ Ապուլիոյ 'ի Նէապոլիս:*



# ՆԱԽԱԴՐՈՒԹԻՒՆ

Նեստոր 'ի դիմաց նիզակակից ազգաց խնդրէ օգնութիւն յԻդոմենեայ ընդդէմ Դաւնեաց թշնամեաց նորա։ Մենտորի կամելով կարգս քաղաքականս հաստատել 'ի Սալենտ, հաւանեցուցանէ զնեստոր՝ զՏելեմաք ևեթ առնուլ ընդ իւր հանդերձ հարիւրովք ազատազնոյն Կրետացւովք։ Ի մեկնել Տելեմաքայ՝ Մենտոր հանդէս առնէ քաղաքին և նաւահանգըստի, և մանրախուզիւ տեղեկացեալ ամենայնի՝ խրատ տայ Իդոմենեայ սահմանել կարգս նորանորս վաճառականութեան և քաղաքականութեան, բաժանել զժողովուրդն յեօթն դասս՝ զանազանեալ ձեւովք զգեստուցն զպատիւ և զազնուականութիւն նոցա, 'ի բաց բառնալ զզեղխութիւն և զարուեստս աւելորդս՝ առ 'ի պարապեցուցանելոյ զարուեստաւորս յերկրագործութիւն, զոր արգոյ ընծայեցուցանէ։

# ԱՐԿԱԾՔ ՏԵԼԵՄԱՔԱՅ

## ԳԻՐՔ ԵՐԿՈՏԱՍԱՆԵՐՈՐԴ

Բանակ այնուհետեւ հարկանէին ազգք նիզակակիցք եւ ծածկէր դաշտավայրն 'ի խորանս շքեղս փողփողեալս երփն երփն երանգօք, ուր Աչրեկոնեայք տաժանեալք տային զանձինս քնոյ: Իսկ արքայք սպասաւորօքն իւրեանց մնեալ 'ի քաղաքն, զարմանային ընդ այնչափ շնուածն Հըշակայս՝ որ 'ի սուղ ժամանակի էրն կառուցեալ, աղմկի մեծի պատերազմին ոչ էինչ խափանեալ զդաստակերտն նոր 'ի զարգացմանէ եւ 'ի վաղընդփոյթ բարեզարդելոյ: Սքանչանային ընդ իմաստութիւն եւ ընդ հոգս Իդոմենեայ, որոյ զգեղեցիկն զայն հիմնեալ էր զթագաւորութիւն. եւ խորհէին զի 'ի հաստատել խաղաղութեանն ընդ նմա՝ յաւելոյր յոյժ զօրութիւն իւրեանց, հրաւիրելով եւ զԻդոմենէս 'ի նիզակակցութիւն ընդդէմ Դաւնեաց: Բաջի իսկ արարին նմա զխորհուրդ իւրեանց. եւ ոչ կարաց նա մերժել զիրաւացի

հրաւէրն, և յանձն էառ տալ նոցա զօրս յօգ-նականութիւն ։ Բայց Մենտորի գիտելով քա-նի՜ ինչ կարևորն է 'ի բարգաւաճութիւն պե-տութեան, ծանեաւ զի չմարթէր Իդոմենեայ մեծ ինչ ունել զօրութիւն որչափ թուէրն. և ա-ռեալ զնա մեկուսի, ասէ.

Ահա ջանք մեր ոչ 'ի դերև ելին, և Սալենտ զերծաւ 'ի մօտալուտ աղէտիցն. 'ի ձեռս քո է արդ երկնաչափ զփառս նորա ամբառնալ, և հա-ւուն քո Մինովայ նմանող լինել իմաստութեանն 'ի տեսչութիւն ժողովրդեան ։ Յաւելում ասել քեզ համարձակ, վստահ 'ի կամակարութիւն քո և յանկեղծութիւն մարդահաճութեան. 'ի գովել թագաւորաց զմեծագործութիւնս քո, եպերէի ես ընդ միտս իմ զյանդգնութիւն քոյին ։ Ընդ այնպիսի բանս նորա այլ յայլմէ եղև Իդոմենէս. աչք իւր պղտորեցան, շրջեցաւ գոյն երեսաց նո-րա, և փոքր մնաց ևս և կարճէր զբարբառ Մեն-տորի առ 'ի յայտնել զխոժոռութիւն իւր ։ Բայց Մենտոր ցածութեամբ և պատկառանօք, բայց ազատօրէն անաչառ յաւել և ասէ.

Տեսանեմ իսկ զի դժկամակիս 'ի լսել յանդգ-նութեան. ապաքէն ոչ այլ ումեք բաց յինէն օ-րէն էր ասել քեզ զայն, զի պարտ իսկ է ակն ա-ծել 'ի թագաւորաց, և խնայել 'ի տկարութիւն նոցա 'ի յանդիմանելն իսկ զնոսա ։ Շատ իսկ դժպհի է նոցա լսել զճշմարտութիւն առանց իսկ կշտամբութեան. այլ ես ներելի ինձ համարեցայ

յայտնել քեզ զախտապաղանս քո առանց ամըքանաց բանից ։ Խորհէի սովորեցուցանել զունկն քո 'ի բնէն անսուանս լրաց լուաքանչիւր, և խելամուտ առնել զքեզ զի այլք 'ի խրատելն զքեզ՝ չիշխեն երբէք ասել զամենայն որ ինչ խորհին ։ Եթէ կամիս չխաբել, պարտ է քեզ առաւելան խնանալ որ ինչ զժուարահաճք ասիցեն քեզ ։ Մտադիւր իսկ ամոքեցից ես զխրատս իմ 'ի դէպ ժամանակի . այլ լաւ իցէ քեզ ունել զոք՝ որ առանց զիւրն ինչ խնդրելոյ և անակնկալ իմիք խօսեսցի ընդ քեզ 'ի ծածուկ անաչառապէս . ոչ ոք այլ իշխեսցէ համարձակախօսել ընդ քեզ, և ոչ երբէք տեսցես զճշմարտութիւն հոլանի՝ այլ քօղարկեալ և պատմուճանեալ ։

Յայնժամ Իդոմենևս, վաղ իսկ յառաջին յուզմանէ կրիցն սթափեալ, զամօթի հարաւ ընդ տկարութիւն իւր, և ասէ ցՄենտոր . Ահա արգասիքս սովորելոյ 'ի շողոմս . շնորհապարտ քեզ դաւանիմ վասն փրկութեան նորոյ թագաւորութեանս, և ցանկամ լսել 'ի բերանոյ քումմէ զամենայն ճշմարտութիւն . այլ գթա յապականեալս 'ի թունից մարդահաճութեան . որ ոչ զոք գտի արիասիրտ՝ զի 'ի կարիս իմ ասէր ինձ զճշմարտութիւն . չգտի իսկ զոք տիրասէր, որ յանձն առնոյր անհաճոյ լինել ինձ առ 'ի յանդիմանս առնել անպատրուակ զճշմարտութիւն ։ Դու 'ի բարբառելն զայսոսիկ՝ փղձկեալ յարտասուաց, գիրկս էարկ Մենտորի գորովանօք ։

Իսկ ծերունին իմաստուն ասէ ցնա. Միշտ է ինձ խօսել ընդ քեզ խիստ, այլ զիա՞րդ կարիցեմ մատնել զքեզ՝ ծածկելով 'ի քէն զճշմարտութիւն։ Կամակար խաբեցար ցարդ, զի խորշեցար յամենայն խորհրդականաց. զի ոչ խնդրեցեր արս անաչառս, որ իշխեցեն խօսել հակառակ կամաց քոց. զի ոչ հոգացար հարցանել զարս՝ որոց չէր ինչ փոյթ հաճոյ լինել քեզ, և ոչ երկիւղ 'ի դատապարտել զյոռութիւնս քո և զանիրաւութիւնս. զի ոչ մերժեցեր 'ի քէն 'ի ճանաչելն զմարդահաճոյս, և ոչ կասկածեցեր զնոցանէ։ Այլ զի ամենեքին իսկ չարարեր ըստ ճշմարտասիրաց և որոց արժանի գտանէին 'ի խելամտութիւն ճշմարտութեան։ Տեսցուք արդ թէ իցէ քո արիութիւն խոնարհելոյ առ ոտս ճշմարտութեան՝ որ զքեզ կշտամբեալ յանդիմանէ։

Զնոյն արդ երկրորդեմ. եպերելիք են որ այնքան դրուատիս քեզ ընծայէին։ Մինչդեռ արտաքուստ պատեալ զքև թշնամիք՝ սպառնային աւեր չև ևս կայկայեալ թագաւորութեանդ, դու ոչ այլ ինչ խորհէիր 'ի ներքս 'ի նոր դաստակերտիդ՝ բայց շինուածս կառուցանել հոյակապս։ Գիշերս բազումս, որպէս դու ինքնին պատմէիր, անցուցեր յայն անքուն, և սպառեցեր զգանձս, ոչ ինչ փոյթ կալեալ 'ի բազմացուցանել զժողովուրդ քո, և 'ի մշակութիւն ծովեզերեայցս յուռթի անդաստանաց։ Ոչ ապաքէն պարտ էր քեզ որպէս հիմունս հաստատութեան պետու-

թեանդ ունել զերկուս զայսոսիկ, քաջողեալ բա-զում և երկեր քաջ մշակեալ 'ի մտունդ նոցին։ Կարեար էր քեզ 'ի սկզբանն անդ խաղաղութիւն ընդերկար՝ յաձնանն ժողովրդեանդ, և ոչ յայլ ինչ խորհել՝ բայց յերկրագործութիւն և 'ի սահ-մանադրութիւն խնամատուն օրինաց։ Այլ մնաց փառասիրութիւն մղեաց զքեզ յանին կորստեան. և 'ի խնդիր երևելոյ մեծ, փոքր միւս ևս և կոր-ծանեցիր զճշմարիտ քոյին մեծութիւն։ Փութա արդ ուղղել զախտականս քո, դադարեցո զմեծա-գործութիւնս քո, հրաժարեա 'ի պերճանաց այտի՝ որ տապալեն զնորատունկ դաստակերտ քոյին, թող ժողովրդեանդ հանգչել 'ի խաղա-ղութեան, պատրաստեա դոցա լիութիւն առ 'ի դիւրագոյն տուրևառս ամուսնութեանց։ Պի-տանիր զի տեսչութեանք ժողովրդեանդ զտանիս թագաւոր, և իշխանութիւն քո ոչ տարածու-թեամբ սահմանացդ չափի, այլ բազմամարդու-թեամբ նոցին և հպատակացդ քոց յոլովու-թեամբ։ Ստացիր քեզ երկիր արգաւանդ, թէ և ոչ յոյժ ընդարձակ. բնակեցո զնա բազմու-թեամբ ժիր և կիրթ մարդկան, լեր սիրելի նո-ցա, և լիցիս հզօրագոյն բարեբաստ և փառաւո-րեալ քան զամենայն աշխարհակալս կործանիչս թագաւորութեանց։

Իդոմենևս ասէ. Իսկ զի՞նչ ասես թագաւորացդ այդոցիկ տաց պատասխանի, խոստովա՞ն եղէց զտկարութիւն իմ։ Այո՛ ասացես արարի զեր-

կրագործութիւն և զվաճառաշահութիւն առ-ձեռն պատրաստ 'ի ծովեզերս յայսոսիկ, և 'ի շինութիւն ևեթ մեծագործ դաստակերտիս փոյթ կալցի․ այլ արժա՛ն իցէ ինձ, սիրեցեալդ իմ Մենտոր, զամօթ յանձն առնուլ յաւագախումբ ատենի թագաւորաց, և նշաւակել զանխոհականութիւն իմ։ Եթէ արժան իցէ, ոչ հրաժարեմ, արարից զայն առանց ինչ ընդ բանս ածելոյ, թէպէտ և ծանր իցէ ինձ այն․ զի որպէս ուսայ իսկ 'ի քէն, թագաւոր բարի և բոլորանուէր ժողովրդեան իւրում՝ պարտի նախամեծար առնել զփրկութիւն աշխարհին քան զհամբաւ իւր։

Մենտոր ասէ․ Յօժարութիւն արժանի հօր ժողովրդեան՝ մարդասիրութիւնդ այդ, և ոչ սնոտի մեծագործութիւն դաստակերտիդ յայտ առնեն զսիրտ բարւոյ թագաւորին 'ի քեզ․ այլ պարտ է և 'ի պատիւ քո խնայել յօգուտ իսկ աշխարհիդ։ Զիմ վերայ հոգդ այդ․ հաւանեցուցից թագաւորացդ՝ զի յանձն առեալ է քո կացուցանել վերստին զՈդիսևս, եթէ իցէ կենդանի, և կամ զորդի նորա յաթոռ իւր յԻթակէ, և հալածել անտի զինու զօրութեամբ զտարփածուս Պենելոպեայ։ Դիւրին լիցի նոցա 'ի միտ առնուլ, զի բազմութեան զօրաց պէտք իցեն 'ի գործ պատերազմիդ, և ոչ պահանջեսցեն 'ի քէն զօր բազում ընդդէմ Դաւնեաց։

Յայնժամ Իդոմենևս որպէս զծանր թօթա-

փեալ զբեռն յանձնէ, ասէ. Ո բարեկամ սիրելի, պատսպարան լիցիս դու պատուոյ իմոյ և համբաւոյ նորանկերտ քաղաքիս՝ ծածկելով 'ի սահմանականց զպակասել զօրութեան սորա: Ո՞վ հաւատասցէ՝ զի զօրս յԻթակէ յղիցեմ առ 'ի կացուցանել անդ զՈղիսեւս կամ զորդի նորա զՏելեմաք, մինչ սա ինքն յանձն առնու երթալ 'ի պատերազմ ընդդէմ Դաւնեաց:

Մենտոր ասէ. Մի՛ ինչ հոգար, զճշմարտութիւն և եթ խօսեցայց: Նաւք, զորս արձակեսցես 'ի վաճառաշահ, քերեսցեն զափամբք Եպիրոսի՝ կրկին միանգամայն վճարել գործ. հրաւիրել 'ի ծովեզերս քո 'ի տար աշխարհաց զվաճառականս՝ որք խուսեն 'ի Սալենտեայ վասն ծանրութեան մաքսից, և խնդրել զրոյցս զՈղիսեայ: Եթէ տակաւին կենդանի իցէ, չիցէ ինչ հեռի 'ի ծովուց աստի՝ որ անջրպետեն ընդ Եղլադա և ընդ Իտալիա. նա աւանիկ ասի իսկ տեսեալ զնա ոմանց առ Փէակեցիս: Եթէ անհնար իսկ լիցի գտանել զնա, սակայն նպաստ մեծ որդւոյ նորա մատուցանիցեն նաւք քո, տարածեալ ընդ Իթակէ և ընդ ամենայն կողմանս նորա զահ անուան որդւոյ նորա Տելեմաքայ՝ որ հանգոյն հօր իւրոյ համարի մեռեալ: Զահի հարցեն տարփաւորք Պենելոպեայ 'ի լսել զգալ հասանել նորա հզօր նիզակակցաւ. ոչ ևս իշխեսցեն Իթակացիք թօթափել զլուծ նորա, և Պենելոպէ քաջալերեալ՝ հրաժարեսցէ 'ի ապառ. լինել առն այլում:

Որպէս զօրաւիգն լիցիս դու պատանւոյն, մինչ նա փոխանակ քո երթիցէ ընդ դաշնաւորս ծովակողմանս Իտալիոյ ընդդէմ Դաւնեաց։

Յայնժամ գոչեաց Իդոմենէս. Երանի՛ թագաւորի՝ ում առընթեր կայցեն խորհրդականք իմաստունք. լաւ է նմա բարեկամ հանճարեղ և հաստատուն քան զբանակս յաղթականս։ Այլ առաւել երանի՛ թագաւորի այնպիսւոյ, որ խելամուտ լեալ իւրումն բարեբաստութեանն՝ գիտիցէ յօգուտ 'ի կիր արկանել զխորհուրդս հանճարեղս. քանզի բազումք 'ի թագաւորաց այնոքիկ են, որք մերժեն 'ի մտերմութենէ իւրեանց զայրս իմաստունս և առաքինիս՝ զանգիտելով յառաքինութեանց նոցա, և ունկն մատուցանեն մարդահաճոյից՝ ոչ ինչ 'ի մատնութենէ նոցա զանգիտեալ։ Ես փորձ իսկ առեալ զխաբանացս, պատմեցից որ ինչ ինձ հասին չարիք 'ի սուտ բարեկամէ՝ որ զկիրս իմ գգուէր, որպէս զի և նա զիւրսն գգուէի։

Դիւրաւ յաջողեաց Մենտորի համոզել զարքայս նիզակակիցս, զի յարշաւել Տելեմաքայ ընդ իւրեանս Իդոմենէս յանձանձեայցէ զիւրս նորա. շատ հաւանեցան նոքա ունել ընդ իւրեանս 'ի բանակին զպատանեակն զորդի Ոդիսեայ հանդերձ հարիւրովքն կրետացի մանկտւով։ Զնոսա Իդոմենէս ընտրեալ յազատազունդ մանկտւոյն՝ զոր ածեալ էր 'ի Կրետեայ՝ եւ ընդ նմա ըստ խրատուն Մենտորի, զի ասէր՝ թէ պարտ է խաղա-

ղութեամբ պատրաստել աճումն ժողովրդեան , այլ զի մի մեղկասցի ազգն և լիցի անկիրթ 'ի պատերազմ՝ պարտ է յղել զազատազունդ մանկտին 'ի պատերազմունս օտարս . քանզի այս շատ է առ 'ի պահել յազգին վառ և բորբոք զնախանձ փառաց , զսէր զինուց , զարհամարհութիւն աշխատութեան և զմահու իսկ , և զհրահանգս պատերազմական արուեստի :

Զու ապարին արքայք նիզակակիցք 'ի Սալենտեայ , գոհք ընդ Իդոմենէս , հրաշացեալք ընդ խնամատութիւն Մենտորի , և լի խնդութեամբ վասն ընդ իւրեանս ունելոյ զՏելեմաք : Իսկ պատանին չկարէր հանդուրժել վշտին ընդ բաժանումն իւր 'ի սիրելւոյն : Իբրեւ մինչդեռ արքայք զհրաժարական տային ողջոյն՝ երդուեալք Իդոմենեայ նիզակակցութիւն անլոյծ , Մենտոր ողջագուրէր զՏելեմաք . և պատանին թժանալով զծոց նորա արտասուօք , ասէր . Ոչ խնդամ գնալով 'ի փառս , առ վշտի բաժանմանս մերոյ 'ի միմեանց . թուիմ զնոյն կրել կիրս զչարաղէտ ժամուն , յորում յափշտակեցին զիս Եգիպտացիքն 'ի գրկաց քոց՝ տանել զիս 'ի քէն 'ի բաց , առանց յուսոյ վերստին զքեզ տեսանելոյ : Իսկ Մենտորի յորդորական բանիւք սփոփելով զնա , ասէր . Րյեագդ ամենեւին մեկնիմք արդ 'ի միմեանց . կամաւոր է և սուղ բաժանումն մեր այս , և 'ի փառս յաղթանակի դիմեալ գնաս : Պարտ է քեզ , որդեակ իմ , արիական զսէր քո ընդ իս

յարդարել և ոչ այդչափ խանդաղատելի. սովորեսջիր հեռի լինել, ոչ միշտ կարիցեմ կալ առ քեզ. իմաստութիւն և առաքինութիւն քան թէ Մենտոր քեզ առաջնորդեսցեն ։

Եւ զայսպիսի բարբառելով դիցուհւոյն, որ՝ ընդ կերպարանօքն Մենտորի ծածկեալ, այծենակաձիւն պատսպարէր զՏելեմաք ասպարաւ, հեղեալ 'ի սիրտ նորա հոգի իմաստութեան և յառաջատես զգուշութեան, զանվեհեր արիութիւն և զհեզ մարդասիրութիւն զդժուարակցորդն 'ի միասին, և խրախուսեալ զնա ասէր. Ե՛րթ դիմագրաւ ահագին վտանգաց, ուր ուրեք օգուտ զքեզ կոչէ 'ի դիմագրաւել. առաւել նախատինք են Թագաւորի խուսել 'ի վտանգաց պատերազմի, քան չերթալ 'ի պատերազմ. չէ արժան արիութեան զօրավարի գոլ կեղակարծ ։ Կարևոր իսկ է ժողովրդեան պահպանել զզօրավար իւր կամ զարքայ, բայց կարևորագոյն ևս՝ չերկբայիլ զարիութենէ նորա ։ Յուշ լիցի քեզ, զի որ հրամայէն՝ պարտի լինել օրինակ այլոց, և քաջութեամբն իւրով քաջալերել զզօրսն առ հասարակ ։ Հապա, մի՛ 'ի վտանգաց ուստեք երկնչիր, Տելեմաքէ, յանձն առ կորնչել քան յողդողդ զարիութիւնդ քո ցուցանել ։ Մարդահաճոյք, որ փութան խափանել զքեզ 'ի դիմագրաւելոյ վտանգաց 'ի կարիս, նոքին նախ ամբաստանեսցեն զքեզ 'ի վատութիւն՝ եթէ դիւրաւուր 'ի դէպս յայնոսիկ գտցիս նոցա ։

Սակայն և մի խիզախեսցես տարապարտ 'ի վտանգս . քաջութիւն եթէ չիցէ 'ի խոհականութենէ ուղղեալ` ոչ է առաքինութիւն , այլ անմիտ արհամարհութիւն կենաց և ցասումն զազրանայլն . քաջութիւն մոլեգին ոչ է աներկևան : Որ ոչն տիրէ անձին 'ի վտանգս` է կատաղի քան թէ արի . և եթէ ոչ անզգայի , ոչ գեր 'ի վերոյ արշաւէ երկիւղի . զի չկարէ յաղթել այնմ 'ի զգաստութեան : Եթէ ոչ 'ի փախուստ դառնայ , գէթ խռովի և կորուսանէ զազատութիւն մտաց` որ կարևորն է առ 'ի բարւոք տալ հրամանս , և յօգուտ 'ի կիր արկանել զպատեհութիւն , 'ի հալածել զթշնամիս և 'ի զօրաւիգն լինել հայրենեաց : Թէպէտ և իցէ 'ի նմա եռանդն զինուորի , չիցէ 'ի նմա խոհականութիւն զօրավարի . այլ և ոչ ճշմարտիւ արիութիւն զինուորի , քանզի կարևոր է և սմա զգաստութիւն մտաց և նուաճութիւն կրից առ 'ի հնազանդել : Որ յախուռն խիզախէ` աղմկէ զկարգ հրահանգաց զօրուն , տայ օրինակ յանդգնութեան , և բազում այն է` զի 'ի չարիս մեծամեծս զքանակն առ հասարակ արկանէ . և որ նախամեծար զիւրն առնէ մնափառութիւն .քան զօգուտ հասարակաց , պատժոց է արժանի և ոչ վարձուց :

Զգոյշ լեր ապա , սիրեցեալ որդեակ , յանսանձ փառասիրութենէ . չիք այլ ինչ հնար հասանելոյ փառաց , բայց դէտակն ունել անխռով դէպ ժամանակի . առաքինութիւն այնչափ է

գերագոյ, որչափ պարզ և համեստ զանձն ըն-
ծայեցուցանէ առանց իրիք պերճանաց։ Ըստ ա-
ռաւելուլ հարկի դիմադրաւելոյ 'ի վտանգս՝ պարտ
է յաւելուլ 'ի զգուշութիւն և յարիութիւն։
Բայց զգոյշ լե՛ր և 'ի նախանձուկս արկանելոյ
այլոց, մի և ընդ յաղթութիւնս այլոց նախան-
ձիր. գովեա որ ինչ գովելին է 'ի նոսա, և գո-
վեա խոհականութեամբ, յայտնելով մտադիւր
զբարին և լռելով զչարն կարեկցութեամբ։

Մի տար վճիռ առաջի զօրագլխաց երիցագու-
նից, որոց առաւելագոյն քան զքեզ է փորձ. լո՛ւր
նոցա մեծարանօք, հա՛րց զնոսա, խնդրեա ուսա-
նել 'ի հմտագունից, և մի ամօթ համարիր ըն-
ծայել վարժապետութեան նոցա որ ինչ գործի-
ցես արութիւնս։ Մի ունկն մատուսցես բանսա-
րկութեանց՝ որ գրգռիցեն զքեզ 'ի կասկած
կամ՛ 'ի նախանձ ընդ այլ զօրապետս. խօսեաց
ընդ նոսա վստահութեամբ և անկեղծութեամբ։
Եթէ համարիցիս ինչ նոցա անիրաւեալ առ քեզ,
բա՛ց զսիրտ քո, յայտնեսջիր նոցա զիրաւունս
քո. եթէ լիցի նոցա 'ի միտ առնուլ զազնուա-
կանութիւն քո, զարմասցին ընդ քեզ, և խո-
նարհեսցին յաղերս քո. իսկ եթէ չիցեն արդա-
րախոհք, և ոչ արասցեն քեզ իրաւունս, զփորձ
առեալ քեզէն զանիրաւութեան նոցա՝ զգու-
շասցիս մի ևս գալ ընդ նոսա 'ի վէճ, ընդ որ
ապա լիցի քեզ զիղջ. և մանաւանդ մի ինչ
գանգատել 'ի լուր մատնելուզաց բանսարկուաց

ընդդէմ զօրավարաց բանակին՝ յորում գտանիցին ։

Յաւել ասել Մենտոր և ասէ․ Իսկ ես կացից մնացից աստանօր, վստահանալից լինել Իդոմենեայ առ ՚ի պատրաստել զբարեբաստութիւն ժողովրդեան նորա, և առ ՚ի կատարումն ուղղութեան սխալմանցն՝ զորս խորհրդականք չարեաց և մարդահաճոյք ետուն նմա գործել ՚ի կանգնել անդ զնոր թագաւորութիւնն ։ Այլ ՚ի զարմանալ պատանւոյն արհամարհանօք իմն ընդ զնացս Իդոմենեայ, սաստեաց ՚ի նա Մենտոր և ասէ․ Զարմանան զի և արք մեծարոյք մարդիկ են տակաւին, և բերեն ինչ յանձին ՚ի կրից մարդկութեան՝ շուրջ պատեալք յանթիւ որոգայթից և պաշարեալք ՚ի վարանս դժուարանակալս գահոյից ։ Արդարև Իդոմենեւս ՚ի պերճանս և յամբարտաւանութիւն է սնեալ․ այլ ոմն ուրեք և յիմաստասիրութիւն իսկ դաստիարակելոց մարթէր անձնատուր լինել ՚ի շողոմից, եթէ ՚ի գահոյս նորա անցեալ կայր ։ Այո՝ կարի իսկ վստահացաւ յայնոսիկ՝ զորս կարծէր իւր մտերիմս․ բայց և իմաստնագոյնք ՚ի թագաւորս հանդերձ ամենայն զգուշութեամբ ըմբռնեին յաճախ ՚ի նոյն պատրանս ։ Չէ մարթ թագաւորի կալ առանց պաշտօնէից օգնականութեան, և հարկ է նմա վստահել ՚ի նոսին, զի չկարէ անձամբ վճարել զամենայն․ և յոյժ դժուարագոյն քան զայլս կարէ նա ճանաչել զայնոսիկ՝ որ շուրջ կան

զնովաւ, զի ծպտեալ կան առ նմա, և զամենայն հնարս 'ի կիր արկանէին առ 'ի պատրել զնա ։ Սիրեցեալդ իմ Տելեմաք, իցէ՛ թէ մի՛ զփորձ առնուցուս զչարեացս 'ի սպառ. չիք 'ի մարդիկ ոչ առաքինութիւնն այն և ոչ հանճար ըղձալի. Թէպէտ և խորագնին լիցուք հետազօտք, հանապազօր խաբիմք 'ի նոցա ։ Եւ չէ իսկ հնար լաւագոյնս յարդարել զմարդիկ, որ կարեւորն էր յօգուտ հասարակաց. զի է 'ի նոսա յամառութիւն ներհակակիր և նախանձընդդէմ, և չիք 'ի համբոյր ածել զնոսա և ոչ իսկ գոգցես յուղղութիւն ։

Ըստ բազմութեան ժողովրդոց, որոց տիրէ թագաւոր, բազմագունից կարօտի պաշտօնէից՝ առնել 'ի ձեռն նոցա որ ինչ չկարէ վճարել անձամբ. և որչափ բազմաց կարօտի տալ իշխանութիւն, այնչափ առաւել է նմա վտանգ սխալանաց յընտրութեան ։ Որ այսօր անողորմ՝ բազմի դատաւոր թագաւորի, չարագոյն քան զնա առվաղիւ թագաւորէ, և զնոյն գործէ սխալանս և ծանունս ևս յոյժ՝ եթէ տացի նմա 'ի ձեռս իշխանութիւն ։ Կենցաղ սովական, եթէ դոյզն ինչ ճարտարխօսութեան իցէ վիճակեալ, ծածկէ զամենայն թերութիւնս բնութեան, համդէս առնէ հանճարոյ, և արժանաւոր ամենայն աւագութեանց ընծայեցուցանէ զայր անաւագ. իսկ աւագութիւն 'ի փորձ խիստ մատուցանէ զհանճար, և նշաւակէ զթերութիւնս մեծամեծս։

Աւագութիւն նման է տապակողին, որ զամենայն ինչ համախառնակաց ստուարացուցանէ. ամենայն Թերութիւնք 'ի բարձր 'ի կայս անդ երևին մեծամեծք, ուր դուզնաքեից իրաց զհետ գան աղէտք դժնդակք, ուր և վրիպակք Թեթևագոյնք պատճառ ծանունց տան չարեաց: Ամենեքեան անձնկաւորք կան յարաժամ յաւագանին 'ի դիտել զնա և 'ի դատել խստիւ, դատաւորք անփորձք աւագութեան` որ տգէտք են դժուարութեանցն որ 'ի նմա, և 'ի վեր քան զմարդիկ համարին զորեարն, այնքան պահանջելով 'ի նոցանէ առաքինութիւն: Թագաւոր` Թէպէտ և բարի և իմաստուն` սակայն մարդ է, և միտք նորա և առաքինութիւն չափով. են և նորա հաճոյք և կիրք և սովորութիւնք, որոց չէ իշխան. դարանեին զնովաւ արք շողոմշահք և չարախօսք, և է առնելի յօգնականութենէն` զոր խնդրէ. սխալէ համապատագոր, է զի 'ի կրից իւրոց, և է զի 'ի կրից իւրայնոցն. և այն ինչ հայթայթեալ զմի 'ի վրիպանաց, 'ի միւս այլ անկանի 'ի վրիպակ: Այսպիսի է Թագաւորաց պայման, իմաստնագունից իսկ և առաքինեաց:

Երկայնագոյնք իսկ և առաքինագոյնք 'ի Թագաւորութեանց` կարճատևք են յոյժ և Թերակատարք առ 'ի նորոգել 'ի կատարածի, զոր եղծին 'ի սկզբան յանդէտս: Այս ամենայն աղէտք կցորդք են Թագաւորութեան, և տկարութիւն մարդկային ընկճի ընդ ծանու բեռամբն. պարտ

է աւաղել զԹագաւորս, և կարեկից լինել նոցա։ Այլ չիցե՞ն իսկ աւաղելի որոց զտեսչութեան պարտս յանձն առեալ է զայնչափ բազմութեան մարդկան՝ որոց անբաւ է կարօտութիւն, և որք այնչափ յաձախեն վիշտս որոց բարւոքն կամիցին առաջնորդել նոցա։ Պարզաբար ասացից. ապաքէն յոյժ ողբոց են մարդիկ արժանի, զի համագոյն նոցին զգածեալ կարեօք իշխէ նոցա Թագաւոր. պարտ իսկ էր աստուածոց զնոսա յանձանձել։ Բայց և ոչ նուազագոյն ողբոց են արժանի Թագաւորք, զի մարդիկ ելով տկարք և Թերակատարք՝ պարտին յանձանձել զանԹիւ բազմութիւն զեղծ և խաբեբայ մարդկան։

Յայնժամ Տելեմաք 'ի վերայ եած. Բայց Իդոմենևս իւրով յանցանօքն կորոյս զԹագաւորութիւն հարցն իւրոց 'ի Կրետէ. և եԹէ չէր քո զնա խրատեալ, կորուսանէր արդեօք և զերկրորդն 'ի Սալենտ։ Մենտոր ասէ. Այո՝ յանցեաւ նա ծանունս. բայց ալէ խնդրեա դու ընդ Ելլադա և ընդ բնաւ իսկ բարբարոսաձեալ ազգինս Թագաւոր զոք անյանց. 'ի ստեղծուածս վեհից իսկ արանց և 'ի բնաւորութիւնս նոցա են Թերութիւնք ինչ, որ զնոսա զհետ իւրեանց առեալ ձգեն. և արժանաւորք այնոքիկ են՝ որք արխանան 'ի միտ առնուլ զայնոսիկ և ուղղել։ Կարծիցես զի և մեծին Ոդիսեայ հօր քո, որ օրինակ Թագաւորացն եկաց Ելլադայ, չիցեն լեալ տկարութիւնք և Թերութիւնք. եԹէ չէր նմա

Աթենաս ամենայն ուրեք ձեռնկալու , ընկճէր նա արդեօք յաճախ 'ի վտանգս և 'ի խոչս՝ յորս անկաւ նա , խաղալիկ լեալ բախտին ։ Քանիցս անգամ կասեցոյց զնա Աթենաս և կանգնեաց , ածելով զնա ընդ ճանապարհ առաքինութեան 'ի փառս ։ Եթէ տեսանիցես իսկ զնա վերստին թագաւորեալ փառօք յԻթակէ , մի՛ ակն ունիցիս տեսանել զնա զերծ 'ի թերութենէ . սակայն Եղլադա և Ասիա և կղզիք առհասարակ սքանչացան ընդ նա հանդերձ ամենայն թերութեամբքն , զորս բիւր ազգի ազգի բարեմասնութիւնք նորա զարմանալիք առնեն աներևոյթ ։ Բարեբաստիկ և դու ինքնին գտանիցես , եթէ տեսցես զնա և զարմասցիս ընդ նա և 'ի նախանձ նմանութեան նորա կրթեսցիս ։

Ահ խնդրեր , Տելեմաքէ , արս զեր 'ի վերոյս քան զկար պայմանի մարդկութեանս . անփորձ մանկութիւն յախուռն 'ի դատել տարակայ յօրինակաց՝ որոց պարտ էր նմա նմանել , և զառածանի 'ի ստահակութիւն անբուժելի ։ Պարտ է քեզ ոչ միայն սիրել և մեծարել զհայր քո և նմանող լինել նմին , թէպէտ և չիցէ նա ամենակատար , այլ և զԻդոմենեայ բարձրագոյն բերել կարծիս . զի թէ և բազում մասամբք ստգտեալ , բայց է նա անկեղծ 'ի բնէ , արդարակորով , առատաձեռն և բարերար , արի ամենևին , և ատեցող նենգութեան 'ի հասանելն 'ի վերայ՝ բնաւորականին զհետ

երթեալ ազատօրէն յօժարութեան ։ Բարեմասնութիւնք նորա արտաքինք մեծամեծք են առ հասարակ և վայելուչք գահոյիցն․ անկեղծութիւն նորա 'ի խոստովանել զյանցանսն, հեզութիւն նորա և համբերութիւն 'ի լսել յինէն զխստագոյն կշտամբանս, արիութիւն նորա ընդդէմ անձին յուղղել յանդիմանս ամենեցուն ըզսխալանս իւր՝ գեր 'ի վերոյ ամենայն ստգտանաց կացեալ, ցուցանեն 'ի նմա զճշմարիտ մեծանձնութիւն ։ Բարեբախտութիւն անձին կամ խրատք այլոց կարեն պահել 'ի սխալանաց ինչ զռամիկն․ իսկ զայր թագաւոր, զառածեալ ընդերկար 'ի փաղաքշանաց, առաքինութիւն ևեթ գերաշխարհիկ կարէ ածել յուղղութիւն․ և փառաւորագոյն իսկ է կանգնումն այսպիսի քան զչանկանել բնաւ ։ Իդոմենէս յանցեաւ զոր ինչ և այլք 'ի թագաւորաց գրեթէ առ հասարակ յանցանեն․ այլ գրեթէ ոչ ոք 'ի նոցանէ առաքինանայ զոր ինչ արարն Իդոմենէս յուղղութիւն յանցուածոցն ։ Զարմանայի 'ի պահուն իսկ յորում ներէր նա ինձ խօսել հակառակ անձին ։ Հա՛պա, սիրելիդ իմ Տելեմաքէ, զարմացիր և դու ընդ նա․ ոչ 'ի մեծարանս ինչ նորին զայս տամ քեզ խրատ, այլ յօգուտ քոյին ։

Այսպիսեօք խրատուք խելամուտ արար Մենտոր զպատանին՝ թէ քանի՜ վնասակար է և անիրաւ պարսաւադէտ լինել այլոց, և մանաւանդ այնոցիկ՝ որոց զբազմավտանգ և զտաժանաւոր

յանձն առեալ է զհոգ առաջնորդութեան ժողովրդոց։ Եւ ապա յաւել․ Ժամ է արդ մեկնելոյ, երթ խաղաղութեամբ․ մնամ քեզ անձկանօք, սիրեցեալդ իմ Տելեմաքէ․ յիշեա զի որք երկիւղածքն իցեն յաստուածոց, չիք նոցա երկիւղ 'ի մարդկանէ․ ծանունք հասցեն քեզ վտանգք, այլ գիտեա զի ոչ թողցէ զքեզ Աթենաս 'ի ձեռանէ։

Եւ զոյգ ընդ բանիցն թուէր պատանւոյն տեսանել զդիցուհին․ և լինէր իսկ արդեօք զուշակել նմա, զի նոյն ինքն էր Աթենաս՝ որ խրախուսէրն զնա․ բայց դիցուհին առ 'ի զարթուցանել անդրէն 'ի միտս նորա զկերպարանս Մենտորի, ասէ․ Մի մոռանար, որդեակ իմ, որ ինչ խնամս ցուցի քեզ 'ի մանկութենէ առ 'ի յարդարել զքեզ իմաստուն և քաջ հանգոյն հօր քո․ մի իւիք վերջասցիս 'ի վեհ օրինակէ և յիմաստից առաքինութեան նորա, զորս ազդել 'ի քեզ ջանացայ։

Այն ինչ արեգակն 'ի ծայրս լերանց զոսկեճաճանչ նշոյլսն արկանէր, մեկնեցան արքայք 'ի Սալենտեայ, հասին 'ի զօրս իւրեանց բանակեալս զքաղաքաւն, և չու ընդ նոսա արարեալ՝ խաղային գնային 'ի պատերազմ։ Ծածկէր դաշտն 'ի փայլիւն անտառախիտ նիզակացն, և շողիւն վահանաց զաչս շլացուցանէր․ և փոշի դիզադէզ ամբառնայր յամպս հասանէր։ Իդոմենէս և Մենտոր, որ յուղարկ գնային ընդ

արքայս նիզակակիցս, իբրև հարուստ մի հեռացան 'ի պարսպաց քաղաքին, ուր բազում առ միմեանս ցուցեալ՝ հրաժարեցին ապա յիրերաց. և ոչ ևս երկմտէին նիզակակիցք ընդ մշտատև հաստատութիւն խաղաղութեանն՝ խելամուտ լեալ ընդաբոյս մարդասիրութեանն Իդոմենեայ, զորմէ այլազգ յոյժ յառաջագոյն բերէին կարծիս. զի ոչ ըստ որում էրն 'ի բնէ՝ դատէին զնա, այլ ըստ խորհրդոց անիրաւ մարդելուզաց՝ որոց լսէր:

Այլ իբրև մեկնեցան գնացին զօրքն առ հասարակ, ած շրջեցոյց Իդոմենէս զՄենտոր ընդ ամենայն կողմանս քաղաքին. և ասէ ցնա Մենտոր. Տեսցուք որչափ մարդիկ իցեն քո 'ի քաղաքի և յանդաստանս, արասցուք նոցա հանդէս համարոյ՝ գիտել թէ քանի՞ք ամանք իցեն 'ի նոսա երկրագործք: Տեսցուք որչափ ինչ սովորաբար պտղաբերեն անդաստանքդ ցորեան գինի ձէթ և որ այլ ինչ պարէնս. զի այսպէս լիցի մեզ գիտել՝ թէ իցէ՞ երկիրդ բաւական 'ի սնուցանել զբնակիչս իւր, և յաւելուցու բերել ինչ 'ի տուրևառիկ շահավաճառութիւն ընդ օտար աշխարհս: Տեսցուք և ևս քանի՞ նաւք իցեն քո, և քանի՞ն նաւաստիք, զի պետութեանց 'ի սոցանէ չափի զօրութիւն: Այլ այց արար նաւահանգստին՝ անցեալ ընդ նաւս իւրաքանչիւր. եհարց ո՛ւր մի մի 'ի նոցանէ երթայր 'ի վաճառաշահ, զի՞նչ տանէր վաճառ, և զի՞նչ 'ի դարձին

առեալ բերէր․ զի՛նչ ծախք նաւարկութեանն էին, զի՛նչ վաճառականացն ընդ միմեանս առ և տուր, և զի՛նչ նոցա ընդ իրեարս վաճառակցութեանն պայմանք՝ առ 'ի դիտել թէ ի՞նչ իցե՞ն արդարք և հաւատարմութեամբ պահեալք ։ Տեղեկանայր դարձեալ և զնաւաբեկութեանց և զայլոց արկածից զդէպս, առ 'ի խափանել ըզտնանկութիւն վաճառականաց՝ որք ընչաքաղցութեամբ ձեռներէց լեալ յանդգնէին 'ի վեր քան զկար իւրեանց ։

Նաև օրինադրեաց տնանկացելոցն պատուհաս խիստ․ զի թէպէտ և ազատք 'ի նենգութենէ, սակայն գրեթէ միշտ առ յանդգնութեան տնանկանան․ և սահմանեաց կարգս, որովք դուն ուրեք պատահէր վաճառականաց տնանկանալ ։ Կացոյց դատաւորս՝ պահանջել 'ի նոցանէ համար զվաճառաց զշահից զծախուց և զգործառնութեանց նոցա ։ Չէր նոցա օրէն զինչս ուրուք 'ի վտանգ արկանել, և ոչ զիւրեանցն աւելի քան զկէս․ որ ինչ անձեռնհասք էին գործել միայնակ, հանգամանակաւ գործէին․ և օրէնք շահակցութեան անդրժելիք էին վասն խստութեան պատժոցն, որոց պարտաւոր օրինազանցքն գտանէին ։ Բայց համարձակ ազատութիւն էր վաճառականութեան․ և քաջ 'ի բաց 'ի ծանուոց հարկաց, վարձք ևս էին վաճառականաց՝ որք ձգէին 'ի Սալէնտ նոր վաճառակցութիւն ։

Այսու օրինակաւ գային խռնէին անդր 'ի

սակաւ ժամանակի ամենայն ուստեք ազինք . և էր վաճառականութիւն քաղաքին հանգոյն երթևեկի ջուրց ծովու , և մտանէին անդր գանձք որպէս ալիք զմիմեանըք կուտակեալք : Ազատ ամենայնի էր ելումուտ . մտանէր ամենայն ինչ պիտանի , և որ ինչ ելանէրն՝ թողոյր փոխանակ իւր գանձս : Բազմէր 'ի նաւահանգստի անդ արդարութիւն 'ի մէջ ազգաց և ազանց . և ապահարկութիւն աջակցեալ ընդ հաւատարմութեան և ընդ անկեղծութեան՝ թուէին 'ի բարձանց անտի հոյակապ աշտարակացն հրաւիրել անդր զվաճառականս հեռաստանեայս , որք յարևելից հասեալ յափանց՝ ընդ որ արփին հանապազօր 'ի ծոցոյ ալեաց վերամբառնայ , կամ 'ի համատարածն ծովէ՝ ուր խոնջ յընթացից 'ի մայր իւր դառնայ , կէին յանդորրու աներկեան իբր 'ի հայրենիս իւրեանց :

Իսկ 'ի ներքս 'ի քաղաքի անդ շրջեցաւ Մենտոր 'ի շտեմարանս և 'ի գործարանս և 'ի հասարակաց վայրս առ հասարակ : Արգել զամենայն վաճառս տարաշխարհիկս՝ որ տածեն զզեղխութիւն և զմեղկութիւն . և օրէնս եդ զգեստուց , կերակրոց , կահուց , և մեծութեան և զարդու տանց ըստ տանուտեարցն պայմանի : Տարագիր արար զամենայն զարդս ոսկեղէնս և արծաթեղէնս , և ասէ ցԻդոմենևս . Չիք այլ հնար ունելոյ 'ի չափու զծախս ժողովրդեանդ , բայց զի դու ինքն կացցես դոցա օրինակ . ապա-

քէն պարտ է քեզ երեւելի առնել զմեծվայելչութիւն արքունական, բայց շատ իսկ երեւեսցի այն Թիկնապահացդ որ զքեւ և պաշտօնէից բազմութեամբ: Շատ լիցի քեզ հանդերձ ասուի բարակաման՝ ներկեալ ծիրանի. զնոյն և աւագանիդ զգեցցի ասր՝ զոյնովն եւեթ ընդհատ, և զի գոյզն իմն վերջաւոր ոսկեթել ասղնագործեալ շուրջ զքոյդ զարդարեսցէ զհանդերձ: Զանազանակք երանգոց ցուցցեն զայլ և այլ կարգս մարդկանդ, առանց ոսկւոյ և արծաթոյ և ականց պատուականաց. և զկարգս ըստ ազնուականութեան տոհմից որոշեսջիր:

Առաջինք կացցեն, որոց է ազնուականութիւն պերճ և վաղեմի. իսկ որք 'ի գործ արքունի կամ իշխանք վաստակաւորք, զհետ նոցին վաղնջուց և երեւելի տոհմիցն շատասցին կալ, որք 'ի հարուստ ժամանակաց փայլելեն 'ի բարձրագոյն աւագութիւնս: Եւ որք յազնուականութենէ անտի վերջացեալ գտանին՝ տեղի տացեն նոցա աննախանձ, եթէ ոչ արասցես մտանալ նոցա զչափ իւրեանց՝ արագարագ զնոսա 'ի բարձրագոյն ամբառնալով 'ի բախտ, և եթէ չզեղծելոցն 'ի բարեպաշտութեան յօրինեսցես դրուատիս: Ապահովագոյն 'ի նախանձու է այն իսկ է պատիւ, որ յերկայն ազգահամարէ հաւուց նախնեաց ժառանգեալ:

Յորդորամիտ գործեսցես զառաքինութիւն և փութաջան 'ի սպաս աշխարհին՝ եթէ պսակս և

անդրիս սահմանեցես պայծառ արութեանց , և սկիզբն ազնուականութեան սերնդոց առաքինեացն լիցի այն : Որ աւագագոյնքն իցեն յետ քո՝ զգեցցին սպիտակս ժապաւէնեալս ոսկւով ՚ի ստորոտս քղանցիցն . կրեսցեն մատանի ոսկի , և զպատկեր քոյին դրոշմեալ ոսկեձոյլ ՚ի պարանոցի : Այլ որ յետ նոցա կարգ աւագանւոյ՝ զգեցցին կապոյտ ՚ի վերջաւորս արծաթիս , կրեսցեն զմատանի և մի զդրոշմած քոյին : Այլ կարգն երրորդ զգեցցի կանաչ լոկ ՚ի քղանցիցն զարդուէ . մատանի մի կրեսցէ , այլ դրոշմած ևեթ արծաթի : Կարգն չորրորդ քրքմագոյն , հինգերորդն վարդագոյն , վեցերորդն գորշ , և եօթներորդն՝ որ է կարգ վերջին սինլքոր ամբոխին՝ զգեցցի դեղին սպիտակախառն :

Այսոքիկ լիցին զգեստք եօթանեցունց այլ և այլ կարգաց ազատանւոյն . իսկ ստրկաց՝ գորշ թխագոյն : Այսպէս առանց ինչ ծախուց զանազանեսցին կարգք իւրաքանչիւր , և տարագրեսցին ՚ի Սալենտեայ արուեստք տածիչք զեղխութեան : Արուեստաւորք , որք այնոցիկ պարապէին արուեստից վնասակարաց , պարապեսցեն յարուեստս կարևորս՝ որոց սակաւ իսկ է թիւ , կամ ՚ի վաճառականութիւն և կամ յերկրագործութիւն : Մի՛ լիցի օրէն փոփոխել զնիւթ կերպասուց , և մի զձև հանդերձից . զի չէ արժան որոց ՚ի կարևոր և յազնուական սահմանեալ են ՚ի գործ՝ պարապել ՚ի հնարս մնոտի պաճուճանաց .

մի և կանանց իսկ թոյլ տայր զառածանել յայն , թէպէտ և Նուազ իցէ Նոցա ամօթալի զբաղումն այն :

Որպէս մշակ ճարտար զպտղաբեր ծառոց 'ի բաց յապաւէ զոստս անպիտանս , այսպէս Մ`են- տոր հնարէր 'ի բաց բառնալ զաւելորդ պերճու- թիւն զապականիչ բարուց , և զամենայն ինչ բարեկարգէր ազնուական և սակաւապէտ պար- զութեամբ : Սահմանեաց և զճաշ քաղաքայնոց և սորկաց , և ասէր . Ամօթ մեծ է արանց աւա- գաց համարել իւրեանց մեծութիւն զհամա- դամն՝ որ մեղկեն զոգի , և խանգարեն տակաւ զառողջութիւն մարմնոյ . փոխանակ զի պարտ է Նոցա համարել իւրեանց բարեբաստութիւն ըզ- պարկեշտ կեանս , զկարողութիւն բարերարելոյ այլոց , և զհամբաւ՝ որ առաքինութեամբքն ստա- ցանի : Ժուժկալութիւն ախորժելի առնէ զճաշ և զկարի իսկ անպաճոյճ . Նա զզօրաւորագոյն պատրաստէ առողջութիւն , և զանախտագոյն և զհաստատագոյն հեշտութիւն : Լիցի քեզ ապա ճաշ յընտիր խորտկաց , այլ առանց համեմոց պատրաստեալ . հնարք գրգռելոյ զախորժակս առաւել քան զպէտս բնութեան , է արուեստ դե- ղելոյ զմարդիկ :

Յայնժամ խելամուտ եղև Իդոմենէս չա- րեացն , զի թողեալ էր Նորա մեղկանալ և զեղ- ծանել բնակչաց Նորոյ դաստակերտին ընդդէմ օրինացն սահմանելոց 'ի Մ`ինովայ՝ զգուշանալ

'ի շուայտութենէ. բայց Մենտոր յուշ արար
նմա իմաստութեամբ զի նորոգութիւն իսկ օրի-
նացն ոչ ինչ օգնէր, եթէ ոչ օրինակ թագաւո-
րին տայր նոցա զհաստատութիւն՝ որում ոչ այլ-
ազգ մարթի յաջողել: Եւ նոյն ժամայն Իդո-
մենեւս սահմանեաց իւր 'ի ճաշ հաց ընտիր, գինի
սակաւ զքնիկ երկրին զօրաւոր և անոյշ, և կե-
րակուրս պարզս՝ որպիսիս ճաշէր երբեմն ընդ այլ
Յոյնս 'ի պաշարմանն Տրովադայ: Եւ ոչ ոք իշ-
խէր քրթմնջել զբարեկարգութենէն, զոր թա-
գաւորին յանձնէ սկսեալ էր. և ամենայն ոք
ըստ օրինակի նորին բարեկարգէր զճաշ իւր,
զառաջս կալեալ զշռայլութեան և զփափկու-
թեան՝ որ տակաւ 'ի ներքս մտանէին:

Եբարձ ապա Մենտոր և զերաժշտութիւն
թոյլ և մեղկ, որ ապականէրն զմանկտին. ըստ
նմին օրինակի և զպանդարամետական 'նուագս
արգել խստիւ, որ ոչ ինչ ընդհատ 'ի գինւոյ ար-
բեցուցանէ, և լիրբ և մոլեգին զբարս գործէ: Եւ
ամփոփեաց զերաժշտութիւն 'ի մեհեանս 'ի տօ-
նախմբութիւն և յօրհնութիւնս դից և դիւցա-
զանց՝ որք չքնաղ առաքինութեանց կացին օրի-
նակք: Դարձեալ և զճարտարապետական զարդս
երևելիս, որպիսիք են սիւնք և ճակատք և ան-
դաստակք կամարակապք, մեհենեաց ևեթ սահ-
մանեաց 'ի շինուածս. և ետ օրինակս պարզ և
վայելուչ ճարտարապետութեան, առ 'ի կանգնել
յանձուկ վայրի պայծառ և անդորր բնակարան

բազմութեան զերդաստանաց, 'ի հարաւ կոյս դիտելով, ազատ 'ի միմեանց զսենեականն յօրինեալ՝ առ 'ի դիւրաւ պահել 'ի նոսա զկարգ և զմաքրութիւն, և դիւրածախ պատրաստել զբեղեկ նոցին։

Սահմանեաց ամենայն ապարանից, բայց 'ի բնակարանաց ռամկին, որահ մեծ և գաւիթ փոքրիկ սիւնազարդ հանդերձ սենեկօք վասն ազատանւոյն. բայց արգել խառնել զաւելորդ յաճախութիւն սենեկաց։ Այդոքիկ այլ և այլ օրինակք տանց ըստ բազմութեան ընտանեաց օգնեցին 'ի զարդարել սակաւ ինչ ծախիւք զկէս քաղաքին և 'ի յօրինել զայն համեմատ և կարգաւորել, ուր միւս կէս նորին վաղակառոյց ըստ հաճոյից և ըստ մնափառութեան իւրաքանչիւր ուրուք՝ հանդերձ ամենայն մեծագործութեամբն ոչ այնպէս հաճոյ էր 'ի տեսանել և ոչ անդորր 'ի բնակութիւն։ Եւ 'ի սուղ ժամանակի դաստակերտն այն կառուցաւ, զի 'ի մօտակայ ծովեզերաց Ելլադայ հասին անդր ճարտարապետք քաջք, և յԵպիրոսէ և յայլոց աշխարհաց գործաւորք բազումք, դաշինս եդեալ զի 'ի կատարել վաստակոցն՝ տացի նոցա բնակութիւն մերձ 'ի Սալենտ, և կալցին անդ 'ի մշակութիւն՝ առնել բնակաւէտ զերկիրն։

Ոչ անտես արար Մենտոր և զնկարչութիւն և զքանդակագործութիւն. այլ սակաւուց ետ հրաման պարապել 'ի նոսին։ Վարժեարս կար-

գեաց, տեսուչս նոցին կացուցեալ կիրթս ախորժակօք 'ի քննութիւն համբակաց. և ասէր. Զէ արժան արուեստից, որ ոչ 'ի կարևորագունիցն են, յառաջ բերել նուաստս ինչ և հետևակս. վասն որոյ և պարտ է զհանճարեղս ևեթ 'ի մանկանց ընդունել անդր, որոց մարթ իցէ յառաջադէմ 'ի կատարելութիւն արուեստին նկրտել: Իսկ որք ազնուականագունիցն այնոցիկ չիցեն յարմարք արուեստից, զնոսա պիտանեգոյնս պարտ է առնել 'ի սովորական պէտս հասարակաց: Քանդակագործք և նկարիչք պարապեսցեն 'ի պահել ևեթ զյիշատակս արանց աւագաց և զպայծառ արութեանց նոցա. և 'ի շինուածս հասարակաց և 'ի շիրիմս արձանացն յաւերժ որ ինչ առաքինութիւն գերաշխարհիկ գործէ 'ի սպաս հայրենեաց:

Բայց թէպէտ և զգուշաւոր էր Մենտոր և անպաճոյճ կենցաղով կեալ ճահաւորեալ՝ սակայն ոչ արգել զշինուածս մեծակառոյցս, առ 'ի հանդէս ածել անդ ձիընթացս և կառարշաւս, գօտեկռիւ և բռնամարտիկ մրցանս, և զայլ ամենայն հրահանգս կրթութեան մարմնոյ՝ առ 'ի գործել զնոսա աջողակս և կորովիս:

Նուազեցոյց յոյժ զվաճառականս տարաշխարհիկ բազմաճաճուկ կերպասուց, զմեծագին ասղնէգործութեանց, զսպասուց ոսկւոյ և արծաթոյ՝ դրուագելոց պատկերօք դից և մարդկան և անասնոց, և զօշարակաց և զիւղոց անուշից: Սահ

մննեաց և զկահս տանց անզարդս և հաստատունս. մինչև Սալենտացւոց, որ տրտնջէին զկարօտութենէ իւրեանց, 'ի միտ առնուլ՝ թէ քանի՜ մեծութիւնք էին նոցա աւելորդք, որ խաբեբայք գոլով աղքատացուցանէին զնոսա. և որչափ առաւել արխանային հրաժարել յայնցանէ, նոյնչափ յաւելոյր նոցա տիրապէսն մեծութիւն, և ասէին ցմիմեանս. Այս իսկ է մեծութիւն արհամարհել զայնպիսի մեծութիւնս՝ որ սպառեն զգանձս աշխարհին, և նուազեցուցանել զպէտս մեր՝ ամփոփեալ զնոսա յանհրաժեշտ կարևորս բնութեան:

Այց արար ապա Մենտոր և զինարանաց և զդարբնոցաց, տեսանել թէ իցե՞ն կազմ զէնք և որ այլ ինչ մարտացու գործիք. քանզի ասէր՝ թէ պարտ է կազմ և պատրաստ կալ միշտ 'ի պատերազմ, առ 'ի զերծանել 'ի թշուառութենէ ձեռն արկելոյ յայն: Այլ իբրև ետես զի պակասէր բազում ինչ, ժողովեաց անդէն գործաւորս՝ դարբնել զերկաթ, զպղինձ և զպողովատ: Ընդէր տեսանել մրրիկ ծխախառն բոցոյ 'ի հրաբորբոք բովուց ամբարձեալ, հանգոյն ստորերկրեայ խառնձողաց՝ զոր ժայթքէ Էտնա: Մուրճադղորդ հնչէին սալք, ընդ խիտ առ խիտ հարուածովքն թօպեալք. և լերինք մերձակայք և ծովեզերք առ հասարակ տային արձագանգ: Թուէր իմն Հեփեստեայ[3] անդանօր զԿիկղոպայսն[3] խրախուսել 'ի վաստակ, դարբնելով շանթիս վեհագու-

նին դից։ Մովլին նախահօր իմաստութեամբ 'ի խորին խաղաղութեան ամենայն սպառազինութիւնք մարտի կազմ և պատրաստ լինէին։

Նոյն ապա Մ՚ենտոր ընդ Իդոմենեայ արտաքոյ քաղաքին 'ի դաշտ լայնածաւալ յանդաստանս բերրիս, յորոց բազումք թողեալ էին անգործ, և կէսք ըստ մասին մշակեալք առ պղերգութեան և աղքատութեան մշակաց. որք զի սակաւաւորք էին, ոչ գոյր նոցա խրախոյս և ոչ զօրութիւն բազկի առ 'ի կատարումն ածելոյ զերկրագործութիւն։ Մ՚ենտորի տեսանելով զերկիրն այդպէս լքեալ ասէ ցԹագաւորն. Մ՚եծացուցանել զբնակիչս իւր խնդրէ երկիրդ, և չիք 'ի դմա բնակիչ. են առցուք զարուեստաւորս առ հասարակ քաղաքիդ զաւելորդս, որոց արուեստք զեղծուցանեն ևեթ զբարս՝ ոչ առ այլ ինչ պիտանացուք, և մշակեսցեն զդաշտս զայսոսիկ և զբլուրս։ Նա՛ղ զի արուեստաւորքդ այդոքիկ սովորեալք 'ի նիստ՝ դժուարընդելք են յաշխատութիւն. բայց է և այդմ հնար։ Բաշխեսջիր 'ի դոսա զերկիրդ անգործ, և կոչեսջիր դոցա օգնականս յազգաց դրացեաց՝ վաստակել ընդ ձեռամբ նոցա զվաստակս խիստս։ Նու վաստակեսցեն մտադիւր, եթէ տացի նոցա արժանին վարձ 'ի պտղոյ երկրին՝ զոր մշակեն։ Մ՚արթ իսկ իցէ տալ նոցա առյապայ 'ի վիճակ զմասն ինչ երկրին, և յաւելուլ զնոսա 'ի ժողովուրդ քո սակաւաւոր. և եթէ իցեն նոքա ժիրք և հնազանդք օրինաց, ոչ կարաս-

ցես գտանել ժողովուրդ լաւ քան զնոսա , և լիցին 'ի հաստատութիւն պետութեան քո ։ Արուեստաւորացդ այդոցիկ փոխելոց 'ի քաղաքէ յանդաստանս կրթեսցին որդիք 'ի վաստակս և յախորժակս շինական կենաց ։ Դարձեալ և զորմածուսդ տարաշխարհիկս , որ վաստակեն 'ի կառուցանել զքաղաքդ , և յանձն առնուն մշակել զմասն ինչ երկրիդ՝ պարապելով յերկրագործութիւն , յաւել և զդոսա 'ի ժողովուրդ քո 'ի կատարել զշինուած քաղաքիդ ։ Ստադիւր կացցեն դոքա ընդ այժմու քաղցր տէրութեամբդ . և զի կորովիք են և վաստակասէրք , բնակակից լեալ ընդ արուեստաւորան փոխեալս 'ի քաղաքէ յանդաստան , յորդորեսցեն զնոսա 'ի վաստակս . և բազմամարդասցի երկիրդ , բնակեալ 'ի նմա ազգ զօրաւոր ժիր յերկրագործութիւն ։

Իսկ առ 'ի սերունդ ժողովրդեանդ՝ շատ է զի դիւրին ևեթ պատրաստեսցես նոցա զհարսանիս , և սերեսցի ազգդ 'ի բազմութիւն անհամար ։ Եւ ոչ դժուարին լիցի քեզ յաջողել այդ . յօժար իսկ է ազգ մարդկան 'ի բնէ յամուսնութիւն , աղքատութիւն ևեթ խափանէ զնոսա . արդ եթէ ոչ ծանրացուցես 'ի վերայ նոցա զհարկս , կեցցեն անկարօտ հարամբք և որդւովք ։ Զի ոչ անշնորհակալու է երկիր , տածէ բերովք իւրովք զորս խնամով մշակեն զայն . և ոչ խնայէ յումքէ զարդիւնս իւր , բայց միայն յորոց ագահեն 'ի վաստակս ։ Բազմորդիք 'ի մշակաց մեծատունք են

իցեն, եթէ ոչ աղքատացուսցէ զնոսա Թագաւոր. զի որդիք նոցա անդստին 'ի մանկութենէ օգնական լինին նոցա: Մանկագոյնք արածեն զխաշն ընդ արօտ, վարգունք 'ի տիս վարեն զնախիրն 'ի ճարակ. իսկ 'ի չափ հասեալք երկախառնեն ընդ հարս իւրեանց: Մայր նոցա 'ի տան ընդ դստերս իւր պատրաստէ ճաշ անպաճոյճ առն իւրում և սիրասուն որդւոց, 'ի դառնալ նոցա խոնջ 'ի վաստակոց տունջեան. կթէ զկովս և զմաքիս. բղխէ փրփրադէզ կիթն 'ի գուշ կաթինս: Վառէ խարոյկ մեծ, և շուրջ զնովաւ ազգատոհմն անմեղ և խաղաղաւէտ զքօսնու 'ի նուագ զերիկունն 'ի քուն մինչև անկանի քաղցր զնոքօք քուն: Պատրաստէ պանիր շագանակ և միրգ դալար իբր այն ինչ 'ի ծառոց կթեալ:

Դարձ առնէ հովիւ սրնգաւն իւրով, և 'ի մօտաւոր հանգրուանս հովուաց ուսեալ երգս նոր՝ 'ի լուր ընտանեաց իւրոց նուագէ շուրջ բոլորելոց: Դառնայ արտավարն արօրաւն իւրով. և եզինք իւր խոնջք առկախեալ ծնօտիւք յուշիկ և հանդարտ գնան առաջի, Թէպէտ և մտրակն զնոսա խթէ: Ցայգ ընդ տունջեան անձնուն կատարած վաստակք ամենայն. խաշխաշն, զոր քուն 'ի հրամանէ դից սփռէ ընդ երկիր, Թմբրեալ սփոփէ զհոգս տխուրս, զմայլեցուցեալ զէքս առ հասարակ յանուշակ 'ի նիրհ. և հանգչի անդորր իւրաքանչիւր ոք, ընդ վիշտս վաղուին ոչ յերեկորեայ եղեալ նախահոգ:

Ո՛վ ազգ բարեբաստիկ, ազատ 'ի փառասիրութենէ, զերծ 'ի կասկածանաց, հեռի 'ի չարաբաւեստ հնարից, եթէ միայն տացեն նոցա դիք թագաւոր բարի՝ որ ոչ աղմկեսցէ զնոցայն անմեղ խնդութիւն։ Եւ զի՞նչ քան զայնպիսի անգթութիւն սոսկալի կայցէ, կապտել 'ի նոցանէ ժամն փառասիրութեան և ամբարհաւաճութեան զցանկալի բերս անդաստանաց, զարդիւնս քրտանց ընձեռեալս յառատաձեռն բնութենէ՝ որ բաւական է բղխել 'ի բազմաբեղուն ծոցոյ իւրմէ զպէտս ամբաւից մարդկան, եթէ միայն վաստակաւորք իցեն և անշուայտք. բայց գոռոզութիւն և զեղխութիւն սակաւուց ոմանց զառածանէ զայլս առ հասարակ 'ի յետին չքաւորութիւն։

Իդոմենեւս ասէ. Եւ զի՞նչ առնել իցէ, եթէ ժողովուրդ այդ սփռեալ ընդ յուռթի անդաստանս անփոյթ լիցի 'ի մշակել զայնոսիկ։ Մենտոր ասէ. Ո՛չ հակառակն արասջիր սովորութեան այլոց իշխանաց. որք զօշաքաղութեամբ և առանց նախատես լինելոյ չարեաց ծանրաբեռնեն հարկօք զառաւելեալս 'ի փոյթ և 'ի ճարտարութիւն մշակութեան երկրի իւրեանց, վստահք 'ի հատուցումն հարկացն. և խնայեն յայնոսիկ, զորս պղերգութիւն թշուառագոյնս կացուցանէ։ Ընկեա զճախողակի կարգդ հարստահարիչ բարեաց և զչարաց պարգևատու, որ ածէ 'ի ներքս յուլութիւն վնասակար թագաւորին իսկ և աշխարհին առ հասարակ։ Ա՛րկ հարկս և տոյժ, և

եթէ արժան իցէ՝ պատիժս իսկ ծանունս հեղգացելոցն ՚ի մշակութիւն անդոց իւրեանց որպէս դատարկք զօրականին. և ընդ հակառակն մեծապարգևս ապահարկս առաջիր զայնոսիկ, որք ըստ աճել ընտանեաց իւրեանց ընդարձակեն զանդաստանսն մշակելոյ: Ըստ այսմ օրինակի բազմասցին ընդ հուպ ազգատոհմք, և խրախուսեասցին ամենեքին ՚ի վաստակս. և երկրագործութիւն լիցի մեծարգոյ, ոչ ևս վասն ծանրաբեռնութեանն արհամարհեալ: Դարձեալ վերստին լիցի արօրն ՚ի պատուի, զի վերամբարձիկ հայրենեաց ձեռն յաղթական անկցի զմաճով: Եւ ոչ ինչ նուազ լիցի պանծալի մշակել զվիճակ հայրենի յերանաւէտ խաղաղութեան, քան ըզպաշտպանել զայն արիաբար յաղմուկս պատերազմի: Ծաղկեսցին զքև դաշտավայրք համայն, և ոսկիափունջ պսակեալ հասկօք ձեմառցէ Դեմետր[4], և հնձան հարեալ Սպանդարամետ[3] լիակոխ ոտիւք, գինի անուշակ իբրև զնեկտար իջուսցէ առուիւ ընդ այգեստանեայց դարևանդոտ ՚ի վայր. և արձակեսցեն հովիւք խորաձորք զարձագանգս երգոց քաղցրաձայն հովուաց, որք զականակիտ բազմեալ վտակօք սըրինգս ընդ նուագ խառն հնչեցուսցեն, մինչ ՚ի ծաղկաւէտ խաշն ՚ի դալարուոջ խայտայ զնոքօք ազատ ՚ի գայլոց:

Ոչ ապաքէն ՚ի քուն ծայր բարեբաստութեան անցեալ կացցես, ո՛ Իդոմենէս, այսքանեաց բա-

ընթաց զոլով քո պատճառ, և 'ի հովանի թևոց քոց պատսպարեալ յախորժ հանգստեան ժողովուրդ այնքան։ Ո՞չ առաւել ցանկալի իցեն փառք այսպիսի քան զաշխարհաւեր պատերազմաց փառս, որ ոչ ինչ նուազ առանձինն ևս և 'ի ժամանակի յաղթութեան քան առ ազգս պարտեալս յաճախեն զկոտորածս, զաղմուկ, զարհաւիրս, զլքումն, զվհատութիւն, զսով մարգաձախ և զյուսահատութիւն։ Երանի՜ այնպիսումն թագաւորի սիրելւոյ դից, որ վեհանձն արիութեամբ նուիրի այսպէս 'ի բարեկենդանութիւն ժողովրդեան, չքնաղ տեսարան զթագաւորութիւն իւր կացուցանելով դարուց ապանեաց։ Ազինք համօրէն փոխանակ պատերազմելոյ ընդդէմ իշխանութեան նորա, գայցեն յոտս նորա աղերսաւորք պատսպարել ընդ նովաւ։

Իդոմենէս ասէ. Բայց ժողովուրդ յօրացեալ 'ի խաղաղութեան և 'ի լիութեան՝ ոչ արդեօք զեղծանիցի, և զզօրութիւնսն՝ զորս տաց նոցա՝ հակառակ ինձ դարձուսցէ։

Մենտոր ասէ. Մի՛ զայդ կասկածեր. բաղբաղայք են մարդելուզաց առ 'ի շողոմել զթագաւորս շռայլս, որք ծանրացուցանեն զհարկս 'ի վերայ ժողովրդեան։ Դու դիւրին իսկ է զառաջս ունել զվտանգիդ. օրէնք, զոր սահմանեցաքս վասն երկրագործութեան, արասցեն զնոսա վաստակասէրս. և 'ի լիութեան անդ զկարևորն և եթ

առ 'ի կեանս շնորհեսցեն, բարձեալ 'ի նոցանէ զամենայն արուեստս՝ որ պատրաստեն զաւելորդս ։ Այլ լիութիւնդ իսկ այդ նուազեսցէ հարսանեացն յաճախութեամբ և ազգատոհմից աճեցմամբ ․ զի յառաւելուլն ընտանեաց՝ անձկասցին կալուածք, և հարկ 'ի վերայ կայցէ ժրագոյնս մշակել զնոսա անդուլ ։ Մեղկութիւն և անգործութիւն ածեն զազգս 'ի ստահակութիւն և յապստամբութիւն ․ իսկ ժողովուրդ քո վայելեսցէ ապաքէն 'ի լիութեան, բայց 'ի լիութեան հացի ևեթ և արդեանց ընիկ երկրին՝ զոր քրտամբք երեսաց իւրոց ստասցի ։

Բայց առ 'ի զգուշութիւն չզեղծանելոյ ժողովրդեանդ՝ պարտ է այժմէն հաստանել սահմանս կալուածոց իւրաքանչիւր ազգատոհմի ։ Ո՛չ ապաքէն յեօթն դասս զժողովուրդ քո ըստ այլեայլ պայմանի կենաց բաժանեցաք ․ պարտ է արդ միում միում յազգատոհմից իւրաքանչիւր դասու սահմանել այնչափ ինչ երկիր, որ բաւական իցէ առ 'ի սնունդ ըստ մարդաթուի ։ Այս օրէնք անլուծանելի խափան լիցին ազնուականաց ստանալոյ զկալուածս աղքատաց ․ իւրաքանչիւր ուրուք իցէ ածու, այլ այնպէս փոքրիկ՝ զի հարկ լիցի նմա քաջ մշակել զայն ։ Իսկ եթէ յետ բազում ժամանակաց պակասեսցեն յերկրի աստ անդաստանք, գնասցեն գաղթականք այլուր ընդարձակել զսահմանս պետութեանդ ։

Պարտ համարիմ քեզ դարձեալ խափանել և

զգեղխութիւն զգինւոյ 'ի քում պետութեանդ : Եթէ յաճախութիւն յոյժ իցէ այգեստանեայց, տաշտախիղ զնոսս հրամայեսջիր առնել. զգինի ծանուցից չարեաց է ծնօղ, անտի հիւանդութիւնք, անտի կռիւք, անտի խռովութիւնք, անտի դատարկութիւն և գործատեցութիւն. անտի և ամենայն առտնին անկարգութիւնք : Եղիցի ապա գինի որպէս զմի 'ի դեղոց, և իբր օշարակ չքնաղագիւտ, առ 'ի զոհս ևեթ և 'ի տօնս նշանաւորս պահեալ : Այլ մի՛ ակն կալցես պահպանութեան կարևոր օրինացս առ 'ի յայլոց, եթէ ոչ դու ինքն լիցիս նոցա յօրինակ :

Պարտ է քեզ և զօրէնս Մինովայ 'ի դաստիարակութիւն մանկտւոյ պահել անլուծանելի. վարժեալս կարգել հասարակաց, ուսուցանել անդ զերկիւղածութիւն 'ի դից, զհայրենասիրութիւն, զօրինապահութիւն, և զմեծախոհութիւն նախամեծար առնելոյ զպատիւ քան զհաճոյս և քան զկեանս իսկ : Պարտ է քեզ և տեսուչս 'ի վերայ ազգատոհմից և բարուց իւրաքանչիւր ուրուք կացուցանել, և անձամբ իսկ հսկել 'ի տեսչութիւն. զի ոչ առ այլ ինչ թագաւորես, հովիւ կացեալ ժողովրդեան, բայց առ 'ի տքնել զտիւ և զգիշեր 'ի վերայ հօտիդ : Այսու օրինակաւ կալցիս զառաջս անհամար չարեաց և անկարգութեանց. իսկ զորոց չկարիցեան ունել, խստիւ և արագ արագ պատուհասեսջիր, քանզի գթութիւն է նահանջել զանօրէնութիւն երա-

զահաս պատժոցն երկիւղիւ . դոյզն ինչ արեան 'ի դէպ ժամանակի հեղումն զբազում արիւնհեղութեանց առնու զառաջս, և առանց խստութեան յաճախէ զերկիւղ:

Իսկ զի՞նչ խժդժագոյն կայցէ, քան 'ի հնարս ապահովութեան անձին՝ հարստահարել զժողովուրդն . չուսուցանել զնոսա, չկրթել յառաքինութիւն, չլինել նոցա սիրելի, մղել զնոսա ահարկութեամբ 'ի յուսահատութիւն, կացուցանել զնոսա 'ի դժնդակ հարկի հեծելոյ ոգեսպառ և կամ թօթափելոյ զլուծ բռնակալութեան: Ա՞յս իցէ անխռով թագաւորել, ա՞յս արահետ փառաց: Յուշ լիցի քեզ, զի թագաւորի՝ որ ամենիշխան կամի վարել տէրութիւն՝ նուազագոյն է իշխանութիւն: Աշխարհակալէ, խուժան աւերանաց ածէ զաշխարհաւ, միահեծան ժառանգէ պետութիւն . բայց անկանի աշխարհն 'ի զօրութենէ, խոպանանայ երկիրն իբր ամայի անապատ, նուազեն օրըստօրէ քաղաքք, և հատանի վաճառաշահ: Յայնժամ թագաւորն, որ ինքնին միայնակ չէ թագաւոր՝ այլ ժողովրդեամբն իւրով է մեծ, նուազի տակաւ ըստ նուազել ժողովրդեանն՝ յորմէ է զօրութիւն նորա և ճոխութի̄: Չքաւորի աշխարհն յարծաթոյ և 'ի բնակչաց, որ քան զամենայն ոսկիս ծանր է և անփոխարինելի . և հպատակք ամենազօր տէրութեան նորա գտանին ստրուկք: Ընթեն նմա, երկրպագեն վեր 'ի վերոյ, յակնարկել նորա զդողանի հարկանին . այլ ընդ յառ-

նել դոյզն ինչ խռովութեան՝ իշխանութիւնն այն անհեթեթ, մղեալ 'ի ծայրայեղ բռնակալութիւն, ոչ ևս կացցէ յոտին. չիք նորա նեցուկ 'ի սիրտ ժողովրդեան, զի զռամիկն և զազատանի հարստահարեալ գրգռեաց, ամենեցուն իսկ հարկ արար հառաչել անձկալ յեղափոխութեան: Ի նախկին հարուածոյ տապալեալ խորտակի դրօշեալն այն, և լինի կոխան ոտից. արհամարհանք, ատելութիւն, երկիւղ, ոխ, կասկածանք, և բնաւ ամենայն իսկ կիրք գումարին ընդդէմ դժպհի իշխանութեանն: Ողջագուրն, որում 'ի մնափառ բարեբաստութեանն չհամարձակէր ոք ասել զճշմարտութիւն, չգտանէ 'ի թշուառութեան իւրում և ոչ զոք՝ որ անբասիր զնա արասցէ, և Ջատագովն նմա կացցէ ընդդէմ թշնամեաց:

Զայս ամենայն լուեալ Իդոմենեայ 'ի Մենտորէ, և խելամուտ լեալ, փութացաւ անդէն լարաբաժին առնել զերկիրն անգործ և ընուլ զայն գործօնէիւք արուեստից աւելորդաց, և կատարել զամենայն խրատս Մենտորի: Պահեաց զսահմանեալսն ևեթ գործաւորաց շինուածոյ քաղաքին զանդաստանս, զորս պարտ էր նոցա յետ կատարման շինուածոյն մշակել:

———

# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ

## ԵՐԿՈՏԱՍԱՆԵՐՈՐԴԻ ԳՐՈՑՆ

1 Սպանդարամետական կամ Երիդանենին երգք 'ի պատիւ Բաքոսի կամ Դիոնիսի նուագէին փոխուգացի նուագօք 'ի գինեբրբուս․ վասն որոյ և ըստ յաճախ սովորութեան ցոփականք էին ։

2 Հեփեստոս․ տես գիրք Բ․ էջ 66 ։

3 Կիւկլոպայք․ տես գիրք Ա․ էջ 36 ։

4 Դէմետր․ տես գիրք Ե․ էջ 151 ։

5 Սպանդարամետ․ տես գիրք Ա․ էջ 34 ։



# ԱՐԿԱԾՔ

# ՏԵԼԵՄԱՔԱՅ

ՎԻՊԱՍԱՆԵԱԼ

Ի ՖԷՆԷԼՈՆԷ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍԷ

ԳԱՂՂԻԱՑՒՈՑ

ԵՒ ԹԱՐԳՄԱՆԵԱԼ Ի ՁԵՌՆ

ԷԴՈՒԱՐԴԱՅ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍԻ

ՀԻՒՐՄԻՒԶԵԱՆ

Ի ՄԽԻԹԱՐԵԱՆ ՈՒԽՏԷ



Ի ՎԵՆԵՏԻԿ

Ի ՏՊԱՐԱՆԻ ՍՐԲՈՑՆ ՂԱԶԱՐՈՒ

ՅԱՄԻ 1850 ՌՄՂԹ

# ԱՐԿԱԾՔ ՏԵԼԵՄԱՔԱՅ



## ԳԻՐՔ ԵՐԵՔՏԱՍԱՆԵՐՈՐԴ

# ՆԱԽԱԴՐՈՒԹԻՒՆ

Իդոմենէս պատմէ Մենտորի զվստահել իւր 'ի Պրոտեսիլաս, և զնենգաւորին դաւակցութիւն ընդ Տիմոկրատեայ առ 'ի կորուսանել զՓիլոկլէս և առ 'ի խարդաւանել զինքն իսկ։ Խոստովան լինի զի պատրեալ յերկոցունց 'ի նոցանէ ընդդէմ Փիլոկլեայ, պատուէր ետ Տիմոկրատեայ գնալ սպանանել զնա 'ի նաւատորմին՝ յորում զօրավարէր. և զի յելանել նորա 'ի դերև՝ խնայէ Փիլոկլէս 'ի կեանս նորա, և մեկնի 'ի Սամոս կղզի՝ թողեալ զնաւատորմն 'ի Պոլիմենէս, զոր Իդոմենեայ հրովարտակաւ կացուցեալ էր զօրավար. և զի Իդոմենէս գի-տելով չափ զդաւաճանութիւն Պրոտեսիլայ, չիշխէ տակաւին մատնել զնա 'ի մահ։

# ԱՐԿԱԾՔ ՏԵԼԵՄԱՔԱՅ



## ԳԻՐՔ ԵՐԵՔՏԱՍԱՆԵՐՈՐԴ

Ի հռչակ համբաւոյ քաղցր և արդար Թագաւորութեանն Իդոմենեայ խուռն ընթանային ամենայն ուստեք ազգք խառնել ընդ ժողովուրդ նորա, և վայելել 'ի բարեբաստութեան ընդ ցանկալի տէրութեամբ նորա: Պաշտօնեայքն ծածկեալք 'ի փուշ և 'ի տատասկ խառատանայքն հունձս առատս և պտուղս ցայնվայր ենքեանց անծանօթս: Բանայր զարգանդ իւր երկիր առ խոփ արօրոյ, և պատրաստէր զգանձս իւր առ 'ի վարձ մշակին, և շուրջանակի յամենայն կողմանց նշողէր յոյս: Ծնունդս առեալ խայտային խաշինք ընդ հովիւս և ընդ բլուրս, հնչէին 'ի բառաչ արջառոց և երինջուց լերինք բարձրաբերձք. և 'ի բազմութենէ նոցա պարարտանային դաշտք: Մենտոր զայնուհետև հայթայթեաց Իդոմենեայ, խրատ տուեալ նմա տուրևառութեամբ ընդ Պիւկետս' դարձուցին իւր՝ որ ինչ աւելորդք էին և չկա-

մէրն 'ի Սալէնտ՝ փոխանակել ընդ անդէոց, որոց կարօտէրն ։

Պարձեալ և քաղաքն և որ շուրջ զնովաւ գիւղօրէք լի էին առոյգ մանկտւով, որ յառաջն ծիւրեալ 'ի Թշուառութենէ՝ չիշխէին 'ի հարսանիս առ 'ի չյաւելուլ զաղէտս իւրեանց ։ Նոյն իբրև սկսաւ Իդոմենևս յանձին բերել մարդասիրութիւն և հայրագութ խնամս, ոչ ևս երկնչէին 'ի սովոյ և յայլոց երկնառաք պատուհասից ։ Ոչ այլ ինչ լսելի լինէր անդ, բայց ձայն ցնծութեան և հարսանեկան երգ հովուաց և մշակաց. Թուէր անդ Պան [2] ընդ հոյլս մարդապայից [3] և Փառօնայց [4] խառն ընդ յաւէրժհարսունս յօրինել պարս 'ի ձայն սրնգի ընդ հովանեաւ անտառաց ։ Խաղաղութիւն էր ամենայն ուրեք և խնդութիւն, բայց խնդութիւն համեստ. զի զբօսանք անդ ոչ առ այլ ինչ էին, բայց առ 'ի հանգիստ 'ի յերկար աշխատութենէ. վասն որոյ և հաճոյագոյնք էին և անախտագոյնք ։ Ծերք հիացեալ ընդ բարութիւնս՝ զորս 'ի յամայր ամս չյուսային տեսանել, արտասուէին զուարճախառն գորովանօք, և զդողդոջուն ձեռսն 'ի վեր ամբարձեալ՝ ասէին. Օրհնեա վեհդ աստուածոց զԹագաւոր մեր՝ որ զքոյդ բերէ յերկրի զտիպար, սքանչելագոյն յաստուածապարգև 'ի շնորհս քո ։ Ի բարեկենդանութիւն մարդկան Թագաւորէ նա. հատո նմա որ ինչ 'ի նմանէ տնօրինեն մեզ բարիք. Թոռունք մեր և Թոռնեայք ծնեալք 'ի հարսանեաց՝

որ նովաւ յաջողեն, նախ վասն ամենայնի գտցեն ճոխհպարտք, եւս և վասն կենաց իւրեանց. և լիցի նա արդարև հայր հասարակաց: Փեստայք և նորահարստունք ցնծացեալք՝ երգէին օրհնութիւնս այնմ, որ քաղցր ցնծութեանն նոցա էր պարգեւատու: Ի շրթունս համայնից, և առաւել եւս 'ի սրտի, յիշատակ անուան նորա հնչէր անլռելի. Երանի տային աչաց տեսողացն զնա, և խնդային ընդ կորուստ նորա՝ որ 'ի սուգ անհնարին զազգատոհմն առ հասարակ համակէր:

Յայնժամ Իդոմենեւս ասէ ցՄենտոր. Զիք իմ զայսպիսւոյ գորովական բերկրանաց առեալ երբէք զճաշակ, որպէս սիրելի լինելով այլոց և բարեբաստիկս զնոսա կացուցանելով. անծանօթ էր ինձ այս, և համարէի մեծութիւն թագաւորի լինել ահարկու, և 'ի ծառայութիւն նորին լեալ զմարդիկ. և որ ինչ զթագաւորաց լսէի սիրելի լեալ նոցա և ցանկալի ժողովրդեան, առասպելք թուէին ինձ. և արդ 'ի միտ առնում զճշմարտութիւն: Այլ թէ զիարդ անդուստին 'ի մատաղ տիոց զառածան միտք իմ 'ի մոլորութիւն զեղծանելոյ արքունի իշխանութեամբ; յորմէ հասին ինձ ամենայն աղէտք, լուր: Եւ սկսաւ Իդոմենեւս պատմել այսպէս.

Պրոտեսիլաս, սակաւ ինչ աւօք երիցագոյն քան զիս, սիրելի եղև ինձ քան զամենայն մանկտին: Բնաւորութիւն նորա աշխոյժ և խիզախ

ախորժելի էր ինձ. և գիտաց նա ընդ միտ մտանել ինձ՝ գրգելով զկիրս իմ, և կասկածելի արար ինձ զայլ ոք 'ի պատանեաց Փիլոկլէս անուն, նոյնպէս սիրելի ինձ. որ երկիւղած իսկ էր 'ի դից և մեծանձն, այլ զգուշաւոր. զի համարէր մեծութիւն ոչ զզօրանալն՝ այլ զյաղթել անձին և մի ինչ գործել անարժանս: Ստգտանէր համարձակ զթերութիւնս իմ, և 'ի չհամարձակելն իսկ բանիւ՝ ազդ առնէր լռութեամբն իւրով և տխրութեամբ դիմաց որ ինչ կամէրն ստգտանել: Հաճոյ էր ինձ 'ի սկզբան անդ այս անկեղծութիւն, և խոստանայի իսկ ստէպ անսալ նմա մտադիւր յամենայն կեանս իմ առ անձնապահ լինելոյ 'ի մարդահաճոյից: Եղադրէր նա ինձ որ ինչ պարտն էր առ 'ի գնալ զհետ Մենտորայ հաւրն իմոյ, և առ 'ի գործել բարեբաստիկ զթագաւորութիւն իմ: Չէր նորա իմաստութիւն ներհուն որպէս զքոյդ, Մենտոր, այլ իմաստք նորա էին առաքինիք՝ որպէս արդ խելամուտ լինիմ: Բայց տակաւ նախանձոտին այնորիկ և փառամոլին Պրոտեսիլայ չարիմաց հնարք անհաճոյ ինձ զնա արարին. իսկ նորա անփոյթ լեալ՝ թողոյր զօրանալ ոսոխին, շատ համարեալ խօսել ինձ զճշմարտութիւն՝ 'ի կամելն իմում լսել զայն. զի բարւոյն իմոյ, և ոչ իւրոյ բախտին էր 'ի խնդիր:

Պրոտեսիլաս զողացաւ զմիտս իմ, ցուցեալ զնա ինձ այր դեգ և հպարտ պարսաւադէտ ամենայն գործոց իմոց, որ չխնդրէր ինչ յինէն առ

գոռոզութեան՝ զոր մի՛ շնորհապարտ զացի ինձ, և առ սնապարծութեան՝ զոր զեր 'ի վերոյ քան զամենայն պատիւ զանձն երևեցուցէ։ Յաւելոյր և ևս, զի պատասխանին համարձակախօս առ իս զթերութեանց իմոց՝ նովին համարձակութեամբ խօսէր զայնցանէ և առ այլս, ոչինչ առնելով ինձ. և զի զարքունական ընդ վայր հարեալ զպատիւ, զարքայութեան թեկն ածէր հանդիսիւք խստակրօն առաքինութեան։ Ի սկզբան անդ չհաւատայի թէ Փիլոկլեայ մարթէր զարանել աթոռոյ իմոյ. զի է ինչ անկեղծութիւն և աննենգութիւն 'ի ճշմարիտն առաքինութեան, յոր չէ ումեք կեղպատանել, և չէ իսկ մարթ չճանաչել զայն՝ ուշիւ ևեթ նկատեալ։ Բայց անյողդողդ արիութիւն Փիլոկլեայ 'ի կշտամբել զյոռութիւնս իմ սկսանէր դժպհի լինել ինձ. շողոմք Պրոտեսիլայ, և անսպառ հնարագիտութիւն 'ի հայթայթել ինձ նորանոր զրգանս, անհանդուրժելի ևս առնէին ինձ զխստութիւն նորին։

Բայց Պրոտեսիլայ զչարեալ՝ զի ոչ ամենայն բարբանաց նորա զառխէն հաւատս ընծայէի, խորհուրդ կալաւ ոչ ևս չարախօսել զնմանէ, այլ զօրաւորագոյն ընդդէմ նորա կազմել դարան։ Այլ տես ինձ որպէս յաջողեաց նմա խաբել զիս. խորհուրդ ետ կացուցանել զՓիլոկլէս զօրավար նաւատորմին, որ պատրաստէր դիմել 'ի Կարպաթիա. և առ համոզել զիս, ասէ. Գիտես իսկ զի զովեստք իմ զնմանէ չեն ինչ կեղակարծք. ար-

դարձ այր քաջ է նա և հանճարեղ 'ի մարտի, և բարւոք քան զայլս զօրավարեսցէ. ահա զօգուտ բարւոք ծառայութեան նորա նախամեծար առնեմ քան զատելութիւն իմ ընդ նմա։

Ուրախ եղէ ընդ ուղղութիւն սրտի և ընդ արդարասիրութիւն Պրոտեսիլայ, որում զյանձանձանս կարևորագոյն իրաց աշխարհիս հաւատացեալն էի։ Գիրկս արկի նմա առ յոյժ խնդութեան, և երանէի զանձն վստահացեալ յայր՝ որ գեր 'ի վերոյ ամենայն կրից և օգտի իսկ անձին թուէր ինձ։ Այլ աւաղ, քանզի եղկելիք են թագաւորք. քաջ ևս քան զիս ճանաչէր նա զանձն իմ. գիտէր զի կասկածոտք են յաճախ թագաւորք և անփոյթք. կասկածոտք, զի հանապազ զփորձ առնուն չարարուեստ հնարից խորամանկ ոգւոց՝ որ շուրջ կան զնոքօք. և անփոյթք, զի առեալ ձգեն զնոսա զրգանք զհետ իւրեանց, և զի սովոր են 'ի ձեռն այլոց խորհել առանց աշխատ լինելոյ անձամբ։ Ուստի վստահ էր նա արկանել յիս կասկածանս և նախանձ ընդդէմ այնորիկ՝ որ մեծամեծս անշուշտ գործելոց էր. այն զի դիւրին իսկ էր լարել նմա որոգայթ 'ի հեռուստ։

Բայց Փիլոկլէս 'ի մեկնելն իւրում գուշակեաց որ ինչ ընդ նմա անցք անցանելոց էին, և ասէ ցիս. Յուշ լիցի քեզ՝ զի ոչ ևս կարացից ես պաշտպանել անձին, և դու լուիցես ոսոխի ևեթ իմում. և 'ի փոխանակել զանձն իմ 'ի վերայ քո, ոչ այլ ինչ ընկալայց 'ի քէն վարձ՝ բայց զցասումն քո։

Նաև ես ասեմ. Նշաքէս, ոչ որպէս դու զՊրոտեսիլայ խօսիս՝ խօսի նա զքէն. գովէ նա զքեզ և մեծարէ, համարի զքեզ բաւական 'ի յանձնանձանս կարևորագունից գործոց արքունի։ Եթէ երբէք սկսանիցի նա չարախօսել զքէն, ոչ ևս գտցէ շնորհս առաջի իմ։ Ե՛րթ, մի երկնչիր. խորհեաց ևեթ 'ի բարւոք կատարումն պաշտօնէից։

Զոր արար նա, և եթող զիս 'ի վարանս անհնարինս. չկարեմ ժխտել, Մենտոր, զի խելամուտ եղէ յայնժամ թէ քանի՛ կարևոր էին ինձ այլ և այլ խորհրդականք, և զի չգայր ինչ վտանգաւորագոյն համբաւոյ իմում և յաջողութեան իմոյ՝ քան միում ևեթ խորհրդականի լսել։ Ո՛ փորձ առեալ էր իմ զիմաստուն խորհրդոցն Փիլոկլեայ, զերծեալ նորօք 'ի ծանր ծանր վտանգաց՝ յորս ամբարտաւանութեամբն Պրոտեսիլայ մերձ էր ինձ անկանել։ Տեսանէի հաստատունն 'ի Փիլոկլէս զուղղութիւն և զիմաստս արդարութեան, զորս ոչ էր տեսանել 'ի Պրոտեսիլաս. այլ այնպիսի համարձակութիւն տուեալ էր իմ սմա, զի ոչ ևս գրեթէ իշխէի ընդդէմ դառնալ։ Տաղտկացեալ էի հանապազ 'ի մէջի կալով երկուց արանցն, զորս չէր մարթ միաբանել. և 'ի տաղտկութեան անդ հրապուրէր զիս վատութիւն՝ ընտրել զվտանգ աշխարհիս առ 'ի վայելս անզբաղ ազատութեան։ Չիշխէի ընդ միտ իսկ ածել զպատճառ ընտրութեանս. այլ ամօթալին այն պատ-

ճառ, զոր յանձնէ իսկ ծածկէի, ոչ ինչ նուազ ազդէր 'ի սիրտ իմ, և նոյն ինքն մղէր զիս 'ի գործ ։

Փիլոկլէս հաս 'ի վերայ Թշնամեաց, և լի բո-վանդակ կալեալ զյաղթութիւն՝ փութայր 'ի դարձ, առ 'ի կանխել խափանել զչարիս՝ յորոց խիթայրն. բայց Պրոտեսիլայ չգտեալ պարապ պատերելոյ զիս, գրեաց առ նա 'ի դիմաց իմոց՝ յօգուտ 'ի կիր արկանել զյաղթութիւնն, և արշաւել 'ի կղզի անդր Կարպաթեայ [5]։ Զի եցոյց իսկ ինձ դիւրանուաճելի զկղզին. բայց հնարիւք նորա պակասէին Փիլոկլեայ կարևորք 'ի գործ արշաւանին, և յաւել ևս հրամանս՝ որք խափան լինէին յաջողութեան գործոյն ։ Պաք-ձեալ և զմի ոք 'ի դրանիկ պաշտօնէից օգնական իւր էառ զայր ամենաժանտ, որ դիտէր լրտեսէր յարքունիս զամենայն առ 'ի հասուցանել յունկն նորա, թէպէտ և թուէր չտեսանել նոցա երբէք զիրեարս և չունել ինչ նոցա ընդ միմեանց ։ Տի-մոկրատ անուն էր նորա. և եկն 'ի միում աւուրց պատմել ինձ գաղտ՝ իբր այն թէ 'ի վեր հանեալ դաւ բազմավտանգ, և ասէ. Փիլոկլէս թագա-ւորել կամի 'ի Կարպաթիա նաւամատոյն զօրօք քովք, միաբանեալ ընդ իւր զզօրականս, և զզօրս առ հասարակ յինքն յանկուցեալ առատաձեռ-նութեամբ, և մանաւանդ եղեռնաւոր համար-ձակութեամբ՝ զոր ներէ նոցա. ամբարտաւա-նեալ է նա յաղթութեամբն. ահա գիր նորա,

յորում զխորհուրդ Թագաւորութեանն յայտնէ միում 'ի բարեկամաց իւրոց. և չիք տեղի երկբայութեան, յայտնի են հաւաստիքն:

Ընթերցայ զգիրն, և թուէր ինձ ձեռագիր Փիլոկլեայ. զի յար և նման կեղծեալ էր 'ի Պղատոնեայ դաւանակցութեանցն Տիմոկրատայ: Ապշեցայ ընդ այն, վերծանէի զայն ստէպ, և չկարէի կարծել 'ի Փիլոկլեայ գրեալ զայն, զմտաւ ածեալ 'ի յոյզս խորհրդոց իմոց զայնչափ և զայնպիսի անկեղծ հաւաստիս հաւատարմութեանն նորա և զտիրասէր նախանձուն: Այլ զինչ առնել էր ինձ, եթէ չհաւանել գրոյն՝ որ ճշմարտիւ թուէր ձեռնագրեալ 'ի Փիլոկլեայ: Իսկ իբրև ետես Տիմոկրատ զի տեղի ետու պատրանացն, ոչ ևս անդ զկայ էառ, այլ յաւել տարակուսանօք. Ասէ՞ թէ իշխիցեմ ազդ առնել ինչ քեզ 'ի գրիդ. Փիլոկլէս գրէ առ բարեկամ իւր՝ խօսել զաղտ ընդ Պղատոնեայ զկնոջ, զոր ծածուկ նշանագրաւ յայտ առնէ. անշուշտ և Պղատոնեայս դաւակից է նմին, և միաբանեալ ընդ նմա ընդդէմ քո: Գիտես իսկ զի ինքն Պղատոնեայս ստիպեաց զքեզ 'ի յղել զՓիլոկլէս ընդդէմ կարպաթացւոց, և ոչ սակաւ ժամանակ է՝ յորմէ հետէ լռէ նա 'ի չարախօսելոյ զՓիլոկլեայ, գովէ իսկ զնա, և անբասիր առնէ յամենայնի. և մտերմաբար 'ի բազմաց հետէ վարէին նորա ընդ միմեանս: Ահ ինչ երկբայիմ զի խորհրդակից իցէ Պղատոնեայս ընդ Փիլոկլեայ առ 'ի բաժանել յիւրեանս զԿարպա-

թիս ։ Նա ընդդէմ ամենայն հրահանգաց Մար-
տի ձեռնարկեալ, վտանգեաց զնաւատորմն առ
հասարակ՝ առ 'ի յագուրդ փառամոլութեան իւ-
րոյ ։ Կարծիցես թէ 'ի փառս Փիլոկլեայ վատա-
կէր նա, եթէ չէին դաւակիցք միմեանց. չիք իսկ
և չիք երկբայութիւն ընդ երկոցուն դոցա միա-
բանել ընդ միմեանս վասն գերագահ իշխանու-
թեան, և գուցէ առ 'ի կործանել իսկ զաթոռ
քո ։ Գիտեմ զի զայսոսիկ խօսելով՝ զքէն վրի-
ժուց նոցա յանձն ձգեմ, եթէ երբէք ընդդէմ
մտերմական խրատուցս թողուցուս տակաւին նո-
ցա իշխանութիւն 'ի ձեռին. այլ չէ ինձ փոյթ,
շատ է զի յայտնեցի զճշմարտութիւն ։

Այս բանք Տիմոկրատայ ազդեցին սաստկա-
պէս 'ի սիրտ իմ. ոչ ևս յերկուանայի ընդ մատ-
նութիւն Փիլոկլեայ, և ընդ Պրոտեսիլայ իսկ
կասկածէի ընդ դաւակցութիւն ։ Իսկ Տիմոկրատ
յաւել և ասէ. Եթէ կաս մնաս նուաճելոյ Փի-
լոկլեայ զկղզին, ոչ ևս լիցի քեզ պարապ խափա-
նելոյ զխորհուրդ նորա. փութա յապահովել
զքեզ մինչդեռ ժամանակ 'ի ձեռս է ։ Սոսկա-
ցեալ էի ընդ խորամանկ կեղծաւորութիւն մարդ-
կան, և չգիտէի յո՛ վստահել. զի յետ մատնու-
թեանն Փիլոկլեայ 'ի յայտ գալոյ, ամենայն ա-
ռաքինութիւն կեղակարծ էր ինձ ։ Խորհէի կո-
րուսանել վաղ ընդ փոյթ զդաւաճանն, բայց
երկնչէի 'ի Պրոտեսիլայ, և վարանէի զինչ առ-
նել ընդ նա. քանզի վտանգ էր ինձ և 'ի դատա-

պատրել զնա և 'ի վստահել 'ի նա : Ի վարանս տարակուսի չկարացի լռել, և յայտնեցի Պրոտեսիլեայ զկասկած իմ զՓիլոկլեայ : Նա զապշութիւն պատճառեցաւ, և ցուցանէր ինձ զուղղութիւն նորա և զանփառասէր զնացս, դրուատէր զվաստակս նորա, և զամենայն հնարս 'ի կիր արկանէր առ 'ի հաւաստի առնել զբարեկամութիւն իւր ընդ նմա : Իսկ Տիմոկրատ ազդ առնէր ինձ ստէպ զհամախոհութիւն նոցա, և փութացուցանէր զիս 'ի կորուստ Փիլոկլեայ մինչդեռ մարթէր ինձ զառաջս առնուլ զչարեաց : Տե՛ս ինձ, սիրեցեալդ իմ Մենտոր, քանի թշուառք են թագաւորք, և իբր խաղալիկք մարդկան՝ որք թուին ահիւ և դողութեամբ կալ առաջի նոցա :

Կարծելով հնարս խորագէտ քաղաքավարութեան առ 'ի շփոթել աղմկել զՊրոտեսիլաս, արձակեցի գաղտ զՏիմոկրատ 'ի նաւատորմանն՝ սպանանել զՓիլոկլէս : Նա այնպէս քաջ կեղծաւորեցաւ Պրոտեսիլաս զպատրանս, զի 'ի դիւրախաբն երեւել՝ առաւելապէս խաբեաց զիս : Արդ երթեալ Տիմոկրատայ՝ եգիտ զՓիլոկլէս տագնապեալ յարշաւանին, թափուր յամենայն պիտոյից. քանզի Պրոտեսիլայ երկմտեալ ընդ յաջողութիւն կորստեան ոսոխին ստայօդ նաւական, պատրաստեալ էր նմա միւս այլ հնարս կորստեան պարտութեամբ մարտին՝ յոր յուսացուցեալն էր զիս, որով անվրէպ մեռանէր Փիլոկլէս ցասման իմում : Բայց Փիլոկլէս արիու-

թեւամբն իւրով և հանճարով, և զօրականին սերտ ընդ նմա սիրով, ժուժկալ լինէր դժուարայաղթ մարտին. և թէպէտ գիտէին զօրքն առ հասարակ զի յանդուգն էր գործն և վտանգաւոր կրեա-ցւոց, սակայն ձգնէին 'ի յաջողութիւն գործոյն՝ իբր այն թէ կեանք և բարեբաստութիւն իւ-րեանց 'ի յաղթութեան անդ կային. և ամենայն ոք խնդամիտ դիմադրաւէր 'ի վտանգ ընդ ձե-ռամբ իմաստուն զօրավարին, որ սիրելի ամենե-ցուն զանձն ընծայեցուցանէր:

Վտանգ մեծ էր Տիմոկրատայ ձեռն մխել 'ի զօրավարն 'ի խուռն անդ զօրաց, որք խանդակաթ սիրէին զնա. բայց կոյր է փառամոլութիւն, և ոչ ինչ դժուարին թուէր Տիմոկրատայ առ 'ի հա-ճել զԱրոտեսիլաս, ընդ որում խորհէր սիրել 'ի վերայ իմ 'ի մեռանել Փիլոկլեայ: Քանզի Արոտեսիլայ դժպհի էր այրն առաքինի՝ որոյ տե-սիլ եւեթ կշտամբէր զոճիրս նորա, և որ կարէրն խրատուք իւրովք տապալել զամենայն խորհուրդս նորա: Տիմոկրատայ յինքն յանկուցեալ զերկուս 'ի սպայից՝ որ միշտ առընթեր կային Փիլոկլեայ, և խոստացեալ նոցա պարգևս մեծամեծս 'ի դի-մաց իմոց, ապա ասէ ցՓիլոկլէս. Գամ 'ի հրա-մանէ արքայի ասել ինչ գաղտ առաջի երկոցունց եւեթ սպայիցդ: Նա իբրև առանձինն լինէին, ձգէ զսուր 'ի կողս նորա. այլ վրիպեալ հարուա-ծոյն՝ վէր 'ի վերոյ եւեթ գործէ վէրս: Յայնժամ Փիլոկլեայ աներկիւղ արիութեամբ խլեալ զսուրն

'ի ձեռաց նոցա, հարկանէ զնոսա ինքն և զերկոսին զաւակիցս նոցա, զաղաղակ բարձեալ: Պոլիմեն զօրքն, խորտակեն զգլուխս, և զերծուցանեն զՓիլոկլէս 'ի ձեռաց երեցունցն, որք Թէպէտ և վիրաւորք՝ խառն 'ի խուռն զնովաւ յարձակեալ էին: Ձերբակալ առնեն զնոսա, և 'ի կամելն անդէն և անդ առ զայրոյթ սրտմտութեան յօշ յօշ պատառել զնոսա, Փիլոկլէս արգելու զայն. և տուեալ առանձինն զՏիմոկլեա, հարցանէ զնա ողջոյն առ իմէ՞ 'ի չարանենգ դաւաճանութիւնն յայն եկեալ էր: Նա առ ահի մահուան ցուցանէ անդէն զդաւաճանակիցսն մահու նոցա տուեալ յինէն. և զի վասն իսկ են մասնակիցք առ հասարակ, խորհի անձնատուր լինել, յայտնելով զամենայն հնարս դաւաճանութեանն Պրոտեսիլայ:

Փիլոկլէս սոսկացեալ ընդ այնպիսի չարութիւն մարդկային, կալաւ խորհուրդ լի ամենայն իմաստութեամբ և հեզութեամբ. քանզի անպարտ ցուցեալ զՏիմոկլեա առաջի ամենայն բանակին, զգուշութեամբ պահապանաց արձակեաց զնա 'ի Կրետէ. և թողեալ զզօրավարութիւն իւր Պոլիմենեայ, որպէս 'ի հրովարտակի իւրում հրաման տուեալ էր՝ կալ նմա զօրավար 'ի մեռանել Փիլոկլեայ, և ապա յորդորեալ զզօրականսն 'ի տիրասէր հաւատարմութիւն, անց գիշերայն Թեթև նաւակաւ 'ի Սամոս, ուր խաղաղութեամբ աղքատին և մենաւոր վարէ կենցաղ, անդրխագործութեամբ զաւուրն հայթայթեալ պարէն, ոչ

ես կամելով լսել զխաբեբայ և զանիրաւ մարդ-կանէ, և մանաւանդ զթագաւորաց՝ զորս հանապազ թշուառացոյցս և կորոյս քան զամենայն մարդիկ ։

Յայնժամ Մենտորի կարճեալ զբանս Իդոմե-նեայ, ասէ. Այս իցէ՞ն ժամանակք բազումք, յորմէ հետէ 'ի վերայ հասեր ճշմարտութեան իրացն ։ Իդոմենեւս ասէ . Այո, այլ տակաւ խորա-մանկ հնարից Պրոտեսիլայ և Տիմոկրատայ հա-սու եղէ . գժտեցան իսկ նոքա ընդ միմեանս, զի դժուարին է յոյժ չարաց կալ միաբան . և գժտու-թիւն նոցա յայտնեաց զվիհն՝ յոր մղեալն էր նոցա զիս ։ Արկնեալ անդրէն Մենտորի, ասէ. Այս ոչ խորհեցար երբէք 'ի բաց արձակել զերկոսեան ևս ։ Իդոմենեւս ասէ. Ուա՛ղ, և չգիտիցես սի-րեցեալդ իմ Մենտոր զտկարութիւն և զտար-տամութիւն արքայից . մանաւանդ լեալ միանգամ 'ի ձեռս զեղծ և յանդուգն մարդկան՝ որ գիտիցեն զհնարս կարևոր առնելոյ նոցա զանձինս, չիք նոցա այնուհետև յոյս ազատութեան . և զորս առաւել արհամարհեմն, ընդ նոսա զգուշութեամբ ևս գնան և մեծապարգևս զնոսա առնեն . գարշէի 'ի Պրոտեսիլայ, սակայն շնորհէի նմա զամենայն իշխանութիւն ։ Պատրա՜նք նորանշան . խնդայի զի չէր ինձ անծանօթ այրն, և չիշխէի հանել 'ի նմանէ զիշխանութիւնն՝ զոր տուեալ էր նմա . դարձեալ զի հաճոյ ևս էր նա ինձ և ըստ մտի, ճարտար 'ի գգուել զկիրս իմ, և նախանձաւոր օգտի իմում ։ Այլ թո՛ղ զայս, անբասիր զանձն

առնէի այնու՝ զի չգիտէի իսկ թէ կայցէ երբէք առաքինութիւն ճշմարիտ. և առ 'ի չգիտելոյ ընտրել զայրս առաքինիս 'ի յանձնանձանս գործոց իմոց, կարծէի թէ չգուցէ երբէք ոք այնպիսի 'ի վերայ երկրի, և զառաքինութիւն համարէի ցնորս ինչ անէական, և ասէի ընդ միտս. Առ ի՞նչ իցէ ինձ յարուցանել խռովս առ 'ի զերծանել 'ի ձեռանէ միոյ ուրուք ապիրատի, և անկանել 'ի ձեռս այլոյ ուրուք ոչ ինչ նուազ փառասիրի և նենգաւորի: Ես 'ի դառնալ Պոլիմենեայ նաւատորմամբն, ոչ ևս խորհեցայ առնուլ զԿարպաթիա. և Պրոտե-սիլաս չկարաց ամենայն խորամանկութեամբն ծածկել յինէն զվիշտ իւր ընդ զերծումն Փիլո-կլեայ 'ի Սամոս:

Կրկնեալ անդրէն Մ՝ենտորի, ասէ. Եւ տա-կաւին թողե՞ր 'ի ձեռս Պրոտեսիլայ զյանձնան-ձանս իրաց աշխարհիդ յետ այդպիսւոյ եղեռնա-ւոր մատնութեան: Իդոմենէս ասէ. Ատելի էին ինձ յանձնանձանք իրաց և հոգ տեսչութեան. և 'ի մերժել զնոսա 'ի բաց, հարկ էր փոփոխել զա-մենայն կարգս՝ սահմանեալս 'ի դիւրութիւն իմ, և հրահանգել զայլ ոք, որ ծանր էր ինձ և դժուա-րին էր. և լաւագոյն համարէի անտես առնել զխորամանկ հնարս Պրոտեսիլայ, քան համա-րեալ ստիպել ևեթ ընդ մտերիմս այնու՝ զի չէր ինչ զանխուլ յինէն անհաւատարմութիւն նորա, և ոչ բոլորովին խաբեալ զանձն համարէի այնու՝ զի ոչ յանդգէտս խաբէի: Յայտնէի իսկ երբէք

երբէք առ Պրոտեսիլաս զչժկամակութիւն իմ առ 'ի բերել զլուծ նորա, մինչեւ իսկ ընդ նմա ստէպ, եպերէի լու 'ի լու ամենեցուն զգործս ինչ նորա, և հակառակ նմին տայի վճիռ: Այլ զի գիտէր նա զզոռոզութիւն իմ և զանգործութիւն, ոչ ինչ հոգայր ընդ գժդմնութիւն իմ. դիմէր անյողդողդ անդրէն յասպարէզ, մերթ թախանձանս, և մերթ ողոք և հրապոյր 'ի կիր արկանէր. և մանաւանդ 'ի դառնանալ իմում ընդ նմա' ասաւել ևս զուն գործէր յաճախել ինձ նորանոր զբօսանս առ 'ի մեղկել զիս, և կամ առ 'ի պարտանել զիս 'ի գործ' ուր գտանէրն պարապ կարեւոր զանձն ինձ ընծայեցուցանելոյ, և հանդէս առնելոյ տիրասէր նախանձու:

Թէպէտ և զգուշանայի 'ի նմանէ, այլ զզուանօք կրիցս ածէր նա զիս 'ի քարշ. գիտակ էր նա զաղանեաց սրտի իմոյ, սփոփէր զիս 'ի վարանս, և դողացուցանէր զամենեսեան իշխանութեամբ իմով: Այս զի՞ յերկարեմ, չկարացի վճարել զնա 'ի կորուստ: Բայց 'ի կալ մնալ նորա յիշխանութեան' ոչ ոք 'ի լաւաց իշխէր աղդ առնել ինձ զբուն օգտակարն. ոչ ևս լսելի լինէր յատենի իմում բարբառ արդարախօս. հեռացաւ յինէն ճշմարտութիւն, և մոլորութիւն կարապետ կործանմանն զահոյից հան յինէն զվրէժ Փիլոկլեայ' զոր մատնեցի անգութ փառամոլութեանն Պրոտեսիլայ: Տիրասիրագոյնք իսկ և հայրենասէրք օրէն համարեցան թողուլ զիս 'ի պատրանս 'ի տեսիլ ահագին վտանգին:

Նորկնչէի իսկ, սիրեցեալդ իմ Մ՛ենտոր, թէ զուցէ ճշմարտութեան հերձեալ զմեզ ծագէր երբէք յիս՝ յաղթեալ հնարից մարդելուզաց. քանզի դժպհի էր ինձ այնուհետև լոյս ճշմարտութեան, զի ոչ ևս գոյր յիս զօրութիւն հետևելոյ նմա. զգայի զի մնայր ինձ տաղնապել յանողոքելի խղճէ մտաց, առանց կարելոյ զերծանել յաղետից անտի: Մ՛եղկութիւն իմ և տկարութիւն Պրոտեսիլայ տակաւ 'ի յիս բառնայր յինէն զրեթէ 'ի սպառ զլոյս ազատութեան. և ոչ կամէի տեսանել և ոչ ցուցանել այլոց զկորուստ իմ: Գիտես իսկ, սիրեցեալդ իմ Մ՛ենտոր, թէ որպէս գոռոզ և սնափառ դաստիարակելին թագաւորք, չկամին երբէք սխալս յանձն առնուլ. առ 'ի ծածկել զմի ինչ 'ի սխալանաց՝ բիւրս յաւելուն գործել սխալանս. փոխանակ խոստովան լինելոյ զպատրանս իւրեանց և փութալոյ յետս կալ 'ի մոլորութենէն, յանձն առնուն ընդ ամենայն կեանս իւրեանց կալ 'ի պատրանսն: Այսպիսի է թշուառութիւն վատ և անփոյթ թագաւորաց, այսպիսի էի և ես յորժամ հարկ եղև ինձ դիմել 'ի պաշարումն Տրովադայ:

Ի մեկնելն իմում կացուցի զՊրոտեսիլաս իշխան 'ի վերայ ամենայն իրաց աշխարհին. և ցորքան ժամանակս 'ի բացեայ էի, հրամայէր նա գոռոզութեամբ և անգթութեամբ: Կրետէ առ հասարակ հեծէր ընդ բռնաւորութեամբ նորա,

և ոչ ոք իշխէր ազդ առնել ինձ զհարստահարութենէ ժողովրդեան. զիտէին ամենեքին զի դժպհի էր ինձ լսել զճշմարտութիւն, և զի անողորմ վրէժխնդրութեամբ Պրոտեսիլայ մատնէի զոք իշխէինն չարախօսել զնմանէ: Բայց որչափ չիշխէր ոք բողոքել, այնչափ առաւել զայրանային չարիքն. թոյլատուեցնա զիս հալածել և զքաջն Մենտոր, որ փառօք մեծաւ շահատակեալն էր ընդ իս 'ի պաշարումն Տրովադայ. քանզի մախայր ընդ նմա, որպէս և ընդ ամենայն սիրելիս իմ և ընդ առաքինիս: Գիտասջիր, սիրեցեալդ իմ Մենտոր, զի աստի ամենայն չարիք եկին հասին 'ի վերայ իմ. ոչ մահ որդւոյս վտարանջեցոյց զկրետացիս, այլ վրէժխնդրութիւն դիցն զրգռեալ 'ի վատութենէ իմմէ, և ատելութիւն ժողովրդեան զայրացեալ յանիրաւութեանցն Պրոտեսիլայ: Ի հեղուլ իմում զարիւն որդւոյս, վաղ իսկ կրետացւոցն պարտասելոց 'ի բռնաւորութենէ սպառեալ էր համբերութիւն. և սոսկումն անօրէնութեանս 'ի յայտ եւեթ էած զմթերեալն 'ի բազմաց հետէ 'ի խորս սրտից զդառնութիւն:

Տիմոկրատ, որ ընդ իսն էր 'ի պատերազմին Տրովադայ, զրէր գաղտ առ Պրոտեսիլաս որ ինչ և իմանայրն: Զգայի քաջ զգերութիւն իմ, բայց ջանայի վտարել զայն 'ի մտաց՝ ապիկար յելս իրացն: Այլ 'ի նշկահել կրետացւոց 'ի դարձին իմում, առաջինք 'ի փախստեայս եղեն Պրոտեսիլաս և Տիմոկրատ. և լքեալ թողուին իսկ զիս

արդեօք, եթէ ոչ և ես ինքնին աճապարէի զհետ նոցա 'ի փախուստ։ Մ՛ի երկբայիր, սիրեցեալդ իմ Մ՛ենտոր, զի որք յանդուգն խիզախեն 'ի յաջողութեան՝ վատասրտեն 'ի ձախողութիւնս և զդողանի հարկանին, և ցնորին միտք նոցա ընդկարուսանել զազատ իշխանութիւն. որչափ առաւել գոռոզանան՝ այնչափ առաւել խոնարհեալ ընդ երկիր սողան, ծայրէ 'ի ծայր յանկարծ փոխաբերեալ։

Կրկնեալ անդրէն Մ՛ենտորի, ասէ. Դու ընդէ՞ր յետ խելամուտ լինելոյ չարութեան արանցդ՝ դեռ ես ունիս զդոսա առ քեզ։ Ահ ինչ են զարմանք ընդ հեռանել դոցա քեզ, զի չզտանէին այլազգ առաւելագոյն շահ. և 'ի միտ առնում զանցիշաչարութիւն քո 'ի տալ դոցա տեղի ապաւինի 'ի նորակերտ քաղաքիդ. այլ առ ինչ յետ զփորձ առնլոյ այնքանեաց աղետից մատնել զքեզ դարձեալ 'ի ձեռս դոցա։

Իդոմենէոս ասէ. Չգիտես քանի՛ անօգուտ է փորձ վատ և անփորձ թագաւորի որ չգիտիցէ խորհել. դժգոհ է ընդ ամենայն ինչ, և չիշխէ ուղղել և ոչ զմի ինչ։ Սովորոյթ բազմամեայ շղթայօրէն կապէր զիս ընդ նոսա, և պատեալ պաշարեալ կայի 'ի նոցանէ համապազ։ Յորմէ հետէ կամ աստ, արկին զիս 'ի ծախս ամբաւս՝ զորս տեսեր, սպառեցին զզօրութիւն նորածին պետութեանս, և յարուցին 'ի վերայ իմ զպատերազմդ՝ որում անմարթ էր ինձ առանց քո

զղէմ ունել։ Այն աղէտք, զորս 'ի Կրետէ կրեցի, պատրաստեալ կային ինձ և 'ի Սալենտ. այլ զու-ուր ուրեմն բացեր զաչս իմ, և ետուր վհատելումս խրախոյս ազատութեան 'ի գերութենէ. չգիտեմ զինչ ներգործեալ քո յիս, յորմէ հետէ առ իս կաս՝ թուիմ փոխեալ յայլ յայլ։

Յաւել ապա Մենտոր հարցանել՝ զգնացից Պրոտեսիլայ յետ յեղափոխութեան իրաց աշխարհին, և ասէ Իդոմենես. Զամենայն հնարս խորամանկութեան 'ի գործ արար 'ի զաւ հասանել ձեր այսր. 'ի սկզբան անդ հնարէր 'ի ձեռն այլոց կասկածելի առնել զձեզ ինձ. չասէր ինչ ինքն զձէնջ, բայց այլք ղրդեալ 'ի նմանէ գային ազդ առնել ինձ. Զգոյշ լեր յօտարականացդ երկոցունց, մի 'ի դոցանէ խաբեբային Ողիսեայ է որդի, իսկ միւսն նենգամիտ և խորամանկ, երկոքին ևս շրջմոլիկք՝ յերկրէ յերկիր աստանդականք. ո՞ գիտէ զինչ և մտրումն այսմիկ դաւաճան գործիցեն։ Նախատախնդիրքդ այդոքիկ ինքնին իսկ ահա պատմեն խռովութիւնս յարուցեալ մեծամեծս ամենայն ուրեք՝ ուր և գնացեալ են։ Նորակերտս այս պետութիւն, որ գայթ 'ի գայթի կայ, առ դոյզն ինչ աղմուկ շփոթի լիցի դիւրակործան։

Իսկ Պրոտեսիլաս թէպէտ և ոչ ինչ չարախօսէր, բայց հնարէր ցուցանել վտանգաւոր և ծայրայեղ զբարեկարգութիւնս՝ յորս ձեռնարկել ըստ խրատուց քոց. և զօգուտ անձին իմոյ ինձ 'ի

դէմն ածեալ, ասէր. Ի պատրաստել քո լիութիւն ժողովրդեանդ՝ ոչ ևս վատտակեսցեն դոքա, այլ անքացեալ ընթատասցին, և լիցին դիւրապատրաստք յապստամբութիւն. տկարութիւն ևեթ և թշուառութիւն յարդարեն զնոսա հլուս, և նուաճեն 'ի հնազանդութիւն: Փորձէր յաճախ զնախնին իշխանութիւնն վարել 'ի վերայ իմ, և զհետ իւր ձգել զիս 'ի քարշ, տիրասէր նախանձու զկիրսն պատրուակելով, և ասէր. Ընդ 'ի սփոփումն ժողովրդեան զարքունականդ ընդ վայր հարեալ զիշխանութիւն, դովլին իսկ մնաս մեծ գործես և ժողովրդեանդ. զի առ 'ի պահել զնա 'ի խաղաղութեան, պարտ է ընկճել զնա:

Ընդ որս տայի պատասխանի. Գիտացիք քաջ 'ի հարկի ունել զժողովուրդն, սիրելի նմա զանձն ընծայեցուցանելով, 'ի սփոփել անդ զնա՝ անմոռաց զելի ունելով զիշխանութիւն իմ, պատուհասելով զյանցաւորս անաչառապէս, և պատրաստելով մանկտւոյ բարւոք դաստիարակութիւն և ժողովրդեան հրահանգս խիստս, որպէս զի անպաճոյճ վարեսցեն կենցաղ տակաւապէտք և վատտակասէրք: Նա յաւելուլ. Ոչէ, և իցէ հարկ սովամահ առնել զժողովուրդս առ 'ի հնազանդեցուցանել զնոսա. չիցէ այդ անգթութիւն և խուժադուժ քաղաքավարութիւն. չտեսանեմք իսկ ժողովուրդս բազումս ընդ քաղցր առաջնորդութեամբ տիրապէրս և հաւատարիմս: Եւ այս պատճառք են ապստամբութեանց, այլ փառասի-

լութիւն եւ գժտութիւն աւագանւոյ՝ յաննուլ նոցա ապերասան համարձակութիւն եւ 'ի վազել կրից նոցա ըստ սահման. այլ մեղկութիւն զեղխութիւն եւ անգործութիւն մեծի եւ փոքու. այլ կարի յոյժ բազմութիւն զօրականին՝ որ 'ի խաղաղութեան ոչ պարապէ 'ի կենցաղօգուտ վաստակս. այլ յուսահատութիւն ժողովրդեան 'ի հարստահարութենէ. այլ խստութիւն եւ գոռոզութիւն թագաւորաց, եւ մեղկութիւն նոցա՝ որով անպիտանք գտանին առ 'ի տքնել 'ի վերայ ազգաց եւ ռամկին եւ առ 'ի խափանել զաղմուկս: Այսոքիկ են պատճառք ապստամբութեանց, եւ ոչ լինութիւն հացի՝ յոր երկրագործն վայելէ 'ի խաղաղութեան, քրտամբք երեսաց իւրոց շահեալ զայն:

Իսկ. իբրեւ ետես Պրոտեսիլաս զանդրդուելի հաստատութիւն իմ, փոխեաց զգնացս իւր ընդ իս 'ի հակառակն. եւ զհետ գալով խնամոցն՝ զորս ցրել ոչ կարաց, կեղծաւորէր ախորժել զայնս՝ իբր խելամուտ այնոցիկ լեալ, եւ շնորհապարտ առ իս զանձն դաւանէր վասն խելամտութեանն: Ջանխէ նա արդ քան զիղձս իմ 'ի սփոփումն աղքատաց, մինչ նախ առաջի առնէ ինձ զկարիս նոցա, եւ բողոքէ զաւելորդ ծախուց: Այլ գիտես իսկ զի գովէ զքեզ, եւ ցուցանէ առ քեզ մտերմութիւն, եւ զամենայն հնարս հնարի առ 'ի հաճել զմիտս քո: Իսկ Տիմոկրատ ոչ եւս սիրով է ընդ նմա, այլ մրցիշխան կամի կալ. եւ Պրոտեսիլաս նա-

խանձրնդդէմ ոգորի. և 'ի գժտութենէ նոցա ընդ միմեանս եղև ինձ գիտել ըստ մասին զնենգաւորութիւն նոցա։

Յապաղեցաւ Մենտոր և ասէ. Ո՞րքան ուրեմն վատթարացար, մինչև ներել նենգաւորացն բռնանալ զայսչափ ամն 'ի վերայ քո՝ գիտելով իսկ զնենգ նոցա։ Իդոմենևս ասէ. Ո՛չ այդ, չգիտես քանի զօրաւորք են այք նենգաւորք 'ի վերայ մեղկ և անփոյթ Թագաւորի, որ զամենայն տեսչութիւն աշխարհին 'ի նոսա առնէ ապաստան։ Բայց Պրոտեսիլաս, որպէս ասացի, համառակէ արդ խորամուց քոց յօգուտ հասարակաց։

Արգնեալ ամողջէն Մենտորի, և զժպիտ 'ի զգօնութիւն փոխեալ, ասէ. Գիտեմ իսկ թէ քանի զօրաւորք են չարք քան զբարիս 'ի վերայ Թագաւորաց. և դու ինքնին զտամնիս նոցին յաբացոյց ահաւոր։ Համարիս ինև զաչս քո բացեալ 'ի վերայ Պրոտեսիլայ. բայց տակաւին խցեալ կան աչք քո, և թողուս զյանձանձանս իւրաց աշխարհիդ 'ի ձեռս առն՝ որ կենաց իսկ չէ արժանի։ Գիտասջիր զի չարք չեն ինչ ապիկարք 'ի բարեգործել, այլ անխտիր են 'ի գործել զբարի և զչար՝ որ ինչ և օգնէ փառասիրութեան նոցա։ Դիւրաւ գործեն զչար, անարգելք յիմաստից բարութեան և առաքինութեան. այլ և զբարիս գործել չէ ինչ նոցա դժուարին, յապականութենէ մտաց բերեալք 'ի նոյն՝ առ 'ի պատրել զմարդիկ կերպարանօք բարւոյ։ Արդարև չեն

ընդունակք առաքինութեան՝ թէպէտ և առաքինեանալ թուիցին. այլ կարող են յաւելուլ յայլ չարիս իւրեանց զչարագոյնն, ասեմ՝ իսկ զկեղծաւորութիւն։ Պրոտեսիլաս առ ՚ի կալ մնալ յիշխանութեանն՝ պատրաստ գտցի միշտ գործակից լինել քեզ, ցորչափ կամիցիս անդարձ կամօք գործել զչարիսն. այլ ՚ի նշմարել ՚ի քեզ զթուլութիւն, ոչ կորուսցէ զպատեհ զառածանելոյ զքեզ անդրէն ՚ի մոլորութիւն, և դարձցի համարձակ յընտանեկն իւր ՚ի խաբէութիւն։ Իսկ կարիցե՞ս կեալ առաքինութեամբ և խաղաղութեամբ, ցորչափ այդպիսի ոք այր դարանիցի քեզ յարաժամ, և ցորչափ հաւատարիմն քո Փիլոկլէս աղքատ և անփառունակ կեցցէ ՚ի Սամոս։

Գիտես քաջ, ո՛ Իդոմենէս, զի դրանիկ յանդուգն և խորամանկ զառածանէ զթագաւոր խօթամիտ. բայց պարտ է գիտել քեզ և զայն, զի է թագաւորաց միւս ևս ոչ ինչ նուազ աղէտ, մոռանալ զիւրաւ զառաքինութիւն և զվաստակս հեռաւորաց։ Արեար բազում, որ շուրջ զթագաւորօք կան, վեր ՚ի վերոյ գործեն ՚ի նոսա տպաւորութիւն վասն բազմութեանն. միայն որ առ ընթեր կայ նոցա և մարդահաճէ, նա ազդէ ՚ի նոսա. այլոցն ամենեցուն դիւրեղծական է յիշատակ։ Իսկ մանաւանդ առաքինեացն նուազագոյն ազդէ ՚ի նոսա զօրութիւն. զի առաքինութիւն ոչ միայն օտար է ՚ի մարդահաճելոյ, այլ և յանդիմանէ զխօթամտութիւն նոցա և ընդդէմ դառ-

նայ նոցին ։ Այլ զի՞նչ զարմանք եթէ ոչ սիրեն ժողովուրդք զԹագաւորս․ զի և ոչ սոքա սիրելի զանձինս ընծայեցուցանեն, և ոչ այլ ինչ սիրեն՝ բայց զփառս իւրեանց և զհաճոյս ։



# Ծ Ա Ն Օ Թ Ո Ւ Թ Ի Ւ Ն Ք

## ԵՐԵՔՏԱՍԱՆԵՐՈՐԴԻ ԳՐՈՑՆ

1 Պեւկետք, ազգ սահմանակից Դաւնեաց բնակեալ յերկրի՝ որ արդ կոչի Պուլի ՚ի սահմանս Նէապօլսոյ:

2 Պան դիք դաշտաց անդեաց և հովուաց, գտիչ սրնգի:

3 Մորփադայք նոխազոտունք դիք անտառաբնակք. տես Գիրք Բ. ծան. 8:

4 Փաւնք դիք դաշտայինք անտառաբնակք:

5 Կարպաթոս, որ արդ կոչի Սքարփանթօ, կղզի ՚ի միջերկրական ծովու ՚ի մուտս Արշիպեղագեայ, ընդ Կրետէ և ընդ Հռոդոս:

6 Մերիոն կառավար Իդոմենեայ արքայի ՚ի տրովական մարտին. զոր Հոմերոս նմանեցուցանէ Արեսի վասն քաջութեանն:



# ԱՐԿԱԾՔ ՏԵԼԵՄԱՔԱՅ



## ԳԻՐՔ ՉՈՐԵՔՏԱՍԱՆԵՐՈՐԴ

# ՆԱԽԱԴՐՈՒԹԻՒՆ

Մենտոր ստիպէ զԻդոմենեւս աքսորել զՊրոտեսիլաւս և զՏիմոկրատ 'ի Սամոս, և դարձուցանել անտի զՓիլոկլէս՝ տալ նմա անդրէն բարձ և պատիւ: Եգեսիպպեայ յանձն առեալ խնդութեամբ զպատուէրն արքունի, հասանէ երկոքումբք վտարանդեօքն 'ի Սամոս, և տեսանէ անդ զբարեկամն իւր զՓիլոկլէս գոհ յաղքատին և 'ի մենաւոր կեանս իւր: Փիլոկլէս բազում դժուարութեամբ յանձն առնու դառնալ առ իւրսն, առ 'ի հնազանդել ևեթ դիցն հրամանաց. և ելեալ 'ի նաւ ընդ Եգեսիպպեայ, հասանէ 'ի Սալենտ. ուր ընդունի զնա սիրով Իդոմենեւս, որ փոխեալն էր բնաւին յայր այլ:

# ԱՐԿԱԾՔ ՏԵԼԵՄԱՔԱՅ



## ԳԻՐՔ ՉՈՐԵՔՏԱՍԱՆԵՐՈՐԴ

Զայսոսիկ այսպէս խօսեցեալ Մենտորի ընդ Իդոմենեայ՝ համոզեաց զնա տարագրել զՊրոտեսիլաս և զՏիմոկրատ, և կոչել առ իւր զՓիլոկլէս: Միայն խափան էր կամաց Թագաւորին անաչառ խստութիւն Փիլոկլեայ՝ յորմէ խրթայրն, և ասէ. Սիրելի ինձ և մեծարոյ է Փիլոկլէս, բայց խրթալի է ինձ դարձ նորա սովորելումն 'ի մանուկ տիոց 'ի գովութիւնս 'ի սպաս և 'ի գգուանս հաճոյից, զորս չիք ինձ յուսալ 'ի նմանէ. 'ի գործել իմում ինչ՝ ընդ որ չէր նա հաւան, դէմք նորա տխուր բաւականք էին 'ի դատապարտել զիս. և առանձինն ընդ իս գնացք նորա, թէպէտ և մեծարանօք և ցածութեամբ, այլ խիստ էին և անախորժ:

Մենտոր ասէ. Զգիտիցես զի իշխանք մարդահաճութեամբ զեղծեալք խիստ և անախորժ համարին զհամարձակախօսն և զանկեղծ. և ոչ

այսչափ միայն, այլ և կարծեն յետնեալս 'ի տի-
րանիրութենէ և 'ի հպատակութենէ զորս
միանգամ չիցեն ծառայամիտք և յօժարք 'ի
մարդահաճել զնոսա, յորժամ անիրաւեալ զեղ-
ծանին իշխանութեամբն իւրեանց: Նմանայն
բան անաչառ և արիական թուի նոցա յան-
դուգն պարսաւաղէտ և ապստամբողական. և
յայն վատութիւն ժամանեալք, մինչև ամե-
նայնի՝ որ չիցեն փաղաքշանք՝ խոցել զնոսա և զայ-
րացուցանել: Աւ թող զայս, իցէ արդեօք Փիլո-
կլէս խիստ և անախորժ. այլ աղէ՝ չիցէ՞ լաւա-
գոյն խստութիւն նորա քան զնենգաւոր մար-
դահաճութիւն խորհրդականաց քոց: Ո՞ւր իցէ
գտանել զոք անթերի. և թերութիւն ասելոյ
քեզ համարձակ զճշմարտութիւն չիցէ՞ քան զայլ
թերութիւնս նուազ երկիւղալի. զի՞նչ իսկ ասեմ.
չիցէ՞ թերութիւնս այս կարևոր առ 'ի խրատել
զքոյին թերութիւնս, և առ 'ի յաղթել դժկա-
մակութեանդ քում 'ի լսել ճշմարտութեան՝ յոր
զառածեցոյց զքեզ մարդահաճութիւն: Կարօ-
տիս ումեք՝ որ ոչ այլ ինչ խնդրիցէ բայց զճշմար-
տութիւն, որ առաւել քան զքեզ գիտիցէ սիրել
զքեզ, որ հակառակ կամաց քոց ազդեսցէ քեզ
զճշմարտութիւն, և որ զամենայն ամուրս ապաս-
տանի առարկութեանց քոց տապալեսցէ. ահա
այրդ այդ, որում կարօտիդ, Փիլոկլէս: Յուշ
լիցի քեզ, զի բարեբաստիկ է թագաւոր՝ որոյ
յամենայն թագաւորութեան իւրում իցէ ոք

այդպիսի, պատուականագոյն քան զամենայն զանձս աշխարհին. մեծագոյն քան զամենայն աստուածասաստ պատուհաս է կորուսանել զայնպիսի ոք այր, անարժան գտեալ նմին՝ չգիտելով օգտել նովաւ:

Պարտ իսկ է ճանաչել զթերութիւնս արանց բարեաց, այլ ոչ այնու յետս կալ յօգտելոյ զնոսա 'ի կիր արկանելոյ: Լցո զթերին նոցա, և մի յանդուգն անձնատուր լիցիս 'ի նախանձ նոցին անխոհականն. բայց ունկն դիր նոցա քաղցրութեամբ, մեծարեսջիր զառաքինութիւն նոցա, ցոյց ամենեցուն զի գիտես զյարգ նոցա, և զգոյշ լեր չլինել որպիսի էիրդ ցարդ: Թագաւորք իբրև զքեզ զառածեալք շատ հանճարին արհամարհել ևեթ զայս չարաբարոյս, և ոչ զգուշանան 'ի նոցանէ. վստահին 'ի նոսա զիրս աշխարհին, և լնուն զնոսա պարգևօք: Դարձեալ և զլաւ որեարն պարծին ճանաչել, այլ չշնորհեն ինչ նոցա բաց 'ի սնոտի դրուատեաց, չհաւատան նոցա գործ ինչ, չտան համարձակութիւն, և ոչ բարերարեն ինչ նոցա:

Յայնժամ Կղոմենէս ամաչեաց ընդ յամեցումն իւր ցայն վայր ազատելոյ զանմեղութիւն 'ի հարստահարութենէ, և պատուհասելոյ զզըրպարտիչս նորին: Չէր ինչ դժուարին Ս`ենոտրի հանգել զթագաւորն 'ի սպանութիւն իսկ սիրելոյն. զի 'ի կասկածել միանգամ թագաւորի զսիրելեացն իւրոց և 'ի դժկամակել ընդ նոսա,

լքեալ և 'ի նեղ անկեալ՝ խնդրէ կորուսանել զնուսա, բարեկամութիւն իւր ընդ նոսա անհետանայ, և վաստակք նոցա 'ի մոռացօնս դառնան. ոչ ինչ փոյթ է նմա ընդ կործանումն սիրելեաց իւրոց, եթէ միայն ոչ ևս տեսցէ զնոսա։

Անդէն վաղվաղակի հրաման ետ թագաւորն Հեգեսիպպեայ միում յաւագաց դրանն՝ առեալ տանել զՊրոտեսիլաս և զՏիմոկրատ 'ի Սամոս', և փոխանակ նոցա դարձուցանել զՓիլոկլէս յաքսորանաց։ Ապշեցաւ Հեգեսիպպոս ընդ պատուէրն, և 'ի խնդութենէ սրտին արտասուելով ասէ. Այժմ օրհնեսցէ զքեզ ժողովուրդ քո, տէր արքայ. երկոքեան դոքա ածին զամենայն աղէտս 'ի վերայ քո և ժողովրդեանդ. 'ի քսան ամաց հետէ ամենայն այր լաւ հեծէ յերեսաց անգութ բռնաւորութեան դոցա, և հեծել իսկ հազիւ իշխէ. և որ միանգամ խնդրէ մատչել առ քեզ, և ոչ 'ի ձեռն դոցա, մատնի վրէժխնդրութեան դոցա։ Եւ ապա յայտնեաց արքային Հեգեսիպպոս զբազում նենգութիւնս նոցա և զանգըթութիւնս, որոց նա անգէտ էր բնաւ, զի ոչ ոք իշխէր ամբաստանել զնոցանէ. պատմեաց և զդաւաճանութիւն իմն նոցա 'ի կորուստ Մենտորի, որում գաղտ հրաւէր լեալ էր. և սոսկացաւ թագաւորն 'ի լսել զայն ամենայն։

Փութացաւ Հեգեսիպպոս գնալ ձերբակալ առնել զՊրոտեսիլաս յապարանս իւր. որ թէպէտ և ոչ իբրև զարքունիս ընդարձակ, այլ առաւել

քան զարքունիս անդորր և զուարճալի էր, և գեղապատուեստ ճարտարապետեալ. և Պրոտեսիլայ զարդարեալ էր զայն յարենէ հիքաց: Այր նա յայնժամ՝ 'ի սրահ մարմարեայ առ բաղանեօք՝ ընկողմնեալ ըստ հաճոյս 'ի բազմոց ծիրանի ոսկեթել, և թուէր խոնջ և պարտասեալ 'ի վաստակոց. աչք նորա և յօնք էին 'ի յոյզս տխուր և դժնեայ: Շուրջ ակըմբեալ աւագագոյնք պետութեանն, դէտք 'ի քթիթ ական նորա կային՝ յերկիւղել ըստ կրից նորա զդէմս իւրեանց: Ընդ բանալ նորա զբերան իւր, աղաղակէին ամենեքին հիացեալք ընդ բանս նորա. ոմն 'ի գլխաւորաց ակըմբին ճառս ծաղրալիցս կուտակեան բանիւք յօրինէր զվաստակոց նորա վասն թագաւորին. այլ ոք աստուածարդի զնա կոչէր, 'ի հօրէն դիցն յԱրամազդայ զմայր նորա առեալ յղացեալ ընդ խաբս, և 'ի լոյս զնա ածեալ: Անդուստ ոմն 'ի քերթողացն ասէր զնա վարժեալ 'ի Մուսայից, և հաւատարեալ Ապողոնի յերկս մտաց. և այլ ոք քերթող վատագոյն և լիրբ՝ հնարագէտ զնա գեղպատուեստից կոչէր և հայր և բարեբաստութիւն ժողովրդեան, նկարագրելով զնա ամաղթեղջիւր՝ 'ի ձեռին:

Իսկ Պրոտեսիլաս հարևանցի վէր 'ի վերոյ ունկն դնէր գովասանութեանցն, արհամարհանօք իմն՝ իբր բարձրագունից ևս արժանաւոր գովեստից, և իբր առ շնորհս զիջանելով 'ի լուր այնոցիկ: Ի մարդելուզաց անտի ոք համարձա-

կեցաւ իսկ հծծել նմա յունկանել կատականս զբարեկարգութեանցն Մ՝ենտորի. և 'ի ժպտել Պրոտեսիլայ՝ ակնաւ ակումբն առ հասարակ ծիծաղել, թէպէտ և զանխուլ իսկ էր 'ի բազմաց ասացեալն։ Այլ 'ի դառնալ իշխանին 'ի խոհս և 'ի գոռոզ յառաջին կերպարանս, դարձեալ և նորա լռեցին ահիւ։ Բազումք յազնուականաց դէտակն ունէին դառնալոյ Պրոտեսիլայ յայսկոյս 'ի լուր նոցին, և թուէին տագնապեալք և միով յոյզք առ 'ի խնդիր շնորհաց, և կերպարան նոցա աղաչաւոր բարեխօսէր վասն նոցա. խոնարհեալ կային, որպէս մայր առ ոտս բազմաց կայ յաղերս դիւց 'ի բժշկութիւն միածնի իւրոյ։ Այլ թէպէտ զայրոյթ անհաճոյ էր 'ի սիրտս ամենեցուն ընդդէմ նորա, սակայն խնդութիւն զարդ և զարմանս 'ի դէմս բերէին։

Այլ ահա Ագեսիպպոս անդր 'ի ներքս յարձակեալ՝ խլեաց զսուսեր նորա, և յայտ արար նմա զհրամանն արքունի գնալոյ ընդ իւր 'ի Սամոս։ Ընդ լուր հրամանին անկաւ կործանեցաւ խրոխտ ամբարտաւանութիւն նորա որպէս վէմ հատեալ 'ի գահաւանդէ լերին։ Անդ էր տեսանել զնա անկեալ ահիւ. և դողութեամբ յոտս Ագեսիպպեայ. լայր, խուճապէր, թոթովէր, դանդաչէր, և փարէր զծնգովք այնորիկ՝ յորոյ վայրիկ մի յառաջ չհայէր իսկ յերեսս. և որք շնթէին զնովաւ, ընդ տեսանել զկործանումն նորա անկանելի՝ փոխեցին զշողոմն յանողորմ թշնամանս։

Հեգեսիպպոս չեթող նմա պարապ, ոչ հրաժեշտ տալոյ ընտանեացն, և ոչ առնլոյ զծածուկ թըղթեանն. այլ ամենայնն բերաւ առ արքայ: Ի նմին պահու ձերբակալ եղև և Տիմոկրատ մինչդեռ անկասկած ամենևին կայր, կարծելով գըժտութեամբն ընդ Պրոտեսիլայ ազատ գոլ 'ի համակործանն ընդ նմա անկանելոյ: Այլին 'ի նաւ մի պատրաստական, և հասին 'ի Սամոս. անդ Հեգեսիպպոս եթող զհէքսն զերկոսին, առ 'ի լրումն թշուառութեան նոցա կացուցեալ զնոսա 'ի միասին: Ընդ նոքա զայրագին զմիմեանս թշնամանէին վասն եղեռնութեանցն՝ որ ածին 'ի վերայ նոցա զկործանումն, յուսահատք 'ի տեսանելոյ միւսանգամ զՍալէնտ, և դատապարտեալք յաքսոր անդարձ՝ հեռի 'ի կանանց և յորդւոց իւրեանց, չասեմ իսկ 'ի բարեկամաց, զի չէին իսկ նոցա. ընկեցիկք յերկիր անծանօթ, ուր հարկ էր նոցա վաստակօք ձեռաց հայթայթել զկեանս իւրեանց՝ սովորելոցն 'ի բազում ամաց 'ի զրգանս և 'ի պերճութեան, և հանգունատիպք գազանաց վայրենեաց պատրաստք միշտ 'ի պատառել զիրեարս:

Եւ ապա խնդիր արար Հեգեսիպպոս զՓիլոկլեայ, և գիտաց զի 'ի միում ուրեք 'ի լերանց հեռի 'ի քաղաքէն բնակէր յայրի, և զարմանալեօք իմն խօսէին զնմանէ ամենեքին, և ասէին. Որմէ հետէ 'ի կղզւոջ աստ է այրն այն, ոչ ումեք ինչ մեղաւ, զարմանալի է ամենեցուն համբերութեամբն երկասիրութեամբ և խաղաղու-

թեամբ, չքաւոր է և գոհ. և թէպէտ հեռի կայ աստ 'ի գործոց արքունի, և չեն նորա գանձք և իշխանութիւն, սակայն ոչ դադարէ 'ի բարերարելոյ արժանաւորաց, և հնարագէտ է 'ի հաճել զամենեսեան՝ որ դիմեն առ նա։

Խաղաց գնաց Հեգեսիպպոս 'ի քարայր անդր, և եգիտ զայն բաց և դատարկ. զի աղքատութիւն և բարեմտութիւն ոչ հարկ առնէին Փիլոկտեայ յելանել անդ յայրէն՝ փակել զդուռն։ Փսիաթ խոշոր անկողինն էր նորա. և հուր դուն ուրեք լուցանէր, զի չուտէր ինչ եփեալ. յամարայնի կերակուր նորա էր միրգ դալար, և 'ի ձմերայնի արմաւ և պաղատիտ. և ուղխ ականակիտ զահավէժ հոսեալ բուժէր զծարաւ նորա։ Ոչ ինչ էր նորա 'ի քարայրին բաց 'ի գործեաց կարեւորաց 'ի քանդակ, և բաց 'ի գրոց ինչ՝ զորս երբեք երբեք ընթեռնոյր, ոչ առ 'ի զարդ մտաց և ոչ 'ի ճարտարկախոյզ ըղձից, այլ առ 'ի հրահանգել զմիտս իւր պարապ առեալ 'ի վաստակոցն, և առ 'ի վարժս առաքինութեան։ Իսկ 'ի քանդակագործութիւն իսկ ոչ առ այլ ինչ պարապէր, բայց առ 'ի կրթել զմարմինն, առ 'ի չկալ անգործ, և առ 'ի շահել զկեանս իւր առանց կարօտելոյ ումեք։

Հեգեսիպպոս 'ի մտանել 'ի քարայր անդր՝ զարմացաւ ընդ քանդակսն, որ չև ևս կատարեալ էին. յորս էր և Արամազդայն այնպիսի վեհ և մեծավայելուչ դիմօք, զի յայտնապէս 'ի նմա

գուշակել էր զանմահիցն հայր և զմահացուաց։ Այր անդ և Մրիսին վէս և խրոխտ կերպարան տարաձնալից. բայց ընտանականութեան քան զայլսն առ հասարակ էր Մթենասայն՝ որ խրախուսէր զա-րուեստս. դէմք նորա ազնուական և ախորժ, հասակ անձնեայ և առոյգ, և ձև այնպիսի կեն-դանատիպ՝ զի թուէր իմն դիմել 'ի պատերազմ։ Ադեսխարայեայ 'ի զնին անդրեացն զուարձացեալ, ել առաջ յայրէն. և տեսեալ 'ի բացուստ ընդ հո-վանեաւ ծառոյ մեծի զՓիլոկլէս, զի բազմեալ 'ի գալարուոջ ընթեռնոյր, դիմեաց առ նա։ Իսկ Փի-լոկլէս 'ի տեսանելն զնա՝ վարանեալ ընդ միտս իւր ասէր. Ո՞ւր իցէ նա իմքն Ադեսխարայս, ընդ ո-րում կեցի ընդ երկար 'ի Կրետէ. այլ ընդդէր իցէ նմա գալ 'ի կղզի այսր հեռաւոր. մի արդեօք ստուեր նորա իցէ 'ի սանուգական ապահովաց յետ մահուան եկաւորեալ։ Այս մինչ դեռ 'ի վարանման էր, մերձ մատեաւ Ադեսխարայս. և ոչ ևս կարա-ցեալ Փիլոկլեայ երկբայել, գիրկս արկ նմա և ա-սէ. Դու՞ աստ իցես սիրեցեալդ իմ և վաղեմի բարեկամ. զի՞նչ դէպք, որպիսի՞ մրրիկ արկ զքեզ 'ի ծովեզր այսր, առ ի՞նչ թողեր զԿրետէ. մի գուցէ արկածք նմանավրիշտք իմոյս յափշտակեցին զքեզ 'ի հայրենեաց։

Պատասխանի ետ Ադեսխարայս և ասէ. Ոչ արկածք ինչ, այլ շնորհք դից ածին զիս այսր։ Այս պատմեաց նմա զերազմամեայ բռնաւորութիւն Պրոտեսիլայ, զդաւակցութիւն նորա ընդ Տիմո-

կրատայ, զաղէտս՝ զոր նոքա 'ի վերայ հասուցին Իդոմենեայ, զկործանումն թագաւորին և զփախուստ 'ի ծովեզերս երեկորնեայս, զհիմնարկութիւն Սալենտեայ, զհասանել անդ Մենտորի և Տելեմաքայ, և թէ որպէս հանճարեղ իմաստիւքն Մենտորի խրատեալ թագաւորն՝ մերժեաց յերեսաց իւրոց զմատնիչսն զերկուսին։ Յաւել և ևս զվարել նոցա 'ի Սամոս 'ի վիշտս աքսորանաց՝ յորս նոքա արկին զնա ինքն զՓիլոկլէս. և 'ի վերայ էած, զի հրամանաւ արքունի գայր ածել զնա 'ի Սալենտ, ուր կամէր զնա թագաւորն կացուցանել 'ի վերայ ամենայն իւրոց աշխարհին և լնուլ զնա պարգեւօք, խելամուտ լեալ անմեղութեան նորա։

Պատասխանի ետ Փիլոկլէս և ասէ. Տեսանես զքարայրդ դադար գազանաց վայրի քան բնակութիւն մարդոյ. առաւելագոյն գտի 'ի դմա հանգիստ և քաղցրութիւն յայսքան ամաց, քան յոսկեձեղուն ապարանս 'ի Կրետէ։ Ոչ ևս խաբիմ 'ի մարդկանէ՝ անտես նոցին, և անլուր փաղաքուշ բարբառոյ նոցա և չարաթոյն հրապուրանաց. ոչ ևս կարօտիմ նոցա, ձեռք իմ փապարեալք յաշխատութիւն տան ինձ զկարեւոր կերակրիկն իմ պարզ և դիւրապատրաստ. և դոյզն ահա այս կրգլեակ շատ է ինձ 'ի ծածկոյթ։ Անկարօտ յամենայնէ վայելելով 'ի խորին խաղաղութեան և 'ի քաղցր ազատութեան՝ որով խրատիմ 'ի մատենից վարել յօգուտ, զի՞նչ այլ ևս իցէ ինձ

խնդրել 'ի մէջ նախանձոտ խաբեբայ և յողդողդ մարդկան։ Մ՛ի, սիրեցեալդ իմ Եզեսիպպէ, մի զրկեր զիս 'ի բարեբաստութենէ աստի։ Պրօտեսիլաս 'ի կամելն մտանել զարքայ և կորուսանել զիս, անձնամատն գտաւ. և ոչ միայն չկարացեալ ստանանել ինձ, այլ և պարգև գերագոյն պարգևեաց ինձ՝ զերծուցեալ զիս յաղմկէ և 'ի գերութենէ տեսչութեան. նմա շնորհապարտ գտանիմ վասն ցանկալի միայնութեանս և անվնասակար հաճոյից՝ յորս վայելեմ։ Դարձիր արդ, Եզեսիպպէ, դարձիր առ արքայ. օգնական լեր նմա 'ի բառնալ զթշուառութիւնս մեծութեան, և ապա առ նմա որ ինչ խնդրեսդ յինէն զի արարից։ Եւ զի աչք նորա փակեալք ընդ երկար 'ի տեսիլ ճշմարտութեան՝ բացեալ են անագան ուրեմն արդ խրատու առնդ իմաստնոյ՝ զոր Մենտոր անուանես, կալցի զնա առ իւր. իսկ ինձ յետ միանգամ նաւաբեկութեան ոչ ևս արժան է ելանել 'ի նաւահանգստէ՝ ուր մրրիկ արկ զիս ըստ բախտի, և մտանել զիս դարձեալ ալեաց։ Աւա՛ղ, քանի ողբալի են թագաւորք. աւա՛ղ, քանի արժանի են կարեկցութեան և որք ծառայեն նոցա։ Եթէ չարք իցեն, զո՛ր չարիս ոչ հասուցանիցեն մարդկան՝ վասն որոց զանձեալ կան նոցա տանջանք 'ի տխուր տարտարոսին. իսկ եթէ բարիք, զի՞նչ խոչք և խափանք չկայցեն նոցա առաջի՝ զորս պարտ է նոցա տապալել, զի՞նչ դաւք և դաւանք՝ յորոց պարտ է խուսափել, և

քանի՜ աղէտք՝ զորս պարտ է նոցա կրել։ Թո՛ղ զիս, Ադեսիպպէ, դարձեալ միւսանգամ աղա-չեմ, թո՛ղ զիս ՚ի բարեբաստիկ իմում ազա-տութեան։

Այս մինչդեռ Փիլոկլէս զայսոսիկ սրտառուչ բարբառէր, դիտէր զնա Ադեսիպպոս և զարմա-նայր. զի տեսեալ էր զնա ՚ի բարձրագոյն աւա-գութիւնն ՚ի Կրետէ վտիտ մարմնով նիհար և ոգեսպառ. քանզի եռանդուն և խիստ բնաւո-րութեամբն հալէր և մաշէր անդ՝ զայրացեալ ՚ի տեսանելն զչարութիւն անպատուհաս, և ոչ անվրէպ կարգաւ՝ որպէս կամէրն՝ զիրս աշխար-հին յաջողեալ, որով վտանգէր վաստառողջու-թիւն նորա վասն պարտուց պաշտամանն։ Իսկ ՚ի Սամոս գիրացեալ էր և զօրացեալ, և յանցեալ հասակի զառոյգ մանկութեան ՚ի դէմս բերէր զգեղեցկութիւն, գոգցես իմն նորաստեղծեալ կազմած մարմնոյն զզաստ անդորր և ժիր կենօք։

Արկնեալ անդրէն Փիլոկլեայ ժպտելով ասէ. Զարմանաս տեսանելով զիս կերպարանափոխ լեալ. միայնութիւն ետ ինձ զառոյգութիւնս զայս և զքաջողջութիւն. ստոխք իմ պարգևեցին ինձ զոր չէր ինձ մարթ ստանալ ՚ի բարձրագոյն աւագութեան։ Կամիցիս արդ զի թողեալ զքա-րութիւնս ճշմարիտս՝ զհետ երթայց սնոտեաց և յառաջին աղէտս իմ եղէց խորասոյզ. մի՛ և քան զ՚Արոտեսիլաս անգթանար, նախանձել ընդ բա-րեբաստութիւնն՝ զոր նա ետ ինձ։

Ի զուր Աղեքսանդրոս յաւել ողոքել զնա աղերսական բանիւք, և ասէր. Ներկարեկիր ուրեմն ես, և ոչ ինչ փոյթ է քեզ տեսանել զազգականս քո և զբարեկամն՝ որ անձկան դարձի քում, և 'ի յոյս ևեթ ողջագուրելոյ զքեզ լնուն ցնծութեամբ։ Բայց դու որ երկիւղածդ ես 'ի դից, և հաւատարիմ 'ի լնուլ զպարտս քո, չհամարիցիս ինչ քեզ պարտս ծառայել Թագաւորին քում, օգնել նմա 'ի բարերարել և 'ի յօրինել զբարեբաստութիւն այնչափ ժողովրդոց։ Որչ՞ն իցէ ինքնասիրութիւնդ այդ տմարդի՝ մեծարել զանձն քան զբնաւ ազգ մարդկան, և խնդրել զանձին դիւր քան զբարեկենդանութիւն քաղաքացեաց առ հասարակ։ Այլ Թող զայս, համարեսցին ամենեքին Թէ առ ոխակալութեան չկամեցիս դառնալ առ արքայ։ Եթէ անիրաւեցաւ նա առ քեզ, չճանաչէր զքեզ. ոչ զքեզ ինքն զրաւդ, և զարդարդ Փիլոկղէս կամեցաւ նա կորուսանել, այլ զայլ ոք ամենևին. իսկ այժմ զի ճանաչէ նա զքեզ, և ոչ այլ ինչ այլոյ ունի զքեզ, զնոյն զառաջին սէրն բերէ 'ի սրտի՝ բազկատարած մնալով գիրկս արկանել քեզ, և զաւուրս և զժամս Թուելով։ Այլ իցէ՞ս այնքան խստասիրտ, և անողորմելի առ աղերս արքայի քո և բարեկամաց ամենեցուն սիրելեաց։

Փիլոկղէսյ Թէպէտ և 'ի սկզբան անդ 'ի ճանաչելն զԱղեքսանդրոս՝ յուզեցան գութք, այլ 'ի լսել զբանս զայսոսիկ՝ խռովեցոյց զդէմն իւր.

և հանգոյն ժայռի՝ ընդ որ 'ի զուր մաքառին մրրիկք, և յոր ալիք առ հասարակ կոծեալ խորտակին, կայր անսասան. և ոչ տեղի տայր սիրտ նորա աղերսանաց և փաստից: Բայց իբրև հատաւ Եգեսիպպեայ յոյս հաւանեցելոյ զնա, ազդեցան նմա 'ի թռիչս հաւուց յընդերս զոհից և յայլ ևս 'ի հմայս կամք դիից՝ գնալ ընդ Եգեսիպպեայ: Եւ ոչ ևս ընդդէմ դարձեալ, պատրաստէր 'ի չու. այլ ոչ առանց վշտաց թողոյր զանապատն՝ ուր զայնչափ ամս կեցեալն էր, և ասէր. Աւա՜ղ, զիա՜րդ թողից զքեզ քարայրդ ցանկալի, ուր նինջ անդորրաւէտ գայր միշտ ընդ երեկս հանգուցանել զիս յերկոց տունջեան. աստանօր Պարկայք նիւթէին նարօտ ինձ յաղքատութեան մետաքս ոսկեթել: Եւ զայս ողբս առեալ՝ երկիր պագանէր Նայադին՝ որ անդ սառնորակ ալեօք բուժեաց յայնքան ամս զծարաւ նորա, և յաւերժհարսանց՝ որ շուրջ 'ի լերինս անդ բնակէին: Եւ 'ի լուր ողբոց նորին արձագանգ՝ տխուր 'ի հնչիւն կրկնէր զայնոսիկ դիցն դաշտայնոց:

Եկն ապա Փիլոկլէս 'ի քաղաք անդր ընդ Եգեսիպպեայ մտանել 'ի նաւ: Կարծէր 'ի մտի զի վատշուէրն Պրոտեսիլաս զամօթի հարեալ և առ քինու խուսեսցէ յերեսաց նորա. այլ խաբեցաւ. զի որոց ապականեալ է սիրտ չիք նոցա ամօթ, և առ ամենայն վատութիւն պատրաստք են: Փիլոկլէս զգուշանայր չհանդիպել հիքէին, զի մի յաւելցէ զվիշտ նորա 'ի տեսիլ բարեբաստութեան

ատոխին՝ որ 'ի վերայ աւերակաց նորա ամբառնայր ։ Իսկ Պրոտեսիլաս խնդրէր զնա անձկանօք, առ 'ի գութս ողոքանաց արկանել առաջի նորա, և 'ի ձեռն նորա աղերսել զարքայ վասն դարձի իւրոյ 'ի Սալենտ ։ Բայց անկեղծութիւն Փիլոկլեայ չներէր նմա յանձն առնուլ զաղերս նորա, քանզի ոչ ոք առաւել քան զնա խելամուտ էր վնասակարութեան դարձի նորա ․ այլ խօսեցաւ ընդ նմա բազում քաղցրութեամբ ․ և կարեկցութեամբ սփոփեալ զնա, յորդորէր հաշտ առնել ընդ իւր զդիս ամբիծ կենօք և անտրտունջ համբերութեամբ վշտացն ։ Բայց քանզի և ամենայն ինչք Պրոտեսիլայ՝ անիրաւութեամբ մթերեալք՝ հատեալ էին 'ի գանձ արքունի, խոստացաւ նմա երկու ինչ ․ խնամ ունել կնոջ նորա և որդւոց՝ որ կային 'ի Սալենտ 'ի վերջին տնանկութեան և 'ի նշաւակ ցասմանն ամբոխին, և յղել առ նա նպաստ 'ի սփոփումն թշուառութեանն 'ի տարաշխարհիկ աքսորանսն ։

Շնչէր հողմն աջողակ, խորշ առեալ ուռնուին առագաստք ․ և Եգեսիպպոս ձեպէր անժոյժ զՓիլոկլէս 'ի չու ։ Պրոտեսիլաս տեսանէր զմուտ նոցա 'ի նաւ, և աչք իւր յառեալ անքթիթ 'ի ծովեզրն, զհետ գնային նաւուն՝ որ հեռանայր զալիս, և վարէր 'ի հողմոց 'ի բաց ․ և 'ի ծածկել իսկ նաւուն յաչաց նորա, նա 'ի միտսն զայն պատկերէր ։ Իսկ ապա յուզեալ 'ի կրից, կատաղեալ, մատնեալ 'ի յուսահատութիւն, խլէր զա-

լեան, Թաւալէր յաւազի, բռնաւորս զգլխան կոչէր, և 'ի նանիր կարդայր յօգնութիւն զանողորմն մահ՝ որ խուլ առ մաղթանս նորա չկամէր զերծուցանել զնա 'ի չարեաց, և ոչ ինքնին խրախուսէր առնել անձին։ Օժանդակեալ 'ի Պիսիդեաց և 'ի հողմոց, եհաս նաւն վաղ ընդ փոյթ 'ի Սալենտ։ Ազդ եղև արքայի մուտ նորա 'ի նաւահանգիստն, և փութացաւ անդր ընդ Մենտորի ընդ առաջ Փիլոկլեայ. և գիրկս էարկ նմա, ապաշաւելով զանիրաւ հալածանսն՝ զոր արար նմա։ Խոստովանութիւն այսպիսի ոչ միայն չհամարեալ 'ի վատութիւն Թագաւորին, այլ և յաղթանակ վեհանձնութեան Թուեցաւ Սալենտացւոց առ հասարակ. զի գեր 'ի վերոյ սխալանացն իւրոց անցեալ, արիաբար խոստովանութեամբն փոխարինէր զվնասուն։ Արտասուք ցնծութեան քամէին յաչաց ամենեցուն, 'ի տեսանել անդրէն զայրն բարելաւ՝ սիրեցող միշտ ժողովրդեան, և 'ի լսել զխօսս արքայի լի իմաստութեամբ և բարութեամբ։

Իսկ Փիլոկլէս մեծարանօք և ցածութեամբ ընկալեալ զգգուանս Թագաւորին, հնարէր խուսել 'ի ծափաձայն դրուատեաց ժողովրդեան. և գնաց զհետ արքայի յարքունիս։ Այլ իսկ և իսկ մտերմացան ընդ իրեարս Մենտոր և Փիլոկլէս, որպէս եթէ կենակից լեալ էր նոցա միշտ, թէպէտ և չէր իսկ նոցա տեսեալ զմիմեանս. զի դիք՝ որ չետուն աչս չարաց առ 'ի տեսանել զլաւս,

կորովաբերս զսոսա արարին առ 'ի ճանաչել զի-
րեարս . և չէ մարթ առաքինասիրաց կալ 'ի միա-
սին առանց ոգեխառնելոյ ընդ միմեանս առաքի-
նութեամբ՝ զոր սիրեն ։

Եւ ապա խնդրեաց Փիլոկլէս յարքայէ մեկ-
նել առանձին ուրեք մերձ 'ի Սալենտ, ուր կեայր
'ի նմին աղքատութեան՝ որով եկեաց 'ի Սամոս ։
Բայց գրեթէ զօր ամենայն գնայր արքայ ընդ
Մենտորի յանապատ անդր այց առնել նմին . և
անդ խորհէին 'ի հնարս հաստատութեան օրի-
նացն սահմանելոց , և առ 'ի կացուցանել անշարժ
զկարգ տեսչութեան 'ի բարեբաստութիւն ժողո-
վրրդեան ։ Երկարագոյն եղեն բանք զդաստիարա-
կութենէ մանկտւոյ , և զեղանակէ կենաց 'ի ժա-
մանակի խաղաղութեան ։

Զի ասէր Մենտոր զմանկտւոյ՝ թէ ոչ այն-
չափ ծնողաց են որչափ պետութեան ։ Որդիք են ,
ասէ , ժողովրրդեան և յոյս և զօրութիւն նորա .
և յետ միանգամ զեղծանելոյ նոցա ոչ ևս է ժա-
մանակ ուղղութեան ։ Ոչ ինչ օգնէ մերժումն
նոցա 'ի պաշտամանց յորժամ անարժանք գտանին .
լաւ է զառաջս առնուլ չարեաց , քան պատուհա-
սել զնոսա ։ Թագաւորն , հայր բնաւ իսկ ժողո-
վրրդեան , առաւել ևս է հայր մանկտւոյ՝ որ ծա-
ղիկն է ամենայն ազգին . պարտ է 'ի ծաղկի անդ
պատրաստել զպտուղն ։ Վասն որոյ փոյթ լիցի
Թագաւորին խնամել և 'ի խնամս այլոց յանձն
առնել զմանկտին 'ի դաստիարակութիւն . պինդ

կալցի զօրէնս Մինովայ կրթել զմանկտին յարհամարհանս վշտամբերութեան և մահու. մեծարեցի հրաժեշտ 'ի հեշտութեանց և 'ի մեծութեանց, և ընդ ամօթապարտ յոռութիւնս գրեցին անիրաւութիւն ստութիւն ապերախտութիւն և մեղկութիւն: Ածցի մանկտին 'ի մատաղ տիոց 'ի նուագս դիւցազանց՝ որ հաճոյ եղեն դից, որք առաքինացան վասն հայրենեաց, և քաջայաղթ արութիւնս գործեցին 'ի պատերազմի. զմայլեցի 'ի քաղցրութիւն երաժշտութեան, և ամոքեսցին բարք նորա և ամբիծք եղիցին: Կրթեսցի 'ի գորովս առ բարեկամս, 'ի հաւատարմութիւն առ դաշնակիցս, յարդարութիւն առ ամենայն մարդիկ, ևս և առ ոխերիմ թշնամիս, և առաւել քան 'ի տանջանաց և 'ի մահուանէ՝ երկիցէ 'ի դոյզն ինչ ստգտանաց խղճի մտաց: Եթէ վաղ քաջ դրոշմեսցին իմաստքս այսոքիկ 'ի միտս մանկտւոյն, և քաղցրութեամբ երգոց տարասցին 'ի սիրտս նոցա, սակաւք 'ի նոցանէ գտցին՝ որոց սիրտ ոչ վառեալ բորբոքեսցի 'ի սէր փառաց և առաքինութեան:

Յաւել Մենտոր ցուցանել կարևոր յոյժ զվարժարս հասարակաց առ 'ի կրթել զմանկտին 'ի խստագոյն հրահանգս մարմնոյ, և 'ի հրաժեշտ 'ի մեղկ և յանգործ կենաց՝ որ զեղծուցանեն զևս բարեբարոյս: Կարևոր համարէր և զազգի ազգի խաղս և զտեսարանս առ 'ի խրախոյս ժողովրդեան. և մանաւանդ առ 'ի հրահանգել զմարմինս

և յարդարել աջողակ ձապուկ և ուժեղ ։ Յաւելոյր և մրցանակս առ 'ի դրդել զնախանձ ազնուական ։ Բայց կարևորագոյն ևս քան զամենայն առ անեղծութիւն բարուց համարէր զվաղամուսնիկ հարսանիս , և ծնողաց ոչ խնդրելով զշահ՝ թողուլ մանկտւոյն զհաճոյս իւրեանց ըստ գեղոյ և ըստ հանճարոյ ընտրել հարսունս , ընդ որս լիցի նոցա ոգեխառնիլ ։

Մինչդեռ 'ի հնարս յայտնիկ խորհէին պատրաստելոյ ամբիծ անամեղ երկասէր հլու և ցանկացող փառաց զմանկտին , Փիլոկլէս՝ որ պատերազմասէրն էր 'ի բնէ՝ ասէ ցՄենտոր ․ Ի զուր լիցի մանկտւոյն պարապել յայդ ամենայն հրահանգս , եթէ անկեալ կայցեն հանապազ 'ի խաղաղութեան անփորձք մարտի , և չիցէ նոցա հարկ հանդէս առնելոյ քաջութեան իւրեանց ։ Նոյնին օրինակաւ յուլասցի տակաւ ազգն ; մեղկասցի կորով , և գրգանօք ապականեսցին բարք ․ և դիւրին լիցի յանժամ այլոց ազգաց պատերազմողաց յաղթել նոցա ․ և 'ի խնդիր խուսելոյ յաղետից՝ զորս պատերազմ առեալ ձգէ զհետ իւր , անկցին 'ի դժոխըմբեր ծառայութիւն ։

Կրկնեալ անդրէն Մենտորի ասէ ․ Աղէտք պատերազմաց դժնդակագոյնք են քան զոր կարծես ․ պատերազմ մաշէ սպառէ զպետութիւն և զառածանէ զնա 'ի վտանգ կործանման , ևս և 'ի կանգնելն յաղթութիւնս մեծամեծս ։ Թէպէտ և յաջողեսցի 'ի սկզբան , ոչ երբէք անքոյթ լիցին

ելք նորա յեղերական յեղափոխութեննէ բախտին: Թէպէտ և բազմաձեռն զօրու ելցես 'ի ճակատ, թեթև ինչ վրիպակ կամ երկիւղ խօլական կամ դոյզն ինչ խրտուիլ կարէ յափշտակել զպատրաստեալ քեզ զյաղթանակ մարտին, և մատուցանել զայն Թշնամւոյդ: Թէպէտ և կալցիս իսկ ոք զյաղթութիւն, համակործան 'ի փլուզանել անդ զԹշնամին անկցի, անմարդանայցէ աշխարհ իւր, խոպանասցին անդաստանք, ազմրկեսցի վաճառաշահ, և որ չարագոյն ևսն է՝ ոչ ևս զօրեսցեն օրէնք գերահանճարք, զեղծցին բարք անպատուհաս, ոչ ևս պարապեսցեն մանկունք 'ի վարժս, հարկ անհրաժեշտ ներեսցէ եղեռնաւոր ցոփութեան ճարակել 'ի զօրս, և արդարութիւն և բարեկարգութիւն և ամենայն ինչ տուժեսցի յաղմկէ անտի: Թագաւոր՝ որ այնչափ նախանձիւ գործէ մարդկեղէն արեան, և այնչափ աղէտս 'ի խնդիր դոյզն ինչ փառաց կամի առ 'ի տարածանել զսահմանս իւր, անարժան է փառացն՝ զոր խնդրէ, և արժանի կորուսանելոյ զոր ժառանգէն, փոխանակ զի յափշտակել կամի որ ինչ ոչ է նմա անկ:

Այլ ահա քեզ հնարք հրահանգելոյ զքաջութիւն 'ի խաղաղութեան: Պարտացեր իսկ զհրահանգս մարմնոյ սահմանեալս 'ի մէնջ, զմրցանակս դրդիչս նախանձու, զիղձս փառաց և առաքինութեան տարրացեալս յոգւոջ մանկտւոյն անդստին գրեթէ 'ի խանձարրոց նուազօք դիւցազանցն

քաջայաղթ առաքինութեանց ․ յաւել 'ի դասին և զնպատասաս զգաստ և աշխատասէր կենաց ։ Հանդերձ ողջախոհք և 'ի պատերազմունս ազգաց նիզակակցաց յղեսցի ընտիր մանկտին, մանաւանդ որոց միանգամ իցէ բերումն 'ի մարտ և աջողութիւն 'ի փորձ զինուց ։ Որով լիցիս մեծարոյ առաջի դաշնաւորաց, ցանկալի լիցի նիզակակցութիւն քո, և զգուշասցին ազգք չկորուսանել զայն ․ և առանց աւերելոյ զերկիր քո և վտանգելոյ զգանձս պատերազմաւ, լիցի քեզ միշտ մանկտի քաջամարտիկ և անվեհեր ։ Թէպէտ և 'ի խաղաղութեան իցես, մեծապարգև մեծարեսցես զքաջորեարն 'ի մարտ ․ զի զօրաւորագոյն հնարք 'ի բաց առնելոյ զպատերազմ, և վայելելոյ ընդ երկար 'ի խաղաղութեան, են վարժք զինուց, մեծարանք գերազանցելոցն 'ի զինուորութեան, պատրաստ ունել արս՝ որոց տեղեակ իցեն զօրութեան սահմանակից ազգաց, զինուորական հրահանգաց նոցա և օրինակի մարտնչելոյ ․ և զգուշանալ յերկոցունցն ևս 'ի ծայրայեղ մոլորութեանց, 'ի փառամոլութենէ պատերազմի, և 'ի մեղկութենէ ։ Որոց այսպէս կազմք իցեն միշտ 'ի մղել զպատերազմ առ հարկի, դուն ուրեք հասցէ նոցա հարկն այն ։

Իսկ 'ի գրգռել նիզակակից ազգաց ընդ միմեանս 'ի մարտ, քեզ անկ է խաղաղարար կալ 'ի միջի ․ և ստասցիս փառս անեղծ և անկապուտ քան զաշխարհակալաց, սիրելի լիցիս և մեծարոյ

ազգաց օտարաց, ամենեքին կարօտ լիցին քեզ, տիրեսցես 'ի վերայ նոցա վստահութեամբն իւրեանց 'ի քեզ՝ որպէս իշխանութեամբդ 'ի վերայ ժողովրդեան քո. լիցիս աւանդապահ գաղտնեաց նոցա, իրաւարար դաշանց և իշխան սրտից. համբաւ քոյին տարածեսցի ընդ տիեզերս, և անուն քո որպէս խունկ անուշահոտ բուրեսցէ բացէ 'ի բաց յազգս հեռաստանեայս: Ապա եթէ յանիրաւի ոք յազգաց դրացեաց յարիցէ 'ի վերայ քո, գտցէ զքեզ կիրթ և կազմ 'ի պատերազմ. և հզօրագոյն յոյժ պատրաստեսցէ քեզ պատսպարան բարեկամութիւն, զի դրացիք քո առ հասարակ 'ի զէն վառեսցին՝ ոչ ինչ յերկուացեալ զի պահպանութիւն քո ամրութիւն է հասարակաց: Ահա քեզ պատնէշ ամրագոյն քան զամենայն պարիսպս քաղաքաց, և քան զամենայն դղեակս հաստատակառոյց. ահա քեզ փառք ճշմարիտ. այլ աւա՜ղ, քանի՛ սակաւք են 'ի թագաւորաց՝ որ խնդրիցեն զայն, և ոչ մանաւանդ մերժեսցեն զայն, զրահետ վարեալք 'ի խնդիր խաբուսիկ ստուերաց, թողլով յետս կոյս զճշմարիտ փառսն առ 'ի չճանաչելոյ զայն:

Իւ 'ի խօսել Մենտորի զայսոսիկ՝ Փիլոկլէս հիացեալ ակնկառոյց կայր 'ի նա. և սակս ակնարկեալ 'ի թագաւորն, զարմանայր տեսանելով զնա յակճիռս կացեալ 'ի լուր խրատուցն՝ որ ուղխօրէն բղխէին 'ի շրթանց Մենտորի: Որ 'ի դէմն նորա այլակերպեալ Աթենաս՝ սահմանէր

այսպէս 'ի Սալէնտ օրէնս գերահանճարս և զօգտակարագոյն կարգս տեսչութեան, ոչ այնչափ 'ի բարգաւաճանս աշխարհին Իդոմենեայ, որչափ առ 'ի ցուցանել Տելեմաքայ 'ի դարձին զակներև օրինակ արդասեաց իմաստուն տեսչութեան, առ 'ի կացուցանել երանաւէտ զազգս և առ 'ի պատրաստել Թագաւորի բարւոյ յաւերժական փառս:



# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ

## ՉՈՐԵՔՏԱՍԱՆԵՐՈՐԴԻ ԳՐՈՑՆ

1 Սամոս. տՃ. Սամոսն ապառ. Կղզի յԱրշիպեղագոս, մօտ 'ի ծովեզր փոքուն Ասիոյ, հեռի յԵփեսոսէ փարսախս իբր երկուս։

2 Ամալթէական նշանակ առատութեան. քանզի կեղծիք հեթանոսաց առասպելեն սնեալ Արամազդայ կաթամբ այծու՝ որ կոչէր Ամալթէա. զոր ապա նոյն ինքն Արամազդ վերացոյց յերկինս համդերձ երկուորեակ ուլովք՝ փոխեալ զնոսա յաստեղս. և յաւերժհարսանց խնամակալուաց մանկութեան իւրոյ պարգևեաց զմի յեղջերաց նորա, հրաշական զօրութեամբ առատացուցանելոյ որ ինչ ցանկալի էր նոցա։

Իսկ ըստ այլոց կոչէր Ամալթէա դուստր Մելիսոսի արքային Կրետացւոց, որ հոգաբարձու եղև տղայութեանն Արամազդայ՝ սնուցեալ զնա կաթամբ այծուն։ Անուն միոյ 'ի դստերացն Յոբայ դնի յԵօթանասնիցն Թարգմանչաց Եղջիւր Ամալթեայ, յորմէ և մերս Մաղթեղջիւր կամ Ամաղթեղջիւր։

3 Նայադք էին յաւերժհարսունք աղբերաց և գետոց։

4 Արձագանգ. առասպելք զսա համարին դուստր օդոյ և երկրի, սիրելի Արամազդայ յաւերժահարսն բնակեալ առ եզր Կեփիսեայ գետոյ։ Որ 'ի պատուհաս անզգոյշ բանիցն զՀերայ՝ պատուհաս 'ի Նմանէ ընկալաւ կրկնել զյետին ևեթ բարբառ հարցողացն զնա։ Եւ արհամարհեալ 'ի Նարկիսեայ՝ զոր սիրէրն, առ վշտին խոյս ետ 'ի քարանձաւս 'ի լերինս և յանտառս, ուր ծիւրեալ 'ի ցաւոցն, փոխեցաւ յապառաժ։

# ԱՐԿԱԾՈՒՔ ՏԵԼԵՄԱՔԱՅ



## ԳԻՐՔ ՀՆԳԵՏԱՍԱՆԵՐՈՐԴ

# ՆԱԽԱԴՐՈՒԹԻՒՆ

Տելեմաք 'ի զօրս դաշնաւորաց յինքն յանկուցանէ զփիլոկ-տետ, որ վասն քինուն ընդ Ոդիսեայ հօր նորա՝ խեթիւ հայէր 'ի նա : Փիլոկտետ պատմէ նմա զպատահմունս իւր, 'ի ներքս ածեալ և զդէպս մահուն Հերակլեայ 'ի Թունաւոր պատմուճանէն՝ զոր Նեսոսի յուշկապարիկ տուեալ էր Դէանիրայ : Ցուցելու և ևս պատմել զիարդ 'ի Հերակլէ ընկալաւ զնետսն՝ որոց ճակատագրեալ էր քաղաքին Տրովադայ առումն, և թէ որպէս մատն լեալ զաղտնեացն՝ կրեաց 'ի պատուհաս զամենայն չարիսն 'ի Լեմնոս, և զՈդիսեայ 'ի ձեռն Պիւռոսի ստիպել զնա գնալ 'ի պատերազմն Տրովադայ, ուր և բժշկել վիրաց նորա յորդւոցն Ասկլեպեայ :

# ԱՐԿԱԾՔ ՏԵԼԵՄԱՔԱՅ

## ԳԻՐՔ ՀՆԳԵՏԱՍԱՆԵՐՈՐԴ

Բայց Տելեմաք նախահատակէր 'ի վտանգս մարտին. և 'ի չու առնել բանակին 'ի Սաղենտեայ, ջանայր ընդ միտ մտանել հմուտ և անուանի հինաւուրց զօրավարաց: Նեստոր, որոյ տեսեալ իսկ էր զնա 'ի Պիւղէ և բարեկամ լեալ միշտ ընդ Ոդիսեայ, խնամէր զնա որպէս զորդի իւր. և խրատէր զնա, օրինակօք զխրատսն հաստատեալ. պատմէր նմա զամենայն պատահարս մանկութեան իւրոյ, և որ ինչ զծերունեացն դիւցազանց տեսեալ պանծալի արութիւնս: Օր էին հանճարեղի ծերունոյն միտք որպէս զվէպս վաղնջուց ժամանակաց արձանագրեալս 'ի վէմ և 'ի պղինձ:

Փիլոկտետ 'ի սկզբան անդ խեթիւ հայէր 'ի Տելեմաք. զի բազմաժամանակեայ հեռ նորա ընդ Ոդիսեայ՝ ատելի առնէր նմա և զզաւակն ոդիսական. և ծանր էր նմա տեսանել որ ինչ թուէրն պատրաստեալ 'ի դից բարեբաստութիւն

պատանւոյն, հաւասարել փառաց դիւցազանցն՝ որք զՏրովադա կործանեցին։ Բայց բարութիւն Տելեմաքայ յաղթեաց ոխակալութեանն Փիլոկտետեայ, և ոչ կարաց նա փակել զգութ իւր առ հեզ և ցածուն առաքինութիւն նորա։ Ընդոր զնա ստէպ, խօսէր ընդ նմա և ասէր. Որդեակ իմ, (զի ոչ ևս խնայեմ 'ի քէն զանուանս զայս). Թշնամի ընդ հօր քում եղէ ընդ երկար, խոստովանիմ զայս. և զայն իսկ ոչ ժխտեմ, զի և յետ կործանման քաղաքին Տրովադայ չէր սիրտ իմ հաշտ ընդ նմա. և 'ի տեսանել իմում զքեզ, դժպհի թուէր ինձ սիրել զառաքինութիւն 'ի զաւակդ ոդիսական, և խղճէի յաճախ ընդ այն։ Բայց առաքինութիւն հեզ անպարծ անկեղծ և զգօն յաղթէ ամենայնի։

Այս արդ տակաւ յորդորեալ Փիլոկտետ, պատմեաց նմա զգործս ատելութեան իւրոյ ընդ Ոդիսեայ, և ասէ. Նորուստ 'ի վերուստ հարկ է ինձ սկիզբն առնել պատմութեանս։ Ուղեկից էի մեծին Հերակլեայ ընդ ամենայն ուրեք 'ի զերծուցանել նորա զերկիր 'ի ձիւաղաց. և էր նա 'ի մէջ դիւցազանց որպէս կաղնի հաստարմատ 'ի շամբ տկար եղեգանց, և որպէս արծուի 'ի մանրերամս ճնճղկանց։ Արդ մոլութիւն, որ դժնդակագունից առ հասարակ է ծնօղ աղետից, եղև իւրայոցն և իմոցս առիթ թշուառութեանց։ Հերակլէս, յաղթականն ձիւաղաց, տկարացաւ ամօթալեացն յաղթել կրից, և անողորմ ման-

կանն Նչրոսի եղև խաղալիկ: Զկարէր առանց շառագունանաց յիշել զայն, զի 'ի մոռացօնս երբեմն արկեալ զփառս իւր՝ առ Ոմփալեայ լիւդացւոցն դշխոյի պաղատակէր յաղէկատ որպէս վատ ոք և կնամարդի, 'ի կոյր տռփանացն 'ի քարշ ածեալ. և սակայն իսկ խոստովան լինէր նա ինձ, զի առաւելքն այնորիկ կենաց իւրոց աղօտացուցին զառաքինութիւն նորա, և խառնեցուցին զրեթէ 'ի սպառ զփառս նահատակութեանց նորա:

Այլ առա՛ղ տկարութեան և յեղանակութեան մարդկան, որք խիզախեն ևեթ և ոչ զղջմունին վտանգաց: Անկաւ վերստին մեծն Հերակլէս 'ի վարմս սիրոյ՝ յորմէ զարշէրն, և սիրեաց զԴէյանիրա': Նու երանի թէ զնա ևեթ սիրէր, զոր հարսնացոյց իսկ իւր. այլ օրիորդն Յոլէ, որ զշնորհս 'ի դէմս իւր տպաւորեալ բերէր, յափշտակեաց ընդ հուպ զսիրտ նորա: Դէյանիրա վառեցաւ 'ի նախանձ, և յիշեաց զպատմուճանն դիւթական՝ զոր Նեսեայ յուշկապարկի թողեալ էր նմա 'ի մեռանելն առ 'ի հնարս արծարծանելոյ անվրէպ զսէր Հերակլեայ, եթէ երբէք ցրտանայր առ օտար սիրոյ: Պանծալի պատմուճանն այն, թացեալ 'ի թունաւոր արեան յուշկապարկին՝ դեղեալ էր 'ի նետից՝ որք զհրէշն զայն հարին. և գիտես իսկ զի նետք Հերակլեայ սպանողի նենգաւոր յուշկապարկին մխեալ էին յարեան լեռնեան՝ վիշապին, և դեղեալ նովաւ՝ անբժշկելի գործէին հարուածս:

Հերակլեայ 'ի զգենուլ զպատմուճանն զայն՝
զգացեալ անդէն զհուրն տոչորիչ, որ յանկերս
նորա ճարակէր, ահագին ձայնիւ դողացոյց
զլեառնն Ետա³, հնչեցին հովիտք խորաձորք,
և ծով 'ի խորոց յուզեալ դղրդէր. զի և ոչ պո-
չիւնք և պոռոչիւնք ցլուց կատաղեաց ազդելոց
այնպիսի գործեն արհաւիրս։ Եւ զհեքն Լիքաս,
որ զպատմուճանն զայն 'ի Դեանիրայ եբեր նմա,
տեսեալ առ իւր 'ի զայրոյթ սրտմտութեանն՝ ան-
պտուտկեաց ընդ օդս որպէս պարսաւոր զքար
հեռաձիգ. և 'ի հուժկու բազկացն 'ի բարձուէ
լերինն ընկեցեալ Լիքաս, անկաւ թաւալգլոր 'ի
ծուփս ծովու. և փոխեալ անդէն 'ի ժայռ մար-
դակերպ՝ բախեալ ցարդ կոծի 'ի սաստհակ ա-
լեաց, արհաւիրս հանուրց արկեալ 'ի բացէ
հմուտ նաւորդաց։

Զայնպիսի աղէտս Լիքասայ տեսեալ, ոչ ևս
կարէի վստահել 'ի Հերակլէս. խորհեցայ ծած-
կել ամրանալ 'ի խոռոչս լերանց։ Եւ տեսանէի
զի խլէր նա աջովն անաշխատ զհաստատարմատ մայրս
և զհինաւուրց կաղնիս՝ որոց դարուց 'ի դարս
քամահեալ էր զհողմովք և զմրրկօք, և ահեկաւ
ջանայր մերկանալ յանձնէ զզեղեալ պատմու-
ճանն. այլ 'ի զուր, զի կուռեալ էր այն ընդ մորթ
իւր, և գոգցես իմն տարրացեալ յանդամս
մարմնոյն. որպէս զի 'ի հերձուլ նորին՝ հերձանէր
և մորթ իւր և մարմինն, և առուիւ արիւն նորա
խաղացեալ՝ ոռոգանէր զերկիր։ Եւ ապա առա-

քնութեամբն յաղթեալ ցաւոցն, գոչեաց և ասէ․ Ահա, սիրեցեալդ իմ Փիլոկտետ, ահա աղեղքն՝ որովք պատուհասեն զիս դիք․ արդար են նոքա, և ես մեղապարտ՝ հարսանեկան սիրոյ դրժեալ։ Այնքանեաց յաղթող եղեալ թշնամեաց, նկուն եղէ վատաբար 'ի տուփանաց օտար ցեղոյ․ և արդ կորնչիմ, այլ անտրտունջ ընդ կորուստ իմ, որով հաշտ առնեմ զդիս։ Այլ աւա՜ղ, ո՞ւր սիրեցեալդ իմ կայցես փախուցեալ․ միշտ դժոխըմբեր նա ես ինձ, այս, անզգամել ընդ հէքն Լիքաս․ զիղջ է ինձ ընդ այն, զի նա յանգէտս ինձ զղեղն մատոյց, և չէր արժանի չարեացն՝ զոր մեղայ նմա։ Այլ դու կարծիցես թէ մոռանայցեմ զսէր քո՝ զոր ցուցեր առ իս, և կարիցեմ մեղանչել քեզ․ մի՛ լիցի ինձ այդ, ոչ դադարեցից 'ի սիրելոյ զՓիլոկտետ․ նա ինքն 'ի գիրկս իւր ընկալցի զոգի իմ, որ մերձ է 'ի չու․ նա ինքն զաճիւն իմ ամփոփեսցէ։ Ո՞ւր իցես արդ, սիրեցեալդ իմ Փիլոկտետ, միակ յոյս իմ ընդ արեգակամբ։

Դիմեցի արտաքս 'ի բարբառն յայն․ իսկ նորա տարածեալ զգիրկսն առ 'ի փարել զինև, կառեաւ՝ զի մի՛ խանձեսցի յիս բոցն դժնդակ՝ որ զնա տոչորէր, և ասէ․ Աւա՜ղ, զի չիք և այս ինձ սփոփումն։ Նա զայս ասացեալ, ժողովեաց զմայրիսն արմատախիլս, և փայտակոյտ 'ի ծագ լերին արարեալ՝ ել 'ի վերայ նորա անխռով, պարզեաց զմորթ նեմեան * առիւծուն՝ զոր ըստ անձին

կրէր յամաց բազմաց յարշաւանս իւր ծագաց 'ի ծագս երկրի, սատակել զձիւաղս և փրկել զտառապեալս. և այս յեցեալ 'ի լախտ իւր, պատուէր ետ ինձ խանձ արկանել 'ի խարոյկն: Դողդոջէին ձեռք իմ յարհաւրաց, այլ չկարացի հրաժարել 'ի դժպհի սպասաւորութենէն. քանզի կեանք նորա դառնաղէտք ոչ ևս էին նմա շնորհք աստուածապարգև, և զի երկնչէր թէ գուցէ առ դառնութեան ցաւոցն անարժանս ինչ տխեղերահրաշ առաքինութեանն գործիցէ: Իսկ իբրև ետես լուցեալ զխարոյկն, ասէ. Այժմիկ ահա, սիրեցեալդ իմ Փիլոկտետ, զփորձ առնում ճշմարիտ սիրոյ քո, զի լաւագոյն համարիս զփառս իմ քան զկեանս, հատուցեն քեզ դիք: Այլ ես թողում քեզ որ ինչ պատուականագոյն է ինձ յերկրի, զնետս զայսոսիկ մխեալս յարիւն լեռնեան վիշապին: Գիտես իսկ զի հարուածք սոցա են անբուժելիք. սոքօք լիցիս դու մշտայաղթ իբրև զիս, և ոչ ոք 'ի մահկանացուաց իշխեսցէ կալ ընդ քեզ 'ի վաեր: Յուշ լիցի քեզ, զի հաւատարիմ եղէ 'ի սէր քո մինչև 'ի մահ, և մի մոռասցիս քանի՜ սիրելի եղեր դու ինձ: Իսկ եթէ արդարև գթաս յաղէտս իմ, մարթ է քեզ մատուցանել ինձ սփոփումն յետին. երդուիր ինձ չյայտնել ումեք զմահ իմ, և մի զտեղին՝ ուր զաճիւնս իմ ծածկեսցես: Իսկ խոստացայ նմա, եղո՛ւկ զինև, և երդուայ, թացեալ արտասուօք զխարոյկ նորա: Իսկ ահա նշոյլ ինչ խնդութեան

փայլէր յաչս նորա. բայց անդէն մրրիկ բոցոյն
պատեալ զնովաւ, հեղձոյց զբարբառ նորա, և
զրեթէ ծածկեաց զնա յաչաց իմոց. այլ նշմարէի
զնա տակաւին ընդ բոցն, և էր նա զուարթադէմ
որպէս ոք զի ծաղկապսակ և իւղաթուրմ 'ի հր֊
ճուանս խնճոյից կայցէ յակումբ բարեկամաց։

Ծախեաց հուրն որ ինչ 'ի նմա հողեղէն էր
և մահկանացու, և չեթող որ ինչ էր նորա 'ի մօ֊
րէն իւրմէ յԱլկմենեայ ընկալեալ. այլ 'ի հրա֊
մանէ Արամազդայ եկաց մնաց 'ի նմա նուրբն այն
և անմահ բնութիւն, բոցն երկնային կենդանատու՝
զոր 'ի հօրէն դից ընկալեալ էր։ Նա թռեաւ
գնաց նա յոսկեճաճանչ կամարս 'ի գերափին Ո֊
լիմպոս ըմպել զնեկտար, ուր 'ի դիցն տուաւ նմա
'ի հարսնութիւն ցանկալի Հեբէ դիցուհին ման֊
կութեան՝ որ զաստուածըմպելին մատուցանէր
'ի բաժակ մեծին Արամազդայ, չև Գանիմեդեայ
'ի նոյն հասեալ 'ի պատիւ։

Բայց նետքն այնոքիկ՝ որ տուան ինձ առ 'ի
գեր 'ի վերոյ բոլորից կացուցանել զիս դիւցա֊
զանց, եղեն ինձ աղբիւր անսպառ աղէտից։ Ոչ
յետ բազում ինչ աւուրց արքայք նիզակակիցք
յարեան խնդրել զվրէժ Մենելաւոսի 'ի վատ֊
շուկրէն Պարեայ՝ որ զՀեղինէ յափշտակեաց, և
կործանել զպետութիւն Պրիամու. և պատգամ
յԱպողնէ եղև նոցա մի ակնունել յաղթու֊
թեան մարտին, բայց միայն նետիւքն Հերա֊
կլեայ։ Ողիսեւս հայր քո, հանճարեղն և հնա֊

բագէտ միշտ 'ի խորհուրդս , յանձն էառ միաբա-
նել զիս ընդ իւրեանս 'ի պատերազմին Տրովադայ ,
և ածել անդր զնետսն՝ զորս գուշակէր աւանդեալ
առ իս . զի 'ի բազում ժամանակաց Հերակլէս
չերևէր 'ի միջի , և ոչ լուր ինչ քաջութեան դիւց-
ազինն այլ ևս լսելի լինէր , և ձիաւորք և հետ-
կահարք սկսանէին անդրէն 'ի վեր երևել ան-
պատուհասք : Յունաց զնմանէ երկպառակ էին
կարծիք . կէսք համարէին զնա մեռեալ , այլք
մինչև ընդ սառնապատ Ասիան վիձեալ պնդէին
արշաւեալ զնա առ 'ի նուաճել զՍկիւթս : Բայց
Ոդիսևս մեռեալ զնա ասէր , և հնարէր ուսեալ
զհաւատոյն 'ի բերանոյ իմմէ : Եկն նա առ իս
մինչդեռ 'ի սուգ համակեալ կայի ընդ մահ մեծին
Ալկիդեայ , և բազում դժուարութեամբ կարաց
մտանել առ իս . զի ծանր էր ինձ տեսանել այնու-
հետև զմարդիկ , և անբերելի մեկնել 'ի վայրաց
անմարդաբնակ լերինն Ետայ՝ ուր զբարեկամն
իմ կորուսի . պատկեր ևեթ նորին զմիտս իմ
զբաւէր , և ողբայի անդադար 'ի տեսիլ տխուր
վայրացն : Այլ ողոք համոզկեր հանգչէր 'ի շրթ-
թունս հօր քո . վշտակից եղև ինձ և արտա-
սուակցող , յանկոյց յինքն տակաւ զսիրտ իմ և
զմտերմութիւն , և յուզեաց զգութ իմ 'ի վերայ
արքայիցն Հելլենաց դիմելոց յարդար պատե-
րազմ , որոց ինև ևեթ պատրաստէր յաղթու-
թիւն : Եւ թէպէտ չկարաց կորզել 'ի շրթանց
իմոց զգաղտնիս մահուն Հերակլեայ , զոր եր-

դուեալն էի չհանել 'ի վեր, սակայն ոչ ինչ ընդ մահ նորա երկբայեալ՝ ստիպէր զիս յայտնել ուր զանձինս նորա ամփոփեալ էր իմ։

Սովորումն էր ինձ դրժել դից, և նշաւակել զգաղտնիսն. այլ աւա՜ղ, տկարացայ, դաւ 'ի գործ արկի, չիշխեալ համարձակ առ ոտն կոխել զերդումն իմ. հարի ոտամբ զվայրն՝ ուր աճիւն դիւցազինն ծածկեալ կայր, և պատուհասակոծ արարին զիս դիք։ Եկի ապա առ արքայս նիզակակիցս, և ընկալան զիս ցնծութեամբ որպէս զնոյն ինքն զՀերակլէս. և յանցանելն իմում 'ի Լեմնոս, կամեցայ հանդէս առնել զօրութեան նետիցն առաջի ամենայն Յունաց. և իբրև լարեցի զաղեղն իմ յայծեամն սրաթռիչ յանտառի, վրիպեալ անկաւ նետն յաղեղանէ, և խոցեաց զոտն իմ անբուժելի մինչև ցայսօր։ Ես ահա նոյն աղէտք Հերակլեայ հասին ինձ. լնուի զվայրս կղզւոյն 'ի ձայն ողորմ աղաղակի զտիւ և զգիշեր. արիւն թուխ և ժահահոտ հոսեալ 'ի վիրէն ապականէր զօդս, և 'ի համասփիւռ ընդ բանակն Յունաց 'ի նեխոյ հոտոյն հեղձամղձուկ լինէին կորովագոյնք 'ի զօրականէն։ Զարհուրեցան զօրքն հանօրէն 'ի տեսանելն զիս յայն աղէտս հասեալ, և ամենեքին համարէին զիս յարդարադատ դիցն պատուհասեալ։

Ողիսեւս, որ ստիպեացն զիս 'ի պատերազմն, նա ինքն նախ եթող զիս. բայց ապա գիտացի զի նորա այնու զհասարակաց օգուտ Ելլադայ և

զյաղթութիւն նախամեծար քան զամենայն օրէնս բարեկամութեան և զպատշաճից արարեալ էր ։ Ոչ ևս մատչէին զոհք 'ի բագինսն, զի սոսկումն 'ի տեսիլ վիրացս և հոտ նեխոյն և ճիչ կողկողանաց տագնապէին զամենեսեան ։ Այլ 'ի պահուն՝ յորում տեսի զանձն լքեալ 'ի Յունաց առ հասարակ խրատուն Ողիսեայ, թուեցաւ ինձ խորհուրդ նորա անգթութիւն խժական և եղեռնաւոր մատնութիւն ։ Եղո՛ւկ կուրութեանս իմում, չառնուի 'ի միտ զի արժան և իրաւ էր խոհականագունից 'ի մարդկանէ ընդդէմ դառնալ ինձ 'ի միասին ընդ դիսն՝ զորս զայրացուցի ։

Կացի մնացի զրեթէ զամենայն աւուրս պաշարման քաղաքին անտէրունչ անօգնական անյոյս անմխիթար մատնեալ յաղէտս դժնդակս յանապատ և յանմարդի կղզւոջն, ուր գոչիւն ևեթ ալեաց փշրելոց առ ստորոտս ժայռից լինէր լսելի ։ Յամայութեան անդ գտի խոռոչ 'ի ժայռի՝ որոյ կրկին գագաթունք էին երկնաբերձք, և 'ի ժայռէ անտի բղխէր աղբիւր ականակիտ ․ և էր խոռոչն այն խշտի գազանաց վայրի, որոց ժանտեացն զտիւ և զգիշեր կայր արկեալ դէշ ։ Կուտեցի տերևս, ընկողմանել զնոքօք ․ և չունէի առ իս այլ ինչ, բայց միայն ըմպանակ փայտեայ անհարթ, և ցնցոտիս՝ որովք զվէրս իմ պատէի, առ 'ի խափանել զհոսումն արեան, և ջնջէի զշարաւ ։ Անդ լքեալ 'ի մարդկանէ և մատնեալ 'ի ցասումն դից, պարապէի 'ի նետաձիգ առնել զհաւփալս և որ

այլք զժայռիւն թեւածելին թռչունք. և 'ի հար-
կանելն զոք 'ի նոցանէ, հարկ էր ինձ սողալ ցա-
ւագին ընդ երկիր առ 'ի քաղել զորսիկն իմ. այս-
պէս զպարէնն իմ հայթայթէի: Զի թեպէտ
և Յոյնք 'ի մեկնելն թողլն ինչ առ իս պաշար,
այլ վաղ սպառեաց այն: Այլ զհուր զայլախազիւ
վառէի: Դժուարըմբեր այն կեանք քաղցր թուէին
ինձ հեռի յապաշնորհ և 'ի նենգաւոր մարդկանէ,
եթէ ոչ ընկճէին զիս ցաւք և ոչ յուշ լինէին ինձ
հանապազ դէպքն դառնաղէտք: Ածէի ընդ միտս
իմ. Այս զիա՞րդ, համբառնալ զիս 'ի հայրենեաց որպէս
միայն կարող 'ի խնդրել զվրէժ Հելլենաց, և արդ
թողլն յանապատի աստ 'ի քուն: Զի մինչ եւ 'ի
քուն կայի, չու արարին Յոյնք. զմտաւ ած որ-
պիսի զարմանք կալան զիս 'ի զարթնուլն, և որ-
չափ հեղի արտասուս 'ի տեսանել զնաւսն տա-
րաղէմս. աւա՜ղ, յո՛ր կոյս և ընթանայի յահա-
գին և յանմարդի կղզւոջն, աղէտս և եթ ամենայն
ուրեք գտանէի:

Ոչ գոյր 'ի կղզւոջ անդ ոչ նաւահանգիստ, ոչ
շահավաճառ, ոչ ասպնջականութիւն, և ոչ ոք 'ի
մարդկանէ անդր կամակար հասանէր, այլ հէքք
ոմանք 'ի մոլորկէ վարեալք. և չէր մարթ ա՛յն ու-
նել ումեք անդ՝ բայց նաւաբեկելոց. և անկելոցն
իսկ 'ի կղզի անդր ոչ էր իշխելի առնուլ ածել
զիս ընդ իւրեանս, առ ահի ցասմանն դիցն և Հել-
լենաց: Զամս տասն կեցի անդ չարանախտ
վշտալից և սովալլուկ, տածելով զվէրս՝ որ ծա-

խնէրն զիս, և յոյս ևս շիջեալ էր յիս ։ Իսկ ահա յանկարծ 'ի դառնալ իմում 'ի քաղելոյ բոյս առ 'ի դարմանս խոցոյս, տեսի 'ի քարայրի անդ պատանի գեղեցիկ և վայելուչ՝ բայց սէգ և դիւցազնատիպ . Թուէր ինձ տեսանել զԱքիլլէս, զի կերպարանս նորա և գնացք և հայեցուած յար և նման նմա էին . այլ 'ի տիոցն ևեթ 'ի միտ առնոյի՝ զի չէր նա ինքն ։ Նշմարէի 'ի դէմս նորա կարեկցութիւն և վարանս . մորմոքէր նա 'ի տեսանելն՝ քանի՛ տառապանօք և յամր ընդ երկիր աղայի, և ձմլէր սիրտ նորա 'ի լուր արտասուաց կողկողանացս՝ որոց հնչէին 'ի ծովափանց անտի արձագանգք ։

Զայնեցի առ նա 'ի բացէ . Ո՛րդ, ո՞ր աղէտք ածին զքեզ 'ի կղզի այսր անմարդաբնակ ։ Ծանօթ իսկ է ինձ ձեւդ հելլենական՝ որ դեռ սիրելին է ինձ . ո՛հ, լուր ինձ զձայն քո, լսելի արա զբարբառ քոյին՝ զոր 'ի խանձարրոց ուսեալ, 'ի բազմաց հետէ չկարեմ յօդել ընդ ումեք յանմարդաբնակ կղզւոջս յայսմիկ ։ Մի՛ արհաւիրս, այլ գութ 'ի քեզ արկցեն աղէտք իմ աղիողորմք ։ Իսկ ընդ պատասխանել պատանւոյն՝ թէ Յոյն եմ, գոչեցի անդէն . Ո՛վ բարբառ քաղցրալուր յետ բազմամեայ լռութեան և անափոփելի վըշտաց . որդեակ իմ, ո՞ր արկած, ո՞ր մրրիկ, կամ մանաւանդ ո՞ր հողմն աջողակ ած զքեզ այսր՝ վախճան առնել տառապանաց իմոց ։ Պատասխանի առէ . Սկիւռացի՝ եմ, և 'ի կղզի անդր դառնամ. Պիւ-

րոս ՚ կոչիմ որդի Աքիլլեայ, և որ այլ ինչ իրք՝ չեն զանխուլ ՚ի քէն ։

Ի լուր բանից անտի ոչ լցան խղճք իմ, և ասեմ. Ո՜վ սիրեցելոյ յինէն հօր զաւակդ, և սիրատուն սան Իդոմենեայ, զխնդիրդ ասա և ուսոյց զգալուստ քո այսր։ Պատանին ասէ. Ի պատերազմէն Տրովադայ գամ։ Ասեմ. Արդ չէիր դու յառաջնումն անդ արշաւանի։ Պատանին ասէ. Իսկ դու էիր իսկ անդ։ Ասեմ. Անծանօթ ուրեմն իցեն քեզ անուն և արկածք Փիլոկտետեայ. աւաղ, եղուկ եմ ես, հալածիչք իմ տանհար լինին ինձ ՚ի վիշտս իմ, Ելլադայ անգիտանայ զվիշտս՝ զորս կրեմ. յաճախեն ինձ ամենայն ուստեք աղետք։ Ատրորդիք՝ հասուցին զիս յայս թշուառութիւն, հատուսցեն նոցա դիք։

Այս ապա պատմեցի նմա որպէս լքեալ թողին զիս անդ Յոյնք. և ՚ի լուր կեղերջական ողբոց իմոց սկսաւ և ինքն զանգատել, և ասէ. Յետ Աքիլլեայ մեռանելոյ . . . ։ Կարճեցի զխօսս նորա, և ասեմ. Որպէս, մեռա՞ւ ուրեմն Աքիլլէս. Ներեա որդեակ իմ ընդմիջելոյ զբանս քո արտասուօք՝ զորս պարտիմ հօր քում։ Պիւռոս ասէ. Դու առանձին սփոփես զիս լալեօքդ, քաղցր է ինձ տեսանել զի արտասուէ Փիլոկտետ զհայր իմ։ Այս յառաջ ածեալ զպատմութիւն իւր, ասէ. Յետ Աքիլլեայ մեռանելոյ Ոդիսեւս. և Փենիքս ՚ եկին խնդրել զիս, անհնարին համարեալ զկործանումն քաղաքին Տրովադայ առանց իմ. և

ոչ ինչ դժուարին եղև նոցա ածել զիս ընդ իւրեանս, զի սուգ մահուան Աքիլլեայ, և խղձք ժառանգելոյ զփառս նորա 'ի գերահռչակ մարտին, յորդորէին զիս գնալ ընդ նոսա։ Հասի 'ի Սիգէոն [10], շուրջ եղեն զինև զօրքն առ հասարակ, երդնուին տեսանել զԱքիլլէս. այլ աւա՜ղ, չէր նա 'ի միջի։ Իսկ ես մանուկս անփորձ յուսայի զամենայն ինչ 'ի նոցանէ՝ որ այնչափ դրուատիս տային ինձ. և խնդրեցի յԱտրիդեանց զզէնս հօր իմոյ, այլ նոքա ետուն ինձ պատասխանի խիստ և ասեն. Ընկալցիս զամենայն ինչ զոր խնդրես, այլ զզէնս իւր Ողիսեայ պահեալ են։ Խռովեցայ, յարտասուս հարայ, զայրացայ. բայց Ողիսեւս անկարեկից ասէ ցիս. Անհաղորդ վտանգացս մերոց 'ի բազմամեայ պաշարմանն, համբաւեալ դու՝ որ խրոխտս բարբառիս, չես արժանի զինուցն այնոցիկ, և մի երբէք տացին քեզ։ Զայսպիսի զրկանս կրեալ յՈղիսեայ յանիրաւի, դառնամ արդ 'ի Սկիրոս՝ զայրացեալ առաւել ընդ Ատրիդիս քան ընդ Ողիսեւս. գտցեն թշնամիք նոցա շնորհս 'ի դից. այլ ինչ ոչ յաւելում ո՛վ Փիլոկտետէ։

Իսկ ես ասեմ. Եւ զիա՞րդ Այաս Տելամոնեան [11] չարգել զանիրաւութիւնդ զայդ։ Պիւռոս ասէ. Մեռաւ նա։ Յայնժամ գոչեցի, և ասեմ. Վա՛յք տարապարտ, Այաս մեռեալ և Ողիսեւս կենդանի և փառաւորեալ 'ի բանակին։ Եւ հարցի ապա զողջունէ Անտիլոքեայ [12] որդւոյ հանճարեղին Նեստորի, և զՊատրոկլեայ [13] սիրելւոյն Աքիլ-

լեայ. և ասէ, Մեռան և նոքա: Աղաղակեցի դարձեալ և ասեմ. Աւա՜ղ, դժնդակս ինձ գուժես. անկան ուրեմն և նոքա, պատերազմ անողորմ հնձէ ուրեմն զբարիս՝ խնայեալ՚ի չարս: Կենդանի Ադրաստոս, կենդանի արդեօք և Թերսիտէս[14], աՀա Հրամանք դից, և մեք օրՀնիցեմք զնոսա տակաւին:

Եւ իբրև այսպէս զայրացեալ ընդ Հայր քո բողոքէի, յաւել Պիւրոս նիւթել ինձ պատրանս, և ասէ դառնացեալ. Գնամ՚ի բաց՚ի յունական բանակէն՝ ուր Հարստահարէ չար զբարի, կեալ անվրդով յամայոջ՚ի Սկիւռա. մնա խաղաղութեամբ, աՀա գնամ, տացեն քեզ դիք բժշկութիւն: Իսկ ես ձայնեցի առ նա, և ասեմ. Կաց, որդեակ իմ, երդուեալ՚ի ստուերս Հօր քո և յարև մօրդ և՚ի բնաւ ամենայն որ ինչ սիրելի է քեզ ընդ արեգակամբ, մի թողուր զիս միայնակ՚ի վիշտս յայսմիկ: Գիտեմ իսկ զի բեռն եղէց քեզ ծանր, այլ՚ի նախատինս լիցի քեզ լքանել զիս աստ. արկ զիս յառաջս ՚ի խելս ՚ի խորս նաւիդ, ուր և նուազ ծանրացայց քեզ. մեծախոՀ մտաց է Համարել փառս զբարերարել: Մի լքաներ զիս յանապատի աստ, ուր Հետք անգամ ոչ նշմարին ոտին մարդկանացուի. տար զիս ՚ի Հայրենիս քո, կամ յԵւբիա[15] որ ոչ ինչ Հեռի է ՚ի լեռնէն Եւտայ և ՚ի Տրաքինեայ և ՚ի բազմազուարճ ափանց գետոյն Սպերքեայ[16]. դարձո զիս առ Հայր իմ: Աւա՜ղ, գուցէ ոչ ևս իցէ նա կենդանի. ազդ

արարի նմա յղել առ իս նաւ 'ի յուղարկ. և արդ կամ մեռեալ իցէ նա, և կամ որք խոստացանն պատմել նմա զաղէտս իմ՝ ոչ պատմեցին: Զքեզ արդ աղաչեմ, որդեակ իմ, յուշ լիցի քեզ մարդկայնոցս իրաց յեղյեղուկ պայմանն. որ վայելէն 'ի նսեհ՝ զգոյշ կացցէ մի բարեբաստութեամբն զեղծանել, և ձեռնտու լիցի չարաբաստից:

Զայսոսիկ առ դառնակսկիծ ցաւոցս ընդ Պիւրոսի բարբառելով, իբրև խոստացաւ նա ինձ առեալ տանել զիս ընդ իւր, գոչեցի դարձեալ և ասեմ: Ո՛վ օր բարենշան, ո՛վ ցանկալիդ իմ Պիւրէ, արժանաւոր փառացդ հայրենի. ուղեկիցք իմ սիրելիք, թո՛յլ տուք ինձ ողջունել զիմ տխուր օթեւանս. տեսէ՛ք ուր կեցի, 'ի միտ առէ՛ք զվիշտս՝ զորս կրեցի դժոխըմբերս այլոց. այլ հարկն ուսոյց ինձ, նոյն և ուսուցանէ այլոց որ ինչ անհնար է նոցա այլազգ ուսանել: Որոց չիցէ երբէք կրեալ ինչ, տգէտք են. չգիտեն զբարի և զչար, չճանաչեն զմարդիկ, և ոչ զանձինս իւրեանց: Ես զայս ասացեալ, առի զաղեղն իմ և զնետս. և 'ի խնդրել Պիւրոսի համբուրել զայնոսիկ, զանյաղթելոյն Հերակլեայ զգերապանծ և զսրբազան զէնս, ասեմ: Ներեալ քեզ, որդեակ, ամենայն ինչ. դու ինձ այսօր շնորհես զկեանս իմ, զհայրենիս, զհայր իմ ընկճեալ յամաց, զբարեկամս, և զանձն իմ իսկ գլխովին. հրաման է քեզ ձեռնարկել 'ի զէնսդ, և քեզ միայն յամենայն Յունաց ունել զպարծանս հպելոյ 'ի դոսին: Եւ

եմուտ նա 'ի քարայր անդր նկատել զզէնսն ։

Բայց ցաւք դժոխըմբերք կալան զիս, և տագնապեալ՝ չգիտէի զոր գործէին. խնդրէի սուսեր այրասուր հատանել 'ի բաց զոտն իմ, և գոչէի. Ո՛վ մահ ցանկալի, զի՞ յամես. արի փութա պատանի դու տալ զիս հրոյ, որպէս ետու ես զատուածորդին Արամազդայ ։ Երկիր երկիր, ծածկեա զօրհասականս անյարիր ։ Եւ առ դառնակսկիծ ցաւոցս անկայ անդէն, որպէս յաճախն, 'ի խոր Թմրութիւն. բայց քիրտն յորդաբուղխ արտաքսէր զիս, և արիւն Թուխ և շարաւահոտ հոսէր 'ի վիրաց իմոց ։ Դիւրին էր պատանւոյն 'ի Թմրութեան անդ իմում առնուլ գնալ զզէնս իմ. այլ աքիլլեան զաւակին ոչ էր մարթ գործել զնենգութիւնն զայն ։ Եւ 'ի սթափելն իմում տեսի զնա վարանեալ, զի յոգւոց ելանէր որպէս ոք զի անգէտ կեղծեաց՝ բռնի ինչ գործիցէ, և ասեմ. Դաւես ուրեմն զիս, և զի՞ է քեզ ։ Նա ասէ. Հարկ է քեզ գալ ընդ իս 'ի պատերազմն տրովական ։ Ասեմ. Ո՜հ, զինչ խօսիս զայդ, որդեակ իմ, տուր ինձ այսր զաղեղն իմ. դաւ է այդ, մի՛ զկեանս իմ բառնար ։ Նա ոչ ասա՛ց, լուռ ևեթ կայ, հայի յիս անկարեկիր, և ոչ ինչ շարժէ զնա 'ի գութ ։ Ո՜վ ափունք և սարաւանդք, գազանք ամեհիք և ժայռք սեպացեալք, առ ձեզ բողոք արկանեմ, զի չիք ոք այլ՝ առ որ ինձ բողոքել, և սովոր իսկ էք դուք լսել զհեծութիւնս իմ ։ Արժա՞ն իցէ աքիլլեան զաւակին դաւաճանել զիս.

կապտէ նա յինէն զՀերակլեայ զաղեղն սրբա-
զանն, և 'ի քարշ ածէ զիս 'ի բանակն յունականն՝
յաղթանակել 'ի վերայ իմ, այլ 'ի վերայ դիւա-
կանն և ստուերի և ուրուական ցնորից յաղթա-
նակէ։ Ո՛հ եթէ յարձակէր յիս մինչ յուժի
էի... բայց և այժմիկ դաւով յաղթէ ինձ. արդ
զի՞նչ արարից։ Տո՛ւր ինձ, որդեակ, տո՛ւր ինձ
զայդ. լեր հաւատարիմ իբրև զհայր քո, հաւա-
տարիմ իբրև զքեզ. զի՞ է, զի՞ լռես։ Ապառաժք ան-
մարդիք, առ ձեզ դառնամ մերկ թշուառ անտէ-
րունչ և սովեալ, մեռայց միայնակ 'ի քարայրիս.
այլ չիք ինձ աղեղն իմ սպանանել զգազանս. եղեց
գազանակուր, չէ ինչ փոյթ։ Բայց դու, որդեակ
իմ, ոչ զկերպարանս չարութեան բերես յանձին.
զուցէ արդեօք հրապուրէ ոք զքեզ. տո՛ւր ինձ
զզէնս իմ, և երթ 'ի բաց։

Յայնժամ Պիւրոս արտասուօք և դաշն ձայնիւ
ասէ. Երանի թէ չէր իմ ընաւ մեկնեալ 'ի Սկի-
րայ։ Եւ ես ձայն բարձեալ գոչեմ. Ո՛րքէ, զի՞նչ
է զոր տեսանեմս, ո՞չ սա ինքն է Ողիսեւս։ Եւ
լուայ զձայն նորա, զի ասէր. Այո՝ ես ինքն եմ։
Եթէ բանային նսեմաստուեր սահմանք պետու-
թեանն Պղուտոնի, և զխշտագիշերին տեսանէի
զվիհ տարտարոսական՝ յոր դիք իսկ ահիւ ակնար-
կեն, չկրէի արդեօք սոսկումն ահագին քան զայն։
Դարձեալ միւսանգամ ձայն բարձեալ գոչէի.
Երկիր լեմնական, երդնում 'ի քեզ. ակն ար-
փիական, տեսանես դու զդա և տակաւին հան-

դարձեա՛ս ։ Յայնժամ Ողիսեւս ասէ խաղաղութեամբ. Հրամանք են Մինեռուայ, եւ կատարեմ զայն ։ Իսկ ես ասեմ. Ինչպէ՞ս դու եւ անուանել խակ զՄինեռուա. ահա պատանիդ անկեղծ 'ի բնէ, բանագրգռեալ 'ի քէն՝ գործէ դա ։ Ողիսեւս ասէ. Ոչ առ 'ի դաւել զքեզ եւ ոչ առ 'ի մեղանչել զամք, այլ առ 'ի փրկել զքեզ, առ 'ի բժշկութիւն քո, առ 'ի տալ քեզ զփառս կործանմանն Տրովադայ, եւ առ 'ի դարձուցանել զքեզ 'ի հայրենիս քո. դու ինքն անձին, եւ ոչ Ողիսեւս թշնամի է Փիլոկտետեայ ։

Իսկ ես՝ որ ինչ զայրոյթ մոլեգին թելադրէրն ինձ թշնամանս՝ արարի հօր քում, եւ ասեմ. Ընկեր զիս աստ ամայի, եւ արդ ընդէ՞ր ոչ թողուս զիս 'ի խաղաղութեան. Երթ դու զհետ փառաց պատերազմի եւ զբօսանաց, վայելեսջիր ընդ Ատրրիդիս 'ի բարեկենդանութեան, եւ թող զիս 'ի թշուառութեան իմում եւ 'ի ցաւս. առ ինչ է քեզ բառնալ զիս աստի. զի ես ոչ եւս ինչ եմ, այլ դի անկենդան ։ Ընդէ՞ր ոչ եւս համարիս զիս ապիկար 'ի չու, եւ զկանչ եւ զկառանչ իմ եւ զժահ եւ զնեխ վիրացս խափան զոհից ։ Ո՛վ Ողիսեւս, առիթ խնդրս առ հասարակ աղետից, հատուսցեն քեզ դիք ։ . . Այլ ոչ եւս լսեն ինձ դիք, նա աւանիկ խրախուսեն զատախ իմ ։ Ո՛վ հայրենիք իմ, զոր ոչ եւս տեսից . . . ո՛վ դիք, եթէ իցէ ոք 'ի ձեզ արդար՝ որ գթայցէ յիս, հարէ՛ք պատուհասեցէ՛ք զՈղիսեւս. յայնժամ գտայց ես ապաքինեալ ։

Նա 'ի խօսելն իմում զայսոսիկ՝ հայր քո կացեալ անվրդով, հայէր յիս ախտակցաբար. և ոչ միայն համբերէր առանց զայրանալոյ, այլ և անբասիր առնէր զմտաց ծփումն հեքիս դառնացելոյ 'ի թշուառութենէ։ Տեսանէր զնա որպէս զժայռ 'ի գահաւանդ լերին, որ ծաղր առնէ զմոլեգին մրրկօք, և թողեալ նոցա թափել յինքն զզայրոյթ իւրեանց՝ կայ անդրդուելի։ Այսպէս հայր քոյին լուռ և եթ կացեալ՝ մնայր ցածնլոյ ցասման իմոյ, քանզի գիտէր թէ ոչ ինչ օգնէ 'ի վերայ յարձակել կրից առ 'ի զգաստութիւն՝ մինչ չև պարտասեալ այնոցիկ և տկարացեալ, և ապա ասէ ցիս. Ով Փիլոկտետ, ո՞ւր է հանճար քոյին և քաջութիւն, ժամ է 'ի գործ առնելոյ զնոսին. եթէ հրաժարես գալ ընդ մեզ 'ի կատարումն աստուածահրաման պատգամացն Արամազդայ, մնա խաղաղութեամբ. չիցես ապա արժանի փրկիչ գոլոյ Հելլադայ և կործանիչ Տրովադայ։ Կա՛ց մնա դու 'ի Լեմնոս. զէնքս այսորիկ, զորս առեալ տանիմ, նուաճեսցեն ինձ զփառս՝ որ քեզ սահմանեալ էին։ Ո՛ն արի երթիցուք Պիւրէ, վայրապար է խօսել ընդ դմա. չէ արժան մեզ առ գութ միոյ ուրուք կորուսանել զփրկութիւն համօրէն Հելլադայ։

Յայնժամ զայրագին իբրև զառիւծ, որոյ յափշտակեալ կորիւնքն 'ի բաց՝ լնուցու զանտառս 'ի մռնչիւն, գոչէի. Ով թողլից զքեզ քարայրդ իմ, դու լիցիս ինձ գերեզման. տուն ցաւոց իմոց,

և սովալլուկ և յուսահատ կորստեան. ո՞ տայր ինձ տեսանել, զի անձին առնէի. յանկարծ պատառէին զիս հաւք գիշախանձք. մի և աղեղն իմ լարեալ 'ի նոսա. ո՛ աղեղն ցանկալի, աղեղն որբացեալ յաջոյ աստուածորդւոյն Արամազդայ: Ո՛վ սիրեցեալդ իմ Հերակլէս, եթէ տակաւին կայ 'ի քեզ գութ, ո՞չ զայրանայցես` 'ի խոհերականն և 'ի նենգաւոր ձեռս Ոդիսեայ զաղեղն քո տեսանելով, և ոչ ևս 'ի ձեռս հաւատարիմ բարեկամին քո: Մի՛ ևս, թռչունք գիշախանձք և գազանք անհեղք, մի ևս խոյս 'ի քարայրէ աստի տայք. ոչ ևս նետք յաղեղանէ իմմէ տոհցեն. հեքս և թշուառ ոչ ևս մեղանչել կարեմ ձեզ, եկայք գիշատել զիս. կամ մանաւանդ ամպրոպեղւոյն Արամազդայ ամպահարեալ սատակեսցեն զիս շանթիք:

Բայց իբրև չկարացին ամենայն հնարք հօր քո համոզել զիս, խորհեցաւ նա դարձուցանել առ իս զնետսն. և յակնարկել նորին` ետ ինձ զնոսա Պիւռոս. առ որ ասեմ. Արժանաւոր զաւակդ Աքիլլեայ, որ արդեամբք զդիւցազնութեան քո տաս զառհաւատչեայ, թո՛ղ ինձ հարկանել զոտս իմ: Այլ զոյգ ընդ բանիցս կամէի ձգել զմի 'ի նետից անտի 'ի հայր քոյին. բայց Պիւռոս արգել զիս, և ասէ. Ազմկէ զքեզ զայրոյթ, և չառնուս 'ի միտ որպիսի անարժանս գործես: Իսկ Ոդիսևս այնպէս անխռով առ նետս իմ կայր, որպէս առ թշնամանս. հիանայի

ընդ անվեհեր արիութիւն նորա և ընդ համբերութիւն. և ամաչէի դարձեալ զի ընդդէմ նորին իսկ մտաբերեցի առ զայրոյթ զզէնսն 'ի կիր արկանել, որ ինքն զայնոսիկ տալ ինձ հրամայեաց. և զի չև իսկ ցածուցեալ էր սրտմտութիւն յիս, վշտանայի անսփոփելի թէ ընդէր շնորհապարտ վասն այնոցիկ ոսկերիմ առնելոյ զտանէի: Բայց Պիւռոս յաւել. Գիտասջիր զի գուշակն Հելենոս Պրիամու որդի, ելեալ 'ի Տրովադայ հրամանաւ և ազդմամբ դիցն, մերկացաւ մեզ զհանդերձեալսն՝ զայս տուեալ պատգամ. Ճակատագրեալ անկումն հիքին Տրովադայ, մի այն այլազգ յաջողեսցի, բայց յարձակմամբ աղեղնին՝ որ զՀերակլեայ կրէ զնետս. և ինքն իսկ մի բժշկեսցի, թէ ոչ հասեալ առ պատրաստօք քաղաքին, և դարմանեալ 'ի զաւակէն Ասկղեպեայ":

Յածեալ կռծէի 'ի միտս իմ յայնժամ. առտի անկեղծութիւն Պիւռոսի զորովէր զսիրտ իմ և հաւատարմութիւն նորա՝ որով դարձոյց զաղեղն իմ յիս, և անտի դարձեալ դժկամակէի տեսանել զարև առ 'ի չտալոյ տեղի Ոդիսեայ. և ամօթ չար 'ի տարակուսի կացուցանէր զիս, ասէի ընդ միտս իմ. Այլ զի՞նչ ասիցեն 'ի տեսանել զիս ընդ Ոդիսեւս և ընդ Ատրիդիս: Այլ մինչդեռ վարանեալ կայի, բարբառ գերահրաշ լսելի եղև յանկարծ, և տեսի զՀերակլէս յամպ լուսաճաճանչ, և ճառագայթք փառաց հատանէին 'ի նմանէ: Ոչ ինչ դժուարին եղև ինձ ճանաչել զնա

'ի դժկերպ գլխոց նորա, 'ի հուժկու մարմնոյն, և 'ի պարզութենէ ձևոյն. բայց ոչ երբէք այնպէս բարձրադիտակ և մեծավայելուչ 'ի նուաճելխրոխտ զձիաւորս 'ի վերայ երկրի երևէր. և ասէ ցիս.

Ո՛չ քո տեսանեն զՀերակլէս, և ականջք քո զձայն նորա լսեն. իջիր ես 'ի բարձանց Ողիմպեայ առ քեզ պատգամ յՈրամազդայ. գիտես քանի՞ նահատակութեամբք ստացայ զանմահութիւն. պարտ է քեզ երթալ զհետ աքիլլեան զաւակին, եթէ կամիս հետևել ինձ 'ի փառս: Գտցես դու զբժշկութիւն, և զամենայն չարեացապարտն զՊարիս արկցես նետիւք իմովք դիպապատ. և առեալ զՏրովադա, աւար մեծափարթամ առաքեսցես առ հայր քո Պէան 'ի լեառն Էտա. և դիցէն աւարքն զշիրմաւ իմով արձան յաղթութեան, զոր նետք իմ կանգնեսցեն: Այլ դու զաւակդ աքիլլեան, լո՛ւր. ոչ դու առանց Փիլոկտետեայ, և ոչ Փիլոկտետես առանց քո յաղթեսցէ. հա՛պա, դիմեցէք իբր 'ի յորս առիւծունք կրկին: Այլ արձակեցից ես զԱսկղեպիոս բժշկել զՓիլոկտետ: Բայց դուք, Յեղլէնք, պատկառ կացէք կրօնից. ամենայն ինչ մեռանի, անմահ կան կրօնք:

Եւ իբրև լուայ, գոչեցի մեծաձայն. Ո՛վ երանաւէտ, լո՛յս ցանկալի, ծագես ուրեմն յետ այսքան ամաց. ահաւասիկ կամ, ահա գնամ, հրաժեշտ վայրացս տալով: Ողջոյն քեզ քարայր

իմ սիրելի, ողջոյն ձեզ յաւէրժհարսունք աստ 'ի ջրարբի արօտս բնակեալք. ոչ ևս լիցի ինձ լսել զաղօտ շշնջիւն ալեացս: Ողջոյն ծովախանցդ, ուր ստէպ զվնասակարութիւնս կրեցի զօդոց. ողջոյն սարաւանդիցդ, յորոց արձագանգք ստէպ կրկնէին հեծութեանց իմոց: Ողջոյն և ընդ ձեզ քաղցրաբուղխ աղբերք, որ դառնացայք ինձ: Հրաժարիմ 'ի քէն երկիր լեռնական, ուր չու աջողակ, զի գնամ ուր կոչէն զիս կամք աստուածոց և իղձք սիրելեաց:

Այս այսպէս մեկնեալք անտի հասաք 'ի պաշարումն Տրովադայ. անդ Մաքաւոն և Պոդալիր աստուածուստ հայրենի գիտութեամբն ետուն ինձ առողջութիւն, որչափ տեսանես յիս. զի թէպէտ փարատեցան յինէն ցաւք, և դարձաւ յիս զօրութիւն իմ, այլ մնացի կաղ ոտամբ: Երկի զՊարիս դիտապաստ որպէս զեղնորթ մի երկչոտ նետահար յորսողէ, և Իլիոն յաճիւն դարձաւ. իսկ որ յետ այնորիկ իրք՝ ոչ ինչ զանխուլ են 'ի քէն: Սակայն դժկամակութիւն իմն չգիտեմ որպէս եկաց մնաց յիս ընդ խորագիտին Ոդիսեայ, յիշատակաւ աղխտիցն իմոց. առաքինութիւն նորա ոչ զօրացաւ շիջուցանել յիս զքէն. այլ յերեւաց որդւոյն՝ որ զհօրն բերէ զնմանութիւն, և յորմէ անմարթ է ինձ փակել զգութ, գորովի սիրտ իմ և առ սէր հօր նորին:

# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ

## ՀՆԳԵՏԱՍԱՆԵՐՈՐԴԻ ԳՐՈՑՆ

1 Դէանիրա դուստր Ենեայ արքային Եաոլացւոց, զոր փրկեաց Հերակլէս, և առ սէր նորա սպան զՆեսոս յուշկապարիկ նետիւն մխելով 'ի թունաւոր արիւն Լեռնեան վիշապին։ Նեսոս յոգիս տապաստան՝ ետ զարիւնաթաթաւ ձորձ իւր Դէանիրայ, և նա առաքեաց զայն առ Հերակլէս. որոյ արկեալ զայն յանդէտս զանձամբ, մոլեգնեցաւ և չոգաւ զհրովին, և Դէանիրա լախտիւ առն իւրոյ արար անձին։

2 Լեռնա ճահիճ յԱրգոս գաւառի, ուր էր հարիւրգլխեան վիշապն՝ զոր սատակեաց Հերակլէս։

3 Եթա լեառն 'ի Թեսալիա ընդ Պառնաս և ընդ Պինդոս, հռչակաւոր վասն որ 'ի նմա շիրմին Հերակլեայ։

4 Նեմէա անտառ կամ ժայռ յԱքայիա, ուր սպան Հերակլէս զառիւծն ամեհի՝ զորոյ զմորթ կրէր զանձամբ, և 'ի յիշատակ այսր գերապանծ նահատակութեան նորա սահմանեցան յետ ժամանակաց Նեմեան մրցութեանցն հանդէսք յԱրգոս։

5 Եբէ դուստր Արամազդայ և Հերայ, դիցուհի մանկութեան, և գինեպաշտ Արամազդայ։

6 Սկիրոս, որ արդ կոչի Սիրօ կամ Շիրօ, մի յարշիպեղագեան կղզեաց։

7 Պիւռոս որդի Աքիլլեայ, որ կոչի և Նէոպտողեմոս. մայրն Աքիլլեայ, առ 'ի խափանել զերթ նորա 'ի պաշարումն Տրովադայ, այլակերպեալ զնա 'ի ձև աղջկան՝ եդ յարքունիս Լիկոմեդեայ արքային Սկիրայ. ուր հարեալ նորա 'ի սէր Դէիդամեայ, ծնաւ 'ի նմանէ զՊիւռոս։

8 Ատրեիդէք, այսինքն Ագամեմնոն և Մենելաւոս որդիք Ատրէոսի։

9 Փէնիքս որդի Ամինտորայ, որ ընդ Աքիլլեայ չոգաւ 'ի պատերազմն Տրովադայ. սա համարի գտիչ յունական տառից։

10 Սիգէոն հրուանդան 'ի Տրովադա, առ եզերբ Արշիպեղագեայ. որ արդ կոչի Քում Քալէ Ենիշէհրի։

11 Αἴας տելամոնեան, այսինքն որդի Տելամոնի, մի 'ի քաջազանցն Յունաց երթելոց 'ի պատերազմն տրովական, որ մենամարտեցաւ ընդ Հեկտորի զօրն 'ի բուն, և մարտն եկաց երկուստեք անպարտելի: Որ և յետ մահուն Աքիլլեայ վիճեցաւ վասն զինուց նորա ընդ Ոդիսեայ, և չկարացեալ գրաւել զայնոսիկ, չոգաւ զիւրովլին. և համարին առասպելք զարիւն նորա փոխեալ 'ի յակինթ ծաղիկ:

12 Ἀντίλοχος, որդի Նեստորի արքայի, երթեալ ընդ հօր իւրում 'ի պատերազմն տրովական, և սպանեալ անդ 'ի Մեմնոնէ:

13 Πάτροκλος, որդի Մենետիոսի և Սթենելեայ, մի 'ի քաջազանցն երթելոց 'ի պատերազմն տրովական, մտերիմ բարեկամ Աքիլլեայ: Որ, 'ի գժտել Աքիլլեայ ընդ Ագամեմնոնի և 'ի խոյս տալ 'ի մարտէն, առեալ ընդ իւր զզօրսն, և զգեցեալ զսպառազինութիւնս նորա՝ դիմեաց 'ի վերայ տրովացւոց, և աշաբեկ արար զամենեսեան: Բայց յանկանել նորա 'ի մենամարտելն ընդ Հեկտորի, զայրացեալ Աքիլլեայ՝ առ զզէնս իւր, և խնդրեաց զվրէժ մահու սիրելւոյն:

14 Θερσίτης անգեղեայ և վատասիրտ քան զամենայն զօրս բանակին Յունաց 'ի պատերազմին Տրովադայ. զոր Աքիլլէս սպան 'ի մի հարուած բռնցի 'ի հակառակել նորա իմաստուն և քաջ որեարն:

15 Εὔβοια կղզի յեգէական ծովու, որ այժմ կոչի իտ. Νε-γροπόντε, և տճ. Ἔγριπος:

16 Σπερχειός գետ 'ի Թեսաղիա, բղխեալ 'ի Պելիոն լեռնէ:

17 Ἀσκληπιός, որդի Ապողոնի, բժիշկ քաջահմուտ. որ պաշտէրն յԵպիդաւրոս և 'ի Պերգամա 'ի կերպարանս օձի: Հոմերոս ընծայէ նմա երկուս որդիս հռչակաւորս 'ի բժշկութեան, զՄաքաւոն և զՊոդալիր:



# ԱՐԿԱԾՔ ՏԵԼԵՄԱՔԱՅ



## ԳԻՐՔ ՎԵՇՏԱՍԱՆԵՐՈՐԴ

# ՆԱԽԱԴՐՈՒԹԻՒՆ

Տեղեմաք վիճի զգերելոց ոմանց ընդ Փաղասայ՝ որ յինքն կամէր գրաւել զնոսա, և մենամարտեալ յաղթէ Իպպիասայ՝ որ արհամարհէրն զմանկութիւն նորա, և կամէր հանել զգերիսն յեղբայր իւր 'ի Փաղաս. բայց զղջացեալ ընդ յաղթանակ իւր՝ ողբայ զյանդգնութիւն իւր և զխաղանս, և կամի փոխարինել վնասուն: Զգացեալ Ադրաստայ արքային Դաւնեաց, զի դաշնաւորք պատաղեալ էին 'ի հաշտեցուցանել զՏեղեմաք ընդ Իպպիասայ, յանպատրաստից 'ի վերայ անկանի. և առեալ զտորմիղ հարիւրոց նաւաց նոցա, ածէ նորօք զզօրս իւր ընդդէմ նոցին. և հուր հարեալ 'ի բանակ անդր նոցա, սկիզբն առնէ մարտին 'ի գնդէն Փաղասայ. սպանանէ զեղբայր նորա զԻպպիաս, և զինքն իսկ զՓաղաս առնէ վիրալից:

# ԱՐԿԱԾՈՒՔ ՏԵԼԵՄԱՔԱՅ

## ԳԻՐՔ ՎԵՇՏԱՍԱՆԵՐՈՐԴ

Ու 'ի պատմել Փիլոկտետեայ զանցս իւր, յանձինս կայր Տելեմաք 'ի լուր նորին, և աչք իւր անքթիթ յառեալ կային 'ի քաջազնն՝ որ խօսէր: Ամենայն ազգի ազգի կիրք յուզեալք 'ի Հերակլէս 'ի Փիլոկտետ յՈդիսեւս և 'ի Պիւրոս ըստ կարգի պատմութեանն երևէին յանկեղծ դիմս պատանւոյն: Որ զի ձայն քաղցր՝ անզգայաբար կարճելով զխօսս Փիլոկտետեայ, և էր զի թուէր իբր յանուրջս՝ խորասուզեալ մտաց նորա 'ի յաշորդութիւն իրացն: Իսկ 'ի նկարագրել Փիլոկտետեայ զտագնապ անկեղծութեանն Պիւրոսի՝ թուէր 'ի նմին տագնապի և Տելեմաք, և էր իսկ կարծել զնա յայնժամ միւս այլ Պիւրոս:

Բայց քանակ դաշնաւորացն խաղայր գնայր ճակատու օրինօք ընդդէմ Ադրաստայ Դաւնեաց արքայի, արհամարհողին դից, և մարդկան դըր-

ժողի ։ Դժուարին էր յոյժ Տելեմաքայ զգուշանալ 'ի մէջ այնքանեաց նախանձընդդէմ արքայից, առ 'ի չլինելոյ ումեք կասկածելի, և սիրելի ամենեցուն զանձն ընծայեցուցանելոյ ։ Անկեղծ էր նա 'ի բնէ և բարեբարոյ, այլ ոչ շողոքորթ ․ ոչ ինչ փոյթ էր նմա զհաճոյից այլոց ․ չէր նա ընչասէր, այլ և ոչ այլոց ընձեռէր ինչ ։ Եւ թէ պէտ ազնուասիրտ էր և բարեյօժար, այլ չերևէր 'ի նմա հոգ 'ի սպաս այլոց ․ չէր նա դիւրահամբոյր 'ի բարեկամութիւն, ոչ առատաձեռն, ոչ երախտահատոյց, և ոչ ինչ փոյթ էր նմա յարգելոյ զվաստակաւորս ․ այլ ըստ ախորժակաց ընտանորապէս գործէր զամենայն ։ Մայր նորա Պենելոպէ ընդդէմ կամաց Մենտորի դաստիարակեալ էր զնա յամբարհաւանութիւն և 'ի գոռոզութիւն, որք ստուերանս ամենայն բարեմասնութեանց նորա ածէին ։ Համարէր նա զանձն գերագոյն քան զայլս 'ի մարդկանէ, և զնոսա առ 'ի հաճոյս և 'ի սպաս իւր ստեղծեալ 'ի դից, առ 'ի կանխել 'ի կատարումն ըղձից իւրոց և ինքն աստուածական ընծայել իւր պաշտօն ։ Արդ մեծ համարէր ծառայից իւրոց զբարեբաստութիւնն ծառայելոյ նմա ․ և չկամէր թէ իցէ անհնարին ինչ 'ի ցանկալեացն իւրոց, և վայրկեան մի յամեցումն զրգռէր զդիւրաբորբոք բնաւորութիւն նորա ։

Որք միանգամ տեղեակքն էին այսպիսւոյ բնաւորութեան նորա, կարծէին թէ չէր մարթ նմա սիրել ինչ բաց յանձնէ, և անզգայ զնա համա-

րէին առ ամենայն ինչ բաց 'ի փառաց և 'ի հաճոյից իւրոց ։ Եւ այս անզգայութիւն նորա ընդ այլս, և անձին ևեթ հոգ հանապազորդ, արգասիք էին զառանցանաց կրից՝ յորոց յուզեալ տատանէր անդադար ։ Անդստին 'ի խանձարրոց փաղաքուշ մօրն գգուանօք զեղծեալ, յօրինակ թշուառութեան ծնելոցն 'ի բարձ և 'ի պատիւ, ոչ ինչ զօրէցին ընկճել զխրոխտ ստահակութիւն նորա արկածք բախտին՝ որոց տարաւ 'ի մանկութենէ ։ Զուրկ յամենայնէ, լքեալ անօգնական, նշաւակ աղէտից, չև ևս զիջանէր 'ի խրոխտմանէն . կանգնէր միշտ 'ի վեր, իբր արմաւենի դիւրակոր ընկճեալ բռնի 'ի խոնարհ՝ յառնէ կանգնի միշտ անդրէն ։

Յորչափ Մենտոր առ նմա կայր, չերևէին թերութիւնք նորա, և նուազէին իսկ օր ըստ օրէ ։ Որպէս ձի խստերախ ձախր առեալ ընդ դաշտ լայնալիր, ոչ 'ի վախից գահավիժութեանց և ոչ յուղխից հեղեղաց սարսուցեալ կասէ, այլ 'ի վերելակին ևեթ սաստից և 'ի նուաճող ձեռանէ, այսպէս Տելեմաքայ աշխոյժք խրոխտականք 'ի Մենտորէ ևեթ սանձահարեալ նուաճէին ։ Ակնարկութիւն ևեթ նորին նահանջէր անդէն զթափ սաստկագոյն յարձակմանց կրից պատանւոյն . գուշակէր նա անդէն զազդեցութիւն ակնարկութեանն, և զգաստանայր ։ Իսկ խոհական ծերունին այնպէս վաղ ընդ փոյթ փութէր զսաստ 'ի զուարթութիւն, որպէս և ոչ 'ի

ձգել Պիսիդեայ զերեքարձեանն սպառնալից ընդդէմ լեռնաձև ալեաց՝ ամպրոպայոյզք դադարեն մրրիկք ։ Իսկ իբրև միայնակ գտաւ Տելեմաք , ամենայն կիրք նորա կասեալք իբր հեղեղատ հասեալ 'ի թումբ և յամբարտակ , առին անդրէն զթափ . և ոչ ևս հանդուրժէր նա յանդգնութեան սպարտացւոց և զօրագլխի նոցա Փալասայ ։ Պաղթականս այս , հիմնադիր Տարենտեայ , էր խումբ մանկտւոյ ծնեալ յաւուրս պատերազմին Տրովադայ . ամայի 'ի դաստիարակութենէ , ծնունդք անօրէն անկողնոց . և յանառակութենէ մարց իւրեանց և 'ի ցոփ սնանելոյ վայրագք իմն և խուժադուժք , զհինից յելուզակաց կազմէին ջոկ քան թէ զաղթական Յոյն ։

Փալաս ամենայն ուրեք խնդրէր պատրաստ վիճելոյ ընդ Տելեմաքայ , յաճախ զխօսս նորա կարճէր 'ի ժողովս , արհամարհեալ զխորհուրդս նորա որպէս զանփորձ մանկան . երգիծանէր իսկ զնա իբր ապիկար և մեղկ , ցուցանէր զօրագլխաց զթերութիւնս նորա դուզնաքեայս , և ջանայր նախանձուկս արկանել յամենեսին ընդդէմ նորա , և ատելի առնել արքայից նիզակակցաց զխրոխտ բարս նորա ։ Այլ 'ի միում աւուրց յառնուլ Տելեմաքայ գերիս ոմանս 'ի Դաւնեաց , իւր անկ զգերիսն համարեցաւ Փալաս , զի սպարտացւոց՝ որոց ինքն զօրավարէր՝ բեկեալ առէր զպուղդն զայն , և Տելեմաքայ հանդիպեալ Դաւնեաց պարտելոց փախստէից՝ ապրեցուցեալ զնո-

տա և ածեալ անաշխատ 'ի բանակն : Իսկ Տե-
լեմաք ընդ հակառակն ասէր էր իսկ զերծուցեալ
զՓալաս 'ի պարտութենէ, և յաղթութիւն 'ի
վերայ Դաւնեաց կանգնեալ : Յանդիման եղեն
երկաքանչիւր ատենի արքայից նիզակակցաց 'ի
դատաստան . և այնպէս սրտմտեալ ընդ Տելե-
մաքայ, մինչև մահ սպառնալ ոսոխին . և յաստա-
րէզ իսկ արդեօք զիմէին 'ի մենամարտ, եթէ
չէր զնոսա խափանեալ որոց անդն կային :

Փալանտայ էր եղբայր մի, անուն նորա Իպ-
պիաս, անուանի 'ի բանակին քաջութեամբ կո-
րովով և աչողակութեամբ . զոր տարենտացիք
հաւասար Պոլիտեւկեայ ՝ համարէին 'ի կռփա-
մարտ, և Կաստորի 'ի ձիավարել . և էր նա անձ-
նեայ և հուժկու իբր զՀերակլէս, և ամենայն
զօրքն երկնչէին 'ի նմանէ, զի էր նա կռուասէր
և գազանամիտ քան քաջ և արի : Տեսեալ նորա
զխրոխտումն Տելեմաքայ՝ որով սպառնայրն եղբօր
իւրում, չոգաւ ա՛ռ զգերին ածել 'ի Տարենտ, ա-
ռանց մնալոյ դատաստանի ատենին : Ազդ եղև
Տելեմաքայ, և զայրացին մռնչմամբ ել արտաքս,
որպէս կինձ փրփրերախ հետամուտ հարկանողի
իւրում որսորդի, շուրջ ընդ բանակն հետազօտե-
լով զոսոխն, և զգեղարդն ձօձելով առ 'ի հար-
կանել զնա : Իբր ահա պատահէ նմին, և յերե-
սաց նորա և ևս զայրանայ . ոչ ևս էր անդ տեսա-
նել զՏելեմաք զպատանին խոհական հրահան-
գեալ յԱթենասայ՝ որ 'ի դէմս Մենտորի այլա-

կերպեալ, այլ զմոլեգնեալ ոք կամ զառիւծ կա-
տաղեալ։

Ձայնեաց անդէն առ Իպպիաս. Կա՛ց մեռ, վատ արանց. տեսցուք թէ կարո՞ղ իցես բառնալ յինէն զկապուտ՝ որոց յաղթեցի. մի՛ 'ի Տարենտ զգոսա տարցիս, այլ երթ էջ դու 'ի նսեմաստուեր յեզերս Ստիւգեայ։ Եւ զոյգ ընդ բանիցն ըն-կէց զգեղարդն. այլ առ զայրագին կատաղու-թեանն չկարացեալ կշռել զհարուածն, անկաւ այն 'ի վրէպ։ Յայնժամ աճապարեալ ձեռն էարկ 'ի պողովատիկն՝ որոյ երախակալ էր ոսկի, և զոր Լայերտեայ[2] առհաւատչեայ խանդակաթ սիրոյն տուեալ էր նմա 'ի մեկնել նորա յԻթակեայ. քանզի գերապանծ փառս 'ի մանկութեան իւ-րում ստացեալ էր նովաւ, ներկեալ զայն յարիւն յոլովից երևելի զօրագլխաց եպիրացւոց՝ յաղ-թանակեալ 'ի մարտի։ Այն ինչ Տելեմաք զսու-սերն զայն մերկացաւ 'ի պատենէն, Իպպիաս յառաւելութիւն ուժոյ իւրոյ ապաստան՝ յար-ձակեցաւ խլել զայն 'ի ձեռաց ողխեան զաւա-կին։ Բեկաւ սուսերն 'ի ձեռս նոցա, և բուռն հարեալ զմիմեանց՝ պատատեցան զիրերօք, որ-պէս գազանք կատաղիք՝ առ 'ի պատառել զմի-մեանս յարձակեալք։ Հուր յաչաց նոցա փայ-լատակէր. կծկէին և տարածանէին, խոնարհէին և կանգնէին, նհանջէին և դարձեալ զմիմեամբք անկանէին ծարաւիք արեան միմեանց։ Եւ ա-հա կռուեցան մածան ընդ միմեանս, ոտք ընդ

ոտս և ձեռք ընդ ձեռս խառնեալ 'ի մարմին մի ։ Ադրաստոս լի հաստատական Թուէր ընկճել զդեռահասակ պատանին' որ չէր ևս հաստատաջիլ, և պարտասեալ ոգեսպառ' դեդևէին բարձք ոտից նորա ։ Ադրաստոսայ տեսեալ զտատանումն նորա' յաւել 'ի զօրութիւն. վճարեալ իսկ էր պարտութիւն ոդիւսեան զաւակին, և հասանէր նմա պատուհաս յանդգնութեան նորա և կատաղութեան, եթէ ոչ Աթենաս' որ զգուշանայրն նմա 'ի հեռուստ, և առ 'ի խորատ ևեթ արկանէր զնա 'ի յետին վտանգ, մատուցանէր նմա զյաղթանակ ։

Կայր մնայր նա յարքունիս անդ 'ի Սալէնտ, այլ յղեաց փոխանակ իւր զԻրիկ[3] պատգամաւոր դից ժիրաժիր. որ Թեթև Թևածեալ ընդ անբաւածաւալ ոլորտս երկնից' Թողլով զհետ իւր երկայնաձիգ բազմերփեան աղեղ լուսաշաւիղ, էջ 'ի ծովեզր անդր' ուր բանակեալն էր դաշնաւորացն յաճախագունդ ճամբար ։ Ետես 'ի բացէ զմենամարտն և զմարտուցեալսն զպայրոյթ և զճիգն, զահի հարաւ 'ի տեսիլ վտանգին' յորում կայր պատանին Տելեմաք, մատեաւ առ նա պարածածկեալ լուսեղէն ամպով' զոր 'ի շողից նորին Թանձրացոյց զիւրև. և մինչդեռ Ադրաստոս վստահ 'ի զօրութիւն իւր' կարծէր յաղթանակել, պատսպարեաց նա զպատանին ձեռաւն Աթենասայ այծենակաշ ասպարաւն' զոր իմաստուհւոյ դիցն աւանդեալ էր նմա ։ Անդէն ոգի էառ պատանին ոգեսպառ. և որչափ նա զօրա-

նայր, կորանայր Հիպպիաս 'ի դիւցական իմն յան-
երևոյթ զօրութենէ հարեալ և ընկճեալ։ Խուճապեցուցանէր զնա Տելեմաք, մերթ աստի և մերթ անտի յարձակմամբ. շարժէր զնա և տատանէր, չթողացուցեալ նմա վայրիկ մի դուլ և դադար, մինչև զգետնեաց զնա և անկաւ զնա վաւ։ Ոչ այնպէս ահագին դղորդմամբ տապալի 'ի լերինն Իդա կաղնի հաստարմատ 'ի խիտ առ խիտ հարուածոց կացնի յաղթահարեալ՝ դղրդելով անտառին, որպէս անկաւն Հիպպիաս. հեծեաց երկիր ընդ նովաւ, և սասանեցան շուրջանակի վայրք առ հասարակ։

Բայց Տելեմաք ընդ զօրանալն և զգօնացեալ, այն ինչ ետես զՀիպպիաս անկեալ՝ 'ի միտ էառ զյանցանս իւր զի յօգնութիւն եկեալ արքայիցնէ զակակցաց՝ մարտնչէր ընդ եղբօր միոյ 'ի նոցանէ. ամաչէր 'ի յիշել զիմաստուն խրատսն Մենտորի, զամօթի հարկանէր ընդ յաղթութիւն իւր, և արժանի պարտութեան զանձն դաւանէր։ Յայնժամ Փաղաս զայրագին ցասմամբ հաս յօգնութիւն եղբօրն, և վարանէր արդեօք գեղարդեամբն զՏելեմաք ընդ երկիր, եթէ մարթէր առանց հարկանելոյ ընդ նմա և զՀիպպիաս՝ որ ընդ նովաւ կայր 'ի փոշւոջ։ Չէր ինչ դժուարին ողխեան զաւակին զրաւել 'ի կենաց զոսոխ իւր. բայց զայրոյթ նորա ցածուցեալ էր, և ոչ յայլ ինչ խորհէր նա՝ բայց 'ի փոխարինել վնասուն հեղութեամբ։ Յոտն եկաց և ասէ. Ո՛ Հիպպիաս,

շատ է քեզ զի ուսար մի ևս արհամարհել զմանկութիւն իմ. կեցցես այսուհետև, զի զարմանալի է ինձ կորով քոյին և քաջութիւն. զիք ինձ 'ի թիկունս հասնին, տեղի տուր զօրութեան նոցա. մի այլ ինչ խորհեսցուք, բայց 'ի մարտնչել աջակիցք ընդդէմ Դաւնեաց:

Այս 'ի բարբառել զայսոսիկ Տելեմաքայ, յարեաւ Հիպպիաս փոշելից և արիւնաշաղախ կորակոր յամօթոյ և դառնացեալ զայրագնութեամբ. բայց Փալաս ոչ ևս իշխէր յարևէ արկանել զայն' որ դեռ այն ինչ մեծանձնութեամբ չնորհեալն էր եղբօր իւրում զարև, այլ ամաչեալ կայր 'ի վարանս: Հասին 'ի վերայ արքայք նիզակակիցք. ածին յայս կոյս զՏելեմաք, և յայնկոյս զՓալաս և զՀիպպիաս' որ խոնարհեալ յամբարտաւանութենէ չիշխէր զաչս 'ի վեր ամբառնալ: Այս բանակին առ հասարակ հիացեալ կայր տեսանելով զՏելեմաք, զի 'ի մատաղ տիս չև յաստիսեալ' ուժեաց տապալել զհսկայն նմանեալ Տիտանեանց որդւոց երկրի, որք անդ ուրեմն փորձեցան մղել ընկենուլ 'ի դիւցընկէց բարձանց զանմահս:

Բայց Տելեմաք քաջ 'ի բաց 'ի բերկրելոյ ընդ յաղթութիւն իւր, մինչդեռ այլք ոչ դադարէին 'ի զարմանալոյ ընդ նա, մեկնեալ ինքն 'ի խորան իւր, ամաչեցեալ ընդ զառանցանսն, և չհանդուրժեալ անձին, հառաչէր ընդ յախուռն բերանն իւր: Ի միւս առնոյր թէ քանի անիրաւ էր

և անխորհուրդ 'ի յոյզս կրից, և մնափառութիւն իմն և փառութիւն և նուաստութիւն 'ի գոռոզ ամբարտաւանութեան անդ նկատէր։ Խելամուտ լինէր զի չիք ճշմարիտ մեծութիւն, բայց 'ի չափոյս յարդարութեան և 'ի համեստութեան և 'ի մարդասիրութեան։ Ոչ իսկ տեսանէր զամենայն, բայց չյուսայր ուղղութեան անձին յետ այնքան ստէպ դարձադարձի իւրոյ յանկումն. մտրա եղեալ ընդ անձին ոգորէր, և մռնչէր իբրև զառիւծ կատաղի։

Ակաց մնաց զաւուրս երկու փակեալ միայնակ 'ի վրանի իւրում, չհամարձակեալ կենակցել ընդ ումեք, և անձամբ զանձն պատուհասեալ։ Աւա՛ղ, ասէր, Ե՞րբ իշխեցից երևել Մենտորի. և իցե՞մ իսկ որդի Ոդիսեայ իմաստնագունին և հեզոյն քան զամենայն մարդիկ։ Ո՞ն թէ յա՞յս իսկ եկի, արկանել հերձուած և խռովութիւն 'ի բանակ այսր դաշնաւորաց. զնոցա՞յն թէ զթշնամեաց նոցին պարտ էր ինձ հեղուլ զարիւն։ Յանդգնեցայ, չկարացի իսկ կշռել 'ի դէպ զգեղարդն, և զխմնգրաւ եղէ 'ի կռիւ ընդ Ադրաստեայ անհաւասար զօրութեամբ, ուստի մնայր ինձ ակն ունել կորանոր պարտութեան և մահու։ Այլ զի՞ էր այն, ոչ ևս կէի յանդուգնս և ապուշ համբակ՝ անսաստ խրատուց, և ամօթ իմ զրաւէ ընդ կենացս։ Աւա՛ղ, եթէ յանկարծ ոչ ևս կարէի յանցանել զոր աշխարհեմն այժմիկ, երանի էր ինձ, և բիւր երանի. սակայն մինչ չև խոնարհեալ

տանջեան՝ զուցէ անկայց և անկանել կամեցայց 'ի նոյն յանցանս, ընդ որս ամաչեմ արդ և սա-կամ: Ո՛վ աղետալի յաղթութիւն, ո՛վ դժոխըմ-բեր դրուատիք՝ որ դառն կշտամբանք են յան-դգնութեանս իմում:

Մինչդեռ Տելեմաք կայր առանձինն և անմխի-թար, եկին առ նա Նեստոր և Փիլոկտետ. քանզի խորհէր Նեստոր յանդիմանել նմա զյան-ցանսն: Բայց բազմահանճար ծերունւոյն տե-սանելով զվհատութիւն մանկանն, փոխեաց զբանս 'ի գգուանս՝ սփոփելով զյուսահատ տրտմութիւն նորին:

Մեծս այս խափան եղև արքայից նիզակակցաց խաղալոյ ընդդէմ Թշնամեաց, զի հարկ էր հաշ-տեցուցանել նախ զՏելեմաք ընդ Փաղանտայ և ընդ Իպպիասայ: Ժամ 'ի ժամ վտանգ 'ի վերայ կայր 'ի դիմի հարկանելոյ տարենտեան զնդին ընդ գունդ հարիւրոց պատանեացն կրետացւոց՝ որ ընդ Տելեմաքայ եկեալ էին 'ի պատերազմն: Նմանայն ինչ վեր 'ի վայր հարեալ աղմկեալ էր միոյն և եթ յանցանօքն Տելեմաքայ. իսկ նա 'ի տեսիլ այնքանեաց աղետից 'ի վերայ հասելոց և ապագայից վտանգաց՝ որոց ինքն լեալ էր պատ-ճառ, 'ի սուգ դառնութեան ընկղմեալ կայր: Ի վարանս տարակուսի կային արքայքն առ հասարակ. խաղացուցանել զբանակն ոչ իշխէին, թէ գուցէ կրետացի զօրք Տելեմաքայ ընդ տարենտացիսն Փաղանտայ յարշաւանս անդ բաղխէին ընդ ի-

ըեալս ։ Պժուարին իսկ էր արգելուլ զնոսա 'ի ներքս 'ի բանակն անդ, թէպէտ և կային 'ի խիստ զգուշութեան ։ Նեստոր և Փիլոկտետ երթեւեկէին անդադար 'ի խորանէ Տելեմաքայ 'ի խորան անողոքելւոյն Փալասայ, որ մռնչէր վրէժխնդիր ։ Ոչ քաղցր ճարտարխօսութիւն Նեստորի, և ոչ սաստ մեծին Փիլոկտետեայ կարէին ողջել զսիրտն վայրենի, զոր և ևս գրգռէին անդուլ անդադար հրապոյրք սպառնալիցք եղբօր իւրոյ Իպպիասայ ։ Իսկ Տելեմաք թէպէտ և յոյժ քան զնոսա դիւրողոք, այլ լքեալ լուծեալ վհատեալ կայր յանսփոփելի տրտմութենէն ։

Ընդ արքայիցն յուզելոց 'ի վարանս և զօրքն առ հասարակ ահաբեկեալ կային, և թուէր բանակն համօրէն որպէս տուն սգոյ՝ յորում մեռանիցի տանուտէրն, պատսպարան ընտանեացն ամենեցուն, և քաղցր ակնկալիք մատաղերամ մանկտւոյ ։ Յայսն աղմուկ շփոթի և ահաբեկութեան բանակին, և ահա լսելի լինէր զարհուրագին շառաչիւն կառաց, շաչիւն զինուց, խրխնջիւն երիվարաց խառն 'ի խուռն ընդ աղաղակ զօրաց, կիսոց յաղթանակաւ խրախուսելոց 'ի կոտորած, այլոց փախստէից անկելոց և վիրաւորաց ։ Փոշի փոթորկեալ յամպ թանձրախիտ ծածկէր զերկին, և պատէր համապարփակ զբանակն. և զհետ փոշւոյն ամբառնայր ծուխ թանձրամած, պղտորելով զօդս, և հեղձամղձուկ զզօրականն առնելով. և շնչիւն իմն հնչէր 'ի խորոց

որպէս զմրրկեալ բոցոյն՝ զոր ժայթքէ Ետնա յընդերացն բորբոքելոց 'ի դարբնել անդ Հեփեստեայ ընդ Կիկլոպայսն իւր շանթիս հօրն աստուածոց։ Արհաւիրք կալան զամենեսին։

Քանզի Ադրաստ, անխղճն այն և դէտ 'ի խնդիր պարապոյ, յանպատրաստից 'ի վերայ հասանէր դաշնաւորաց՝ գիտացեալ զչու նոցա, և զիւրն 'ի նոցանէ ծածկեալ։ Զերկուս գիշերս անհնարին շտապաւ խաղացոյց զզօրսն զանմատոյց լերամբք, զորոյ զպարհակսն գրեթէ առ հասարակ կալեալ դաշնաւորք՝ կարծէին կալ յապահովի, և խորհէին իսկ դիմել ընդ կիրճսն 'ի վերայ Թշնամեաց բանակելոց յետկուսէ լերինն 'ի հասանել օգնական գնդաց՝ որոց մնային։ Ադրաստ, որ ոչն խնայէր յարծաթ առ 'ի գիտել զգաղտնիս Թշնամեաց, իրազէկ լեալ էր խորհրդոց նոցա. քանզի Նեստոր և Փիլոկտետ, Թէպէտ և զօրավարք հանճարեղք և պատերազմափորձք, ոչ յոյժ խորհրդապահք էին. նմա 'ի ծերութեանն անխորժելի էր պատմել զպարծանս իւր. իսկ սա Թէպէտ և սակաւախօս՝ բայց դիւրազգրգիռ էր, և ընդ դրդելն 'ի զայրոյթ՝ ասէր զամենայն որ ինչ 'ի մտի եդեալ էր լռել։ Եւ արք խորագէտք գիտէին զհնարս մերկանալոյ զգաղտնածածուկս սրտի նորա, գրգռելով ևեթ զնա. քանզի սրտմըտեալ նորա յայնժամ և զառանցեալ բղխէր 'ի սպառնալիս, և պանծայր 'ի հնարս հասանելոյ կամացն անվրէպ. և 'ի դոյզն ինչ ուրուք երկ-

բայել՝ փութայր բացատրել զայնոսիկ անխոր-
հրդաբար, և զանհետազօտելի գաղտնիսն 'ի խորոց սրտին արտաքս զեղոյր: Հանգոյն անօթոյ պատուականի՝ այլ հերձելոյ, ուստի հեղան օշարակք և կարի իսկ ազնիւք, սիրտ զօրավարին մեծի չկարէր ինչ պահել:

Որք նենգաւորք կաշառակուրծք յԱդրաստայ ոչ դադարէին 'ի զեղծանելոյ տկարութեամբ երկոցունց արքայիցս: Փաղաքշէին հանապազ զՆեստոր սուտակապաս գովասանութեամբք՝ զկանխակալ յաղթութիւնս նորա պանծացուցանելով, զարմանայրն ընդ յառաջատես միտս նորա, և ոչ տաղտկայրն 'ի գովասանելոյ զնա: Իսկ անհամբերին Փիլոկտետեայ լարէին միշտ որոգայթս, դժուարութիւնս ևեթ առաջարկելով նոսա, արկածս և վտանգս, դժպատեհութիւնս և սխալանս անհնարինս. և 'ի բորբոքել զայրացկոտ բնութեան նորա՝ տեղի տայր 'ի նմանէ իմաստութիւն, և ոչ ևս էր նոյն ինքն: Բայց Տելեմաք հանդերձ ամենայն թերութեամբքն՝ խոհականագոյն յոյժ էր քան զնոսա 'ի խորհրդապահութիւն, խրատեալ յայն 'ի թշուառութեանց իւրոց և 'ի հարկէ թաքստեան յերեսաց տարփաւորացն Պենելոպեայ 'ի տղայ տիոց: Գիտէր նա լռել զգաղտնիս առանց ստելոյ, և ոչ ծածկութեան ինչ և խորութեան բերէր կերպարանս՝ որպիսիք են յաճախ առք ծածկամիտք. չերևէր 'ի նմա որպէս բեռն ինչ պահեալ գաղտ-

նեացն, այլ էր նա միշտ ազատախօս բնական պարզ և որպէս սիրտ 'ի բերանի ։ Սակայն յասել իւրում որ ինչ մարթէրն ասել անվնաս՝ գիտէր անդէն զկայ առնուլ անբռնազբօս, և լռել 'ի խօսից՝ որոց մարթէր կասկած 'ի միտս արկանել այլոց, և խորամանկել զգաղտնիս. որով անմատոյց էր սիրտ նորա և անթափանց ։ Բարեկամք իսկ նորա մտերիմք չգիտէին ինչ 'ի գաղտնեաց նորա, բայց որ ինչ պիտանի համարէր նա յայտնել նոցա վասն ընդունելոյ 'ի նոցանէ խորհուրդս բարիս. միայն 'ի Մենտորէ չէր ինչ նորա թաքուստ. յայլս 'ի բարեկամաց ոչ անխտիր վստահէր, այլ ըստ չափ զփորձ առեալ էր հաւատարմութեան նոցա և իմաստութեան ։

Տեսանէր Տելեմաք զի խորհուրդք իւրեանց հռչակէին յաճախ 'ի բանակին, և ազդ իսկ արար զայն Նեստորի և Փիլոկտետեայ. այլ ազդեցութիւնն այն կարևոր չեղև բաւական երկոցունց քաջահմուտ զօրավարացն 'ի զգուշութիւն ։ Քանզի ծերութիւն դժուարաթեք է, և երկար սովորութեամբն իբր շղթայակապ. անուղղայք են թերութիւնք նորա ։ Որպէս ծառոյ անհարթ և ստուախիտ բուն 'ի պարագայց ամաց կարծրացեալ՝ ոչ ևս ուղղի, այսպէս այր բազմամեայ անընկճելի բնաւորեալ է ունել զսովորութիւնս հասակակիցս իւր, որ մինչև ցուղիղ ոսկերացն տարրացեալ են ։ Բազում այն է զի ճանաչէ զայնոսիկ՝ այլ տարաժամ, և հեծէ 'ի նանիր. 'ի

սկզբնաբոյս ևեթ հասակին մարթ էր նմա ուղ-ղել զանձն ։

Էր 'ի բանակի անդ յազգէ Դոլոպաց՝ Եւ-րիմաք ոմն անուն, որ գիտէր շողոքորթութեամբ ընդ միտ մտանել և ըստ ախորժակաց և բնաւո-րութեան արքայից զանձն պատշաճել, հանճա-րեղ և ճարտար 'ի գիւտ հնարից հաճոյ լինելոյ նոցա ։ Ոչ էր ինչ յաչս նորա դժուարին. և 'ի խնդրել ուրուք զկարծիս նորա, գուշակէր զեւս ա-խորժելին ։ Զուարճախօս էր, երգիծանող ակա-րաց և մարդահաճոյ այնոցիկ՝ յորոց երկնչէրն, ճարտար 'ի յերկիւրել մեղմախառն զրուատս համեստագոյն իսկ որերոյ ընդունելի. զգօն ընդ զգօնս, զուարթ ընդ զուարթաբարոյս, և յա-մենայն կերպարանս դիւրափոփոխ ։ Անկեղծք և առաքինիք, որ միշտ նոյնպիսիք՝ պատկառ կան կարգաց առաքինութեան, ոչ երբէք այնպէս հաճոյ գտանին իշխանաց՝ որպէս որք շողոմենն զկիրս բռնացեալս 'ի նոսա ։ Հմուտ էր Եւրիմաք պատերազմի և 'ի յանձանձանս իրաց տեսչու-թեան, և 'ի խնդիր բախտի յարեալ էր 'ի Նես-տոր, և ստացեալ զմտերմութիւն նորա. և որ ինչ կամէրն գիտել, որսայր հանէր 'ի խորոց սը-նապարծ սրտի նորա՝ որում ոչ անհաճոյ էին գո-վութիւնք ։

Բայց թէպէտ և չվստահէր 'ի նա Փիլոկտետ, սակայն զայրոյթ և կարճմտութիւն զնոյն գոր-ծէին 'ի նմա վնաս՝ որ ինչ 'ի Նեստոր վստահու-

Թիւն։ Ածէր եւեթ ընդ նմա Եւրիմաք, եւ զորդութեամբ զամենայն զաղտնիս նորա մերկանայր. եւ զանձն բազում ընկալեալ յԱդրաստայ արքայէ Դաւնեաց, յայտնէր նմա զամենայն խորհուրդս դաշնաւորաց։ Զի էին իսկ Ադրաստայ 'ի զօրս անդ դաշնաւորաց փախստականք, որոց մի ըստ միոջէ խոյս տուեալ անտի՝ դառնային յիւրսն՝ բերել յԵւրիմաքեայ զկարեւոր զրոյցս։ Չէր իսկ վտանգ յայտնելոյ դիւրաւ մատնութեանն, զի ոչ նամականի փախստեայքն ածէին. եթէ պատահէր նոցա անկանել 'ի ձեռս թշնամեաց, ոչ ինչ առ նոսա գտանէր գուշակ մատնութեանն։ Այս օրինակաւ Ադրաստ զառաջս առնոյր հնարից թշնամեացն. զի ընդ հաստատել ինչ նոցա 'ի խորհրդեան, եւ ահա Դաւնեանք պատրաստէին զոր ինչ 'ի դէպ էր առ 'ի դերեւ հանել զհնարս նոցա։ Տեղեմաքեայ զպատճառս իրացն հետազօտեալ, ոչ դադարէր կասկած 'ի միտս արկանել Նեստորի եւ Փիլոկտետեայ. այլ նոցա կուրացեալ էին միտք, եւ վատնէին ջանք պատանւոյն։

Հաստատեալ էր դաշնաւորաց 'ի խորհրդեան անդ՝ սպասել բազմաձեռն գնդից եկաւորաց, եւ յղեալ իսկ էր գիշերագնաց զօրամիղ հարիւրոց նաւաց՝ ձեպել զնոսա, եւ վաղագոյն առեալ ածել 'ի բանակետղ անդր յապառաժուտ ծովեզերաց՝ ուր ժամանելոցն էին։ Իսկ նոքեանք կարծէին կալ յապահովի, զի ըմծտակայ լերին կալեալ էր

զօրօք զպահակսն զանմատոյց կողման Սալենեաց [5]. Նստէր բանակն առ եզր Գալեսեայ՝ գետոյ, ոչ ինչ հեռի ՚ի ծովէ, ՚ի դաշտ բազմազուարճ ՚ի պտղաբերաբօտ եւ յառատաձեռն կարեւորաց յապրուստ զօրականին։ Իսկ Ադրաստ ՚ի թիկանց կալով լերինն՝ որ թուէր անանց, իբրեւ ազդ եղեւ նմա զի թշնամիք տկարք էին եւ գայր նոցա հզօր օգնականութիւն, եւ զի նաւք նոցա մնային հասանելոյ զօրացն, եւ զի հերձուած ՚ի բանակ անդր նոցա անկեալ էր գժտութեամբն Տելեմաքայ ընդ Փալաս, աճապարեաց շրջան էառ ՚ի բացէ, եւ հապճեպ տագնապաւ զտիւ եւ զգիշեր ընթացեալ ընդ ծովեզր, անց ընդ ճանապարհս՝ ընդ որս անհնարին թուէր անցանել ումեք։ Այսպէս անվեհեր արիութիւն եւ երկայնամիտ աշխատութիւն տապալեն զամենայն զխոչ եւ զխութ. այսպէս չիք գրեթէ եւ ոչ մի ինչ անհնարին որոց գիտիցեն դիմադրաւ լինել եւ ժուժկալ. այսպէս որք թմրեալ կան եւ զդժուարինսն համարին անհնարինս, ՚ի դէպ իսկ ՚ի վերայ հասանէ նոցա վտանգ եւ կործանումն։

Իսկ ահա յեղակարծում պահու ընդ այգն եհաս Ադրաստ ՚ի վերայ հարիւրոց նաւացն. որք զի առանց զգուշութեան եւ անկասկած կային, տիրեաց նոցա անխափան, եւ ածեալ նոքօք վաղ ընդ փոյթ անակնկալ զզօրս իւր ՚ի բերան գետոյն Գալեսեայ, ձեպէր ընդ վերկոյս առ գետեզերբն։ Նախապահք բանակին մերձեալք անդր՝

համարեցան հասեալ զզօրս՝ որոց մնային, և խռովայոյզ խնդութեան հարկանէին։ Իսկ Մզրաստ մինչ չև 'ի ծանօթս եկեալ՝ էջ անկաւ զօրօքն 'ի վերայ թշնամեաց՝ որք անկասկած կային 'ի դաշտ անպատսպար խառն 'ի խուռն անառաջնորդ և անզէն. և յարձակեցաւ նախ ընդ կողմն բանակին՝ ուր էին տարենտացիք, և զօրավարէր նոցա Փաղաս։ Այլ այնպէս սաստկութեամբ միջամուխ եղեն ամօք Պաւնիկք, զի մանկտին սպարտացի աճապարեալ՝ չկարաց զդէմ ունել։ Այլ 'ի խուճապել նոցա և յաղմկել ընդ իրեարս, հուր 'ի բանակն ետ Մզրաստ հարկանել. և բոց 'ի վրանաց անտի բորբոքելոց ելանէր ամբառնայր յամպս հասանէր, և շառաչ նորա որպէս զուղխից հոսանաց՝ որ հեղեղատեն զդաշտավայրս, և աղխաղխելով առեալ ձգէն արմատախիլ զյաղթ կաղնիս, այլս ակաղձունս հնձովք, և հիւղս և զոմն հանդերձ անդէովք։ Հողմ բռնաշունչ մղէր զբոցն խորան 'ի խորանէ, և 'ի քթթել ական թուէր բանակն ամենայն որպէս անտառ վառեալ 'ի կայծէ հրդեհեալ։

Փաղաս, որ մերձաւորագոյն քան զայլս էր վտանգին, չկարաց ելի աղագս գտանել. եթէ ոչ փութայր չու առնել, համայնածախ հասանէր զօրացն կորուստ 'ի հրդեհէն. բայց և խուճապել 'ի խառն 'ի խուռն նահանջ յերեսաց յաղթող թշնամւոյն վտանգաւոր էր յոյժ։ Նախ զմանկտին սպարտացի հան արտաքս, մինչ չև

իսկ կխոցն 'ի նոյանէ զխնուորեալ. բայց Ադրաստ չետ նոցա պարապ. աստի աղեղնաւորք կորովաձիգք նետս թանձրատարափս զնոքօք ածէին, և անտի պարսաւորք կարկուտս մեծամեծ քարանց: Եւ ինքն իսկ Ադրաստ սուսեր 'ի ձեռին, պարագլուխ ընտրելոց քաջացն Դաւնեաց, զհետ մտեալ փախստէիցն 'ի լոյս բոցոյ հրդեհին, զապրեալսն 'ի հրոյ բազմախողխող երկաթոյ տայր 'ի ճարակ. գնայր նա 'ի լող ընդ ճապաղիս արեան, և ոչ յագէր 'ի կոտորածէ, մոլեգնագոյն քան զառիւծ և քան զվագր մոլեալս 'ի խողխողել զհովիւս հօտիւքն հանդերձ: Նկուն եղեն փալասեանք, ելիք զնոսա արիութիւն. մահ տժգոյն, որում կարապետէր ճիւաղ դժոխային օձախռիւ գիսակօք, ուռոյց զարիւն յերակունս նոցա. անդամք նոցա ընդարմացեալ կարկամեցան, և ծունկք նոցա կթուցեալք բառնային 'ի նոցանէ զյոյս փախստեան:

Իսկ Փալաս, զոր դեռ ևս ամօթ և կատաղութիւն խրախուսէին՝ նուաղ ինչ տալով նմա ոյժ, ամբարձ զձեռս իւր և զաչս 'ի վեր, և ետես 'ի շանթընկէց բազկէն Ադրաստայ հարեալ զեղբայր իւր. որ տապալեալ առ ոտս իւր ընդ երկիր թաւալէր 'ի փոշւոջն. արիւն թուխ փրփրացեալ բղխէր ուղխօրէն 'ի կողահերձ 'ի խորամուխ խոցոյն. աչք նորա առկայծեալք խաւարէին, և հոգին կատաղի ընդ սպառսպուռ արեանն սրանայր 'ի բաց: Յայնժամ թաթաւեալ յարիւն հարա-

զատին, ապիկար ձեռն տալ նմին, պատեալ 'ի խուռնէ թշնամեաց՝ որ տապաստ արկանել զնա ջանային, ասպար նորա ծակոտեալ 'ի տարափոյ նետից, և ինքն վիրալից, ոչ ևս զօրէր զկաց մնաց փախստէիցն ժողովել. և ոչ 'ի դիցն ամենատեսից ողորմութիւն գտանէր։



# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ

## ՎԵՇՏԱՍԱՆԵՐՈՐԴԻ ԳՐՈՑՆ

1 Պողիւդեւկէս և Կաստոր որդիք Արամազդայ, պաշտպանք ձիոց, յաստեղատունս անդ դասեալ Երկուորեակք:

2 Լայէրտ հայր Ոդիսեայ, հաւ Տելեմաքայ:

3 Իրիս ծիածան, դուստր Թաւմասայ, պատգամաւոր Հերայի դիցուհւոյն անձրեւաց:

4 Դոլոպք ազգ Թեսաղիոյ, զորս Պեղէոս արքայ նոցա առաքեաց 'ի պատերազմն Տրովադայ, և զօրավարէր նոցա Փիւնիկ:

5 Ապէննեան լերինք Իտաղիոյ, որոց ծինք 'ի Սաւոնա ծովափամերձ Գենուայ, ուր կցին ընդ Ալպեանս ծովեզերեայս, և անջրպետեն զրեթէ ընդ մէջ զԻտաղիա:

6 Գալէսոս գետ Կալաբրիոյ 'ի Նէապօլիս, որ անկանի 'ի ծոցն տարենտեան:



# ԱՐԿԱԾՈՒՔ ՏԵԼԵՄԱՔԱՅ



## ԳԻՐՔ ԵՕԹՆԵՒՏԱՍՆԵՐՈՐԴ

# ՆԱԽԱԴՐՈՒԹԻՒՆ

Տեսեմաք աստուածագործ սպառազինութեամբք զկին յոգ-նութիւն Փալլասայ. եւ տապաստ արկեալ զԻփիկլէս որդի Ագ-րաստայ, հալածէ զԹշնամին յաղթական. բայց մըրիկ 'ի վերայ հասեալ՝ զլուա՛ առնէ մարտին, դողացեալ 'ի նմանէ զլուալ յաղթութիւն։ Ապա ածեալ զվիրաւորս՝ խնամարկէ զնոսա, մանաւանդ զՓալլաս։ Յուղարկաւորէ փառօք զեղբայր նորա զԻպպիաս, եւ զաճիւն նորա ամփոփեալ 'ի սափոր ոսկի՝ մա-տուցանէ ինքնին Փալլասայ։

# ԱՐԿԱԾՔ ՏԵԼԵՄԱՔԵԱՅ



## ԳԻՐՔ ԵՕԹՆԵՒՏԱՍՆԵՐՈՐԴ

Աղջամուղջ պար առեալ 'ի դիցն երկնագումար խմբից, դիտէր 'ի բարձանց Ոլիմպեայ 'ի կռո-ւած արքայիցն դաշնակակցաց. և ապա դառնայր հայէր յանյեղլի հրամանս բախտին, և նկատէր զի մի 'ի զօրավարաց՝ որոց 'ի նոյն աւուր կարծեաց էր թել կենաց 'ի Պարկայցն մկրատէ։ Պէտականն կայրն դիք առ հասարակ ակնարկութեան նորա. իսկ հայրն անմահից և մահկանացուաց դաշն և մեծավայելուչ ձայնիւ ասէ. Տեսէք յոր սահման հասին իրք դաշնակակցաց, ահա Ադրաստոս արկանէ տապաստ զամենայն թշնամիս իւր. բայց խաբեբայ է տեսիլդ, և կարճատև փառք և յաջողութիւն չարաց։ Ադրաստոս ամբարիշտն, և ատելի վասն հաւատադրժութեանն, մի տարցի լի բովանդակ զյաղթութիւն. ոչ առ այլ ինչ չարիքդ այդ հասին դաշնաւորաց, բայց զի զգաստասցին և զգուշագոյն լիցին խորհրդա-

պահք ։ Իմաստուհին Աթենաս նորահրաշ պատրաստէ փառս սիրելւոյն իւրում Տելեմաքայ ։ Լռեաց ապա Արամազդ, և դիք առ հասարակ անբարբառ կային 'ի գնին մարտին ։

Այդ եղև՝ Նեստորի և Փիլոկտետեայ՝ զի հրդեհէր կողմն մի բանակին, և բոցն հողմավար ծաւալեալ ճարակէր, և զի խուճապեալ էին զօրքն, և ոչ ևս կարէր Փալաս ժուժկալել ընդդէմ թշնամեաց ։ Նոքա ընդ լուր գուժկանին 'ի զէն ընթացան, ժողովեցին զզօրագլուխս, պատուէր ետուն փութալ 'ի չու, խոյս տալ 'ի հրոյն ։ Տելեմաք իսկ, որ կայրն սրտաբեկ և անմխիթար, թողեալ զտրտմութիւն՝ առ զզէնս իւր, զորս իմաստուհւոյն Աթենասայ պարգևեալ էր նմա, 'ի կերպարանս Մենտորի իբր թէ 'ի սալենտացւոյ ճարտարէ զայնոսիկ առեալ, բայց Հեփեստեայ զայնոսիկ տուեալ էր դարբնել 'ի ծխամած խորոցս լերինն Ետնայ ։ Եւ էին ողորկ և ջինջ իբրև զբիւրեղ, և փայլուն իբրև զճառագայթս արեգական ։

Պղոշմեալ 'ի զրահսն Պիսիդ և Պալլաս՝ կային 'ի վսեր, երկաքանչիւր յիւր անուն զնորակերտ քաղաքին կամելով զփառս ։ Եռաժանեաւն Պիսիդ փեռեկէր զերկիր, և երիվար սօս փռնչելով ընդոստնոյր բոցաւէն և փրփրերախ ։ բաշքնորա 'ի հողմոց զուլամբն փաղփեալ, սրունքն ճապուկք հաստաջիլք կորովակի և թեթև ընդգճեալք, և թուէր ինքն ճախր առնուլ քան քայ-

լափոխ, զհետս անզգամ արշաւասոյր սմբակացն ոչ թողլով, և խորխինջ խակ նորա գրեթէ գոյր լսելի :

Այլ ուր Աթենաս մատուցանէր բնակչաց նորոյ դաստակերտին զպտուղ իւրատունկ ձիթենւոյն. ուղէշն այն պտղաւոր 'ի դէմս ածէր զցանկալի խաղաղութիւն հանդերձ լիութեամբ, զեր 'ի վերոյ խաղմնական ամբոխութեանց՝ որոց երիվարն այն էր նշանակ : Պուպարայաղթ արձանանայր պարզ և օգտակար պարգևօքն դիցուհին, և քաղաքն հոյակապ 'ի նորին անուն յորջորջէր Աթէնք :

Եւ այլուր դարձեալ շուրջ զդիցուհեաւն գեղարուեստք բոլորեալ, մանկունք մատաղք թևաւորիկք ընդ հովանեաւ նորա պատուարէին զարհուրեալք 'ի գազանային 'ի համայնաւեր ցասմանէն Արեայ, որպէս գառինք զմայրն բառաչելով դիմեալք յերեսաց ամայլուկ գայլոյ՝ որ մղեգլին բերանաբաց յարձակէր խողխողել զնոսա : Իսկ ինքն դիցուհին խոժոռ և մեծասաստ յամօթ առնէր գերահամաձայն անկուածովքն զժպրհութիւն Արաքնեայ՝ որ իշխեցին 'ի վէճ գալ ընդ նմա 'ի ճարտարագոյն ոստայնանկութիւն. և վատշուէրն ծիւրեալ անդամօք և տգեղացեալ 'ի սարդ փոխակերպէր :

Ոչ ինչ 'ի բացէ նոյն ինքն Աթենաս 'ի սկզբամարտն Տիտանանց խորհուրդ տայր Արամազդայ, և խրախոյս դիցն առ հաստատակ պակուցե-

լոց ։ Նոյն ինքն դարձեալ նիզակ 'ի ձեռին այծենակաշ ասպարաւն կայր արձանացեալ յեզր Բանթեայ ՝ և Սիմոլեայ ՝, զձեռանէ կալեալ Ողիսեայ, քաջալերելով զգունդս Յունաց փախըստեայս, և քաջաց զօրավարացն տրովացւոց և ահարկուին իսկ Հեկտորի յաւելլով ոյժ, և զՈղիսեւս 'ի ներքս մուծանելով 'ի մահահրթն կազմած՝ որ 'ի միում ևեթ գիշերի զՊրիամու կործանելոց էր զինքնակալութիւն ։

Անտի և Դեմետրէ դրուագեալ 'ի վահանին, յարգասաւոր անդաստանս Էննայ 'ի միջերկրայս Սիկիլիոյ, ժողովէր զորեարն վայրավատին զհետ որսոց և 'ի կուլթ մրգաց վայրի առ 'ի սնունդ, ուսուցանէր վայրագասուն մարդկանն ձլել զկորդ, և 'ի բազմաբեղուն ծոցոյ երկրի հանել զսնունդ իւրեանց, և մատուցանէր նոցա զարօր՝ ձգելով զեզնամոլն 'ի լուծ ։ Բանայր անդ երկիր ակօսաբեկ 'ի խոփ արօրոյն, և հունձք ոսկեփունջք 'ի վեր երեւեալ՝ ծածկէին զյուռթի արտորէս ․ հնձէր առտահունձ 'ի սայր գերանդւոյ զբերս երկրի, վարձս ցանկալիս վաստակոց իւրոց ․ երկաթն 'ի յաւեր ամենայն ուրեք այլուր պաշտեցեալ, առ 'ի պատրաստել ևեթ լիութիւն և բարօրութիւն անդամոր պաշտէր ։

Մերձ յանտառ ուրեք յաւէրժհարսունք ծաղկապսակք պարէին ընդ արօտ առ գետափամբ ․ նուագէր Պան սրնգաւ, և Փաւոնայք և մարդապայք խնդամոլիկք Թինդս առեալ մեկուսի կայթա

հարկանէին ։ Պսակեալ 'ի բաղեղն երևէր անդ Սպանդարամետ, յեցեալ աջոյն 'ի տեգ իւր կարճառուն, որ թ սաղարթազեղ և ողկուզալից կրելով 'ի ձախումն ․ գեղ դիմաց նորա մեղկ, այլ ազնուական իմն խանդաղանօք նուաղեալ կաթոգին՝ որպէս հիքէին Արիադնեայ ՚ երևեալ լքելումն մենաւոր խորասոյզ 'ի վիշտս յօտար գետեզեր ։

Հանդերձ սրքիմբք և որեար թագուհ ամենայն ուրեք անդ երևէին ․ ծերք զերախայրիս 'ի մեհեանս ընծայաբերելով, արբունք խանջ 'ի վաստակոց տունջեան՝ առ հարսունս իւրեանց դառնալով, և կանանիքն ընդ առաջ նոցա զորդեակսն գգուանօք զձեռանէ առեալ բերելով ։ Հովիւք իսկ երևէին անդ երգեցիկք, և կէսք 'ի նոցանէ 'ի նուագ սրնգի պարաւորք ։ Ամենայն ինչ յանդիմանէ առնէր անդ խաղաղութիւն լիութիւն և բերկրանս, ամենայն ինչ անդ գեղածիծաղ և գեղանուէր ։ Եւ գայլք յարօտս անդ խայտային ընդ խաշինս, և առիւծունք և վագերք մերկացեալ զգազանութիւն ընդ մատաղերամ գառինս գնային ճարակաւորք, և համբակ հովուի արածէր զնոսա ցպով ։ Դարն ոսկեղինիկ հանդերձ համայն բերկրանօքն թուէր անդ նկարեալ պատկեր ցանկալի ։

Զայսուիկ պատանեակն Տելեմաք զաստուածակործ զզրահս արկեալ զանձամբ, փոխան իւրոյ վահանին զայծենակաշին էառ զասպար ահաւոր՝

զոր Ճիրիկ դիցն թեթևաթռիչ պատգամաւոր 'ի դիցուհւոյն Աթենասայ բերեալ, և գաղտ 'ի պատանւոյն բարձեալ զնորին տապար՝ զնոյն զայն փոխանակ եղեալ էր զդից խոկ ահարկուն։ Դիմեաց նոքիմբք սպառազէն արտաքս 'ի բանակէն խոյս տալ 'ի հրոյն. ձայնէր առ զօրավարս բարձրագոչ, և 'ի ձայն բարբառոյ նորա խրախուսէին դաշնաւորք առ հասարակ ահաբեկեալք։ Բոց աստուածեղէն յաչաց քաջամարտիկ պատանւոյն փայլատակէր. իսկ ինքն դեռ ևս հեզահամբոյր, դեռ ևս անխռով և հանդարտ, դեռ ևս զգօն տայր հրամանս, որպէս խոհական ծերունի փոյթ 'ի տնտեսել և 'ի կրթել զմանկտին։ Բայց սթափ էր նա և երագ 'ի գործ, հանգոյն սրընթաց գետոյ՝ որ ոչ միայն զփրփրաձև ալիսն սաստիկ հոլովեալ, այլ և զնաւս մեծամարմինս ընդ նոսին առեալ ձգէ։

Փիլոկտետ և Նեստոր և զօրավարք առ հասարակ մանդուրացւոց և այլոց ազգաց զօրութիւն իմն 'ի զաւակն ողիսեան նկատէին, որում հարկ էր ամենայն ումեք տեղի տալ։ Թուէր ծերունեաց մոռացեալ զփորձ բազմամեայ, և զօրավարաց զխորհուրդ և զիմաստութիւն. Նախանձ իսկ ընդաբոյս 'ի մարդիկ թուէր 'ի սիրտ ամենեցուն շիջեալ. ամենեքին լռեցին, ամենեքին ակնկառոյց կային 'ի Տելեմաք՝ կազմ և պատրաստք 'ի հնազանդել աներկմիտ իբր ընդ հրամանաւ նորա սովորեալք։ Յառաջ անցեալ էր նա 'ի մի 'ի

բլրոյ՝ դիտել զկայ թշնամեաց, և պարտ համա-
րեցաւ դիմել խոկ և խոկ հասանել 'ի վերայ նո-
ցա, մինչդեռ խառն 'ի խուռն ցրուեալ էին 'ի
հրդեհել զբանակ դաշնաւորաց, շրջան էառ շտա-
պաւ, և զօրավարք առ հասարակ քաջահմուտք
զհետ նորա դիմեցին:

Մինչդեռ Դաւնիք կարծէին զթշնամիսն պա-
շարեալս 'ի հրոյ, եհաս 'ի վերայ նոցա Տելեմաք
յետկուսէ: Նոքա 'ի յեղակարծ յարձակմանէն
խուճապեալ՝ անկանէին 'ի ձեռանէ նորա որպէս
տերևք յելս աշնայնոյ յանտառի, յորժամ 'ի գոռ-
բքաբեր հիւսիսոյ հեծէն ճարճատմամբ բուռնք
զառամ մայրեաց, և կողերքն համայն շարժեալ
տատանին: Ծանկէր երկիրն 'ի դիականց տա-
պաստ անկելոց 'ի սրոյն Տելեմաքայ. աշտէիւ նո-
րին հարեալ 'ի սիրտ իւր անկաւ Իփիկլէս, կրտ-
սերագոյն յորդիս Ադրաստայ, 'ի խիզախելն ընդ-
դէմ նորա առ 'ի փրկել զհայր իւր՝ յոր ահա
հասանէր նա 'ի հարուած: Տելեմաք և Իփիկլէս,
գեղանիք երկոքեան, երկաքանչիւր ևս ուժեղք
աջողակք արիասիրտք և ախոյաբարոյք. կերպա-
րանօք իսկ հանգունատիպք միմեանց և համա-
տիք, սիրելիք երկաքանչիւր ծնողաց իւրեանց.
բայց Իփիկլէս որպէս ծաղիկ 'ի փթիթս հարեալ
'ի դաշտի 'ի սայր գերանդւոյ անկաւ թառամեալ:
Զհետ նորին Տելեմաք արկ զԵւփորիոն զա-
նուանին 'ի լիւդացիս յեկս Ետրուրիոյ. և ա-
պա անկաւ 'ի սայր սուսերի նորին Կլէոմեն պա-

տանի դեռամուսին, որ խոստացեալն էր հարսն իւրում՝ ածել աւար մեծափարթամ 'ի մարտէ՝ ուստի ոչ ևս դառնալոցն էր։

Մռնչեաց Ադրաստ ընդ մահ սիրեցելոյ իւրոյ որդեկին, ընդ անկումն յոգունց զօրավարաց, և ընդ յափշտակութիւն յաղթութեանն 'ի ձեռաց իւրոց։ Փալաս որ ահա անկեալ առ ոտս նորա դնէր վիրաւոր, լինէր որպէս զոհ կիսախողխող զերծեալ 'ի բագնէ. զի փոքր մի ևս, և գրաւեալ էր զնա ոսոխին 'ի կենաց։ Այլ մինչդեռ ողողեալ կայր նա յարեան իւրում, և 'ի ձախաղիս արեան զօրականին՝ որ զնովաւ մարտնչէր, լուաւ զձայն խրախուսանաց Տելեմաքայ՝ որ հասանէրն անդր յօգնութիւն. և դարձաւ 'ի նա շունչ նորա, և սուսերք անկեալք զբազօք նորա փարատեցան։ Յանականկալ յարձակմանէն խռովեալ Դաւնեաց, լքին զՓալաս և դիմեցին ընդդէմ վտանգին. և էր յայնժամ տեսանել զԱդրաստ որպէս զվագր, յորոյ 'ի ժանեաց յափշտակիցեն զորսն հովիւք համախումբք։

Ի խնդիր նորին 'ի խուռն մարտի դիմէր Տելեմաք, վճարել 'ի մի հարուած զպատերազմն, և ազատել զդաշնաւորս յոխերիմ թշնամւոյն. բայց ոչ այնպիսի արագ և դիւրին յաղթանակ մարտի սահմանեալ 'ի հրամանաց էր Արամազդայ ոդիսեան զաւակին։ Նոյն և Աթենասայ էին կամք, վշտակրել նմա ընդերկար զի քաջ ևս ուսցի իշխել մարդկան. վասն որոյ ամպարիշտն Ադրաստ

'ի հօրէն դից լինէր պահպանեալ, որպէս զի ա-
ռաւելագոյն լիցի Տեղեմաքայ ստանալ փառս և
առաքինանալ։ Միգաւ իմն՝ զոր Արամազդ
թանձրացոյց յօդս՝ փրկեցան Դաւնիք. Թնդիւն
ահագին որոտման յայտնեաց զկամս դից. Թուէր
իմն կամարացն յաւիտենականաց կործանել յե-
թերաց բարձանց 'ի գլուխս տկար մահկանա-
ցուաց. փեռեկէին փայլատակունք զմռայլ ամպոց
ծագաց 'ի ծագս երկնից, և 'ի շլանալ աչաց 'ի հրատ
նոցին բոցափայլ՝ և ահա արհաւիրք աղջամղջին
գիշերոյ դարձեալ պատէին։ Հանդերձ սաքիմբք
և տեղատարափք անձրևաց ստիպեցին մեկնել
յիրերաց զբանակսն զերկոսին։

Ադրաստ օգնութեամբ դիցն մազապուր ե-
ղեալ, և անճանաչող զօրութեան նոցա, դժնդա-
կագոյն ևս վրէժխնդրութիւն ապերախտու-
թեամբն իւրով պատրաստեաց անձին։ Փու-
թացաւ խաղացոյց զզօրս իւր ընդ կիսայրեաց
բանակն և ընդ ճահիճ՝ որ հանէր 'ի գետն. այնու
ճարտարութեամբ և փութով աջողեալ, զի նա-
հանջիւն այնուիկ եցոյց զհանճար իւր մեծ և
զարագամտութիւն։ Դաշնաւորք խրախուսեալք
'ի Տեղեմաքայ կամէին պնդել զհետ, այլ նա
զմրրիկն իւր օգնական գտեալ՝ խոյս ետ 'ի նոցա-
նէ, զօրէն երագաթև հաւու զերծելոյ 'ի վար-
մից որսողի։

Դարձան դաշնաւորք 'ի բանակ իւրեանց՝ առ-
նել ճար և ճարակ վնասուցն. և տեսին անդ որ

ինչ աղունք եղերականք արգասիք են մարտի։ Հիւանդք և վիրաւորք յելս 'ի վրանացն ձգնեալք 'ի սող ընդ երկիր, և ոչ ժամանեալք ապրել 'ի հրոյն, կիսայրեացք յոգիս ապաստան բողոք սրտաւ առ 'ի ձայն աղիողորմ յերկինս բառնային։ Յուզեցան գութք Տելեմաքայ, չկարաց ժոյժ ունել արտասուաց, զաչսն ստէպ 'ի բաց դարձուցանէր արհաւրօք և կարեկցութեամբ, չկարէր տեսանել առանց հառաչանաց զկիսամեռս մատնեալս 'ի դառնակսկիծ և յերկարատև մահ, որք թուէին որպէս ողջակէզք 'ի բագնի՝ համափիւռ զհոտ ձենձերոյ ծաւալեալ։ Յայնժամ յոգւոց հանեալ Տելեմաքայ, ասէ.

Աւա՜ղ, այսոքիկ ուրեմն են աղէտք՝ զորս զհետ իւրեանց առեալ ձգեն պատերազմունք։ Որպիսի՜ կոյր մոլեգնութիւն վարէ զհէք ազգ մահկանացուաց. աւուրք սակաւք տուան նոցա յերկրի, և այնոքիկ լի աղխտիւք. առ ի՞նչ իցէ ձեպել նոցա և ևս զմօտալուտն մահ. առ ի՞մ յաւելուլ վիշտս դժոխըմբերս 'ի դառնութիւն անցքր, որով լցին դիք զկարճատև զայս կենցաղ։ Եղբարք զմեռանց գոլով, զմիմեանս գիշատեն՝ անագորոյնք քան զգազանս վայրենիս։ Ոչ ոգորի առիւծ ընդ առիւծ, և ոչ վագր ընդ վագեր մաքառի. չհամազգեացն ևեթ դարանին նոքա։ Մարդ ևեթ բանաւոր դժնէագոյն քան զանբանս և առ համազգիսն անզգամի։ Եւ զի՞նչ շահ 'ի պատերազմացդ. մի՞ թէ չկայցէ՞ երկիր առաւել քան զկար մշակու-

Թեան մարդկան, և չիցե՞ն անապատք լայնալիրք՝ զորս ոչ բաւէ ընուլ բնակչօք ազգ հանուրց մարդկան։ Ու զի՞նչ ապա, բայց մնափառութիւն և իղձ համբաւոյ աշխարհակալութեան յուզէ պատերազմունս 'ի գաւառս բազումս. և մի ոք 'ի ցասմանէ դիցն առաքեալ յաշխարհ՝ մնափառութեան իւրում զոհէ գազանաբար զբազումս. հարկ է ամենայնի մատնել 'ի կորուստ, ամենայնի թաթաւել յարիւն, ամենայնի ձարակ գոլ հրոյ, և ապրելոցն 'ի հրոյ և 'ի սրոյ՝ սովալլուկ կորնչել, որպէս զի այր մի՝ բոլոր մարդկութեանս ունհար՝ բերկրեսցի և մնափառեսցի ընդ աւերն համաշխարհական։ Նչա՛ղ այլանդակ փառացն. և իցէ՞ իսկ մարթ ըստ արժան բաւականին գարշել յայնպիսեաց և եպերել զայնպիսիսն օտարախորթս 'ի մարդկութենէ։ Չեն իսկ և չեն այնպիսիքն դիւցազունք, և ոչ իսկ մարդիկ, այլ նզովելիք դարուց 'ի դարս՝ որոց զարմանալիս կարծէին գոլ։ Ա՛հ, քանի՜ զգուշութեան պէտք են թագաւորի 'ի պատերազմէ. չէ իսկ բաւական թէ իցէ այն արդար, այլ պարտ է զի և կարևոր իցէ յօգուտ հասարակաց. ոչ է օրէն հեղուլ զարիւն ժողովրդեան, բայց միայն առ 'ի փրկել զնոյն ինքն յանհնարին կարիս իւր։ Բայց բազում այն է՝ զի հրապոյրք մարդահաճոյից, ծախողակի պարծանք, ընդունայն վրէժխնդրութիւն, զօշաքաղութիւն ընդ գեղեցիկ կերպարանօք պատրուակեալ, և գաղտնի համախոհութիւնք, առեալ

ձգեն զԹագաւորս 'ի պատերազմ՝ որ ածէ 'ի վերայ նոցա Թշուառութիւն, և ամենայնի վտանգ տարապարտ, և նոյնչափ աղէտս ժողովրդոց նոցա որչափ Թշնամեաց։

Զայսոսիկ յանձն իւր բարբառէր Տելեմաք. և ոչ շատ համարեալ աշխարհել զԹշուառութիւնս պատերազմի, գուն գործէր սփոփել զԹշուառացեալս։ Շրջէր վրան 'ի վրանէ օգնել հիւանդաց և օրհասականաց, մատուցանէր նոցա դեղ և արծաԹ, արգահատէր զնոսա և քաջալերէր սիրողական բանիւք, և որոց չկարէրն այց առնել ինքնին՝ զայլս առաքէր յայց։

Ընդ կրետացի զօրս իւր էին ծերք երկու, անուն միոյն Տրոմափիլ, և միւսոյն Նոսոփուգ։ Տրոմափիլ 'ի տրովական մարտին լեալ էր ընդ Իդոմենեայ, և ուսեալ անդ յորդւոց Ասկլեպեայ զաստուածուսոյց արուեստ վիրաբուժուԹեան։ Արկանէր 'ի կարի իսկ խորին և 'ի չարաԹոյն վէրս սպեղանի անուշահոտ, որ զմասունս մարմնոյ զխողխայԹեալս և ապականեալս մաշէր, անկարօտ հատման և խարման, և նորոգէր մարմին առողջ և փափկագոյն։

Իսկ Նոսոփուգեայ չէր իսկ տեսեալ զմանկունսն Ասկլեպեայ, այլ 'ի ձեռն Մերիոնի ընկալեալ մատեան ինչ մեհենական և խորհրդաւոր աւանդեալ յԱսկլեպեայ յորդիս իւր։ Դարձեալ զի և սիրելի դիցն էր Նոսոփուգ, և յօրինեալ էր նորա օրհնուԹիւնս որդւոց Լետոնայ՝. և զօր

համապազ ոչխարակ մի սպիտակ և ամբիծ մատուցանէր զոհ Ապողոնի, յորմէ առեալ ազդեցութիւնք 'ի նա լինէին: Ընդ ակնարկել նորա 'ի հիւանդ ոք, գուշակէր զախտ նորա յաչացն, 'ի գունոյ, 'ի կազմուածոյ մարմնոյն, և 'ի տուրևառից շնչոյ: Իսկ զի քրտնաբեր մատուցանէր դեղ, և արգասեօքն յայտ առնէր թէ քանի խանգարք կամ կազդուրումն մարդկեղինիս կազմածոյ 'ի նուազութենէ անտի կամ 'ի յորդութենէ արտաշնչութեան հասանէ. և էր զի 'ի դարման ախտից՝ որ թալուկ և ցնորս զսրտիւ ածեն՝ տայր ըմպելիս, որ զփափուկ մասունսն տակաւ կազդուրեալ՝ առոյգս զխօթացեալսն յարդարէին ամոքեալ զարիւն: Օ յաճախագոյն պէտս դեղոց առ մարդիկ համարէր նա առ 'ի չգոյէ առաքինութեան և արիութեան, և ասէր. Ախտատինք են մարդկութեանս ընդ այսքան ախտիւք գրաւել, զի վարք բարեկիրք քաջառողջ գործեն զմարդ. որկորստութիւն փոխէ 'ի թոյն մահաբեր զկերակուր առ 'ի մնունդ սահմանեալ, և անժուժկալութիւն ցանկականին կարճէ զկեանս աներկարելի 'ի դեղոց: Եւ այնպէս ստէպ ախտակրեն աղքատք 'ի քաղցոյ, որպէս մեծատունք 'ի յափրանաց. խորտիկք ամոքիչք քմաց և հրապուրիչք 'ի շուայտութիւն՝ թունիչք են և ոչ սնածիչք: Դեղորայք իսկ վնասակարք են 'ի բնէ, և մաշեն զկեանս, վասն որոյ 'ի հարկեցուցիչ ևեթ 'ի պէտս պարտ է առնուլ զայնոսիկ 'ի կիր:

Գերազանց քան զամենայն դեղս, միշտ անվնաս և միշտ օգտակար, է զգաստութիւն 'ի կերակուրս, ժուժկալութիւն ցանկականին, անդորրութիւն հոգւոյ, և հրահանգ մարմնոյ. քանզի սոքօք անուշի արիւնն կշիռ խառնուածով, և փարատին 'ի սպառ հիւթք աւելորդք: Ըստ այսմ օրինակի Նոսոփոկ առաւել քան դեղովքն զարմանալի էր յառաջարգել ախտից զգուշութեամբն, որով անկարօտ առնէր զմարդիկ դեղոց:

Զոսա զերկոսին առաքեաց Տելեմաք այց առնել ախտացելոց. և բժշկեցին զբազումս 'ի նոցանէ դեղովք իւրեանց, այլ զբազմագոյնս յանձանձանօք բարեդէպ խնամոց. քանզի զգուշանային մաքրութեան նոցա՝ խափանեալ այնուիկ և զօդոց վնասակարութիւն, և պատուիրէին զգուշութիւն խիստ 'ի կերակրոց 'ի սկսանել նոցա զօրանալ յառողջութիւն: Ընդ այնպիսի խնամս զօրքն առ հասարակ 'ի գութ խանդաղատեալ, գոհութիւնս դիցն մատուցանէին վասն գալստեանն Տելեմաքայ 'ի բանակ իւրեանց, և ասէին. Ոչ մարդկանացու թուի սա, այլ 'ի բարեբարաց դից ոք 'ի մարդ կերպարանեալ. և եթէ մարդկանացու իսկ ոք իցէ, սակայն զդից քան թէ զմարդոյ բերէ զնմանութիւն, 'ի բարերարել ևեթ կալով յերկիր, և սիրելի ևս հեզութեամբն գոլով և մարդասիրութեամբ քան թէ քաջութեամբ: Ո՜ տայր մեզ զդա 'ի թագաւոր. բայց այլում սիրելագունի իւրեանց և բարեբաստագոյն

ժողովրդեան պահէին զնա դիք, առ 'ի դարձուցանել 'ի նա զդարն ոսկի :

Տելեմաք 'ի շրջել գիշերային զբանակաւն առ 'ի զգուշութիւն 'ի խորամանկութեանցն Ադրաստայ, լսէր զգովութիւնս զերծս 'ի շողոմից՝ զոր մարդահաճոյք յաճախեն 'ի լուր իշխանաց, մնափառս զնոսա համարեալ և զգայագիրկս, և առանց առաւելազանց գովասանութեանց անհնարին գտանել շնորհս առաջի նոցա : Այլ նմա ճշմարիտն ևեթ էր ախորժալուր. և անհաճոյ էին նմա գովութիւնք՝ որ ոչ իրաւացիք էին և ոչ զանխուլ 'ի նմանէ խօսեցեալք : Սիրտ նորա չէր ինչ անզգայ առ այնպիսի գովութիւնս. զգայր իսկ զքաղցր և զանապակ բերկրութիւնն, զոր դիք ընդ առաքինութեան ևեթ կցորդեցին, և որում չկարեն հասու լինել և ոչ հաւատալ այնմ ամպարիշտք՝ ոչ երբեք զնորին առեալ զփորձ : Այլ նա ոչ հեղոյր զանձն 'ի խնդութիւն, 'ի յուշ ածեալ զգործեցեալ յանցանսն, և ոչ 'ի մոռացօնս արկեալ զընդաբոյս գոռոզութիւնն անկարեկիր ընդ այլս. և ամաչէր ընդ երևել իւր մարդասէր, խստասիրտ 'ի բնէ եղեալ : Իմաստուհւոյն Աթենասայ զամենայն զփառսն վերընծայէր՝ անարժան այնուցիկ զանձն համարեալ, և ասէր. Դու ինքն, վեհ աստուածուհիդ, ետուր ինձ զՄենտոր 'ի դաստիարակ՝ խրատել զյոռութիւն բնութեանս իմոյ. դու ետուր ինձ զգօնութիւն, զի խրատեալ սխալանօքս՝ մի ևս եղէց

յանձնապաստան. դու սանձահարես զստահակ բերմունս իմ, և դու տաս ինձ բերկրութիւն 'ի սփոփել զվշտացեալս: Առանց քո լինէի ատելի ամենեցուն, և արժանի իսկ ատելութեան. առանց քո զառածանէի 'ի յանցանս անքաւելիս, և գտանէի որպէս տղայ՝ որ անգէտ անձին տկարութեան թողեալ զմայր իւր՝ անդէն ընդ քայլափոխելն գլորի:

Զարմանային Մենտոր և Փիլոկտետ 'ի տեսանել զմարդասիրութիւն Տելեմաքայ, զփոյթ նորա 'ի բարերարել, զյօժարութիւն 'ի սպասաւորել, զդիմել նորա ամենայն ուրեք յօգնութիւն, և զնախահոգ խնամս կարօտութեան բոլորից: Ահաւաստալի թուէին նոցա իրքն, և ոչ ևս ճանաչէին զպատանին. զարմանային մանաւանդ ընդ խնամս նորա 'ի յուղարկաւորութիւն Ադրաստայ. զի ինքնին իսկ երթեալ 'ի խնդիր դիոյ նորա, հան զնա արիւնաշաղախ և տխեղծ 'ի ներքուստ չեղջակուտելոց դիականց, հեղ զնովաւ ողողմ արտասուս, և բողոք արկեալ՝ ասէր. Հոգի վեհազն՝ որ գիտես արդ թէ քանի մեծարոյ է ինձ քաջութիւն քոյին. այո՝ խիզախելդ քո գրգռեաց զիս, այլ մանկականի աշխուժիցդ էր այն զառանցումն. և գիտեմ իսկ քաջ քանի կարեկցութեան հասանկն այն իցէ արժանի. սերտիւ մնայր մեզ սիրել ընդ փոյթ զմիմեանս. իմ իսկ էին յանցանք: Ո՛վ դիք, ընդէ՞ր բարձիք զնա յինէն՝ մինչ չև բռնադատեալ իմ զնա 'ի սէր:

Այլ ապա ետ Տելեմաք լուանալ զձի նորա անուշահոտ ջրովք, և պատրաստել փայտակոյտ 'ի խարոյկ։ Հեծէին յաղթ մայրեք ընդ հարուածովք տապարի, և 'ի գլխոց լերանց 'ի ստոր թաւալէին. կաղնիք զառամք որք թուէին ընդդէմ երկնից սպառնականք, կաղամախք բարձրաբերձք, և նոճարիք՝ որոց դալարագեղ և տերևախիտ ամբառնային գագաթունք, և թեղօշք՝ զարդք անտառաց, գլէին վայրաբերեալք 'ի գետափն Գալեսեայ։ Ընդ շեղջակուտեալ յառնէր զօրէն շինուածոյ մեծի փայտակոյտ. և բոց հարեալ զնմանէ, մրրկէր ծուխ ընդ երկին։

Յառաջ մատչէին սպարտացիք յամրագնացք սգաւորք, գլխ 'ի վայր զտէգսն շրջեալ, աչք 'ի խոնարհ, մինչ դառնութեան 'ի վայրագ դէմսն բերելով, և ողխս հեղուցանելով արտասուաց։ Զհետ գայր Փերեկիդէս ծերունի, ոչ այնչափ 'ի բազմայոլով ամացն ընկճեալ՝ որչափ 'ի տեսանելոյ զարև յետ մահուն Հիպպիասայ՝ զոր 'ի տղայ տիոց յանձանձեալն էր, և յօրէ մահուան նորա չառնոյր ինչ 'ի կերակուր, և քուն ցանկալի հատեալ էր յաչաց նորա, և ոչ վայրիկ մի յաղեկեզ ցաւոցն սփոփէր։ Գնայր նա գայթ 'ի գայթ զհետ ամբոխին, համբարձեալ զձեռս իւր և զարտասուալից աչս 'ի վեր, և չգիտէր յո՛ գնայր։ Չելանէր բարբառ 'ի շրթանց նորա, զի հեղձամղձուկ լինէր սիրտ նորա. այլ լռութիւն նորա յուսահատ և վհատեալ 'ի տեսիլ բոցածաւալ

խարուկին փոխեալ 'ի կատաղութիւն, գոչեաց և ասէ. Ո՞չ ես ուրեմն տեսից զքեզ, ով Իպպիաս. դու մեռեալ, և կեցից ես տակաւին, ով իմն Իպպիաս. անգութս և անողորմ, ես քեզ ուսուցի յաչս դնել զմահ: Այն ունէի թէ դու փակէիր զաչս իմ, և զյետին շունչ իմ ժողովէիր. այլ ո՛ անողորմ դիք, յերկարակեաց զիս առարիք զի տեսից զԻպպիաս մեռեալ: Սիրեցեալ որդեակ՝ զոր այնչափ հոգովք փայփայեցի, ո՞չ ես ուրեմն տեսից զքեզ. այլ տեսից զմեռանել մօր քո առ վշտին՝ բողոքելով զինէն որդեկորոյս. այլ տեսից զնորահարսին քո բաղխել զկուրծս իւր և զգիսակսն խզել. և ես ընաւորցս այսոցիկ գտայց չարեացապարտ աղետից: Ո՛վ սիրեցեալդ Հոգի, 'ի ստիւգականն այդր 'ի յաւիս կոչեա և զիս, առելի է ինձ այսուհետև լոյս. զքեզ միայն, ով իմն Իպպիաս, ցանկամ տեսանել: Իպպիաս Իպպիաս, սիրեցեալդ իմ Իպպիաս. մի ես կեցից բայց առ 'ի հարկանել անձինացեալ մարմնոյդ զապաս յետին:

Եւ ահա բարձեալ բերէին զդիականն պատանւոյն Իպպիասայ տարածեալ 'ի դագաղս զարդարեալս արծաթի և ոսկեհուռ ծիրանեաւ: Խաւարեալ էին աչք նորա 'ի ստուերս մահու, այլ գեղեցկութիւն նորա ոչ 'ի սպառ եղծեալ. դեռ ևս 'ի դեղնեալ դէմս նորա երևէին շնորհք ընդ աղօտ. զձիւնափայլ պարանոցաւ նորա՝ որ զուսոյն էր խոնարհեալ՝ գեղածփէին վարսքն եր-

կայնամիտք քաջաթուխք, գեղեցկագոյնք քան զՆարկիսն և զԱդոնիդեայ, որ ընդ հուպ յաճիւն դառնալոց էին. և 'ի կողմն երևէր վիրաբերանն մեծաբաց, ուստի արիւն նորա հոսեալ 'ի սպառ, և հոգի նորին ստորիջեալ 'ի սանդարամետս էր 'ի խաւարային սահմանս Պլուտոնի :

Հուպ 'ի դագաղն տխուր կորակոր գնայր Տելեմաք, ծաղկունս զնովաւ սփռելով: Եւ իբրև հասին 'ի խարոյկն, Տելեմաք 'ի տեսիլ բոցոյն ծաւալելոյ ընդ ծածկոյթս դիականն՝ վտակս արտասուաց վերստին հեղեալ, ասէ. Ե՛րթ խաղաղութեամբ վեհագոյն Իպպիաս, զի բարեկամ զքեզ չիշխեմ առձայնել. հաշտեաց ընդ իս հոգիդ այնքանոյ արժանացեալ փառաց. եթէ ոչ սիրէի զքեզ, նախանձէի ընդ բախտ քոյին. զերծար դու 'ի թշուառութեանց՝ յորս մեք դեռ եմս տառապեալք, ելեր զերծար դու ընդ ուղի հրաշափառ: Զյանկարծ նոյն և ինձ պատահէր բարեբաստիկ մահ: Մ՛ի ստիգականք արգելցեն զհոգի քո աղէք. դաշտք եղիսականք բացցեն քեզ. դարուց 'ի դարս աւանդեսցէ համբաւ զյիշատակ քո, և հանգիցէ աճիւն քոյին 'ի խաղաղութեան:

Զայսոսիկ Տելեմաքայ հեծեծելով առեալ ողբս, զօրքն առ հասարակ ձայն բարձեալ՝ գովէին ընդ Իպպիաս՝ պատմելով զքաջայաղթ արութիւնս նորա. և մորմոք մահուն նորա, յիշատակեալ բարեմասնութեանցն, 'ի մոռացօնս դար-

ձուլանէր զլթերութիւնս յանդուգն մանկու-
թեան նորա և յոռի դաստիարակութեան ։
Խանդաղատէին մանաւանդ ընդ գորովլ Տելեմա-
քայ, և ատէին. Սա՛ իցէ պատանին զոռոզ Հել-
լէն, սէգ արհամարհօտ և անհամբոյր, տեսէ՛ք
քանի՜ հեզ գտանի արդ մարդասէր և բարեգութ.
անշուշտ նա ինքն Աթենաս, որում՛ այնքան սի-
րելի էր հայր նորա, սիրեաց և զսա. և զգերա-
գոյնն 'ի պարգև, զոր չնորհեն մարդկան դիք,
ետ սմա ընդ իմաստութեան և սիրտ դիւրագո-
րով 'ի բարեկամութիւն ։

Ի ծախել դիականն 'ի բոցոյ, զջերաջերմ մաք
րովն ցօղեաց Տելեմաք ջուր խնկահոտ. և ապա
ամփոփեալ զաճիւնն 'ի սափոր ոսկի ծաղկա-
պսակ, ած զայն առ Փիլաս, մինչդեռ անկեալ
դնէր նա վիրալից, և 'ի մահահրաւէր թմբրու-
թեան նկատէր զնսեմաստուեր դրունս դժոխոց
առաջի իւր բացեալ ։ Բայց Տրոմաքիւլ և Լոսա-
փոկ առաքեալք 'ի Տելեմաքայ՝ զբժշկական ա-
րուեստին 'ի կիր արկեալ էին 'ի նա զհնարս, և
զօրհաս նորա նահանջեալ ։ Դառնային 'ի նա
տակաւ ոգիք կենսականք. զօրութիւն իմն մեղմ
և նուրբ և ռետին կենաց ծաւալէր ընդ երա-
կունս նորա մինչև 'ի ներքս 'ի սիրտն, և ա-
խորժ ջերմութիւն գողանայր զնա 'ի ցրտասա-
ռոյց ձեռանէ մահուն ։ Բայց 'ի դադարել նուաղ-
մանն՝ յաջորդեցին ցաւք, և սկսաւ նա զգալ
կորստեան եղբօրն՝ որում ցայնվայր լեալ էր ան-

զգայ, և ասէ. Ուա՜ղ, առ ի՞նչ այդքան խնամք առ 'ի կեանս իմ, ո՞չ լաւ ևս իցէ ինձ մեռանել և զիմոյն Ուլիսեայ զնալ զհետ. աչք իմ տեսին զնա անկեալ դի ցուրտ առ ինև: Ո՛վ Ուլիսէս, լոյս աչաց իմոց. եղբայր իմ, սիրեցեալ եղբայր, կորուսի զքեզ. ոչ ևս ուրեմն տեսից զքեզ. ոչ ևս զբարբառ քո լուայց, ոչ ևս փարեցայց զքև, ոչ ևս զվիշտս իմ կարացից պատմել քեզ, և ոչ 'ի քոյոց զքեզ սփոփել: Ո՛վ դիք ոխերիմք մարդկան, դուք յինէն բարձիք զՈւլիսէս. դէպք չհաւատալի, մի արդեօք երազք իցեն: Ո՛չ, այլ հաւաստիք ամենևին: Ո՛վ Ուլիսէս, կորուսի զքեզ, տեսի զքեզ անկեալ դիապաստ. և պարտ է ինձ կեալ մինչև խնդրեցից զվրէժ քոյին, զոհել ստուերաց քոց զանողորմն Ադրաստ զշաղախեալն յարիւն քոյին:

Այս մինչդեռ Փալաս զայսոսիկ խօսէր, և դիւցազունքն երկոքեան ջանային ողոքել զվիշտս նորա՝ թէ գուցէ 'ի զայրանալոյ ցաւոցն անազդականք սպեղանիքն լինէին, և ահա ետես նա զՏելեմաք առ իւր: Ի սկզբան անդ սիրտ նորա՝ յերկոցունց ներհակակիր կրից կոծեալ տատանէր. մթերեալ 'ի սրտի նորա կայր ոխ վասն անցիցն անցելոց ընդ Տելեմաք և ընդ Ուլիսէս եղբայր իւր, և վիշտ կորստեան եղբօրն յաճախէր զոխութիւնն զայն. բայց և զկեանս իւր ճանաչէր պարգև Տելեմաքայ՝ որ փրկեաց զնա վիրաւլից և կիսամեռ 'ի ձեռաց Ադրաստայ: Իսկ

իբրև ետես զսափորն ոսկի՝ յորում ամփոփեալ կայր սիրեցելոյ եղբօրն աճիւն, իջին յաչացն ուղխք արտասուաց, զեղու զմարմնովն Տելեմաքայ՝ հեղձամղձուկ անբարբառ, և ապա նուաղ ձայնիւ և հեկեկանօք ասէ.

Արժանաւոր զաւակդ Աղխեայ, առաքինութիւն քո բռնադատէ զիս 'ի սէր քոյին. դու ինձ շնորհեցեր զնշխարեալ կեանս իմ՝ որ ահա շիջանի. այլ պարգև գերագոյն յոյժ շնորհես ինձ արդ զաճիւն հարազատիս՝ որ առանց քո դի անթաղ գէշ անկեալ անգեղց, և հոգի նորա. զատուցական ափամբք հէք թափառական՝ յանողոքելոյն Քարոնէ մնայր միշտ մերժեալ: Պարտ էր ինձ այսքան շնորհապարտ գտանել այնմ, զոր մահուչափ ատեցի. ով դիք, դուք ինքնին հատուսջիք դմա, և 'ի թշուառ կենաց աստի զիս ազատեսջիք: Իսկ դու, դիւցազն պատանիդ, տուր և ինձ զյետին սպասն՝ զոր ետուր իմում հարազատի, զի անթերի լիցին փառք քո:

Ասաց, և ոգեսպառ նուաղեցաւ յանհնարին ցաւոցն: Իսկ Տելեմաք կարկեալ կայր, ոչ իշխելով բարբառել. մինչև ոգի անդրէն 'ի նուաղմանէն առեալ Փալասայ՝ ընկալաւ զսափորն 'ի ձեռանէ նորա, և համբուրելով զայն սաէպ, և յարտասուս իւր թանալով, ասէր. Աճիւն ցանկալի, աճիւն պատուական, Ե՞րբ իցէ՝ զի և իմն ընդ քեզ խառնեսցի 'ի սափորիդ: Ստուերք Իպպիասայ,

գամ զՀետ ձեր 'ի սանդարամետս. զերկոցունցս իսկ խնդրեսցէ Տելեմաք զվրէժ ։

Բայց Հիւանդութիւն Փալանտայ օրըստօրէ ապաքինէր 'ի դարմանոյ արանցն երկոցունց, որք ասկղեպեան գիտութեան տեղեակքն էին ։ Ընդ նորա հանապազորդէր Տելեմաք առ ընթեր կալով հիւանդին, փութաջանս զնոսա առնել 'ի բժշկութիւն ։ Եւ զօրքն առ հասարակ զարմանային առաւել ընդ բարութիւն սրտի նորա՝ որով խնամէր զոսոխ իւր ոխերիմ, քան ընդ քաջութիւն և ընդ իմաստութիւն նորա՝ որով փրկեաց 'ի մարտի զբանակ դաշնաւորացն ։ Հանդերձ սոքիմբք և ոչ 'ի պատերազմական խստամբեր Հրահանգաց Թերանայր Տելեմաք. սուղ ինչ նինջէր, և ստէպ ընդոստ 'ի քնոյ զարթնոյր, զորոյս և 'ի գիշերի առեալ ժամ 'ի ժամ 'ի բանակէն, և յայց ընդ ամենայն կողմանս բանակին ելեալ, յամենայն նուագս զժամն փոփոխելով առ 'ի յեղակարծում 'ի վերայ հասանել պահակերաց՝ որք Թերահոգ 'ի յանձնեալ պահն կային ։ Քրտնալից և փոշոտ դառնայր նա յաճախ 'ի վրան իւր. անպաճոյճ էր ճաշ նորա, և կեայր որպէս զմի 'ի սինլքոր զօրականէն՝ առ 'ի տալ նոցա օրինակ զգաստութեան և խստամբերութեան ։ Եւ քանզի կարճէին համբարք զօրուն, կարեւոր իսկ համարէր առ 'ի խափանել զտրտունջ նոցա՝ կամակար և ինքն ընդ նոսա վշտակրել ։ Բայց 'ի տաժանաւոր կենաց անտի ոչ միայն ոչ

յինչ տկարացեալ մարմին նորա. այլ և կազդուրէր պնդակազմ. սկսանէին նուազել 'ի նմա շնորհք փափկասուն գեղածաղիկ մանկութեան. Թխանայր մարմին նորա և բրտանայր, և անդամք նորա ճապուկք ջլապինդք հաստատէին:



# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ

## ԵՕԹՆԵՒՏԱՍՆԵՐՈՐԴԻ ԳՐՈՑՆ

1 Աթենաս որ և Պալլաս գիտուհի իմաստութեան և պատերազմի և արհեստից, դուստր Արամազդայ՝ ծնեալ անմայր յուղղոյ նորին համակ սպառազէն: Եւ 'ի կառուցանել Կեկրոպայ զդաստակերտս իւր 'ի Յունաստան՝ 'ի վէճ եկին Աթենաս և Պոսիդոն, զի որ օգտակարագոյն ինչ ստեղծանէր՝ յիւր անուն զքաղաքն յորջորջել: Պոսիդոնի հարուածք երեքժանեայն հանեալ յերկրէ զերիվար, և գիտուհւոյն բաղխմամբ նիզակին բուսուցեալ զձիթենի պտղաւոր, նմա դիքն առ հասարակ վճռեցին զպատիւն, և կոչեցաւ քաղաքն այն ԱԹԷՆՔ:

2 Արաքնէ դուստր Իդմոնի արքային Լիդացւոց, քաջ ոստայնանկ, փոխեցաւ 'ի սարդ վասն յանդգնութեանցն պայքարելոյ ընդ Աթենասայ 'ի ճարտարագոյն գործուած:

3 Քսանթոս, որ և Սկամանդր, գետ 'ի Տրովադա, որ բղխեալ յԻդայ լեռնէ՝ յանգի յԵգեան ծով:

4 Սիմոյիս, դարձեալ գետ 'ի Տրովադա, որ բղխեալ անդստին յԻդայ լեռնէ՝ խառնի ընդ Սկամանդրեայ յԵգէականն անկանի 'ի ծով:

5 Արիադնէ, դուստր Մինովսայ արքային Կրետացւոց, գթացեալ 'ի Թեսէոս՝ ետ նմա կծիկ առաղանւոյ, զի սպանեալ զՄինոտաւրոս յուշկապարիկ 'ի բաւղին՝ ընդ նոյն շաւիղ յարահետեւեալ ելցէ անտի անմոլար: Զհետ նորա գնաց Արիադնէ 'ի Նաքսոս. ուր լքաւ յապաշնորհէն 'ի վտանգ գազանակուր լինելոյ: Եւ ապա սպանդարամետին Դիոնիսեայ առեալ զնա անդ, հարաւ 'ի սէր նորա:

6 Մերիոն քաջահմուտ զօրավար, վարիչ կառացն Իդոմենեայ, և պետ նաւատորմի նորա, որ 'ի Կրետեայ երթեալ էր 'ի պաշարումն Տրովադայ:

7 Լետով, դուստր Կէոսի, յորմէ ծնաւ Արամազդ զԱպողոն և զԱրտեմիս յԱստերիա կղզւոջ:

8 Ատիս պատանի գեղեցիկ փռիւգացի, սիրեցեալ 'ի Կիբե-
լեայ դիցուհւոյ, և կացեալ 'ի նմանէ քուրմ, հրամանաւ կալոյ
ամուրի։ Այլ յանցանել զհրամանաւն, փոխեցաւ 'ի սոճի։
9 Գանիմեդէս որդի Տրովայ, զոր վասն գեղեցկութեանն
վերառեալ Արամազդ 'ի թեւս արծուոյն յերկինս՝ կացոյց իւր
գինեպաշտ, ընկեցեալ զՀեբէ 'ի պաշտօնոյն։
10 Քարոն որդի Երեբեայ և Գիշերոյ, նաւապան և նաւա-
վար 'ի դժոխս, զորմէ առասպելեն մակուկաւն իւրով անցու-
ցանել զհոգիս ընդ գետն Ստիւքս, և զանթաղ մեռելոց
զհոգիս թողուլ թափառական զամս հարիւր դեգերելով։



# ԱՐԿԱԾՔ ՏԵԼԵՄԱՔԱՅ



## ԳԻՐՔ ՈՒԹԵՒՏԱՍՆԵՐՈՐԴ

# ՆԱԽԱԴՐՈՒԹԻՒՆ

Տելեմաք ըստ տեսլեան երազոյ ոչ ևս գտանել կարծելով զհայր իւր յերկրի, խորհի գնալ 'ի խնդիր նորին 'ի սանդարամետս. և խոյս տուեալ 'ի բանակէն երկոքումբք ոմամբք կրետացւովք մինչև 'ի մեհեանն հուպ 'ի հուշակաւոր քարայրն ախերոնեան, խորասուզի ընդ խաւար, հասանէ յափն Ստիւգեայ գետոյ. և Քարոն ընդունի զնա 'ի մակոյկն: Ցանդիման լինի Պլուտոնի, և առնու հրաման խնդրելոյ զհայրն. և շրջեալ ընդ տարտարոսն՝ տեսանէ անդ զտանջանս ապերախտից, ստերդմանց, կեղծաւորաց, և մանաւանդ զԹագաւորաց չարաց:

# ԱՐԿԱԾՔ ՏԵԼԵՄԱՔԱՅ



## ԳԻՐՔ ՈՒԹԵՒՏԱՍՆԵՐՈՐԴ

Մջրաստայ նուագեցին յոյժ զօրք 'ի մարտին , և խոյս ետ նա յետկոյս լերինն Մելոնի ' մնալով օգնականն գնդաց , և պատրաստ՝ առ 'ի հասանել յեղակարծում 'ի վերայ թշնամեաց․ հանգոյն առ վայրուկ աւխծու , որ 'ի փարախէ ուստեք վանեալ 'ի բաց՝ դառնայ 'ի ծմակս անտառաց , առգանի յորջ իւր , որէ զձիրանս և զժանիս , 'ի դարանի կացեալ յարձակել անդրէն 'ի խաղխողումն խաշանց ։

Իսկ Տելեմաք զգուշութիւն և հրահանգս խօսս ընդ ամենայն բանակն կարգեալ , խորհեցաւ ապա կատարել զխորհուրդ իւր երկնեալ յառաջագոյն զանխուլ 'ի զօրավարաց բանակին ։ Քանզի 'ի բազմաց հետէ տագնապէր նա երազայոյզ զգիշերս ամենայն , տեսանելով յանուրջս զհայր իւր զՈւլիսէս ։ Պատկերն այն ցանկալի դառնայր միշտ ընդ այգն , մինչ չև ծայրակարմիր

արեգական վարեալ յերկնից զաստեղս փախըստական, և յերկրէ զԱկրհ անուշակ՝ երազովք համդերձ որ զնովաւն թեւապարեն ։ Մերթ թուէր նմա տեսանել զՈդիսեւս մերկ յերանաւէտ կղզւոջ ուրեք առ գետեզերբ յարօտ ծաղկաւէտ, պար առեալ 'ի յաւէրժհարսանց՝ որք արկանէին զնովաւ համդերձս. և մերթ թուէր նմա լսել զբարբառ նորին յապարանս ուրեք ընդելուզեալս յոսկի և 'ի փղոսկր, ուր որեար ծաղկապսակ յակձիռս կայէին 'ի լուր նորա ։ Յաճախ ևս երևութանայր նմա յանկարծ Ոդիսեւս 'ի խնճոյս՝ ուր հրճուանք ընդ փարիկութիւնս կայթէին, և լսելի լինէր առաչ զողորիկ ընդ քնար քաղցրահնչիւն քան զԱպողոնին և քան զերգս երաժշտականաց Մուսայից առ հասարակ ։

Տխրէր Տելեմաք 'ի զարթնուլն 'ի քերկրական անրջոց անտի, և գոչէր. Ո՛ հայր իմ Ոդիսեւս, սիրեցեալ հայր. ցանկալի ևս ինձ էին երազք անդոհականք. տեսիլքդ երանաւէտք գուշակեն ինձ զէջս քո յօթեւանս երանելեաց, ուր վարձատրեն դիք զառաքինութիւնս յաւէրժ խաղաղութեամբ. դաշտք ինձ ելիսեանք յանդիմանն լինին. աւա՜ղ, զի՜ դժոխըմքեր է անյուսութիւն ։ Ո՛ինչ արդ, ո՞չ ևս լիցի ինձ տեսանել զքեզ, հայր իմ, ո՞չ ևս փարել զքև՝ որ այնքան սիրէիր զիս, և զոր խնդրեմս այսքան տառապանօք ։ Ո՞չ ևս լիցի ինձ լսել զբարբառ շրթանցդ՝ յորոց բղխէր իմաստութիւն. ո՞չ ևս համբուրել զձեռսդ

փարելիս, զձեռս յաղթականս՝ որք զյոգնա-
խուռնս հարկին թշնամիս։ Ո՞չ ուրեմն պատուհա-
սեսցեն դոքա զանզգամ սիրելիս Պենելոպեայ,
և կանգնեսցեն զԻթակէ 'ի կործանմանէն։
Դնիք սխերինք հօրն իմում, դուք ինձ զերազս
զպատուիկ ցուցանէք զչարադոյժս՝ առ 'ի բառնալ
յինէն զամենայն յոյս. հաւաստար մահու է ինձ
այդ, չէ և չէ ինձ մարթ կեալ 'ի վարանս յայս։
Այլ զի՞նչ ասեմ, աւա՛ղ, ոչ են վարանք՝ այլ
հաստատունք են, զի հայր իմ ոչ ևս է կենդանի,
երթայց արդ 'ի խնդիր ստուերաց նորա 'ի սան-
դարամետս։ Ոդիւսէոս՝ իսկ էջ անդր առնպա-
րիշան առ 'ի թշնամեաց դիցն սանդարամետա-
կանաց. իսկ ես առ բարեպաշտութեան իջանեմ
անդր։ Էջ և Հերակլէս. և թէպէտ չիցեմ
հանգոյն նմին, այլ գեղեցիկ է խոհականել 'ի նորին
նմանութիւն։ Էջ Որփէոս՝ ընդ վէպս աղխոտիցն
խուլոց զսիրտ անողոքելւոյ դիցն 'ի գութ շար-
ժեալ, ընկալեալ 'ի նմանէ հրաման վերկենդանացուցանել
Եւրիդիկեայ. իսկ ես առաւել քան զՈրփէոս
զառանձին ողորմելի դժնդակագոյն կրեալ կորուստ.
զի զի՞նչ կշիռ կայցէ ընդ մանկամարդոյ նմանւոյ այ-
լոց, ընդ գերահանճարն Ոդիսեայ՝ ընդ որ հիանայ
Եղլադա համօրէն։ Ո՛ն երթիցուք, մեռցուք
իսկ՝ եթէ հարկ լիցի. զի՞նչ երկիւղ իցէ 'ի մա-
հուանէ տառապելումն յայսքան վիշտս։ Ողէ՝
զփոխարէն առից եթէ իցէք, Պղուտոն և Պերսե-
փոնէ՝ անողորմելիք բուռ համբաւոյն։ Հայր իմ,

ընդ ծով և ընդ ցամաք զբաւհետ վարեալ՝ի խնդիր քո, գամ արդ ՚ի խուզարկել կայս մահացելոց։ Եթէ ոչ շնորհեն ինձ դիք գտանել զքեզ յերկրի ընդ արեգակամբ, թերևս ոչ արգելցեն տեսանել ինձ զստուերս քոյին յաշխարհ գիշերոյ։

Զայսոսիկ Տելեմաք բարբառելով՝ թանայր զմահիճս իւր արտասուօք. և յարուցեալ խնդրէր ՚ի լոյս տունջեան սփոփել զաղեկէզ մորմոքն աղդեալ յանրջոց. այլ ՚ի կարեվէր սրտին կրէր զնետն, ամենայն աւուրք ընդ իւր բերելով։ Խորհեցաւ նա վշտին իջանել ՚ի սանդարամետս ընդ վայրն հուշակաւոր՝ որ ոչ ինչ կարի հեռի էր ՚ի բանակէն, և կոչէր Ախերոնիա, զի էր առ եզեր քարանձաւ ահաւոր՝ ընդ որ էջք էին ՚ի գետափն Ախերոնի, յոր և դից տակուին է երդնուլ։ Ի քարաժայռի կայր քաղաքն որպէս բոյն հաւու ՚ի գլխոյ ծառոյ. և ՚ի ստորոտ ժայռին էր անձաւն, ուր ոչ իշխէր ոք մատչել յերկչոտ մահացուաց, և հովիւք անտի ՚ի բաց զխաշն դարձուցանէին։ Գոլորշի ծծմբահոտ ՚ի ստիւգեան լճէն ընդ ելս խորոցն վերածխեալ, ապականէր զօդս. և ոչ ծաղիկք անդ և ոչ դալարիք շուրջ զվայրօքն աճէին. ոչ զեփիւռք անդ քաղցրաշունչք, ոչ նորափթիթ գեղ գարնայնոյ, և ոչ աշնայնոյն պտուղք առատաձիրք. այլ երկիր նուաղեալ անջրդի, յոր թուփք ևեթ սակաւ անդ երևէին տերևաթափք, և նոճիք ոմանք տխրատեսիլք։ Ի հացակայից անդամ շուրջանակի դաշտորէից ակեփունջեան Կե-

մետրէ՝ զլանայր զհունձս. և Պոմոնիա՝ ՚ի նմանէր զանուշակ խնձորեան խոստանայր, ողկուզացն տհաս անդամնօք ցամաքելով ։ Եւ Նայադք տխրադէմք ակնածակերպ զվտակական խառնակացուցանէին, այլ գման ալիք նոցա և պղտոր. և ոչ Թռչունք ՚ի մացառուս և ՚ի փշաբեր երկրին նուաղէին. որոց չգտեալ ուրեք ծառաստան՝ ուր մարթէր նոցա լինել ապաստան, գնային այլուր ընդ քաղցրագոյն երկնաւ զդայլայլիկան յօրինել սիրատարփս ։ Ագռաւուց և եթ անդամնօք լինէր լսելի կոչ, և եղերական ողբք չարագոյժ բուիճակաց. արօտ իսկ անգամ գման էր անդամնօք, և ոչ ՚ի խաշինս անդ ճարակասորս ազդէր խնդութիւն կայտռել և խայտալ ։ Խոյս տայր յերինջոց զուարակն ՚ի բաց. և հովիւ Թաղծեալ մոռանայր զտիկ իւր և զսրինգ ։

Ի խորոց անձաւին ծուխ երբեք երբեք ելանէր սեաւ և Թանձրախիտ, գիշէր իմն գոգցես ՚ի տանջեան գործելով. և ազգք շրջաբնակք յաձախէին զոհս, ողոքել զերեսս դիցն սանդարամետականաց ։ Բայց գժնէիցն այնոցիկ դիոց հաճոյագոյն զոհք էին արբունք գեղածաղիկ, զորս ժանտաախտ մահաշշուկ զոհէր նոցա ։

Ընդ այն խորհեցաւ Տելեմաք ուղևորել ՚ի խուսափարգել կայս Պղուտոնի. և Աթենաս՝ որ հսկէրն նմա, և ընդ այծենակաշ ասպարաւն զնա պահպանէր, հաշտ արար ընդ նմա զՍանդարապետն. և ինքն իսկ Արամազդ զիջեալ յաջերս

դիցուհւոյն՝ պատուէր ետ Հերմեայ*, որ հանապազօր սորոխչեալ 'ի դժոխս՝ առնուցէ ՝Բարոնի ¹⁰ զամենայն մեռելոց, տանել պատգամ արքային ուրուաց՝ ներել ողիսական զաւակին մտանել յիւր պետութիւնն: Եւ գիշերասանաց եղև Տելեմաք գաղտ 'ի բանակէն 'ի լուսնակի՝ զհզօր դիցուհին կարդալով յօգնութիւն, որ առատ լուսապայծառ ընդ երկինս ձեմէր իշխանական գիշերոյ, և յերկրի պարկեշտ Անահիտ ¹¹, իսկ 'ի սանդարամետս Եկատէ զարհուրագին: Լուաւ դիցուհին մաղթանաց նորա, զի սուրբ էր սիրտ նորա և որդիական սէր բարեպաշտնիկ առաջնորդէր նմա: Եւ ընդ մտանել 'ի մուտս անձաւին լուաւ զդղրդիւն ստորերկրեայ պետութեանն, սասանէր երկիր ընդ ոտիւք նորա, և փայլատակմունք և հուր թօթափեալ յերկնէ՝ թուէին հարկանել զերկիր: Պակեաւ հանճարն ողիսական, և քիրտն ցուրտ թանայր զմարմին նորա: Բայց խրախուսեալ արիապէս, ամբարձ զաչս իւր յերկինս, և ասէ. Հզօր դիք, ահաւասիկ կամ 'ի հրամանս ձեր՝ որ աւետաւորք ինձ թուին, կատարեսջիք զոր սկսայքդ: Եւ զայս ասացեալ, ձեպեաց զընթացս, և քաջայանդուգն յառաջ մատեաւ:

Ծուխն թանձրամած, որ զմուտս այրին կենդանեաց առ հասարակ գործէր մահաբեր, փարատեցաւ ընդ մտանելն նորա անդր. և դադարեաց առ վայր մի նեխին չարաթոյն: Եմուտ Տելեմաք

անդր 'ի ներքս մենաւոր, զի ո՛ այլ ոք 'ի մարդա-ցուաց իշխէր գնալ զհետ. կրետացիքն երկրքին ուղեկիցք նորա, որոց յայտնեալ էր զխորհուրդ իւր, անդստին 'ի բացէ զդողանի հարեալք և կիսամեռք զկայ առին 'ի մեհենի ուրեք՝ ուխտա դիւց մատուցանելով, ոչ ևս ակնկալեալ տեսանել զՏելեմաք:

Իսկ ինքն սուսերամերկ միջամուխ լեալ 'ի խառնարան զարհուրելի, նշմարէր առա նշոյլ ինչ աղօտ և մթայլ՝ որպէս գիշերի զերկրաւ նշմարի: Նշանս առա ստուերս թեթևս թևածեալ զիւրև, և մերժեաց զնոսա սուսերաւն 'ի բաց. և առա ետես զաժոյն եզերս ձախձախուտ զետոյն, որ աւիւք պղտորք և ղանդաղանձք պտոյտս ևեթ առեալ թաւալին: Նոյն առ զետեզերբն անթիւ բազմութիւն անթաղ մեռելոց 'ի դուռ մատուցեալ զանողոքելին կարդային Քարոն: Նմանհ ծերութիւն տխուր և դժխեմ և անժպտելի այնր առատածոյն ժիր և կորովի սպառնայր նոցա և մերժէր սաստիւ զնոսա 'ի բաց. այլ զպատանին Հեւլէն հրաւիրեալ անդէն, 'ի յիւրն ընկալաւ զնա 'ի մակոյկ:

Նայց պատանւոյն 'ի մտանելն անդր լսելով զծանրաթախիծ հեծութիւնս միոյ 'ի ստուերաց անտի, ասէ. Ո՜ ինչ աղէտք են քո, ո՛ էիր 'ի կենցաղումդ: Ստուերն ասէ. Նաբուփառզան արքայ խորոխտապանծն Բաբելոնի. ազգք և ազինք արևելից սարսէին յերեսաց անուան իմոյ. պաշ-

տեսի 'ի բաղելացւոց 'ի մարմնապակուռ տաճարի անօթի ոսկի արձանացեալ, և ծխէին առաջի իմ զոխ և զգիշեր պատուականագոյնք յանուշից խնկոց Եթովպիոյ . ոչ որ իշխէր հակառակ ինչ ասել ինձ անպատուհաս, այլ զօրհանապազ գըր-գանս նորանորս հնարէին՝ եւ քան զեւս հեշտալի ինձ զկեանս գործել : Եւ խստասարդ դեռ եւս էի և մարմնով կորովի . աւա՜ղ, քանի՞ այլ եւս յաջողութիւնք մնային ինձ 'ի դահոյս . այլ կին մի սիրեցեալ յինէն, և ոչ փոխադարձ եղեալ ընդ իս սէր, ետ ինձ 'ի միտ առնուլ զի չէի աստուած . դեղակուր արար նա զիս, և եմ արդ ոչ ինչ : Աճիւն իմ յերեկին իսկ ամփոփեցաւ մեծահանդէս 'ի սափոր ոսկի, արարին կոծ մեծ 'ի վերայ իմ, զհերս խզեալ, և 'ի բոց խարուկին գոգցես յարձակեալք մահակիցք ընդ իս . և տակաւին յաճախեն զպատուանդանաւ հոյակապ շիրմիս, ուր եդաւ աճիւն իմ, ողբս առնուլ 'ի վերայ իմ. այլ ոչ ումեք ցաւէ ընդ իս, նզովք յիշատակ իմ 'ի տան իսկ իմում, և աստ 'ի սանդարամետս ակնիմ արդ չարաչար :

Յուզեցան գութք Տելեմաքայ, և ասէ . Եւէիր դու արդարև բարեբաստիկ 'ի թագաւորելդ քում. վայելէիր 'ի քաղցր խաղաղութեան, որ առանց այնորիկ միշտ յանձկութեան է սիրտ և 'ի զուարճութիւնս իսկ տխուր : Բաղելացին ասէ . Ոչ ամենևին, և չկարեմ իսկ 'ի վերայ կալ բանիցդ . պանծան իմաստունք ընդ խաղաղու-

Թիւնոդ ընդ այգ, և զգա ևեթ վարկանելն բա-
րի. այլ իմ չիք զփորձ իսկ առեալ զխաղաղու-
թեանդ այդորիկ. սիրտ իմ կոծեալ միշտ տատա-
նէր 'ի յոյզս նորանոր ըղձից երկիւղի և յուսոյ։
Կուռն գործէի ընդդարմանցուցանել զսիրտ իմ 'ի
դղրդմանն կրից, և ջանայի յարաժամ յարբեցու-
թեան անդ անսթափելի. զի և վայրիկ մի
զգաստութեան դառն էր ինձ յոյժ։ Ահաւասիկ
խաղաղութիւնն՝ յոր վայելէի. բաց յայսմանէ
ամենայն ինչ առասպելք թուէին ինձ և երազք.
ահա բարութիւնքն, զորոց աշխարեմ զկորուստ։

Զայսոսիկ բարբառելով լայր բանեկլացն որ-
պէս զվատ ոք կնատեալ 'ի բարեբաստութեանց,
և անփորձ համբերելոյ վշտաց։ Այլքն առ նմա
ստրուկք ոմանք տպանեալք 'ի սպաս յուղարկա-
ւորութեան նորա, զորս Հերմեայ առանձնեալ էր
Քարոնի ընդ արքայքն իւրեանց, և տուեալ նոցա
ամենիշխան տէրութիւն 'ի վերայ թագաւորին՝
որում ծառայք էին 'ի վերայ երկրի։ Այլ եւ
ստուերք նոցա երկնչէին 'ի ստուերաց թագաւո-
րին, այլ արկեալ զնա չղթայական՝ թշնամա-
նէին զնա անողորմ։ Մին ասէր. Ո՞չ ապաքէն
էաք և մեք մարդիկ իբրև զքեզ, և ընդէր անմտա-
ցար աստուածակերպ 'ի վերայ մեր ճոխանալ,
որպէս ոչ 'ի միտ առեր, զի և դու համազգուն
այլոց էիր մարդ։ Եւ այլ ոք անդուստ ոտնհար
եղեալ, ասէր. Ցիրաւի չկամէիր ընդ մարդկան
կալ 'ի համարի, զի ձիւաղ էիր դու անմարդի։

ցուց մերժեցեալ 'ի դից , քանզի շնորհեցաւ քեզ մեծ յաղթութիւն գիշերոյ անմատոյց այլոց կենդանեաց , փութա ուր Ճակատագրին կոչեն զքեզ հրամանք . Երթ ընդ խաւարային ուղիդ յարքունիս Սանդարամետին , զոր գտցես յաթոռ իւրում . Նա ինքն տացէ քեզ հրաման մտանել 'ի վայրս , զորոց չկարեմ մերկանալ քեզ զգաղտնիս ։

Մեծաքայլ յառաջ մատեաւ Տելեմաք . Թանձրախիտ ընդ օդս Ճախր անձուկն սուսերբ , բազմաթիւ քան զաւազ ծովու , և 'ի յայզս անհամար խուժանին 'ի խոր լռութեան անոլորտ վայրացն՝ սոսկումն աստուածազդեցիկ կալաւ զնա . քաջանեցան հերք իւր զգլխովն 'ի մտանել անդ 'ի նսեմաստուեր կայս անողորմին Պլուտոնի . դեղևէին բարձք նորա , նուաղէր բարբառ , և հազիւ կարացեալ յօդել բանս ինչ՝ ասէ ցՍանդարամետեան . Օ՜ արհաւրելիդ աստուած , ահա հիքէն Սղխեայ որդին առ քեզ հասեալ կայ , խնդրել թէ էջ հայր իւր այսր 'ի ստորերկրեայ կայս քոյին , թէ ընդ երկիր մոլորեալ շրջի նժդեհ տարակուսին ։

Բազմեալ կայր Պլուտոն յաթոռ եբենեայ , դէմք նորա տժգոյն և խոժոռ , աչք խորասոյզք և փայլակնացայտք , Ճակատ խորշոմեալ և սպառնալից . տեսիլ մարդոյ կենդանւոյ այնպէս էր նմա դժուարըմբեր , որպէս Ճառագայթք արեգական ակնախատիղք գազանաց՝ որ գիշերի ևեթ ելանեն 'ի խաւարային որջոցն ։ Բազմէր առ նովաւ դըշ

խոյն Պերսեփոնէ, որ միայն զնորին յինքն ձգելով զաչս՝ Թուէր առ փոքր մի ողոքել զխրոխտ նորա. գեղեցկուԹիւն դիմաց նորա միշտ նորահրաշ, այլ ընդ աստուածապետ շնորհսն խիստ իմն և դժնեայ յառնէ իւրմէ բերելով։ Նա պատուանդանաւ զահոյիցն դարանէր մահ տժգոյն և անյագ, գերանդի սայրասուր 'ի ձեռին՝ զոր յաւելոյր սրել անդադար։ Թուիչս փոխան առնուին հոգ սևագէմ, կասկած անողորմ, վրէժխնդրուԹիւն արիւնաԹաԹաւ և վիրաւոր, հեռ անիրաւ, ագահուԹիւն անձամբ անձին կեղեքիչ, յուսահատուԹիւն անձնասպան, փառամոլուԹիւն խօլ ամենայնի կործանիչ, մատնուԹիւն արիւնախանձ՝ ապիկար 'ի վայելել յարգասիս չարեացն գործեցելոց, նախանձ յինքն իսկ ԹունաԹափ, և առ 'ի չկարելոյ վնասել այլոց՝ մոլեալ 'ի զայրոյԹ, ամպարշտուԹիւն՝ որ անձամբ անձին անյատակ պեղեալ խորխորատ կորնչի անդ անդունդս, ցնորք անժպիրք, տեսիլք մեռելոց՝ պակուցիչք կենդանեաց, երազք զարհանդելիք, և տքնուԹիւն ոչ ինչ ընդհատ քան զտխրագին անուրջս անհամբոյր։ Նոյնքիկ առ հասարակ պատկերք դժնէատեսիլք պար առեալ զվհօն Պլուտոնի, լնուին զարքունիս նորա։

Նա պատասխանի ետ ահաւորին ձայնիւ, յորմէ դղրդեցան դժոխք, և ասէ. Պատանիդ մահկանացու, որում ետուն ճակատագիրք բռնաբարել զսրբարան ուրուաց, Երթ զհետ գերազանցիկ

քումդ բախտի. չյայտնեմ ձեր հայր քո իցէ, ազատութիւն եւեթ տուեալ լիցի քեզ հետազօտել զնա 'ի կայս Թագաւորաց, աստի ընդ կողմն մշտագիշերն Տարտարոսի՝ ուր Թագաւորք չարք պատուհասին, և անտի յեղիսեան 'ի դաշտս՝ ուր Թագաւորք բարիք վարձատրին. այլ չիք քեզ աստի յելանեանն անցք բայց ընդ Տարտարոսն: Հապա, փութա անդր, և ել 'ի սահմանաց աստի իմոց:

Եւ զոյգ ընդ բանիւն սլանայր պատանին ընդ սին և անհուն վայրսն, առ յոյժ անձկութեան տեսոյն հայրենի, և առ 'ի խուսել յերեւաց ձաւաղէմ բռնաւորին ահարկուի կենդանեաց և մահացելոց: Եւ ահա եհաս մերձ 'ի խաւարային Տարտարոսն, ուստի ելանէր ծուխ Թանձր և Թուխ՝ որոյ ժահ Թունաւոր սատակիչ էր կենդանեաց, եթէ երբէք 'ի կայս նոցա բուրէր: Պատեր ընդ ծխովն գետ հրեղէն, որոյ ալիք բոցով մըրկեալք խոխոջէին հանգոյն ուղխից հեղեղաց գահավիժելոց 'ի բարձրաբերձ ժայռից 'ի խորս անդնդոց, և ոչ ներէին լսել ինչ յստակ 'ի յոդնատխուր գաւառս անդ:

Բայց պատանին խրախուսեալ յԱթենասայ 'ի ծածուկ զօրութենէն, եմուտ 'ի խորս անդր. և ետես անդ ամբոխ բազում սինլքոր մարդկան, որ կրէին պատուհաս վասն զօշաքաղութեանցն զհետ լինելոյ ընչից խարդախանօք մատնութեամբք և անգթութեամբք: Ետես անդ յոգունս յամբարշտաց կեղծաւորելոց՝ որոց պատ-

ճառանօք կրօնից զեղերեսեալ զկիրս իւրեանց, և 'ի յագուրդ փառասիրութեան իւրեանց խաղ արարեալ էր զպարզմտութիւն այլոց, և որոց զերաշանիւն 'ի պատգևս դիւց զեղծեալ էր առաքինութեամբ. ամենեքին նոքա հանգոյն եղեռնագործ մարդկան պատուհասակոծ լինէին: Որդիք հայրասպանք և մայրախողողք, հարսունք արիւնախանձք արանցն իւրեանց, և մատնիչք հայրենադրուժք երդմնազանցք՝ թեթևագոյն քան զկեղծաւորսն զայնոսիկ լուծանէին անդ վրէժս, այսպէս երեցունցն ատենակալաց ամենադատաւորականաց տուեալ դատակնիք: Քանզի կեղծաւորք հանգոյն ամպարշտաց գոլով ժանտք՝ բարեպարիշտս զանձինս ընծայեցուցանէն, և վեր 'ի վերոյ առաքինութեամբն կեղակարծ զատոցն կացուցանէին զառաքինութիւն. վասն որոյ և դիք խաղալիկ նոցին լեալ և արհամարհք նոքօք յաչս մարդկան, հանդէս առնէին զօրութեան իւրեանց առ 'ի վրէժ թշնամանացն:

Հուպ առ նոսա կային այնոքիկ՝ զորս ռամիկն չհամարի մեղապարտս, այլ աստուածասաստ վրէժխնդրութիւն պատժէ զնոսա անողորմ. սոքա են ապերախտք, ստախօսք, մարդահաճոյք՝ գովիչք յոռութեանց, պարսաւադէտք եղծիչք անտխեղծն առաքինութեան, և որք յանդուգն բազմեալ դատաւոր իրաց՝ որոց չեն տեղեակ՝ չարահամբաւել զանմեղն: Այլ սաստիկ քան զամենայն ապերախտութիւն պատուհասէր ա-

պերճախօսելոցն առ դիս ապերախտութիւն, այսպէս Մինովայ վճռեալ. Եթէ ապերախտեալն առ հայր իւր կամ առ բարերարն նախատանաց համարի հրէշ, որչափ ևս առաւել որ առ դիսն ապերախտի, յորոց զկեանսն և զամենայն որ ինչ կցորդ կենաց են բարիք՝ ընկալաւ. ոչ ապաքէն նոցին առաւել է շնորհապարտ վասն ծննդեանն, քան հօր և մօր իւրում՝ յորոց ծնաւն: Որչափ անպատուհաս են յերկրի ոճիրքս այսոքիկ և անդատապարտ, այնչափ առաւել 'ի գժոխս կրեն պատիժ յանողորմելի վրէժխնդրութենէն՝ յորմէ զերծանի և ոչինչ:

Այլ ահա եւես Տելեմաք զդատաւորսն զերեսին բազմեալ, զի դատապարտեսցին զայր մի. և համարձակեալ եհարց զյանցանս նորա: Իսկ պարտաւորին բողոք բարձեալ ասէ. Զիք իմ մեղուցեալ, սիրելի էր ինձ բարերարել, առատաձեռն էի և աննախանձ 'ի տուրս, արդար և ողորմած. և ըն գտանիցիմ մեղապարտ: Յայնժամ Մինովս ասէ. Զիք ինչ քո մեղուցեալ առ մարդիկ, այլ ոչ առաւելագոյն քեզ պարտք էին առ դիս. ուր ապա պարծիս յարդարութիւն: Ապաքէն ոչ վերջացար 'ի պարտուց քոց առ մարդիկ՝ որ չեն ինչ, և գտար առաքինի. այլ զառաքինութիւն քո քեզ ընծայեցեր, և ոչ դիցն՝ որ ետուն քեզ զայն. զի քեզէն կամէիր վայելել յարգասիս առաքինութեան քո, քև շատացեալ, և անձամբ անձին լեալ աստուած: Այլ դիք արարիչք ա-

մենայնի, որք զամենայն ինչ արարին վասն անձանց, չկարեն հրաժարել յիրաւանց իւրեանց։ Այս զի չյիշեցեր դու զնոսա, մոռացին և նոքա զքեզ, և թողցեն զքեզ 'ի քեզ, փոխանակ զի կամեցար քո լինել և ոչ նոցա։ Խնդրեա արդ զմխիթարութիւն քո, եթէ գտանել կարես 'ի սրտի քում, ահա գտանիս բաժանեալ յաւէրժ 'ի մարդկանէ, որոց կամեցարն հաճոյ լինել. ահա գտանիս ընդ անձին քում՝ զոր պաշտէիրն. ուսիր զի չիք առաքինութիւն ճշմարիտ առանց երկիւղածութեան և սիրոյ դից՝ որոց զամենայն պարտ է ընծայել։ Առաքինութիւն քոյին սնապարծ, որ զդիւրապատիր ազգի մարդկան շլացոյց զաչս ընդերկար, ահա նշաւակի։ Մարդիկ, որ ոչ այլազգ ինչ զառաքինութեանց և զյոռութեանց բերեն դատաստան՝ բայց ըստ հաճոյ կամ անհաճոյ այնոցիկ գոլոյ անձանց իւրեանց, կոյրք են յընտրութիւն բարւոյ և չարի. այլ աստ լոյս աստուածեղէն տապալէ զամենայն որ ինչ 'ի նոցանէ առ աչս արարեալ դատաստան, և բազում այն է՝ զի դատապարտէ որ ինչ զարմանալի է նոցա, և զդատապարտեալն 'ի նոցունց առնէ անդատապարտ։

Ի պատգամաց աստի որպէս 'ի շանթից իմաստասէրն այն ամպահարեալ, դժպհի լինէր անձամբ անձին. սնապարծութիւն նորա ընդ հեզութիւն իւր ընդ արիութիւն և ընդ ազնուականս բարեմասնութիւնս՝ փոխէր 'ի յուսահատու-

թիւն. տեսիլ աստուածամարտ սրտի իւրոյ լինէր նմա 'ի տանջանս. տեսանէր զանձն, և չկարէր անտես առնել. խելամուտ լինէր մնոտի դատաստանաց մարդկան, որոց կամեցաւ հաճոյ լինել յամենայնի. ամենայն ինչ յեղափոխէր 'ի նմա, որպէս թէ ընդերք նորա վեր 'ի վայր հարեալ դղրդէին. ոչ ևս նոյն ինքն էր: Ամենայն ամուր տապաստանի 'ի սիրտ նորա պակասեալ, խիղճ մնաց՝ որոյ քաղցր էր նմա վկայութիւն՝ հակառակ նմին անկարծեալ, կշտամբէր դառնապէս զզառանցանս նորա և զզեղծումն ամենայն առաքինութեանց՝ յորս ոչ 'ի կրօնից դիցն յորդորեալ, և ոչ վասն կրօնից առաքինացեալ էր. խուճապք, արհաւիրք, ամօթ, թախիծք մնաց և յուսահատութիւն տագնապէին զնա: Դիւաղք դժոխայինք ոչ ևս ըկէին զնա, մատնեալ զնա իւրում իսկ անձին, զի սիրտ նորա խնդրէր 'ի նմանէ լիով զվրէժ դիցն արհամարհութեան: Աղջամղջագոյն հետազօտէր վայրս՝ առ 'ի ծածկել յերեսաց այլոց մեռելոց, եթէ էր հնար՝ և յանձնէ իսկ իւրմէ. խնդրէր նա խաւար, և ոչ գտանէր. լոյս դժպհի ամենայն ուրեք հալածէր զնա, ամենայն ուրեք ճշմարտութեանն թափանցիկ ճառագայթք հասանէին խնդրել զվրէժ թշնամանացն կրելոց 'ի նմանէ: Ամենայն որ ինչ սիրելի լեալ էր նմա՝ գոյր նմա ատելի իբր անեզրական աղետիցն պատճառք, և առնէր ցանձն իւր. Ո՜վ յիմարութեանս, ոչ ծանեայ ուրեմն,

ոչ զդիս, ոչ զմարդիկ, և ոչ զանձն զկնոյլն. այո, և ոչ մի ինչ ծանեայ, զի չսիրեցի զմիակ և զինկայէս բարիս. ամենայն գնացք իմ եղեն զարտուղիք, խաւարութիւն իմ յիմարութիւն, առաքինութիւն իմ կոյր և անպարկեշտ ամբարտաւանութիւն, և աստուածական մտացի անձին տարա:

Այս ասաց եւս Տեղեմաք զարքայս դատապարտեալս վասն զեղծանելոյ նոցա իշխանութեանցն իւրեանց: Նստի մի ՚ի վրէժխնդիր ձիւաղացն յանդիմանն առնէր նոցա հայելի երևեցուցիչ այլանդակ ախտից նոցա. յորում տեսանէին, և չկարէին իսկ առնել անտես, զմեծափառութիւն իւրեանց զանմիտ և զանյագ ՚ի ծառայուլից զօրութիւնս, զխստասրտութիւն իւրեանց առ մարդիկ՝ զորոց պարտ էր նոցա յարդարել զբարեկենդանութիւն, զանզգայութիւն իւրեանց ՚ի սէր առաքինութեան, զխորշումն ՚ի լսելոյ զճշմարտութիւն, զսէրումն առ վայս և մարդահաճոյս, զյուլութիւն ՚ի յանձնանձնս իւրաց, զմեղկութիւն, զանհոգութիւն, զատարպարտ կառավարեանս, զպերճանս և զշռայլութիւն յաւէր ժողովրդեան, զփառասիրութիւն ՚ի ստացուած դոյզն ինչ անուն փառաց արեամբ քաղաքայնոց, և զանգթութիւն իւրեանց ՚ի խնդրել հանապազօր զբգանս նորանորս արտասուօք և հեծութեամբք տառապելոց: Տեսանէին զանձինս ՚ի հայելւոջ անդ յաւէրժաբար, և թուէին յաչս

իւրեանց զարհուրագինսք քան զՀրէշն [12] խառ-նագագան՝ զոր պատմեաց Քսենոփոն [13], քան զՎիշապն Լեռնեան [14] զոր եհար Հերակլէս, և քան զԿերբեր [15] որոյ երեքկին փեռեկեալ կո-կորդ ժայթքէ ապիւն սեւաթորմի և թունաւոր, տապականիչ ազգի մարդկան՝ որ ընդ ամենայն ե-րեսս երկրի ։

Նման այլ ոք 'ի ձիւաղաց յեղյեղէր ընդ հենգն զամենայն շողոմն մարդահաճոյիցն՝ որ չնթէին զնոքօք 'ի կեանս նոցա. և միւս ևս յանդգնեան առնէր նոցա հայելի, յորում տեսանէին զան-ձինս ըստ նոցին մարդահաճոյիցն նկարագրի. և հակադրութիւն երկոցունցն պատկերաց յաճա-խէր զպատուհաս սնափառութեան նոցա ։ Նոյն էր տեսանել, զի չարագոյնք 'ի թագաւորաց էին զովեալքն 'ի կեանս իւրեանց առաւելագոյն դրուատեօք. քանզի չարք ահարկու քան զլաւս են, և ոչ ամաչեն զժամանակակցացն իւրեանց զքերթողաց և զճարտարախօսաց խնդրել զվատ շողոմն ։

Լսելի լինէր կոծ նոցա 'ի խաւարային խորոց անտի, ուր թշնամանք ևեթ և այպանք մնային նոցա, և շուրջ զնոքօք ոտնհարութիւն, ընդդիմա-բանութիւն և կշտամբանք ։ Փոխանակ զի ոչ խնայեցին յերկրի 'ի կեանս մարդկան՝ ծառայս իւրեանց զամենեսին համարեալ, մատնեալ կային անդ 'ի դժոխս 'ի կամս ստրկաց ոխանց՝ որք բռ-նանային 'ի վերայ նոցա անողորմ. իսկ Ինքեանք

կային նոցա 'ի ծառայութեան դառնացեալք, և ոչ գոյր յոյս դիւրելոյ գերութեան իւրեանց։ Կային ընդ հարուածովք անագորոյն բռնաւորացն, երբեմն ստրկաց իւրեանց, որպէս սալք ընդ թոպմամբ ուռանցն Կիկլոպայց՝ 'ի խրախուսել զնոսա Հեփեստեայ 'ի գործ 'ի բովս հրաբուղխս լերինն Էտնայ։

Ընդ Տելեմաք ետես կերպարանս տժգոյնս խոժոռս ահաբեկեալս զմեղապարտիցն, որոց թախիծք դժնդակք կրծէին զսիրտս. զարշէին զարհուրէին նոքա յանձանց իւրեանց, և ոչ կարէին զերծանել 'ի զարհուրանաց անտի մինչև գոյին. շատ իսկ էին 'ի պատուհաս յանցուածոցն յանցանք իսկ իւրեանց. տեսանէին յանդիման աչաց միշտ զայլանդակ տգեղութիւն եղեռանցն, որք որպէս ցնորք խոժոռադէմք երևութացեալ՝ զհետ մտանէին նոցա. և առ 'ի զերծանել յարհաւրացն՝ ցանկալի էր նոցա միւս այլ մահ, հզօրագոյն քան զայն՝ որ բաժանեացն զնոսա 'ի մարմնոյ։ Կարդային առ յուսահատութեան յօգնութիւն զմահ այլ՝ որում մարթէր բառնալ 'ի նոցանէ զամենայն զգայութիւն և իմացականութիւն. գոչէին առ անդունդս՝ կլանել զնոսա, առ 'ի խուսել 'ի վրէժխնդիր ճառագայթից ճշմարտութեան՝ որ հալածէին զնոսա. այլ պարտ էր վրէժխնդրութեան կաթել 'ի նոսա 'ի շիթ անսպառ։ Ճշմարտութիւնն ինքնին, զոր ոչ կամեցան տեսանել, տանջէր զնոսա. տեսանէին զայն,

և տեսանէին միշտ ստոր հակառակ իւրեանց յարուցեալ. տեսին նորա խոցեր կեղեքեր և յանձնէ 'ի բաց լուէր զնոսա, և իբրև շանթ ան-եղծս զնոսա 'ի վերին երեսս Թողեալ՝ յընդերս նոցին Թափ անցանէր ։ Հանգոյն հրահալեւոյ 'ի բովս հրաբորբոքս՝ հալեր հոգին վրէժխնդիր բոցովն ձուլեալ, որ ծախեր զամենայն և ոչ սպառ-ռէր, լուծանէր զտարերս անգամ կենաց և մահ ոչ ածէր ։ Նուաճանէր յանձնէ իսկ հոգին, ոչ ևս զտանէր յինքեան և ոչ վայրկեան մի հանգիստ և ապաստան. ոչ այլ ինչ կենդանութիւն 'ի նմա կայր, բաց յինքնագոր կատաղութենէ և 'ի սպառսպուռ յուսահատութենէ՝ որ մոլեգնու-թիւն 'ի վերայ ածէր ։

Ընդ այլ արհաւիրս, յորոց քստմնէրն Տելե-մաք, եսես և զյոգունս 'ի նախնի Թագաւորացն Լիւդացւոց պատուհասեալս վասն նախամեծար զմեծի կեանս առնելոյ քան զաշխատութիւն ու-րում պարտ է գոլ ամենեկին 'ի Թագաւորութենէ առ 'ի խորախոյս ժողովրդեան ։ Ըստամբէին նոքա զմիմեանս վասն կորութեան իւրեանց, և մի ոմն 'ի նոցանէ ասէր ցորդի իւր. Ո՞չ իսկ պատուիրեցի քեզ բազում անգամ՝ 'ի ծերութեան և 'ի մահու՝ առնել հայթայթանս չարեաց անհոգութեանս իմոյ ։ Նա որ պատասխանէր որդին. Արդ՛ուկ թշուառացելումդ հօր, դու ինքն եղեր պատճառ կորստեան իմոյ. օրինակ քո աղդեաց յիս զպեր-ճութիւն զգոռոզութիւն զհեշտասիրութիւն և

զխստասրտութիւն առ մարդիկ. անտանելով զքեզ ընկղմեալ 'ի մեղկութիւն և սպառ առեալ 'ի վաստ մարդահաճոյից՝ ուսայ ատել զշողոմն և զգրգանս: Համարեցայ զայն 'ի մարդկանէ առ Թագաւորս՝ որպէս զձիս և զգրաստս առ մարդիկ, որք առ 'ի պէտս ծառայութեան եւեթ և դիւրութեան խնամարկին: Զայս ես 'ի քէն ուսայ, դու ինձ ուսուցեր զայս այսպէս կարծել. և արդ զայսքան կրեմ աղէտս. փոխանակ զի քեզ եղէ նմանօղ: Այլ յաւելուին 'ի կշտամբանս յայտնի անէծս ահագինս, և թուէին պատրաստել կեղեքել զիրեարս առ կատաղութեան:

Շուրջ զեղկելեօքն որպէս բուէճք գիշերայանք դեռ ևս թեւածեալ ճախր ածանէին կաս կածք դժնդակք, տագնապք մտացք, և երկիւղ՝ վրէժխնդիր ժողովրդեան ընդդէմ բռնութեան Թագաւորաց, ընչաքաղցութիւն անյագուրդ, սնափառութիւն միշտ բռնաւոր, և վատասիրտ մեղկութիւն՝ որ յաճախէ զամենայն վշտակրութիւն, առանց մատուցանելոյ երբէք խնկապէս բերկրանս: Յոլովք 'ի Թագաւորաց անտի կրէին խիստ պատուհաս ոչ վասն չարեաց ինչ գործեցելոց, այլ վասն չգործելոյ զորս պարտ էր նոցա գործել բարիս: Ամենայն եղեռն ժողովրդեան, որ յանհոգութենէ օրինապահութեան, նոցա համարէր 'ի մեղս. զի ոչ առ այլ ինչ պարտ է նոցա Թագաւորել, բայց զի օրէնք 'ի ձեռն նոցա Թագաւորեսցեն: Նոցուն դրէին 'ի մեղս և ա-

մենայն անկարգութիւն յառաջ եկեալք 'ի սնափառ պերճանաց, 'ի զեղխութենէ, յամենայն անչափութեանց՝ որ զառաւածանեն զմարդիկ 'ի գրգիռ և 'ի վտանգ օրինազանցութեան առ 'ի մթերել ինչս: Այլ մանաւանդ խստագոյնս պատուհասէին Թագաւորք, որք փոխանակ հովիւ գոլոյ ժողովրդեան հսկող և բարի՝ վարատեն զհօտ իւրեանց որպէս գայլք գիշատիչք:

Բայց առաւել քան զամենայն ինչ զարհուրելի Թուեցաւ Տելեմաքայ տեսանել 'ի խորս անդ խաւարին և աղետից բազմութիւն յոյժ Թագաւորաց, որք ընդ բարելաւս 'ի վերայ երկրի համարեալ՝ դատապարտեալ կային 'ի տանջանս դժոխոց վասն Թողլոյ իւրեանց զտեսչութիւն 'ի ձեռս չար և նենգաւոր մարդկան. և կրէին պատիժս պատուհասին զչարեացն, զորս այլք իշխանութեամբ նոցա գործեալն էին: Յոգունց 'ի նոցանէ ոչ բարի լեալ էին կեանք և ոչ չար, առ յոյժ վատութեան իւրեանց. չէր նոցա երկուցեալ 'ի ճանաչելոյ զճշմարտութիւն, չէր երբէք առեալ նոցա զճաշակ առաքինութեան, և ոչ սիրելի լեալ նոցա բարերարել:

# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ

## ՈՒԹԵՒՏԱՍՆԵՐՈՐԴԻ ԳՐՈՑՆ

1 ՄՈՒԼԻՆ, որ արդ կոչի ԳԱՐԳԱՆ, լեառն 'ի Կալաբրիա յայն-կոյս, ուր է քաղաք Համանտոն:

2 ԹԵՍԷՈՍ որդի Եգէոսի աթենացւոց արքայի, որ ընդ Պերիթեայ էջ 'ի դժոխս յափշտակել զՊերսեփոնէ, և կալեալ եկաց 'ի շղթայս հրամանաւ Պղուտոնի, մինչև հասեալ Հերակլեայ արձակեաց զնա:

3 ՀԵՐԱԿԼԷՍ. տե՛ս 'ի Բ գիրս, ծան. 2:

4 ՈՐՓԷՈՍ. տե՛ս յԱ գիրս, ծան. 16:

5 ՊԵՐՍԵՓՈՆԷ. տե՛ս 'ի Դ գիրս, ծան. 3:

6 ԱԽԵՐՈՆԻՏ քաղաք 'ի Փուլիա 'ի սահմանս Նէապօլսոյ, կառուցեալ 'ի լերին 'ի ծագ Իտալիոյ: Ի ստորոտ լերինն է քարայր, ուր Ախերոն գետ հոսէ գահավէժ. և կոչեն քերթողք զանձուկն զայն դուռն դժոխոց: Ընդ այն իսկ եմուտ Հերակլէս, և եհան արտաքս զԿերբեր շուն եռագլխի պահակ դժոխոց:

7 ԴԵՄԵՏՐԷ. տե՛ս 'ի Ե գիրս, ծան. 4.

8 ԴԻՈՆԻՍ կամ ՍԱՆԴԱՐԱՄԷՏ. տե՛ս յԱ գիրս. ծան. 10:

9 ՀԵՐՄԷՍ որդի Արամազդայ և Մայեայ, աստուած ճարտարխօսութեան, վաճառականութեան, պատգամաւոր դից. նկարի թեւաւոր 'ի գլուխն և յոտս 'ի նշանակ երագութեան, և գաւազան 'ի ձեռին՝ պատատեալ 'ի կրկնակ օձից: Սմա անկ էր տանել զհոգիս մեռելոց 'ի դժոխս:

10 ՔԱՐՈՆ. տե՛ս 'ի ԺԵ գիրս, ծան. 10:

11 ԱՐՏԵՄԻՍ կամ ԱՆԱՀԻՏ, դուստր Արամազդայ և Լատովայ, քոյր Ապողոնի, դիցուհի անտառաց, որսորդութեան և զգաստութեան. որ յերկինս կոչի Լուսին կամ Տիկին երկնից, յերկրի Արտեմիս, և 'ի սանդարամետս Եկատէ:

12 ՀՐԷՇ ԽԱՌՆԱԳՈՅՆ կամ ՔԻՄԵՌ լեառն է 'ի Լիկիա հրաբուղխ բնակեալ յառիւծուց յարաւանոն, 'ի քօշից 'ի կողմն պարարտարօտս, և յօձից 'ի ստորոտն ճախճախուտս. յորմէ

քերթողք առասպելեցին զլեառնն զայն գոլ հրէշ ինչ խառ-
նագազան, և Բելլերոփոնի սպանեալ զնա :

13 Բէլլէրօֆօն որդի Գլաւգիոսի արքային Կորնթացւոց. զրպարտեալ 'ի Սթենոբեայ իբր թէ կամէր բռնաբարել զնա, ուր ինքն զնա հրապուրէր 'ի նոյն, 'ի Պրետեայ արքայէ Արգոսի՝ որ էր այր Սթենոբեայ՝ առաքեցաւ առ Յոբատ արքայ Լիկիոյ առ 'ի մահ : Յոբատ մատոյց զնա 'ի մենամարտ ընդ Քիմերայ. բայց Բելլերոփոն պարտեաց զՃիւաղն հեծեալ 'ի Պեգասս :

14 Լէռնէան վիշապ. Լեռնա էր ճահիճ 'ի գաւառին Արգոսի, յորում բնակեալ կայր վիշապն հարիւրգլխեան, որոյ 'ի հատանել միոյ 'ի գլխոցն՝ այլ փոխանակ բուսանէր. զոր և սատակեաց Հերակլէս :

15 Կէրբէր. տես յԸ գիրս, ծան. 11 :

16 Լիւդիա, որ արդ կոչի Գուրանիա, գաւառ 'ի փոքրն Ասիա :



# ԱՐԿԱԾՔ ՏԵԼԵՄԱՔԱՅ



## ԳԻՐՔ ԻՆՆԵՒՏԱՍՆԵՐՈՐԴ

# ՆԱԽԱԴՐՈՒԹԻՒՆ

Ի մտանել Տելեմաքայ յԵլիսեան դաշտս՝ ճանաչէ զնա Արկեսիոս հաւ նորա, և աւետէ նմա զկենդանութիւն Ոդիսեայ, և զի մնայ նմա տեսանել զնա յԻթակէ, և թագաւորել անդ յետ նորա։ Ցուցանէ նմա զերանութիւն արդարոց, և մանաւանդ զարքայից լաւաց՝ որք յաստի կեանս ծառայեն գէթ և յարդարեն զբարեկենդանութիւն ժողովրդոց իւրեանց։ Ցուցանէ զդիւցազունս՝ 'ի պատերազմունս եւեթ առաքինացեալս՝ ստորև յոյժ քան զայլս յերանելեացն ուրոյն։ Յաւելու ապա խրատս Տելեմաքայ. և մեկնեալ անտի պատանին փութայ հասանէ 'ի բանակ անդր դաշնաւորաց։

# ԱՐԿԱԾՔ ՏԵԼԵՄԱՔԱՅ



## ԳԻՐՔ ԻՆՆԵՏԱՍՆԵՐՈՐԴ

Բայց Տելեմաք այնպէս սփոփեալ գտաւ յելանելն 'ի սահմանաց անտի, զի թուէր նմա զերծ լեռնակարկառ յանձնէ 'ի բաց թօթափեալ. և 'ի սփոփանաց անտի 'ի միտ էառ զաղէտս այնոցիկ, որ կային անդ խաւարարգել անյոյսք 'ի հնարս ելից: Զարհուրեալ 'ի տեսիլ սաստկագոյն պատուհասի թագաւորաց քան զայլ մեղապարտս, ասէր. Ո՜վ, քանի՜ պարտք են նոցա, քանի՜օն վտանգք, որպիսի՜ թակարդք, ո՛րքան դժուարութիւնք 'ի ճանաչումն ճշմարտութեան առ 'ի պատսպարել զինքեանս յայլոց և յանձանց իսկ. և ապա քանի՜ տանջանք ահագինք 'ի դժոխս յետ կրելոյ 'ի սուղ կեանս այնքան երկիւղ, յաչաղանս և հակառակութիւն. աւա՜ղ անմտութեան որոց ցանկանն թագաւորել. և երանի՜ որ զհասարակաց խաղաղաւէտ վարէ կեանս, յորում նուազ

խոչք են առաքինութեան ։ Զայսպիսիս զմտաւ ածեալ՝ խռովէր յանձն իւր . և այնպիսի կրէր վհատութիւն, մինչև զյուսահատութեան հի- քացն այնոցիկ՝ զորս ետես՝ առնուլ յեղանակաւ իմն զճաշակ ։ Այլ ըստ հեռանալ 'ի տխուր վայրաց անտի, ուր օթևանէին արհաւիրք, խաւար և յուսահատութիւն, ոգի առեալ քաջալերէր, և սկսանէր անդստին նշմարել զզուարթ և զպայծառ լոյս օթևանաց դիւցազանցն ։

Անդ էր բնակարան թագաւորաց ամենեցուն լաւաց, որոց մինչև ցայնժամ իմաստութեամբ առաջնորդեալ էր ժողովրդոց . ուրոյն յայլոց արդարոց էր նոցա բնակութիւն ։ Զի որպէս չարք 'ի թագաւորաց սաստկագոյնս յոյժ քան զռամիկն մեղապարտ տանջէին 'ի դժոխս, այսպէս և լաւք 'ի նոցանէ վայելէին յելիսեան դաշտս 'ի բարեբաստութիւն գեր 'ի վերոյ քան զայլս 'ի մարդկանէ՝ որք սիրեցին յերկրի զառաքինութիւն ։

Յառաջ մատեաւ Տելեմաք առ նոսա . և էին նոքա բազմեալք 'ի խնկահոտ ծառաստանի 'ի յարագուարձ և 'ի մշտափթիթ դալարուոջ . վտականի բազմահոյլ ականակիտ ոռոգանէր զգեղեցիկ վայրսն, և զով հեշտալի գործէր անդանօր . և բազմերամք հաւուց հնչեցուցանէին զմայրիս 'ի քաղցրանուագ երգս իւրեանց ։ Ծաղիկք գարնայնոյ միահամուռ փթթէին անդ առ ոտս, և ազգ ազգ մրգոց աշնայնոյ կախէին զկողերց ծա-

*ռոց։ Եւ երբէք անդանօր հրատապ չնկանն աղդեր բոց, և ոչ սեաւ հիւսիս իշխեր անդ շնչել, կամ զձմերայնոյ ածել անդր զբուք։ Եւ մարտ արիւնախանձ, ոչ մոխանք չարաթոյն ժանտօք խածատիչք՝ որք իժս զալարունս կրեն ՚ի ծոցի և զբազկօք, ոչ սէր մոլեկնախանձ, ոչ կասկածանք, ոչ երկիւղ, և ոչ տարապարտ խղճք յերանաւէտ անդր ՚ի կայս խաղաղութեան մատչել կարէին։ Ընդ աներեկն ծագէր տիւ, գիշերոյ քօղ նսեմ բնաւին էր անդ անծանօթ. շուրջ պատեալք ՚ի լոյս զուարթ և անաղօտ մարմինք արդարոց, ճառագայթազգեստք էին զարդարեալ։*

*Զիք այնմ լուսոյ նմանութիւն ընդ աղօտաճաճանչ լուսոյս՝ որ ճառագայթէ յաչս մահկանացուացս հիքաց ոչ ինչ ընդհատ ՚ի խաւարէ, զի է այն փառք երկնահրաշ քան թէ լոյս. մտանէ թափանցանց անօսր նրբութեամբ ընդ մարմին թանձրախիտ քան թէ նշոյլք արեգական ընդ բիւրեղ ականակիտ. չէ ակնախտիղ, այլ մանաւանդ կազդուրէ զաչս, ազդէ ՚ի հոգի զուարթութիւն անճառ, նովաւ մնանին երանեալքն այնուքիկ, ծագէ ՚ի նոցունց և ցոլանայ ՚ի նոսին. ընդմտանէ ՚ի նոսա, և տարրանայ ՚ի հոգւոջ որպէս կերակուր ՚ի մարմնի։ Տեսանեն զայն, զգան և շնչեն, և է այն ՚ի նոսա աղբիւր անսպառ խաղաղութեան և խնդութեան. խորասուզեալ կան ՚ի բերկրանս որպէս կայտառք ՚ի ծովու. ոչ ևս ցանկան իմիք, ոչ ինչ ունին և անկարօտք են ամե-*

նեւին. զի անապակ այնր լուսոյ ճաշակ՝ լնու զքաղց սրտի նոցա, յագեն կշտապինդ ամենայն իղձք նոցա. և լիութեամբն այնուիկ գեր 'ի վերոյ արշաւեն ամենայնի, որոց 'ի խնդիր է յերկրի սիրտ մարդկան թափուր և սովեալ: Պարառութիւն ամենայն զուարճութեանց զնորօք՝ ոչ ինչ թուի յաչս նոցա, զի լիուլի երանութեամբն՝ որ 'ի ներքս 'ի նոսա է՝ անզգայք առնին ամենայնի որ ինչ արտաքոյ նոցին են հեշտալիք, զղիցն բերելով զնմանութիւն, որք նեկտարիւ ' և ամբրոսեաւ յագեալք՝ ոչ կարօտին թանձր համադամոց ազնուագոյն իսկ կոչնոց երկրաւորացս: Ի խաղաղաւէտ վայրաց անտի 'ի բաց խուսափեն ամենայն չարիք. մահ, հիւանդութիւն, աղքատութիւն, ցաւ, զեղջ, երկիւղ, և յոյս իսկ՝ որ բազումայն է զի ոչ ինչ նուազ քան զերկիւղ է տառապեցուցիչ, գժտութիւն, դժկամակութիւն, և զայրոյթ չգտանեն երբէք անդր մուտս:

Երինք բարձունք Ովրակիոյ, որք զձիւնախաղաղ զսառնապատ գագաթունսն յաւերժականս ծրարեն յամպս, տապալեսցին յանդնդալիր 'ի հիմանցն 'ի միջակէտ երկրի կայկայելոց, և մի՛ երբէք սիրտ արդարոցն այնոցիկ սասանեսցին: Գործովքն ևեթ ընդ աղէտս որոց կեանն տակաւին յերկրի. այլ գործովն նոցա քաղցր է և անխռով, և ոչ այլայլէ զանյեղլի նոցայն երանութիւն: Ա՛նկութիւն անծերանալի, երջանկութիւն անեզրական, և փառք աստուածահրաշ նկարին 'ի դէմս

նոցա. բայց ցնծութիւն նոցա ոչ է խօլական և անպատեհ, այլ զուարթ, ազնուական և մեծավայելուչ, այլ վեհ իմն ճաշակ ճշմարտութեան և առաքինութեան՝ որ զմայլեցուցանէ զնոսին։ Զնոյն ցնծութիւն սրտի կրեն յաւէրժ անընդհատ, զոր կրէ մայր 'ի տեսանել զորդի իւր սիրելի ընդ մեռեալս համարեալ. բայց ցնծութիւնն այն մայրենի վաղանցիկ՝ ոչ անցանէ 'ի նոցանէ, և ոչ վայրիկ մի թուլանայ, այլ նորոգի միշտ 'ի նոսին. զմայլին արբեցութեամբն, առանց ամբոխման մտաց և ապշութեան։

Զրուցատրեն ընդ միմեանս զորոց տեսանենն և յորս վայելեն. առ ոտն կոխեն զմեղկ զրգանս և զանոտի մեծութիւնս կենցաղոյս՝ զոր աւաղեն. յիշեն խնդութեամբ զտխուր՝ այլ զարագաւախճան աւուրս՝ յորս պարտ էր նոցա մաքառել ընդ անձին և ընդ ամբոխս արանց ժանտից 'ի հանդէս առաքինութեան, և սքանչանան ընդ օգնականութիւն դիցն՝ որոց կալեալ զձեռանէ ածին զնոսա ընդ բազմադէմ վտանգսն յառաքինութիւն։ Ուղխ իմն աստուածեղէն անճառելի հոսէ անսպառ 'ի սիրտս նոցա ներգործեալ, 'ի միտ առնուն և զգան զերանութիւն իւրեանց, առանց վախճանին կասկածանաց։ Նուագեն օրհնութիւնս դից 'ի միասին. մի բարբառ է ամենեցուն, մի խորհուրդ, մի սիրտ, և մի երջանկութիւն ծովացեալ յամենեսին յոգէխառնեալն 'ի մի։

Յաստուածահրաշ յայնմ հիացմանն անցանեն դարք երագունք քան զժամն առ մեզ. և բիւրք բիւրուց դարուց անհետք՝ ոչ ինչ նուազեն զերանութիւն նոցա միշտ նոր և յար անթերի: Թագաւորեն առ հասարակ, ոչ յաթոռս դիւրակործանս 'ի մարդկանէ, այլ յանձինս իւրեանց անշեղական իշխանութեամբ. զի ոչ ևս հարկ է նոցա մուրացածոյ իշխանութեամբ հէք և անարգ ռամկին գոլ ահարկու. ոչ ևս կրեն զթագ կապտելի՝ որոյ շողիւն ծածկէ այնքան արհաւիրս և հոգս դառինս, այլ դիք ինքնին կազմեն նոցա 'ի գլուխ թագ անկապուտ:

Տեղեմաք, որ յեղանակեն 'ի խնդիր հօր իւրոյ՝ երկնչէր գտանել զնա 'ի վայրսն ցանկալիս, այնպէս առաւ զմայլեալ 'ի ճաշակ խաղաղութեանն և բարեբաստութեան՝ զի ցանկայր գտանել անդ զհայրն, և տրտմէր իսկ՝ զի հարկ էր նմա դառնալ կենակից լինել մահկանացուաց, և ասէր. Այս են կեանք ճշմարիտ, իսկ կենցաղս մեր մահ է գլխովին: Այլ ընդ այն մանաւանդ առաչէր, զի այնքան բազումք 'ի տարտարոսն կային դատապարտեալ թագաւորք, իսկ յելիսեան 'ի դաշտս անդ նուազունք սակաւք երանեալք. ուսաւ 'ի միտ առնոյր, զի սակաւք 'ի թագաւորաց են անյողդողք և արիասիրտք ընդդէմ հրապուրանաց իշխանութեան իւրեանց և շողոմից մարդելուզաց՝ որք գրգռեն զկիրս նոցա: Այսպէս ահա թուով են լաւք 'ի թագաւորաց. իսկ յոլովագոյնք այն-

պէս յոյլք, զի չէ իսկ մարթ դիւց անդատապարտ գնոսա առնել յետ մահուն առանց անիրաւութեան, երկայնամտեալ զերծանելոյ նոցին իշխանութեամբ իւրեանց մինչև ցմահ։

Բայց պատանւոյն Տելեմաքայ չգտեալ զհայր իւր Ոդիսեւս ընդ Թագաւորօքն, շուրջ հայէր՝ գէթ զհաւ իւր տեսանել զդիւցազնն Լայերտ։ Այլ մինչդեռ հետազօտէրն զնա 'ի զուր, ծերունի ոմն վեհ և պատկառելի յառաջ մատեաւ. ալիք նորա չէին ինչ համգոյն ծերունեաց՝ զորս ընկճեն ամք յերկրի, այլ յայտնի եւեթ էր՝ յառագոյթ տիոցն հասեալ նմա օրհասս. զի կցորդէր 'ի նմա զգօնութիւն աղեաց ընդ գեղ մանկութեան, որ և 'ի զառամեալս անգամ նորատեղծի 'ի մտանել նոցա յԵլիւսեան դաշտս։ Փութայր գայր նա դիտելով սիրելաբար 'ի պատանին իբր 'ի կարեւոր իւր սիրելի։ Իսկ Տելեմաք չճանաչէր զնա. և 'ի վարանս լինել նորա և 'ի վիշտ, ասէ ծերունին.

Ոչ ինչ է քեզ մեղ, որդեակ, չճանաչել զիս. ես ինքն եմ Արկեսիոս հայր Լայերտեայ, որ նախ քան զարշաւանս Ոդիսեայ թոռին իմոյ 'ի տրովադական պատերազմ՝ կատարեցի զաւուրս իմ։ Դու տղայ դեռ ես դիեցիկ էիր յայնժամ, այլ անգատքն յոյս մեծ էր ինձ 'ի քեզ, և ոչ 'ի դերև եղ յոյս իմ. զի ահա տեսանեմ զքեզ 'ի գաւառ Պլուտոնի իջեալ 'ի խնդիր հօր քո, ընդ դիւցն հովանաւորեալ աջով։ Ո՛վ երջանիկ պատանեակ,

սիրեցեալ 'ի դից՝ որք պատրաստեն քեզ փառս հայրենականացդ հաւասար ։ Երանի՛ աչացս՝ որ տեսանեն զքեզ․ այլ դադարեաց 'ի խնդրելոյ աստ զհայր քո, զի տակաւին կենդանի է նա․ կայ միայն նմա կանգնել զտուն մեր յԻթակէ ։ Լայերտ իսկ, թէպէտ և ընդ բեռամբ ամաց ընկճեալ, վայելէ ցարդ 'ի լոյս, և միայն որդւոյ իւրում զի կափուսցէ զաչս իւր ։ Որպէս հանգոյն ծաղկան, որ փթթեալ այգուն և ընդ երեկս թարշամեալ՝ լինի կոխան, անցանեն մարդիկ․ սահին ազգք իբր ալիք սրընթաց գետոյ․ և ոչ ինչ զօրէ նահանջել զժամանակ, որ առեալ ձգէ ընդ իւր զամենայն ինչ անշարժ յերևման ։ Դու իսկ, որդեակ իմ, դու իսկ որ այժմդ վայելես 'ի տիս առոյգ և բերկրապատար մանկութեան, յիշեա զի հասակդ այդ գեղածաղիկ ընդ փթթ-թելն և զօսասցի․ գտցիս յանկարծ այլափոխեալ․ շնորհք գեղածիծաղք, զուարճութիւնք բերկրալիք՝ որ արդ զհետ քո գան, կորով առողջութիւն և խնծիղք անցցեն որպէս երազք բերկրալիք, և թողցեն ևեթ տխուր յիշատակ․ հասցէ ծերութիւն անզօր և անընդունակ բերկրանաց՝ խորշս քեզ 'ի յայտս արկանել, կորացուցանել զթիկունս քո, կթոտել զանդամս, ցամաքեցուցանել 'ի սրըտի քում զաղբերակն խնդութեան, դառնացուցանել քեզ զկեանս, արկանել 'ի քեզ զահ հանդերձելոցն, և անզգայ զքեզ առնել ամենայնի բաց 'ի ցաւոց ։

Հեռի 'ի քէն կարծես զժամանակդ. այլ աւաղ, խաբիս դու որդեակ իմ։ գայ հասանէ նա վաղվաղակի, և որ այնպէս արագն հասանէ, չէ հեռի 'ի քէն. այլ հեռի 'ի քէն է վայրկեանդ՝ որ անցանէ, ոչէացեալ այժմ իսկ մինչ խօսիմքս, և չիք նմա դարձ։ Ո՛վ տղայ, որդեակ իմ, վստահացիս յոր կանդ. այլ 'ի հանդերձեալսն ակընկառոյց՝ պինդ կաց 'ի խիստ և 'ի դժուարուտ ճանապարհի առաքինութեան, և ամբիծ վարուք և սիրով արդարութեան պատրաստեսջիր քեզ տեղի յերանաւէտ օթևանս խաղաղութեան։

Տեսցես դու ընդ հուպ զհայր քո դարձեալ յաթոռ իւր յԻթակէ, և քեզ անկ է պայազատել զնա։ Այլ աւաղ, քանի՜ խաբուսիկ է թագաւորութիւն. մեծութիւն ևեթ և փառք և բերկրութիւնք նշմարին 'ի նմա 'ի հեռուստ, այլ 'ի մօտոյ փշալից է համակ։ Ո՛ն սոսկականի մարթ է առանց պարսաւանաց անձնդիւր և աննշան վարել կենցաղ. այլ ոչ է մարթ թագաւորի պարապել անպարսաւ յանձնդիւր և յանգործ կեանս՝ անտես արարեալ զտաժանաւոր պարտս տեսչութեան։ Պարտի նա զանձն իւր ժողովրդեան, և չէ օրէն նմա կեալ անձին. դուզնաքեայք իսկ թերութիւնք մեծ են յոյժ 'ի նմա, զի ածեն աղէտս 'ի վերայ ժողովրդեան, և է զի տևականս իսկ ընդ դարս բազումս։ Պարտ է նմա սանձահարել զստահակութիւն չարաց,

ձեռն տալ անմեղութեան, և ցրել զզրպարտութիւն։ Զի բաւական թէ չգործիցէ ինչ չար, այլ և բարիս պարտ է նմա որչափ մարթ իցէ յօգուտ աշխարհին գործել. և ոչ բարերարութեամբն ևեթ ըստ բովանդակ զպարտս իւր, այլ պարտ է նմա և խափանել զչարիս՝ զոր մարթ է այլոց գործել անխափան։ Երկիր սորա, որդեակ իմ, երկիր 'ի վտանգաց աթոռոյ՝ սպառազինեալ արիութեամբ ընդդէմ անձին, ընդդէմ կրից քոց, և ընդդէմ մարդահաճութեան։

Եւ 'ի խօսելն զայսոսիկ՝ թուէր Միներուա աստուածեղէն վառեալ հրով, և կարեկցութիւն յոյժ բերելով 'ի դէմս իւր ընդ պատանին վասն աղետից՝ որ կցորդք են թագաւորութեան, ասէր. Թագաւորութիւն վասն անձնդիւրութեան յանձն առեալ փոխի յայլանդակ բռնաւորութիւն. իսկ առ 'ի լնուլ զպարտս և որպէս հայր որդւոց առաջնորդել ժողովրդեան առեալ յանձն, ծառայութիւն է դժուարակիր՝ կարօտ դիւցազնական արիութեան և համբերութեան. և որք միանգամ թագաւորեն ճշմարիտ առաքինութեամբ, ժառանգեն աստանօր որ ինչ մարթ է ամենակալ զօրութեան դիցն պարգևել նոցա 'ի լիութիւն երանութեան։

Զայսոսիկ այսպէս Միներուայ առ Տելեմաք խօսելով՝ ազդէին բանք նորա մինչև 'ի խորս սրտի պատանւոյն, և դրոշմէին 'ի նմա որպէս 'ի գրոցէ ճարտարի քանդակեալ 'ի պղինձ պատկերք

անջնջելի՝ 'ի տեսիլ դարուց ապառնեաց։ Խրատք նորա հանճարեղք համգոյն բոցոյ նրբենւոյ ընդդիմանէին յերկիւղածութեան թուլինն, և յուզէր սիրտ նորա և բորբոքէր, և անճառելեաւ իմն զօրութեամբ աստուածայնով թուէր հալեալ և լուծեալ։ Այլ ինչ 'ի խորս սրտի նորին՝ որ ծախէր զնա զանխլաբար. և ոչ զօրէր նա բովանդակել զայն յանձին, ոչ ժոյժ ունել այնմ, և ոչ տատանութեան ազդմանն տալ. զի էր բուռն և հեշտալի, խառն ընդ գեղումն՝ որում մարթէր զրաւել իսկ զնա 'ի կենաց։

Բայց տակաւ ոգի առեալ պատանւոյն նկատէր 'ի դէմս Արկեսեայ նմանութիւն յոյժ ընդ Լայերտեայ. յիշէր իսկ ընդ աղօտ և 'ի դէմս Ոդիսեայ հօր իւրոյ տեսեալ զտիպս ինչ նմանութեանն 'ի մեկնել զնաւ նորա 'ի պատերազմն Տրովադայ։ Այս զորովեալ ընդ յիշատակն՝ քաղցր արտասուս զուարճախառն անձկով հեղոյր յաչացն. ցանկայր տարփանօք գիրկս արկանել Արկեսեայ, և փորձէր իսկ սակայն, այլ 'ի զուր. զի խուսափէր ստուերն սին 'ի գրկաց նորա, որպէս երազ խաբուսիկ չտայ երազողի հանդիպել ընձիցն. մերթ բերանաբացեալ պապակմամբ հետամուտ լինի ջրոյ 'ի բաց խուսելոյ, և մերթ շրթանցն շարժմամբ հնարի յօդել բարբառ՝ զոր լեզուն կարկամ չկարէ արտասանել. և է զի դարձեալ բազկօք տատանելովք՝ ըմբռնէ և ոչ ինչ. ըստ սմին օրինակի և Տելեմաք չկարէր ընուլ զգգուով իւր. տե-

սանէր զԱրկեսիոս, լսէր զբարբառ նորա, խօսէր ընդ նմա, այլ չկարէր հպել 'ի նա:

Ապա ուրեմն եհարց զնա վասն արանցն՝ որ կային զնովաւ, և իմաստուն ծերունին ասէ. Արքդ այդոքիկ եղեն զարդք դարուցն՝ յորս կացին, և փառք և բարեպաշտութիւն ազգի մարդկան: Սոքա են ահա սակաւք 'ի թագաւորաց կացեալ այդպիսիք, հաւատարմութեամբ զդիցն բերելով յերկրի զդէմս: Իսկ որ առ սոքօքն կան անջրպետեալ փոքրիկ ամպով՝ ստորև յոյժ քան զսոսա եղեն փառօք. դիւցազունք արդարև կացին, այլ մրցանակք քաջութեան նոցա և զինուորական նահատակութեանց ոչ 'ի կշիռ կարեն կալ ընդ վարձս իմաստուն արդարակորով և բարեբար թագաւորացն:

Ի մէջ դիւցազանցդ տեսանես ահա զԹեսևոս դոյզն ինչ թախծադէմ. զի խելամուտ լեալ աղետից դիւրահաւանութեանն առ կին մի խորամանկ, զղջ է նմա տակաւին ընդ անիրաւ աղերսն՝ որով խնդրեաց 'ի Պոսիդոնեայ զանողորմ մահ որդւոյ իւրոյ Իպպոլիտեայ [2]. իցէ թէ չէր նորա լեալ վաղվաղակ և դիւրագրգիռ 'ի ցասումն: Տեսանես և զԱքիլլէս [3] յեց 'ի նիզակ իւր՝ վիրաւորեալ 'ի կրունկ ոտին մահառիթ նետիւն 'ի վատէն Պարեայ: Թէ էր նորա ըստ անվեհեր քաջութեանն լեալ զգօն արդարակորով և մարդասէր, շնորհէին նմա դիք թագաւորել ընդերկար. այլ գթացան 'ի Փթիոտս՝ և 'ի Դոլոպս՝ որոց

յետ Պեղէոսի հասանէր նմա իշխել, և ոչ կամեցան մատնել զայնքան բազմութիւն ժողովրդոց 'ի ձեռս առն միոյ ամեհւոյ, որ զայրագին ևս էր քան զամենայն ծով մրրկեալ։ Հատին Պարկայք զնարօտ կենաց նորա, և եղև նա որպէս ծաղիկ 'ի փթիթս անդ անկեալ 'ի սայր արօրոյ, մինչ չև խոնարհեալ աւուրն՝ որ ետ նմա կեանս։ Արբանեկեաց նա դիցն զօրէն ուղխից և մրրկաց առ 'ի պատուհասել զոճիրս մարդկան. առին նոքա 'ի ձեռս զԱքիլլէս՝ տապալել նուազարարիսպս Տրովադայ, խնդրել զվրէժ երդմնազանցութեանն Լաւոմեդեայ՝ և զանօրէն տռփանացն Պարիսի։ Այլ յետ կացուցանելոյ զնա դահիճ վրէժխնդրութեան իւրեանց՝ զիջաւ սրտմտութիւն նոցա, և անտես արարեալ զարտասուս Թետեայ՝ ոչ ևս թողին յերկրի ընդերկար զպարմանիդ դիւցազն, որ ոչ յայլ ինչ էր պիտանացու՝ բայց առ 'ի խռովել զազգ մարդկան, և առ 'ի տապալել զքաղաքս և զպետութիւնս։

Տեսանես և զմիւսդ զայդ վայրենակրես. դա ինքն է Այաս որդի Տելամոնի, ազգական Աքիլլեայ. ոչ ինչ զանխուլ է 'ի քէն քանի փառք եղեն դմա 'ի հանդէս մարտից։ Ի մեռանել Աքիլլեայ՝ ոչ այլ ումեք բայց իւր միայնոյ անկ զզէնս նորա համարէր. իսկ հայր քոյին չառնոյր դմա զայն յանձն, և Յոյնք Ոդիսեայ զայն անկ համարեցան։ Յայնժամ Այաս առ յուսահատու-

թեան չոգաւ զխուռովլին, և դեռ ևս զզայրոյթ և զկատաղութիւն 'ի դէմս բերէ։ Մի՛ մերձենար, որդեակ իմ, 'ի դա. գուցէ համարիցի՝ թէ ոտն-հար լինիս թշուառութեան իւրոյ, ընդ որ կա-րեկից արժան է լինել։ Նա ընդ ակամբ հայի դա 'ի մեզ, և խոժոռեալ մտանէ յանտառդ նաւ-մատուէր, զի դժպհի եմք դմա։

Տեսանես անդ մեկուսի և զՀեկտոր, որ լի-նէրն անյաղթելի՝ եթէ ոչ ժամանակակից նմին հանդիպէր զաւակին Թետեան։ Նա անցանէ և Ագամեմնոն, դեռ ևս զապխ յանձին բերելով զդաւաճանացն Կլիտեմնեստրայ։ Զարհուրիմ, որդեակ, յածել զմտաւ զաղէտս ազգատոհմի անբարըշտին Տանտալեայ. գժտութիւն եղբարցն երկոցուն, Ատրեայ և Թիեստեայ*, ելից զտունն զայն արհաւրօք և արեամբ։ Աւա՜ղ, զխառն ոճիրք զոճիրս աղխաղխեալ ձգեն։ Ագամեմնոն ընդ Յոյնս 'ի տրովականս պատերազմէն դարձաւոր, չկարաց վայելել խաղաղութեամբ 'ի փառս՝ զոր ստացաւ. այս բախտ է աշխարհակալաց գոգցես բոլորից։ Որեարդ առ հասարակ, զորս տեսանես, ահաւորք ցուցան 'ի մարտի. այլ զի ոչ սիրելիք եղեն և ա-ռաքինիք, զերկրորդ աստանօր յելխեան 'ի դաշտս վիճակեցան վայր։

Իսկ սոքա, զի թագաւորեցին արդարութեամբ և սիրեցին զժողովուրդս իւրեանց, սիրելիք են դից. սա Աքիլլէս և Ագամեմնոն լի գժտու-թեամբք և մարտիւք՝ կրեն և աստ իսկ տակաւին

վիշտս և բնաւորականք կրին 'ի նոսա թերու-
թիւնք ։ Այլ ուր նոքա անձկան և չհասանեն կե-
նացն՝ զոր կորուսին, և ցաւէ նոցա զի են ստուերք
ապիկարք և սինք, թագաւորքս արդարակորովք
պայծառացեալք լուսով աստուածայնով որով
պարարին, ոչ ևս կարօտին իւիք 'ի լրումն բարե-
բաստութեան իւրեանց ։ Նմանորկէն ախտակցա-
բար 'ի հողս մահացուաց, և կարևորագոյնք 'ի
գործոց՝ յորս յուզեալ կոծին փառասէրք՝ թուին
յաչս նոցա մանկունոյ խաղք ։ սիրտ նոցա յագ է
ճշմարտութեամբ և առաքինութեամբ, զորս
անդաստին յականէ աղբերն ըմպեն ։ Չիք նոցա
կրել այլ ևս ինչ, ոչ յայլոց և ոչ յանձանց, ոչ
խղճք են նոցա, ոչ պէտք և ոչ երկիւղ ։ ամենայն
ինչ սպառեալ է նոցա բաց յանսպառ ուրախու-
թենէ ։

Հայեաց, որդեակ իմ, 'ի թագաւորդ նախնի
յԻնաքոս՝ ՚ որ զպետութիւն արգիացւոց հիմնար-
կեաց ։ Նրառափայլէ 'ի դէմս ծերութիւն զուարթ
և վեհափառ, ընդ գարշապարօք դորա փթթին
ծաղկունք, զնացք դորա թեթևաթռիչ հանգոյն
թռչնոյ, և քնար 'ի ձեռին փղոսկրեայ՝ յաւէրժ
հնչեցմամբ նուագէ զհրաշակերտս դից ։ Բուրէ
'ի սրտէ դորա և 'ի շրթանց անուշահոտութիւն,
և ընդ ներդաշնակութիւն քնարին դորա և եր-
գաձայնութեան հրաշանան ազգք մահկանա-
ցուաց և անմահից ։ Նոյնպէս փառաւորեալ որ
սիրեաց զժողովուրդ իւր, և 'ի դաստակերտս

իւր 'ի պարիսպս պատսպարեալ զնոսա՝ ըստ նոցա օրէնս ։

Նա Սեկրոփս՝ եգիպտացի 'ի մսրաստանիդ, այն որ յԱթէնս թագաւորեաց 'ի քաղաքն նուիրական դիցուհւոյն իմաստութեան, յորմէ զանունն իսկ կալաւ ։ Նա զօրէնս պիտանիս եբեր յԵգիպտոսէ, ուստի աղբերացան յԵլլադա դպրութիւնք և զգօն բարք, ընտելացոյց զվայրագութիւն ատտիկատան աւանացն, և 'ի մի քաղաքաժողով ընկերութիւն կացոյց զնոսա ։ Եղև նա արդարակորով մարդասէր և գթած. ենթող զժողովուրդն 'ի լիութեան, և զտունն իւր 'ի բաւականութեան. ոչ իսկ կամեցեալ զի որդիք իւր յաջորդեսցեն յետ իւր յիշխանութեան, զի արժանաւորս քան զնոսա համարէր թէ զտանէին այլք ։

Պարտ է ինձ և զԵրիքթոնի՝ ցուցանել քեզ յանձուկ հովտիս, զայն որ արծաթի հնարաւորեաց դրամս առ 'ի դիւրել զտուրևառիկ շահաւէտութիւն ընդ կղզիս Ելլադայ. բայց չարեաց հետևանաց հնարիցն նախատես լեալ, խրատ ետ ազգաց բնաւորականօք ճոխանալ գոյիւք՝ որ ճշմարիտ մեծութիւնքն են ։ Գործեցէք, ասէր, զերկիր՝ ժողովել հունձս յորդառատ և զեղումն գինւոյ և ձիթոյ, և ամենայն բերոց. յաճախեսջիք զանդեայս՝ սնանել կաթամբ նոցա և զգենուլ զասր. այսու օրինակաւ հեռի լիցի 'ի ձէնջ վտանգ կարօտութեան ։ Ըստ առաւելուլ ձեզ որդւոց՝

յաւելցեն մեծութիւնք ձեր, եթէ միայն վաստակասէր զնոսա ուսուցանիցէք. զի անսպառ է զօրութիւն երկրի, և ըստ թուոյ և ըստ ժրութեան աշխատասիրաց գործի բեղնաւորագոյն. ստասանձեռն է 'ի հատուցմանս երկրոց, ուրշ. և ժրատ թերահոգ մշակին։ Խնդրեցէք ապա նախ զտոյգ մեծութիւնս, որ ընտան զանհրաժեշտ պէտս մարդկան. իսկ զդրամս արծաթիս յարգեցէք որչափ պիտոյն է վասն զգուշութեան 'ի հինից անխորշելի պատերազմաց, և 'ի տուրևառս կարևորաց՝ որ պակասեն յերկրի ձերում. իսկ այլոց առ հասարակ տուրևառք իրաց, որ զզեղխութիւն ևեթ ածեն և զմնասխառն պերճանս և զմեղկութիւն, իցէ թէ անկանիցին 'ի սպառ։

Յաւելցուք դարձեալ նոյն ինքն Տրիքթոն ասէր յեղյեղել. Տրկիւղ մեծ է ինձ, որդեակք իմ, զի աղխատաբեր լիցին ձեզ հնարք դրամոց։ Սակա կամեմ զի գրգռեսցէ սա զագահութիւն զփառամոլութիւն և զպերճանս, ածեսցէ արուեստս բազումս վնասակարս՝ մեղկիչս և ապականիչս բարուց, տաղտկացուսցէ զերջանիկն պարզութիւն՝ որ պատրաստէ զամենայն հանգիստ և աներկևանութիւն կենաց, և յարհամարհանս դիցէ զերկրագործութիւն՝ որ է հիմն կենցաղոյս և աղբիւր ամենայն ճշմարիտ բարեաց. այլ վկայեն ինձ դիք, զի բարեսէր մտօք աւանդեմ ձեզ զհնարս զայս օգտակար 'ի բնէ։ Այլ 'ի տեսանել ապա Տրիքթոնի ապականեալ յարծաթոյ զազգս՝

որպէս գուշակեալն էր, խոյս ետ առ վշտին 'ի լեառն ուրեք ամայի, և եկեաց անդ աղքատութեամբ հեռի 'ի մարդկանէ մինչև յաւուրս ծերութեան, հրաժարեալ յամենայն խռոց տեսչութենէ։

Յետ սակաւ ժամանակի եկաց յԱտտիկա անուանեալն Տրիպտոլեմոս[10], որ 'ի դիցուհւոյն Դեմետրեայ ուսաւ զերկրագործութիւն՝ ամի ամի ոսկեփունջ հնձովք ծածկել զերկիր։ Իբր ոչ եթէ անծանօթ էին այնր ժամանակի ալերոյն արմտիք և վար և հունձ ցորենոյ, այլ թերի էր առ նոսա արուեստ մշակութեան։ Վասն որոյ Տրիպտոլեմոս 'ի դիցուհւոյն առաքեալ, առօք 'ի ձեռին՝ եկն մատուցանել զպարգևս նորա բնաւից ազգաց, որք ժրանային յաղթել բնաւորականին յուլութեան, և հանապազորդել 'ի վաստակս։ Նա ուսոյց նա Յունաց արագարագ ձգել զկորդ, և բեղնաւորել զարգանդ երկրի ակօսաբեկ. արագարագ արտհունձք ժիրք և անխոնջք 'ի սուր սայր մանգաղացն արկանէին զորայն հասկահասուն՝ որ զդաշտս ծածկէր։ Ազգք վայրագք և ամեհիք, աստանդականք յանտառս Էպիրոսի և Էտողիոյ[11] կաղնակերք, ընտելացեալ նուաճեցան ընդ օրինօք՝ յուսանելն զվարուցան և զկերակրել հացիւ։

Տրիպտոլեմոս զուարձալի արար Յունաց քըրտամբք երեսաց իւրեանց մեծանալ, և ժողովել յանդոց իւրեանց զամենայն որ ինչ 'ի դիւրութիւն կենաց և 'ի բարեկենդանութիւն են պի-

տանացու։ Նորաճոյճս այս և անճխատակար լիութիւն, կցորդ երկրագործութեան, յուշ արար նոցա զհանճարեղ խրատս Երիքթոնի․ և անարգեցին այնուհետև զարծաթ և զամենայն փերևերտեալ ճոխութիւնս, որ առ կարծիս ևեթ մարդկան համարին մեծութիւնք, և որ հրապուրեն զնոսա 'ի խնդիր ճխատակար բերկրանաց, և 'ի բաց դարձուցանեն 'ի վաստակոց՝ որովք է նոցա գտանել զամենայն իսկապէս բարի ամբիծ բարուք և լիուլի ազատութեամբ։ Ի միտ առին այնուհետև զի անդաստան բերրի և բարգաւաճ՝ է ստոյգ գանձ գերդաստանի իմաստնոյ՝ որ գիտիցէ սակաւապիտութեամբ ըստ հարցն իւրոց կեալ։ Երանի թէ կացեալ մնացեալ էր Յունաց 'ի կարգս յայտնին՝ որ բաւական էին առնել զնոսա հզօրս, ազատս բարեբաստիկս, և արժանիս գոլոյ այնպիսիք ճշմարիտ առաքինութեամբ․ այլ աւա՜ղ, զի սկըսանէին նոքա ցանկալ սնոտի մեծութեանց, և ապախտ առնել տակաւ զստոյգ մեծութիւնս, խորթացեալք 'ի սքանչելահրաշ պարզութենէն։

Գայցէ ժամանակ զի թագաւորեսցես դու, որդեակ իմ․ յուշ լիցի քեզ յայնժամ յորդորել անդրէն զմարդիկ յերկրագործութիւն, մեծարել զարուեստն զայն, քաջալերել զպարապեալս յայն, և չներել ումեք կեալ անգործ կամ պատաղել յարուեստս՝ որք տածեն զգեղխութիւն և զմեղկութիւն։ Երկոքին սոքա, գերահանճարք յերկրի կացեալ, սիրելիք են աստանօր դից․ ահա

փառք նորա այնչափ գեր 'ի վերոյ անցանեն քան զԱքիլլեայն, և քան զհանուրց դիւցազանց՝ որք 'ի պատերազմունս եւեթ առաքինացան, որչափ գարուն գեղածիծաղ գերազանցէ քան զձմեռն սառնապատ, և որչափ քան զնշոյլս լուսնի գերապայծառք արեգակնայինքն փայլեն ճառագայթք:

Եւ 'ի բարբառել Արկեսեայ զայսոսիկ, յառեալ դիտէր Տելեմաք ընդ կողմն՝ ուր սպրդենեաց էր անտառակ, և վտակ ափնածիր 'ի բիւր ազգի ազգի անուշահոտ ծաղկանց ընդ հոյլս վարդից շուշանաց և մանուշակաց, որոց երփն երփն գեղազանութիւն զերանգոց ծիածանին բերէր զտիպ՝ յորժամ իջանէ Իրիկ յերկնից 'ի յերկիր պատգամս 'ի դից ածել մահացուաց: Ընդ Տելեմաք 'ի բազմազուարճ ծառաստանին տեսանէր զՄենտոր մեծավայելուչ յոյժ քան 'ի զահոյան եգիպտականս: Ճառագայթք ճաճանչաղեղք յաչաց նորա հատանէին, շլացուցիչք աչաց պատանւոյն. և թուէր նա աստուածընկելեան զմայլեալ նեկտարիւ, այնքան գեր 'ի վերոյ քան զմարդկեղէն միտս 'ի վարձ առաքինութեանցն էր աստուածարեալ: Եւ իբրև լռեաց ծերունին 'ի խօսելոյ, ասէ ցնա պատանին. Թուի ինձ, հայրիկ, զի դա ինքն իցէ Մենտոր իմաստունն այն արքայ եգիպտացւոց՝ զոր տեսեալ իսկ է իմ յառաջ քան զժամանակ ինչ:

Արկեսիոս ասէ. Այո՛՝ դա ինքն է, տեսանես դու 'ի դիմս բանին առատապարգևք են դիք 'ի

հաստուցումն արքայից լուաց ։ Բայց գիտասջիր զի այդ ամենայն փառք դորա ոչ ինչ են առ որովք պատրաստեալն էին դմա, եթէ չէր դորա մեծամեծ յաջողութեանցն զառանցեալ 'ի չափոյից և յարդարութենէ ։ Իղձք նկատն առնելոյ զգոռոզութիւն և զըմբոստութիւն տիւրացւոց զրգռեցին զնա առնուլ զքաղաք նոցա, և աշխարհակալութիւնն այն արկ 'ի նա խղձս այլոց ևս բազմաց. զառածաւ նա 'ի սնափառութիւն աշխարհակալաց, և նուաճեաց, կամ տպաւորագոյնս ասել, աւերեաց զԱսիա առ հասարակ ։ Իսկ 'ի դառնալ իւրում յԵգիպտոս՝ եգիտ զաթոռ իւր զբաւեալ յեղբօրէն, և յանիրաւութենէ նորա վէր 'ի վայր հարեալ զխնամատարագոյն օրէնս աշխարհին ։ Այսպէս ահա աշխարհակալութիւնք նորա քաջայաղթք աղմկեցին զթագաւորութիւն նորա ։ Այլ որ առաւել ևս դատապարտ առնէ զնա՝ այն իսկ է, զի արքեցեալ 'ի փառաց՝ ետ լծել 'ի կառս իւր զգոռոզագոյնս 'ի թագաւորաց պարտելոց, ընդ որ ապաշաւեացն իսկ յետոյ, և ամաչեաց ընդ անգթութիւն իւր ։ Այսքիկ ահա եղեն արգասիք յաղթութեանց նորա. այսպէս ահա աշխարհակալք վնասակարք աշխարհին և անձանց իսկ գտանին 'ի կամելն յափշտակել զօտարսն. այսպէս ահա կործան անկանի թագաւոր արդար և բարերար, և նուաղեն փառք նորա պատրաստեալք 'ի դիցն ։

Ով տեսանես, որդեակ իմ, և զմիւսդ զայդ՝ ո-

րոյ ճառագայթարձակ փայլէն վէրք ։ Պիսիկլիդէս է դա, արքայ Կարիոյ, որ եդ զանձն 'ի վերայ ժողովրդեան իւրոյ 'ի մարտի, գլխտացեալ 'ի պատգամաց 'ի գոռալ կարիացւոց ընդ լիկիացիս, զի ազգի' որոյ անկցի թագաւոր' նորա լիցի յաղթութիւն ։

Նհա և միւսդ այդ ՚՚ օրէնսդիր իմաստուն, օրէնս ազգայնոցն տուեալ' որ կարող էին առնել զնոսա քաջս և երջանիկս, երդմնի արար զնոսա պահել ունել զօրէնսն մինչև 'ի դարձ իւր. և մեկնեալ 'ի հայրենեացն ինքնահալած, կատարեաց զկեանս իւր աղքատութեամբ յօտար երկիր, առ 'ի ստիպելոյ զնոսա ըստ պայմանի երդման իւրեանց 'ի յաւէրժ պահպանութիւն օրինացն կարևորաց ։

Իսկ դա, զոր տեսանեսդ, է Եւնեսիմ արքայ պիղեցւոց, մի 'ի նախնեաց գերահանճարն Նեստորի ։ Ի սրածութեան' որ ապականէր զերկիր, և ընդ ստուերօք նորովք զեզերս Աքերոնի, խնդրեաց 'ի դից անցուցանել զցասումն պատուհասի յանմեղաց բիւրաւորաց' զկեանս իւր 'ի վերայ նոցա փոխանակեալ ։ Լսելի եղեն դից մաղթանք նորա, և տուաւ նմա աստ ճշմարիտ թագաւորութիւն' որոյ տիպք են ստուերակերպք երկրաւորքս առ հասարակ ։

Ներունիդ ծաղկապսակ, զոր տեսանես, գերահամբաւեալն է Մէլ արքայն Եգիպտացւոց, որ հարսնացոյց իւր զՄնքինոյէ զդուստր Մինոսի

դիցն, որոյ Թագուցեալ զակունս ջրոցն անհետազօտելի, ընդ մեծութեամբք զանդաստանս՝ զորս ոռոգեալ առոգանէ։ Երկու եղեն նորա որդիք. Դանաւոս՝ [13] զորոյ գիտես դու զվէպս, և Եգիպտոս՝ յորմէ գեղապանծն Թագաւորութիւն զանուանն կալաւ։ Փարթամագոյն զանձն համարէր Բէլ լիութեամբն՝ զոր պատրաստէր ժողովրդեան իւրում, և տիրասիրութեամբն նոցա, քան թէ բազմագանձ պահանջելով 'ի նոցանէ հարկս։

Որքդ այդոքիկ՝ զորս համարիս դու մեռեալս՝ կենդանի են, որդեակ իմ. նա աւանիկ կեանքդ չարակեաց՝ զոր կեայք դուք յերկրի՝ այդ իսկ է մահ. այլ ընդ այլոյ կոչին 'ի ձէնջ կեանք և մահ։ Հանեսցին դիք առնել զքեզ առաքինի, զի երանաւէտ այսմ անվախճան և անվրդով կենաց լիցիս արժանի։ Հապա, ժամ է քեզ դառնալոյ 'ի խնդիր հօր քո, այլ աւա՜ղ, քանի՜ արեանց մնայ քեզ տեսանել ձապաղիս՝ մինչ չև գտեալ քո զնա. և քանի՜ք յերեկորնականսն մնան քեզ փառք 'ի դաշտս։ Յուշ լիցին քեզ խրատք իմաստնոյն Մենտորի. եթէ պահեսցես դու զնոսին, անուն քո ընդ ամենայն ազգս դարուց 'ի դարս հռչակեսցի։

Եւ զայս ասացեալ, ած զպատանին 'ի դուռնն փղոսկրեայ՝ ընդ որ 'ի խաւարային սահմանացն Պլուտոնի են ելք։ Եւ մեկնէր 'ի նմանէ Տելեմաք գերարտօսրալից, չկարացեալ և ոչ զիրկս

արկանել նմա. և 'ի մշտագիշեր խորոցն եղեալ՝ դաւաճանքն հալածեալ 'ի բանակ անտի դաշնաւորաց, գտեալ զճանապարհայն զկրետացւոցն զերկրաւն՝ որոց մինչև մերձ 'ի քարայրն զհետ նորա եկեալ ոչ ևս ակն ունէին տեսանել զնա։



գետ կոչումն կալաւ, և բոլոր Պելոպոնեսոս Ինաքիա անուանեցաւ։

8 Կեկրոփս եգիպտացի որ կառոյց, կամ ըստ այլոց, ամրացոյց զԱթէնս՝ յիւր անուն կոչեցեալ զնա Կեկրոպիա։ Սա զօրինաւոր ամուսնութիւն եմոյծ ՚ի Յոյնս, որք յառաջն անխտրութեամբ ունէին զկանայս։

9 Երիքթոն որդի Հեփեստեայ, չորրորդ արքայ Աթենացւոց, որում ընծայի գիւտ կառաց։

10 Տրիպտողեմոս, որդի Կելէոսի կամ Եղեւսինոսի արքային Եղեւսինեանց, յորմէ հիւրընկալեալ Դեմետրէ գիտացուցէ ՚ի հետազօտելն զդուստր իւր զՊերսեփոնէ յափշտակեալն ՚ի Պղուտոնէ, փոխարէն շնորհացն ուսոյց որդւոյ նորա Տրիպտողեմեայ զարուեստ մշակութեան. յորմէ առեալ ուսեալ զայն Աթենացիք, տարածեցին ընդ Եղլադա ողջոյն։

11 Եւմոլպոս քահանայ ՚ի յուսումնատան։

12 Լիւկուրգոս օրէնսդիր սպարտացւոց երդմամբ արար զնոսա ՚ի պահպանութիւն օրինացն՝ զորս ետ նոցա՝ մինչև ցդարձ իւր, և ապա խոյս ետ անդարձ։

13 Դանաոս որդի Բելայ արքայի, եղբայր Եգիպտոսի, արքայ Արգիացւոց, և հայր Դանայեանց։ Ցոյնք, որ յառաջն կոչէին Պելասգեանք, ՚ի սմանէ կոչումն կալան Դանայեցիք։



# ԱՐԿԱԾՔ ՏԵԼԵՄԱՔԱՅ



## ԳԻՐՔ ՔՍԱՆԵՐՈՐԴ

# ՆԱԽԱԴՐՈՒԹԻՒՆ

Պատմէ Տէլեմաք զզօրագլուխս 'ի խորհրդեան՝ մի առնուլ զՎենուսիոն քաղաք, զոր երկաքանչիւրոց կողմանց Թողեալ էր 'ի Լուկանացիս յաւանդ։ Երևեցուցանէ զզգօնութիւն իւր 'ի գալուստ երկուց ոմանց մատնչաց, յորոց մին կոչեցեալ Ակաս հնարէր դեղակուր առնել զնա, և միւսն Դիոսկոր խոստանայր գաշնաւորաց զգլուխ Ադրաստայ։ Մէջ Ճակատամարտ, և Տէլեմաք մահուամբ ամենայն ուրեք ածեալ՝ հետապնդէ զԱդրաստոս. և Ադրաստոս նոյն հետապնդոյ՝ հանդիպի Պիսիստրատայ որդւոյ Նեստորի, և սպանանէ զնա։ Ի վերայ հասանէ Փիլոկտետէս, և 'ի պատրաստելն 'ի հարկանել զԱդրաստոս, ինքն խոցեալ՝ ստիպի խոյս տալ 'ի Ճակատէ մարտին։ Դիմէ Տէլեմաք 'ի ձայն աղաղակի գաշնաւորաց, ուր Ադրաստոս գործէր նախճիրս ահագինս. մենամարտի ընդ նմին, և յաղթեալ նմա՝ շնորհէ զկեանսն գաշնամբք։ Բայց 'ի դրժել Ադրաստայ՝ կամելով 'ի յանկելն դաւել զՏէլեմաք, սա անդրէն զնովաւ անկեալ՝ զրկէ զոսոխն 'ի կենաց։

# ԱՐԿԱԾՔ ՏԵԼԵՄԱՔԱՅ



## ԳԻՐՔ ՔՍԱՆԵՐՈՐԴ

Մտադրեցան զօրագլուխքն յառաւօտն, խորհել թէ արժա՞ն իցէ առնուլ զՎենուսիոն քաղաք ամուր: Զսա Ադրաստոս յափշտակեալ էր 'ի ձեռաց դրացեաց իւրոց Պեւկետաց ապուլեցւոց, և նոքա մտեալ 'ի նիզակակցութիւն ընդդէմ նորա առ 'ի խնդրել զվրէժ յափշտակութեանն: Իսկ Ադրաստոս առ 'ի հանդարտել զնոսա՝ տուեալ էր զքաղաքն 'ի ձեռս Լուկանացւոց յաւանդ. բայց կաշառակուրծ արարեալ զպահապանս և զպահակապետ նոցա, առաւել քան զԼուկանացիս իշխէր ինքն 'ի քաղաքի անդ, պատրեալ զԱպուլեցիս՝ որ հաւանեալ էին տալ զքաղաքն 'ի պահ Լուկանացւոց: Դեմոփանէս վենուսացի բանաւ գնաց եղև գաղտ առ դաշնաւորս, մատնել նոցա գիշերային զմի 'ի դրանց քաղաքին: Օգուտ մեծ էր աստի նոցա. զի Ադրաստոս զամենայն սպառազինութիւնս և պաշար զօրաց ամբարեալ էր

յամրի ուրեք մերձ 'ի քաղաք անդր, 'ի մատնել քաղաքն 'ի ձեռս թշնամեաց՝ ոչ ես մարթէր նմա պահ առնել ամրին։ Փիլոկտետեայ և Նեստորի հաճոյ թուէր մի կորուսանել զպատեհութիւնն. և այլք 'ի զօրագլխաց յորդորեալք 'ի զօրութենէ բանից նոցա, և հրապուրեալք յօգտակարութենէ դիւրին գործոյն, ձեռն տային համաձայնութեան. բայց Տելեմաք զամենայն ջիգն 'ի գործ արկեալ առ 'ի շրջելոյ զմիտս նոցա, ասէ.

Մեք որ չեք ուրեք արժանի դաւանաց և խաբէութեան քան զԱդրաստ, որ բազում բազում անգամ նենգութեամբ դաւանս այլոց։ Պիտեմ իսկ զի յառնուլ ձեր զՎենուսիոն՝ ոչ զօտարին ինչ գրաւէք, զի Ապուլեցւոց է քաղաքն նիզակակցաց ձերոց։ Ապաքէն և իրաւունք իսկ առ աչս առաւելագոյնք են ձեզ նուաճելոյ զայն քան Ադրաստայ, որ յաւանդի եղեալ զքաղաքն՝ կաշառաբեկ զպահակապանսն պահակապետաւն հանդերձ արար, առ 'ի մատնել անդր յորժամ հաճոյ թուեսցի նմա։ Պիտեմ իսկ դարձեալ ոչ ինչ նուազ քան զձեզ, զի 'ի տիրել ձեր 'ի Վենուսիոն՝ լիցի ձեզ վաղ ընդ փոյթ տիրել ամրոցին, ուր են Ադրաստայ ամենայն սպառազինութիւնք մարտի, և զրաւ առնել յաւուրս երկուս ահագին պատերազմիդ։ Այլ ո՞չ լաւ ևս իցէ կորնչել քան յաղթել դաւով, արժա՞ն իցէ նենգ առ նենգ գործել. ո՞չ ամենեքեան ասիցեն՝ թէ արքայք բազումք միաբանեալք առ 'ի պատուհասել զնեն-

գութիւնս ամբարշտոյն Միհրդատայ, ինքեանք իսկ գտան նենգաւորք: Եթէ օրէն իցէ մեզ լսել զ բանակցին Միհրդատայ դաւ ՚ի գործ արկանել, ապա ոչ ևս իցէ նոր մեղադրանաց, և անխրատութիւնք ՚ի պատուհասել զնա: Ասէ, երեկորնեայք ողջոյն, համեղերձ այսքան բազմութեանց գաղթականաց Յունաց և դիւցազանց դարձելոց ՚ի տոհմական մարտէն, չունիցին ընդդէմ հաւատարմութեան և ստերմութեանն Միհրդատայ այլ զէնս բաց ՚ի դաւաճանաց և յերդմնազանցութենէ:

Երդուայք դուք ՚ի սրբութիւնս թողուլ զՎենուսիոն յաւանդի ՚ի ձեռն Լուկանացւոց: Այլ առ այս զկաշառակերութիւն պարհակապանացն յՄիհրդատայ ինձ ՚ի դէմս ածիցէք, և յիրաւի. զակայն պարհակապանքդ ցարդ իսկ Լուկանացւոց են զօրք, և ոչ ապստամբեալք ՚ի նոցանէ, և չտան ձեռն, զէթ վէր ՚ի վերոյ, և ոչ միում յերկոցունց կողմանց: Ոչ Միհրդատ և ոչ յիւրոցն որք երբէք եմուտ ՚ի Վենուսիոն. անեղծ դեռ ևս կան դաշինքն, և յիշեն դիք զուխտ ձեր. արդ չիցէ՞ իսկ պարտ կալ ՚ի խոստմանն, եթէ չպատկառիցեն բաղբաղայք դաւաճանաց. և ո՞չ հաւատարիմ գոլ և երկիւղած յերդմունս, բայց միայն ուր չիցէ ինչ շահ յերդմնազանցութենէ: Եթէ ոչ ևս սէր առաքինութեան և երկիւղ ՚ի դից յորդորեն զձեզ, գէթ համբաւ ձեր և շահ յորդորեսցեն: Ո՛ բազմամարտանօքդ զայդ տուեալ այլոց օրինակ՝ երդմնահարութեանն և դաւաճանօք խոստմանն

վճարելոյ զպատերազմ, քանզի պատերազմունս անիրաւացիս յաղթութեամբք այդուիկ ոչ դրդիցէք։ Ո՛ այնուհետեւ յազգաց դրացեաց ոչ զամենայն կասկածանս բերցէ զձէնջ, եւ ոչ զարհուրեսցի 'ի ձէնջ. ո՜ այնուհետեւ յանհրաժեշտ իսկ կարիս վստահասցի 'ի ձեզ։ Ո՞ր առ հաստատչեայ կարիցէք այնուհետեւ տալ նոցա զկատարելութեան ձերոյ, զո՞ր հաստատիս առ 'ի վստահ առնել զնոսա։ Ուխտս հրապարակաւ կոխիցէք, այլ ատուիկ առ ոտն կոխէք զայն. 'ի դիմս երդմնացուք, այլ ո՞ չգիտիցէ զի առ ոչ ինչ համարիք զդիս ուր շահ ինչ յերդմնազանցութենէ առաջի կայցէ։ Ի խաղաղութեան այնուհետեւ ոչ ինչ ընդհատ լիցի ձեզ վտանգ քան 'ի պատերազմի. որ ինչ և առնիցէք՝ համարեսցի Թշնամութիւն, յայտնի կամ 'ի ծածուկ. ընկեցիք Թշնամիք անհաշտք որոց դէպք 'ի չարիս ելցեն ընկել ձեզ սահմանակից. ամենայն ինչ, որում չիցէ մարթ յաղթել առանց համբաւոյ արդարութեան և հաւատարմութեան, լիցի ձեզ անհնարին, ոչ ևս այնուհետեւ ելի ազգս գտանիցէք հաւատարիմ զխոստմունս ձեր առնելոյ։

Ի՛ է միւս ևս պատճառ ազդողական, եթէ լիցեն 'ի ձեզ իմաստք ուղղութեան և նախահոգ խնամք ձերոյին ազգի. զի խաբէութիւնդ այդ քայքայեալ կործանէ զնիզակակցութիւն ձեր, և երդմնազանցութեանքդ այդուիկ մատուցանէք Ադրաստոսայ յաղթանակ։

Եւ 'ի խառնել ատենին 'ի բանից առաջի թէ ձեր կործանումն 'ի վերայ ածել նիզակակցութեանն կարող էր որ անշուշտ մատուցանէրն նոցա յաղթութիւն, յաւել Տելեմաք և ասէ.

Ա՞ջէ՝ կարիցէ՞ք այնուհետև վստահել յիրերարս, 'ի խզել միանգամ զմիայն յօդակապ ընկերութեան և վստահութեան զհաւատարմութիւն: Ի համարել ձեր միանգամ ընդ օրէնս՝ զի մարթ իցէ լուծանել զկարգս ուղղութեան և հաւատարմութեան առ 'ի շահ օգտի, ո՞ 'ի ձէնջ այնուհետև լիցի անկասկած զնիզակակցէն՝ որում օգուտ ինչ մեծ առաջի կայցէ 'ի դրժել խոստմանն և 'ի խաբել զնա. յո՞ երբէք լիցի ձեզ վստահել. ո՞ 'ի ձէնջ զդաւանայ սահմանակցին ոչ կալցի զառաջս դաւանօք: Որպիսի՞ ինչ լիցի դաշնակցութիւն բազմութեան ազգաց, որք միաբանեսցին օրինաւոր համարել զհաւատադրժութիւն և զդաւել զիրերարս: Որպիսի՛ ինչ լիցին 'ի ձեզ կասկածանք զիրերաց. հերձուածք 'ի միմեանց, և ձիգն կործանելոյ զմիմեանս: Ահա և լիցի Մենտորայ հարկ յարձակելոյ 'ի ձեզ, դուք ինքնին զմիմեանս կեղեքիցէք, և արդարացուցանիցէք զհաւատադրժութիւն նորա:

Արքայք քաջազունք և քաջախորհուրդք, որ իշխէքդ բազմահմուտ տեսչութեամբ անհամար ժողովրդոց, մի՛ անարժան թուեսցի ձեզ լսել խորհրդոց պատանւոյս: Եթէ երբէք գտանիցիք յետ ահագին վտանգ՝ յոր մարթ է պատերազմի

արկանել զնմողիկ, մինչ ձեզ կանգնել ջանիւք ձերովք և ճգամբք առաքինութեան. զի արիութիւն ճշմարիտ երբէք ոչ վհատի. բայց ՚ի խրամատել միանգամ զհամբաւ լաւութեան ձերոյ և զհաւատարմութէ, անկարկատելի է խրամատն. ոչ ևս կարիցէք ստանալ զվստահութիւն կարևոր ՚ի յաջողութիւն կարևորաց ամենայնի, և ոչ յորդորել երբէք զայլս յառաքինութիւն՝ յետ արհամարհ առնելոյ զայն յանձս նոցա: Այլ զի՞ երկնչիք. չիցէ՞ ձեզ քաջութիւն յաղթելոյ առանց խաբէութեան. առաքինութիւն ձեր, հանդերձ զօրութեամբ այսքանեաց ազգաց չիցէ՞ բաւական առ ՚ի յաղթանակ: Հապա, դիմեսցուք ՚ի պատերազմ, մեռցուք եթէ այսպէս հարկ իցէ, և մի՛ զվատութիւնդ զայդ յանձն առցուք առ ՚ի յաղթութիւն: Ադրաստ ամպարիշտն այն ՚ի ձեռս մեր է, եթէ միայն զարշիցիմք ՚ի նմանութենէ վատութեան նորա և հաւատադրուժ խաբէութեան:

Այլ ՚ի բարբառելն զայսոսիկ զգաց Տելեմաք, զի ողոք աղերսաբանութիւն բղխեալ ՚ի շրթանց իւրոց ազդէր ՚ի սիրտս ամենեցուն. անշշունջ լռութիւն էր յատենին, ոչ ոք ՚ի խօսողն հայէր, ոչ ոք ՚ի շնորհս շրթանց նորա, այլ ՚ի զօրութիւն ճշմարտութեանն ազդեալ ՚ի հաստատաբանելոյ նորա. և հիացումն ՚ի դէմս ամենեցուն նկարեալ կայր: Շնչիւն իմն տարա աղօտ սկսաւ ընթանալ յատենին. հայէին ամենեքին ընդ միմեանս,

և ոչ ոք իշխէր նախկին բարբառել. մնային զօրագլխացն խօսելոյ, բռնադատելով զանձինս 'ի լռութիւն: Եւ ապա ուր ուրեմն Նեստոր բարբառեցաւ և ասէ.

Արժանաւոր զաւակդ Ոդիսեայ, դիք ետուն քեզ բարբառել. Աթենաս, որ սնեալն 'ի հայր քո ազդէր, նա ազդեաց 'ի միտս քո զհանճարեղդ և զարիական խորհուրդ՝ զոր թելադրեաց: Ոչ 'ի մանկականդ հայիմ 'ի հասակ, այլ զիմաստութիւն 'ի բանս քո նկատեմ: Այո, առանց առաքինութեան՝ որում դու պաշտպան կացեր, մեծամեծք իսկ շահք կորուսաք են հասարակք. առանց սորա զվրէժխնդրութիւն թշնամեաց, զկասկածանս նիզակակցաց, զատելութիւն լաւ արերոյ, և զարդար զցասումն դից յանձինս ձգեմք: Հապա թողցուք զՎենուսիոն 'ի ձեռս Լուկանացւոց, և քաջութեամբ յաղթեսցուք Ադրաստայ:

Պնդեցաւ ատեանն ամենայն զիմաստուն բանս ծերոյն. այլ 'ի գովել անդ դաշնայր հայէր իւրաքանչիւր ոք հիացմամբ 'ի համբակն Ոդիսեան, և թուէր նոցա տեսանել 'ի նմա արտափայլեալ զիմաստութիւն դիցուհւոյն՝ որ ազդէրն 'ի պատանեկին:

Յարեաւ ապա միւս ևս խնդիր 'ի խորհրդեան անդ թագաւորացն, յորում ոչ ինչ նուազ եղեն պատանւոյն փառք: Ադրաստ անողորմն յամենայնի և նենգաւոր, յղեալ էր 'ի բանակ անդր մատնիչ զոմն Ակաս անուն, դեղակուր առնել

զգլխաւորս 'ի զօրավարաց, և մանաւանդ զամենայն զուն գործել 'ի սպանութիւն Տելեմաքայ՝ որ անդստին ահ արկանէր 'ի Դաւնիս: Տելեմաք, որոյ քաջութիւն և անկեղծութիւն ոչ ինչ դիւրամէտ զնա առնէին 'ի կասկածանս, ընկալաւ կամակար սիրով զվատշուէրն՝ որոյ տեսեալ իսկ էր զՕդիսեւս 'ի Սիկիլիա, և պատմէր զարկածս դիւցազինն: Կերակրէր զնա Տելեմաք և սփոփէր զվիշտս նորա, քանզի բաղդք ունէր նա զԱդրաստայ իբր թէ խաբեալ 'ի նմանէ և հարստահարեալ. այլ կերակրէր նա և ածէր 'ի ծոցի իւրում զիժ չարաթոյն պատրաստ առ 'ի խայթուած մահառիթ:

Մինս ևս մատնիչ անկաւ 'ի ձեռս Ակրիոն անուն, որ պատգամաւոր յԱկաայ երթայր առ Ադրաստ՝ ածել զրոյց զբանակէն Թշնամեաց, և զի 'ի վաղիւ անդր գլխաւորք 'ի Թագաւորաց և Տելեմաք ընդ նոսա դեղակուր լինելոց էին հրաւիրեալք 'ի նմանէ 'ի կոչունս: Ակրիոն յանկանելն 'ի ձեռս՝ խոստովան եղև զմատնութիւնն. և Ակաս, որ մտերիմն էր ընդ նմա, գտաւ կասկածաւոր 'ի համախոհութիւն: Այլ նա քանզի ճարտար էր 'ի կեղծաւորել և անվեհեր, այնու խորագիտութեամբ տայր վասն անձին պատասխանի, զի ոչ ոք կարէր ըմբռնել զնա բանիւք և 'ի վեր հանել զդաւակցութիւնն:

Նաւղումք 'ի Թագաւորաց անտի պարտ համարէին փոխանակել զայրն կասկածաւոր 'ի վերայ

ապահովութեան հասարակաց, և ասէին. Պարտ է մատնել զդա 'ի մահ. կեանք միոյ ուրուք ոչ ինչ են առ 'ի բառնալ զվտանգ կենաց այսքանեացս աղքայից. զի՞նչ է թէ անպարտ ոք կորիցէ առ 'ի պահել զկեանս այնոցիկ, որ զաստուածոց առ մարդիկ բերեն զդէմս: Բայց Տելեմաք հակառակ եկաց, և ասէ. Անգութ դառնակնիք, խուժադուժ քաղաքավարութիւն. և որպէս ոչ խնայիցէք յարիւն մարդկեղէն՝ հովիւք կացեալ մարդկան, որոց ոչ առ այլ ինչ իշխէք՝ բայց առ 'ի պահել զկեանս նոցա, որպէս հովիւ 'ի պահ խաշանցն: Գա՞յլք ուրեմն իցէք անագորոյնք, և ոչ հովիւք. կամ թէ հովիւք առ 'ի խուզել ևեթ և առ 'ի զենուլ զխաշինս փոխանակ արածելոյ զնոսա: Ապա ուրեմն ըստ ձեզ լինել ուրուք ամբաստանեալ թուի ձեզ մեղապարտ. ապա ուրեմն կասկած ևեթ կացուցանիցէ զոք մահապարտ. այսպէս ուրեմն անմեղութիւն ընկճեսցի 'ի նախանաց և 'ի զրպարտութենէ, և ըստ յաւելուլ բռնաւորական կասկածանաց 'ի սիրտս ձեր՝ յաճախեսցին զնախճիրս արեանց:

Զայսոսիկ Տելեմաք այնպէս մեծաստատ և ազդու բարբառէր, զի նուաճէր զսիրտս ամենեցուն, և յամօթ առնէր զխրատտիչս վատախորհուրդս: Իսկ ապա ամոքեալ զասաստ, ասէ. Ինձ ոչ այնքան ցանկալի է կեալ, զի այդպիսի ծանրագին խնդրիցեմ փրկանս կենաց. լաւ համարիմ զի Մենտոր կեցցէ միաստապարտ, քան ինձ գտանել

դատապարտ. և զի նա զբաւեսցէ զիս դառնալ 'ի կենաց, քան ինձ յանիրաւի մատնել զնա 'ի մահ: Բայց աղէ Թագաւորքդ դատիչք ժողովրդոց, որ պարտականքդ էք դատել զմարդիկ արդարութեամբ, խոհականութեամբ և հեզութեամբ, թոյլ տուք ինձ հարցափորձել զԱկաս առաջի ձեր:

Եւ սկսաւ հարցանել զինչ իրք էին նորա ընդ Արիոնի, և խուճապեցուցանէր զնա մանրամասնակի յոգնամամանեայ հարցուածովք. պատճառնայր առնել արձակել զնա առ Ադրաստ որպէս դասալիք փախստեայ պատժապարտ, և դիտէր թէ երկնչէր նա 'ի գնալոյ թէ ոչ. այլ նորա անայլայլակ կացին դէմք և բարբառ: Եւ 'ի չյաջողել Տելեմաքայ 'ի վեր հանել զճշմարտութիւն 'ի սրտէ նորա, ասէ. Տուր այսր զմատանիդ, զի առաքեցից առ Ադրաստ: Եւ իբրև ետես զի հատաւ գոյն երեսաց նորա և կայր 'ի տագնապի, էառ զմատանին և ասէ. Առաքեցից զայդ առ Ադրաստ 'ի ձեռն Պոլիտորոսեայ լուկանացւոյ, զոր ճանաչես դ, լինել բանագնաց 'ի դիմաց քոց: Եթէ 'ի յայտ երևեսցէ այսուիկ դաւակցութիւն քո ընդ Ադրաստայ, սատակեսցիս անողորմ չարաչար տանջանօք. իսկ եթէ այժմէն իսկ դու քեզէն խոստովանեսցիս զյանցանս քո, ներեալ լիցի քեզ. բայց միայն գնասցես դու 'ի մի 'ի կղզեաց, ուր ամենայն պէտք քո տացին քեզ: Յայնժամ խոստովան եղև Ակաս զամենայն ինչ ճշմարտութեամբ. և

Տելեմաք խնդրեաց 'ի Թագաւորաց շնորհել նմա զկեանսն, որպէս և խոստացաւ. և արձակեաց զնա 'ի մի յԵքինադից[2] կղզեաց, ուր եկեաց նա խաղաղութեամբ։

Այլ յետ սակաւուց ոմն 'ի Դաւնեաց Դիոսկոր անուն, այր վատազգի՝ այլ յանդուգն և խիզախ, եկն գիշերի 'ի բանակ դաշնաւորաց, և խոստանայր խողխողել զԱդրաստ 'ի խորանի իւրում։ Այն կարէր իսկ. զի իշխէ կենաց օտարին՝ որ յիւրն ոչ խնայէ։ Ոչ էր նա բոց վրէժխնդրութեան ընդդէմ Ադրաստայ, վասն յափըշտակելոյ նորա զկին իւր՝ հանգոյն Աղջկան չքնաղագեղ, զոր ոգւով չափ սիրէր. և էր նորա երդեալ 'ի մտի կորուսանել զԱդրաստ և առնուլ յինքն զկին իւր, և կամ կորնչել չարաչար։ Էին նորա գաղտ համախոհք առ 'ի մուծանել զնա գիշերայն 'ի խորանն արքունի, և դաւակիցք բազումք անդ 'ի զօրավարացն Դաւնեաց. բայց կարօտէր Թագաւորացն դաշնաւորաց յարձակելոյ յայնմ պահու 'ի բանակ անդր Ադրաստայ, առ 'ի յաջողութիւն փախստեան իւրոյ համօրէն կնաւն. զի յանձն առեալ էր նորա կորնչել, եթէ չյաջողէր նմա թափել զկին իւր յետ սպանանելոյ զարքայ։

Ի յայտնել Դիոսկորի զխորհուրդ իւր առաջի Թագաւորաց, դարձուցին ամենեքին զաչս 'ի Տելեմաք իբր զնա հարցանելով։ Յայնժամ պատասխանի ետ պատանին և ասէ. Դիք, որ զեր-

ծուցին զմեզ 'ի ձեռաց նենգաւորաց, արգելուն մեզ զձեռն նոցա առնուլ օգնական։ Եթէ չէր իսկ 'ի մեզ առաքինութիւն առ 'ի գարշելոյ 'ի մատնութենէ, 'ի շահ օգտի եւեթ մերոյ պարտ էր մեզ հերքել զայն 'ի բաց։ Ի ցուցանել մեր զայն օրինակաւ մերով օրինաւոր, գտանիցեմք արժանիք մատնութեան. և ո՞ 'ի մէնջ այնուհետև կացցէ յապաստանի։ Մարթ իսկ է Ադրաստայ խուսափել 'ի մօտալուտ հարուածոյն, և շրջել զայն 'ի գլուխ արքայիցդ նիզակակցաց. պատերազմն մեր ոչ ևս այնուհետև լիցի պատերազմ, հանճար և առաքինութիւն ոչ ևս լիցին պիտանի, այլ դաւ մատնութիւն և աւազակութիւն անցցեն 'ի հանդէս։ Մեզէն իսկ զարգասեաց նոցին դժնդակաց առցուք զչար. և յիրաւի, փոխանակ զի օրինաւոր զեղեռնագործն 'ի չարեաց կացուցանիցեմք։ Այսպէս ապա թուի ինձ խորհուրդ քաջ, յղել զնենգաւորդ մատնիչ առ Ադրաստ։ Գիտեմ իսկ, զի չէ Ադրաստ արժանի շնորհիս. բայց Եսպերկոնեայք առ հասարակ և բոլոր Եսպերիա յառնեալ կան 'ի մեզ, արժան է մեզ յանձին բերել զառաքինութիւնս զայս առ 'ի մեծարոյ լինել նոցա։ Զսոյն և անձանց մերոց և արդարադատ դիցն պարտիմք ըղսասկումն 'ի մատնութենէ։

Իսկ առաքեցին անդէն զԴիոսկոր առ Ադրաստ. որ իբրև իրազեկ եղև վտանգին՝ որ անցեալն էր զիւրև՝ զարհուրեցաւ, և յապուշ հարեալ կայր

ընդ վեհանձնութիւն Թշնամեացն. զի առաքինութիւն անխառն 'ի շահից անհատանելի է չարաց: Միհրդատ զարմանայր ընդ իրսն, Թէպէտ և ակամայ, այլ չիշխէր գովել զայն. վեհ առաքինութիւն արքայիցն նիզակակցաց յամօթ առնէր զնա ընդ յիշատակ նենգութեանցն իւրոց և անգթութեանց: Հնարէր արհամարհել զմեծանձնութիւն Թշնամեացն, այլ ամաչէր երևել ապաշնորհ՝ 'ի նոցանէ զկեանսն ընկալեալ. բայց որք ապիրատք անզգայք ամենայնի գտանին փութով, յորոց յուզի սիրտ նոցա: Միհրդատ իբրև ետես զի համբաւ դաշնաւորացն յաճախէր օր քան զօր, հարկ համարեցաւ առնել իւր փառս. և քանզի չկարէր առաքինութեամբ գերազանցել զնոքօք, խորհեցաւ յաղթանակել 'ի վերայ նոցա զինուք, և փութայր 'ի պատերազմ:

Եկն եհաս օր ճակատամարտին. և մինչդեռ այգն բանայր արեգական զշողուն արևելից՝ վարդագոյն հողեալ ուղի, պատանին Տելեմաք վաղայարոյց քան զամենայն հինաւուրց զօրավարս ընդոստ 'ի քնոյ՝ խրախուսէր զապայակոյտ բազմութիւնն: Ճոճայր 'ի գլուխ նորա սաղաւարտ 'ի գեղածփելոց բաշից սաւառնացեալ, և զրահք նորա շլացուցանէին զաչս զօրացն առ հասարակ. վահան նորա հրաշակերտեալ 'ի Հեփեստեայ ընդ իւրական գեղոյն և զարմանական ասպարին՝ որ 'ի նմա ծածկեալ կայր՝ արտափայլէր զփառս. նիզակ 'ի յահեակ, և աջովն ցուցանէր զկայս

իւրաքանչիւր ։ Ո՛րց աստուածեղէն յաչս նորա փայլեցոյց Ա՛թենաս, և 'ի դէմս նորա սաստ մեծավայելուչ՝ որ անդստին աւետէր զյաղթութիւն ։ Գնայր նա յառաջախաղաց. և արքայք առ հասարակ մոռացեալք զհասակ և զաստիճան, և 'ի գերաշխարհիկ իմն զօրութենէ ձգեալք, գնային զհետ նորա. ոչ ևս կրէր 'ի նոսա նախանձ վատ, ամենայն ինչ տեղի տայր այնմ՝ որում առաջնորդէրն Ա՛թենաս կալեալ անտեսաբար զձեռանէ ։

Ո՛չ ինչ 'ի գնացս պատանւոյն երևէր յանդուգն և խիզախ. այլ հեզ էր նա և հանդարտ, համբերող և պատրաստ 'ի լսել զխորհուրդս այլոց և յօգուտ 'ի կիր արկանել. բայց և ժիր էր և յառաջատես, հեռաւորագունից իսկ նախահոգակ արտոյից. կարգէր պատրաստէր զամենայն ինչ 'ի դէպ, ոչ խռովեալ ինքն և ոչ զայլս խռովէր. անքասիր առնէր զսխալանս, հայթայթէր հնարս վնասուց, դիւրէր զդժուարինս, ոչ ինչ կարի յամեքէ պահանջէր, ամենայն ումեք մատուցանէր ազատութիւն և համարձակութիւն ։ Պարզ և յստակ տայր պատուէր, և կրկնէր զայն առ 'ի քաջ խելամուտ առնել որում պատուիրէրն. դիտէր յաչս նորա տեսանել թէ իցէ՞ լեալ հասու, հարցանէր զիմաստ բանիցն և զուշ նպատակի պատուիրելոցն ։ Իսկ իբրև քաջ զփորձ առնոյր զիմաստութեան պատուիրակին՝ զոր քաջ խելամուտ առնէր խորհրդոց իւրոց, մինչ չև արձակեալ զնա՝

յայտ առնէր նմա զվարկ և զվստահութիւն նոր 'ի նմա , տուեալ նմին առհաւատչեայ առ 'ի խրախոյս ։ Նման որոյ որք միանգամ գնային 'ի նմանէ 'ի գործ , ջանահնարք լինէին հաճոյ լինել նմա և յաջողել . և ոչ տագնապէին յերկիւղէ թէ գուցէ 'ի ձախողել իրացն գտցին վնասապարտք , զի ոչ տագնապանէր նմա զվնաս ակամայ ։

Այն իսկ ծայրակարմիր արեգական վարդագեղ և հրափայլ զեզերս երկնից յօրինէր , և ծով 'ի բոց նորանշոյլ առնմջեանն ցոլանայր , և ահա ծածկէին ծովափունք զօրօք , զինուք , երիվարօք և անուովք կառաց մրրկելոց ։ Աղաղակ խառնաձայն լսելի լինէր որպէս զբարկ ալեաց՝ 'ի յարուցանել Պոսիդեայ 'ի խորոց անդնդոց զթուխ մրրիկ ։ Այսու օրինակաւ սկսանէր Որպէս 'ի շաչիւն զինուց և 'ի շուխնդն ահեղ պատերազմի զրգռել զոգիս ։ Եղակախուռն ծածկէր պաշտպանեալսն որպէս ամպօք յաւուրս հնձոց ծածկէին 'ի հասկաց . փոշի անհնարին 'ի վեր ամբարձեալ զողանայր յաչաց զերկինս և զերկիր . խուճապք արհաւիրք նախճիրք և մահ անողորմ արձակ արձակ յառաջ խաղային ։

Ի լսել աղեղանցն՝ ամբարձ Տելեմաք զաչս իւր և զձեռս 'ի վեր , և ասէ . Հայրդ անմահից և մահկանացուաց , մեծդ Արամազդ , դու գիտես զի առ մեզ է արդարութիւն , և ոչ անձն հանարեցաք խնդրել զխաղաղութիւն . ակամայ դիմեմք 'ի պատերազմ , և ցանկալի էր մեզ խնայել

յարիւն. ոչ առեալք զթշնամին մեր, թէպէտ և անգութ, թէ և ուխտադրուժ և անիրաւարիչ: Տէր, և դատ արա ընդ մեզ և ընդ նա. եթէ մեռանել պարտ իցէ, 'ի ձեռս քո են կեանք մեր. իսկ եթէ ազատել զԵրեկարնեայս, և նկուն զբռնաւորն առնել, այլ քո հզօր և խնամատարութիւն դստեր քո Աթենասայ կարող են տալ մեզ զյաղթութիւն, և քեզ յաղթանակին վայելեն փառք: Դու կշիռ 'ի ձեռին ուղղես զբախտ պատերազմի, և մեք վասն քո մարտնչիմք. և զի արդար ես, քո է Ադրաստ թշնամի քան մեր: Եթէ յաղթեսցեն իրաւունք քո, արիւն հարիւրոց զուարակաց՝ մինչ չև խոնարհեալ արեգակն՝ ողողեսցեն զբագինս քո:

Եւ զայս իբրև ասաց, մորթեաց զձիանն ամեհի և զփրփրերախ 'ի ռազմն ամբոխուս թըշնամեաց: Այս Պերիանդրի պատահեաց լակեցւոյ, որ կրէր զանձամբ զմորթ առիւծու՝ զոր յարշաւանս իւր սպան 'ի Կիլիկիա. զէն 'ի ձեռին նորա էր որպէս Հերակլեայ լախտ անապի, և համագոյն հսկայից հասակ և կորով նորա: Իբրև ետես նա զՏելեմաք, արհամարհեաց զմանկութիւն նորա և զգեղ, և ասէ. Դո՛ւ ընդ մեզ գաս 'ի պայքար, մանուկ կնամարդի. երթ տղայդ 'ի խնդիր հօր քո 'ի սանդարամետս: Եւ զոյգ ընդ բանին վերացոյց զլախտն ստուախիտ ծանրաբերձ և երկաթագամ, զօրէն իմն կայմից նաւաց. և զօրքն ամենայն պակուցեալ կային յահէ անկման

հարուածոյն ։ Սաստկացեալ հարուածն 'ի գլուխ ա-ղխատակման զաւակին. այլ նորա խոյս տուեալ անտի, համագիտութեամբ օդահերձ արծուոյ խոյացաւ 'ի վերայ ախոյեանին ։ Իջ լախտն 'ի վրէպ, և խոր-տակեաց զմի յանուոց կառացն՝ առ որով գնային կառք Տելեմաքայ ։ Ընդ նմին պատահման Հեղլէն իջոյց զգեղադարդն 'ի փոշ հոսկայլին. արիւն զան-գաղանօք ընդ մեծաբաց վիրաւորութեանն խուժեալ, հեղձոյց զբարբառ նորին. և ձիանն խեռ ոչ ևս նուաճեալ յանգոր ձեռանէն, ամենքին տատա-նելովք յուրան՝ այսր անդր զնա տարեալ բերէին, մինչև անկաւ նա 'ի կառացն՝ կախուցեալ զաչս 'ի լոյս, և զմահ տժգոյն նկարեալ 'ի դէմս բերելով յանդքացեալ ։ Յուղեցան գութք Տելեմաքայ. և եԹող զդին 'ի Թիկնապահս նորա, զառխուծե-նմն և եԹ և զլախտ առեալ խաչ 'ի նշան յաղ-Թութեան ։

Հեռադոտէր առա զՍղրոտաէ 'ի խոսան, համե-լով 'ի սանդարամետս հոյլս քաջազանց. զՀիպեա՝ որոյ նժոյգք կառացն համբուռնատիւք արեգակ-նայնոցն էին երիվարաց, ձայնակեալք 'ի լայնադաշտ ատօտս՝ զորս Սփիդ ՝ ոռոգանէ գետ. զՄենեկէան զուարդարայնութ 'ի կոփանուրո 'ի Միկելիս, հա՛ աատարազոր գողցեն Նիքեաայ. զԿրանտոր՝ զատագծՉակաէն Հերակլեայ, որ կարեցաւ ընդ նմա սերտով յանձանձել ընդ Ներեկորթեայն՝ ուր գչարաշուքն Կակոս ՝ սատակեաց. զՄենեկրատ, զոր ընդ Պղուտեայ համբաւէն 'ի զօանէմնարան

հաստատեալ. զԻպպոկոոն սալամեցի, աջող հանգոյն Կաստորի և գեղեցկարուեստ 'ի ձիավարել. զԵւրիմեդ զորսորդ հռչակաւոր, որ զարջոցն և զվարազուց սատակելոց 'ի ձիւնախառազաղ գագաթունս ցրտասառնոյց լերանցն Ապենինեաց բերէր միշտ զանձամբ զցայտս արեան, և զոր սիրելի յոյժ աւանդեն լեալ Արտեմեայ և 'ի նմանէ ուսեալ զաղեղնաւորութիւն. զՆիկոստրատ, որ պարտեացն զհսկայն հրաշունչ 'ի ժայռս լերինն Գարգանեայ [*]. և զԱկէանթ, որում պատրաստէրն 'ի հարսնութիւն օրիորդն Փղոյէ դուստր գետոյն Սիրեայ [°], խոստացեալն 'ի հօրէն իւրմէ այնմ՝ որ փրկէրն զնա 'ի թևաւոր վիշապէն բունելոյ յեզր գետոյն, զի պատգամ 'ի դից գուշակէր՝ 'ի հուպ աւուրս կլանել զնա վիշապին: Ակէանթ տարփացեալ օրիորդին, և ինքնամատոյց դիմագրաւեալ 'ի սատակումն գազանին՝ թէպէտ և յաղթեաց, այլ յարգասիս յաղթութեանն չկարաց վայելել. և մինչ դեռ Փղոյէ 'ի հարսանիսն ըղձալիս պատրաստէր՝ անձկալեալ սիրատարփ փեսային, գոյժ առ նա եհաս՝ զի ընդ Ադրաստայ արշաւեալ 'ի մարտ, և անգութ Պարկայց հատեալ զնորին էր զթել կենաց: Որ շուրջ զգետովն էին մերձակայ անտառք և լերինք՝ հնչէին ողբովք հէք օրիորդին, որ հատեալ յաչաց հեղեղս արտասուաց, փետէր զչքնաղ զանգուրս վարսիցն խարտեաշագեղս: Ոչ ևս ծաղկունս, որպէս սովորն էր, հաւաքէր 'ի փունջ. այլ կեղեր-

Ջաւկան բողոք սրտառուչ հարկանէր զերկնից : Այս զի ոչ զտիւ և ոչ զգիշեր դադարէր յողբոց, ողորմեցան դիք ընդ մորմոք նորին, և զիջեալ յաղերս մաղթանաց գետոյն՝ այսպէս ճար վշտին հաճեցան առնել : Առ յոյժ արտասուացն այլակերպեցաւ նա յանկարծ յաղբիւր, որ 'ի ծոց գետոյն այնորիկ հոսեալ՝ խառնէ զալիս իւր ընդ ալիս ծննդին աստուածարելոյ . այլ են Ջուրք նորա ցարդ ևս դառնինք, և ոչ դեղ դալար ծաղկէ առ նովաւ . և 'ի տխրագին եզերս նորա չիք այլ հովանի, բայց միայն նոճեաց :

Ազդ եղև Ադրաստայ՝ զի Տելեմաք արհաւիրս ամենայն ուրեք ածէր, զհետ իւր եկեալ 'ի խնդիր : Յուսայր նա դիւրաւ զողջախականն պարտել զհամբակ նորատի . ածէր զիւրև Թիկնապահս երեսուն 'ի Դաւնեաց անտի հուժկուս աջողակս և խիզախս 'ի մարտի պակուցանողս, խոստացեալ նոցա մրցանակս մեծամեծս՝ եթէ կարէին զինչ և է հնարիւք կորուսանել զպատանին : Եթէ 'ի նախաձեռն մարտին պատահէր նմա, Թիկնապահացն երեսնից շուրջ պատեալ զկառօք նորա, և իւր 'ի դիմաց յարձակեալ, դիւրաւ արդեօք սպասպան արկանէին զնա . բայց Աթենաս մոլորեցոյց զնոսա : Ունէր Ադրաստայ նշմարել զնա, և լսել զբարբառ նորա 'ի խորաձոր հովտէ ուստեք առ ոտամբ միոյ 'ի բլրոց՝ ուր էր խուռն մարտակաց : Դիմեաց ոտագնաց անդր առ 'ի յագուրդ արիւնախանձ ծարաւոյն . այլ փոխանակ

Տելեմաքայ եգիտ անդ զծերունին Մենտոր, որ դողդոջուն ձեռամբ ձգէր զեղարդունս 'ի դերև ընդ օդս։ Կամէր Ադրաստ առ զայրոյթ կատաղութեան հարկանել զնա. այլ գունդ ախոյեանացն շուրջ եղեն զնովաւ։

Ամպ թանձրատարափ նետից մթագնեալ յայնժամ զերկին, ծածկէր զմարտիկսն առ հասարակ։ Ո՛չ աղիողորմ մահացելոցն խառն ընդ շաչիւն զինուց անկելոցն 'ի խուռն լսելի լինէր. հեծէր երկիր ընդ շեղջակուտիւ դիականցն, և ուղխք արեան գետահետեալ ընդ ամենայն ուրեք գնային։ Անդ Բելլոնա և Արէս պար առեալ 'ի դժոխազնեայց ժանտից կատաղեաց, զգեցեալ հանդերձս արիւնաթաթաւս, պարարելով զաչս իւրեանց 'ի դժնդակ տեսիլն, զրգռէին անդադար 'ի սիրտս իւրեանց զզայրոյթ։ Սոքա դիք ոխերիմք ազգի մարդկան բացէ 'ի բաց վարէին յերկաքանչիւրոց կողմանց զգութ ազնուական, զքաջութիւն արդարակորով և զհեզ մարդասիրութիւն։ Ի խուռն անդ մարտկաց ընդ իրեարս մրմռելոց ոչ այլ ինչ էր տեսանել, բայց նախճիրս արեանց, վրէժխնդրութիւն, յուսահատ կատաղութիւն, և զայրոյթ գազանեղէն. և իմաստուհին իսկ և անյաղթելին Պալլաս սասանեալ ընդ տեսիլն, խոյս տայր անտի արհաւրօք։

Յայնմ վայրի Փիլոկտետ, զհերակլեանսն կալեալ զնետս 'ի ձեռին, յառաջ մատչէր հիւանդաքայլ յօգնութիւն Նեստորի։ Բայց Ադրաս-

տայ ոչ ժամանեալ 'ի վերայ հասանել ծերունւոյ գլուխպագլխին, զյոլովս 'ի պղծնացւոց անտի շուրջ զնովաւ տիգահարեալ զգետնէր՝ խածանել զկոշի : Արկ տապաստ զԿատեսկղաս, որ Թեթեւ 'ի գնացս՝ հազիւ Թողոյր հետս յաւազի, եւ ընԹացակից 'ի հայրենիս իւր լեալ ընդ որընԹաց ալխ Սուրոսայ[7] եւ Ալփեայ՝[8] գլէր զնոքօք : Նկան անտառ նորա զխտապաստ Սուտփրոն գեղեցիկ քան զՀիլաս,[9] եւ զխպաղեղն քան զԻպողիտ[10] յորս . Պատերելաս համհարզ Նեստորի 'ի տրովականն մարտին, զոր սիրէրն յոյժ Աքիլլէս վասն արիուԹեանն եւ ուժոյ . եւ Արխտոգիտոն, որ Թացեալ յալխս գետոյն Աքելովայ՝[11] ընկալաւ յաստուածոյն զանխուլ զօրուԹիւն յամենայն ազգի ազգի դէմս այլակերպելոյ . եւ այնպէս էր շոյտ եւ ճապուկ, զի խոյս 'ի ձեռաց հզօրագունից իսկ տայր տախաց . բայց Աղրաստ զնա 'ի մի հարուած նիզակին արձանացոյց անշարժ, եւ ընդ արեանն եւ ազի նորա :

Նեստոր, իբրեւ ետես զի քաջազոյնք յիւրոցն տապաստ անկանէին 'ի ձեռանէ խուժադուժ արքային իբր հասկք ոսկեփունջ 'ի սուր սայր գերանդւոյ անխոնջ հնձողի, ոչ զմտաւ էած զվրտանգն՝ յոր 'ի զուր արկանէր զծերուԹիւն իւր, եւլեք զնա իմաստուԹիւն, ոչ եւս ինչ խորհէր՝ բայց ուշ ունել 'ի Պիսիստրատ յորդի իւր, որ ամենայն ճգամբ վերամարտիկ լինէր հօրն՝ զդէմ կալեալ վտանգին : Բայց ժամանեալ էր օրհաս

ճանապարհորդի նորին, զգացուցանել Մենտորի քանի՛ ատելոյի յանձանս պատուհասին կեանք յեր֊կարակեաց:

Պրոտեսիլաոս այնպէս ուժգնակի զնիզակն արկեալ ընդդէմ Իդոմենեայ, զի անկանէր նա դիտաւորապատ՝ եթէ չէր տուեալ խոյս 'ի հարուա֊ծոյն. և մինչդեռ Պրոտեսիլաոս ստամանեալ 'ի թափոյն 'ի վրէպ անկելոյ՝ յետս զնիզակն անկա֊նէր, հար զնա Իդոմենէ 'ի տէգ գեղարդեանն ընդ պորտն շամփրեալ: Այնթեցան աղիքն ընդ ուղխս արեան. դոյն նորա հատաւ որպէս զծաղ֊կանն՝ զոր քաղէ ընդ մարգ ձեռն յանէրժհարին. աչք իւր անկայծեալ, ձայն իւր նուաղեալ, և մինչդեռ զլորէրն, Իկէտս դայեակ նորա կալաւ զնա 'ի վեր, և այլ ինչ ոչ ժամանեալ առնել՝ անծ զնա 'ի գիրկս հօրն: Կամէր պատասխանին յօդուոցն պարզել զգորովանաց իւրոց զվերջին տալ զգա֊հատանչեաց. այլ փչեաց զոգին ընդ բանալ շրթանցն:

Մինչդեռ Փիլոկղէս արհաւիրս և նախանձիւ շուրջ զիւրև գործէր ընդդէմ ձգանցն Իդոմենեայ, Մենտորի զգլխանկն ոտնդոյն 'ի գիրկս իւր փայ֊փայելով՝ ընդդէր զայերս ողբոցք, ոչ ևս տեսանել կամէր զլոյս, և զոչէր. Ողջուկ եմ զի եղէ հայր և կեցի յերկար. աւա՜ղ անողորմ ճանապարհիս, ընդէ՞ր ոչ զրկեցայ 'ի կենաց յորս կաղխորդեանն [13] վարդագոյն, կամ յարշաւել անդ 'ի Ակղքիս, [13] և կամ յառաջնումն անդ 'ի տրավականն մարտին,

ուր էր ինձ մեռանել փառօք անաղէտ. արդ 'ի քարշ ձգեմ զդառնակսկիծ զարհաւիրս և զա-ղիկար աղետս. ոչ եւս կեամ՝ բայց յաղէտս, անզգայ ամենայնի բաց 'ի վշտաց: Որդեակ սիրելի Պիսիստրատ, դու ինձ էիր մխիթար 'ի կորստեան Անտիլոքեայ քոյդ հարազատի. արդ կորուսի և զքեզ, կորուսի զամենայն, ոչ ինչ այսուհետև զիս ախորժեսցէ, ամենայն ինչ վճարեալ է ինձ. և յոյս իսկ, միակ սփոփիչ վշտաց, չիք և չիք վասն իմ: Անտիլոք և Պիսիստրատ, որդեակք իմ սիրելիք, այսօր իսկ հանգոյն թուիմ կորուսեալ զձեզ զեր-կոսին. մահ միայն 'ի ձէնջ կեղեքեալ երաց զվէրս տխուր գործեալ 'ի միասին: Ոչ եւս ինձ զձեզ լսել տեսանել. և ո՞ զվաստեալ զաչս իմ կափուսցէ, ո՞ զանձինս մարմնոյս իմ ամփոփեսցէ: Որդեակ Պի-սիստրատ, և դու քաջութեամբ իբրև զքոյին մե-ռար հարազատ. ես միայն հայր ձեր կեամ, ա-ւա՜ղ, անմեռ:

Զայսոսիկ՝ Նեստորի ողբս առեալ, կամէր նե-տովն՝ որ 'ի ձեռին՝ զնալ զիւրովին. այլ որք մերձն կային՝ արգելին զնա, և առին 'ի գրկաց նորա զդիականն որդւոյն: Իսկ 'ի նուաղել անկանել հիւծի ծերունւոյն, բարձին տարան զնա 'ի խորան իւր. ուր ոգի առեալ, իբրև կամէր դառնալ անդրէն 'ի տեղի ճակատուն, ոչ եւս թողլ ետուն նմա:

Բայց Ադրաստ և Փիլոկտետ 'ի խնդիր էին միմեանց. աչք նոցա արիւնառուշաք իբրև զառիւ-ծու և իբրև զընձու, որ գիշատել զիրեարս խնդ-

դրեն 'ի դաշտս՝ ընդ որս Այլիստր" գետահետեւեալ հոսէ: Սպառնալիք և զայրոյթ արիական և վրէժխնդրութիւն անողորմ փայլատակէին յաչս նոցա 'ի խուժոսս. ամենայն ուրեք, ուր և ձգէին զերդարդունք նոցա, ածէին մահ անշուշտ. և զօրքն ու հասարակ կային 'ի նոսա անկնկառոյց պակուցեալք: Նա աչա տեսին նոքա զմիմեանս. Փիլոկտետ ձգեաց զձեռն իւր 'ի մի 'ի նետիցն զարհուրելեաց՝ որոց չէր երբէք 'ի ձեռին նորա վրիպեալ 'ի հարուածոյ, և հարուածք իսկ նոցա էին անբուժելիք. այլ Ա՛րէս, որ պաշտպանէրն անգութ և անվեհեր արքային, ոչ ներեաց կործանել նմա արագամահ. զի կամէր յերկարել 'ի ձեռն նորա զարհաւիրս մարտին, և յաձախել զնախձիրս. պարտ էր նմա տակաւին դահիճ արդարութեան դիցն կալ 'ի պատուհաս մարդկան և 'ի ձաապաղիս արեան:

Մ՛ինչդեռ Փիլոկտետ ձգէր զձեռն 'ի հարկանել զԱ՛դրաստ, արար զնա տիգախոց պատանին լուկանացի Ա՛մփիմաք, գեղեցիկն քան զանուանին "Նիրէոս՝" որում Ա՛քիլլէս եւեթ 'ի Յոյնս տրովականն մարտին գերազանց յաղթէր: Փիլոկտետ անդէն զոյգ ընդ հարուածոյն զմի 'ի նետից ձգեաց յԱ՛մփիմաք. և ընդ սիրտ նորա թափ անցեալ նետին, շիջան պատանւոյն աչկունք սեւորակք և չքնաղագեղք՝ սառուցեալ մահու պատեալ զնոքօք: Ըրթունք իւր կարմիր քան զթերթ վարդից, զոր նոյանչոյլ սփռէ արշալոյս յեզերս երկնից,

զուռնատեալ անկան. ղալուկն ուժնեայ եղծ զծնօտիցն գեղեցկութիւն, և տեսիլ դիմաց գողտր և վայելուչ խորթնացաւ իսկոյն: Սանձաղաղատեցաւ Փիլոկտետ ինքնին, և յոգւոց հանելին զօրքն առ հասարակ, տեսեալ զմանուկն յապաժոյժ արեան իւրոյ թաւալեալ, և քարշ ընդ փոշին զգիսակ նորա ածեալ զչքնաղ քան զԱպողոնին:

Փիլոկտետ, թեպէտ և յաղթող, ստիպէր տեղի տալ 'ի Ճակատամարտէն. քանզի նուաղէր ոյժ նորա հոսմամբ արեանն 'ի խոցոյն, և նախնոյ վիրացն իսկ 'ի ձգանց անտի մարտին թուէր խլրտել 'ի բացումն, և դառնալ 'ի նա ցաւոցն. զի և ոչ Ասկղեպեայ համբակացն աստուածուսոյց գիտութեամբն կարացեալ էր 'ի սպառ զայն բժշկել: Եւ ահա զգուշէր նա անկանել 'ի վերայ արիւնաշաղախ դիականցն, որ շուրջ զնովաւ անկեալ կային. բայց Աքիդամաս, հուժկու և աջողակ քան զամենայն եբաղացիս՝ որ եկեալ էին ընդ նմա 'ի հիմնարկութիւն Պետիլիոյ, եբարձ զնա 'ի Ճակատուն տեղւոջէ՝ ուր Ադրաստեայ հանդերձեալն էր հարկանել սաստակել զնա առաւթուր: Ոչ ոք այնուհետև իշխէր զդէմ ունել Ադրաստայ, առ ձեռն կայր նմա յաղթութիւն. ամենայն ինչ անկանէր առաջի նորա, ամենայն ինչ տեղի տայր. և էր նա որպէս ուղխ յորդեալ զառափամբք, որ զպարագլին յորձանօքն զհունձս զանդեայս զհովիւս և զշէնս գիւղին աղխաղխեալ տանի:

Այդ եղև Տելեմաքայ 'ի բացուստ դոչիւն ա-

զտողակլի յաղթականացն, և հայեցեալ տեսանէր զկուրծն խառն ’ի խուռն փախստէայս յերեսաց Ադրաստայ որպէս զերամակս երկչոտ եղջերուաց, որք ընդ սարալանջս դաշտաց ընդ անտառս ընդ լերինս և ընդ գետս իսկ արընթացս տրացեալ զնան փախստեայք յերեսաց որսողի: Յոգւոց եհան Տելեմաք, և ցայտէր յաչացն զայրոյթ. ելիք զվայրս ուր այնքան վտանգօք և փառօք մարտուցեալն էր ընդ երկար, և դիմեաց յօգնութիւն իւրոցն. անց յառաջ թաթաւեալ արեամբ բազմութեան թշնամեաց՝ զորս դիաթաւալ կացուցանէր ’ի փոշւոջ. գոչեաց ’ի հեռուստ, երկաքանչիւրոց իսկ բանակաց լսելի: Ահ իմն պակուցանող ’ի զօրսն նորա արկ Աթենաս, և լերինք շրջակայք անդրէն բարբառով ետուն արձագանգ. և ոչ Արիսի ’ի Թրակիա այնպէս ահագին ազդեալ զանողորմ զսաստ բարբառոյն, յորժամ կոչ առնէ կատաղեաց ժանտիցն դժոխազգեայց մարտի և մահու: Ի ձայնէ Տելեմաքայ խրախոյս առեալ խիզախէին իւրքն, իսկ թշնամիք ահիւ պակուցեալ սասանէին. և Ադրաստ իսկ զամօթի հարկանէր ընդ արհաւիրս իւր: Ազդմունք չարագոյժք ահաբեկ առնէին զնա, և տեղի տուեալ ’ի նմանէ անյողդողդ քաջութիւն՝ զայրոյթ եւեթ յուսահատ խրախուսէր զնա: Ծունկք նորա զդողի հարեալ երիցս գթեցին, երիցս յանդգնաստից յետս ընկրկեցաւ. զալուկն մահաստիպ և քիրտն ցրտին ծաւալեցան ընդ

սեաւ երագ անդորհական, և բերանաբացեալ բար-բառել ձգնեցի, և պակասեցի նաև բարբառս, և ինքն 'ի դուր խնդրեցէ զայն: Դողդոջ և խռո-ձեալ կչռեաց զգեղարդն 'ի Տելեմաք. այլ նա անվեհեր սիրեցեալն 'ի դից ասպարափակ պա-տըսպարէր, որպէս այն թէ դիցն յաղթութեան հովանաւորեալ զնովաւ՝ պսակ 'ի գլուխ նորա պա-տրաստելով բոլորել: Արութիւն անդորր և խա-ղաղաւէտ փայլէր յաչս նորա. թուէր նոյն ինքն Աթենաս, այնպիսի բերելով զգօնութիւն և չա-փոյս յահագին վտանգսն: Ադրաստ 'ի գեղար-դանն ձգելոյ յետս անդրէն ընդոստնուլ յառաջա-րէն, աճապարեաց մերկացուլ զպողովատիկն առ 'ի չտալ պարապ ոխակական համբաւելին արդիւնա-կեց լինելոյ: Նորա տեսեալ զնախին սուսերա-մերկ՝ ելից և ինքն զգեղարդն, և հան զսուսեր:

Եւ իբրև այսպէս երկոքեին նոքա կացին հան-դէպ միմեանց 'ի կռիւ, զօրքն առ հասարակ զենընկեցք անշշունջք կային 'ի զնին՝ զէտակն ունելով ելից մենամարտին, յոր մեծի ճակատու մարտին հաստատեալ կայր բախտ: Սուսերք եր-կոցուն շողեալք իբրև զփայլատակունս՝ որ թօ-թափեն շանթիս, շկահէին ընդ իրեարս շեշտակի՝ հարուած խիտ ընդ խիտ յորդորկ զըահան ածեալ ընդունեայն, որ 'ի բախմանէն թնդային: Ա-խոյեանքն երկոքեին մերթ առ միմեանս մատչէին, մերթ ընկրկէին. խոնարհէին, և յանկարծ ան-դրէն բարձր 'ի գլուխ յիրեարս յարձակէին: Եւ

այնպէս բաղեղն բուսեալ առ կնձնեաւ զբարդմու-տեանն կարծր կոճղերն պատատի՝ ամումնամձիգ ամեղամբքն խիղբս արկեալ, և մինչ 'ի բարձուղէշ կողերան սողոսկեալ, որպէս ոստովքն երկոքեան զմի միաւորեալ կային։ Ադրաստայ չէր և ոչ նուաղեալ էր զօրութիւն, իսկ Տէլեմաքայ չէր և ոչ բովանդակ զիւրն սասանեալ։ Պնուն գործէր նա յեղակարծ 'ի վերայ անկեալ՝ կործանել զհամբաւեն Հելլէն յանկկելեաց, և զսուսեր նորին խլել, այլ 'ի զուր. սա մանաւանդ բուռն հարեալ զսուսերն, մինչ զարմանէր նա որոյն, ամբարձ զնա և զգետնեաց յաւաղին։ Անդ զամենաբարեշան զայն, որ արհամարհէրն միշտ զդիս, կալաւ երկիւղ վասն մօտալուտ մահուն. ամաչէր խնդրել կեանս, և չկարէր ծածկել զերկիւղն իւր. և առ 'ի գութ շարժել զպատտանեին, ասէ. Համբաւոր Ոդիսեայ, խոստովանիմ՝ արդ զարդարադատս դիս. Նոքա զիս պատուհասեն, զի եմ իսկ պատժապարտ. աղէտք ևեթ բանեան զաչս հողեղինի առ 'ի տեսանել զճշմարտութիւն, զոր տեսանեմ իսկ այսուհետ, և նա ինքն զիս ամենէ դատապարտ։ Այլ տեսիլ հիքիս արքայի յուշ ածցէ քեզ զհայր քոյին Նժդեհ յԻթակեայ, և անկցի գութ 'ի սիրտ քո։

Յայնժամ Տէլեմաք՝ որ ընդ ծնգովքն զնա ընկճեալ, և զպողպատիկն 'ի վեր առեալ էր առ 'ի կշռել զհարուածն մահացու, ասէ. Ի յաղթութիւն ևեթ և 'ի խաղաղութիւն ազգացս եկեալ եմ յօգնութիւն, և ոչ առ 'ի հեղուլ զա-

րին. կեցցես սուրբ, ո՛ Մենտոր. այլ կեցցես առ 'ի հայթայթել զխաղաղանս քո. հաստատ որ ինչ յառաջատակեցեր, դարձո զխաղաղութիւն և զարդարութիւն 'ի ծովեզերս Եգերեկեանց մեծաց՝ զորս շաղախեցեր 'ի նախանձիւս արեանց և 'ի զաւանձանութիւնս. կեցցես, այլ փոխեալ յայր այլ: Ասեր 'ի կործանմանէդ՝ զի արդար են դիք, որ թշուառութիւն հատանէ չարագործաց՝ որք 'ի զուր խնդրեն զբարերարութիւն բռնութեանց անգթութեանց և անիրաւութեանց, և զի չիք քաղցրագոյն ինչ և բարերարագոյն քան զանապականն և զանխողդողդ առաքինութիւն: Տուր մեզ արդ 'ի պատանդ զորդի քո զՄեղրոզար, և երկոտասան այր յաւագորերոյ ազգին:

Զայսուիկ Տելեմաքայ պայմանս եդեալ, թոյլ ետ ատախեն յառնել յուռն կալ. և աջ խաղաղութեան կարկառեաց 'ի նա, անձկաւորած դաւոյ: Բայց Նեննդատորեն միւս այլ փոքրիկ զօր ընդ վառապանաւն ծածկեալ պեղարզն սայրատուր. զայն յանկարծակի ընկեց 'ի յատախն այնոքիկ չեշտակի, զի ընդ զրահն մխէր թափանցիկ՝ թէ ատատածակերունք չէին այնոքիկ. և խոցս ետ յեռակոյս մէջ 'ի ծառոց, պատասպարել յերեւաց ատախեն: Զայն ժամ գոչեաց պատանեկին Հեղլէն. Մեք Պատանիք. ահա տեսէք զի մեր է յաղթութիւն, և զատով անհպարիշտն կեայ: Որ ոչն երկնչի 'ի դից, զարհուրի 'ի մահուանէ. իսկ երկիւղածն 'ի դից, 'ի նոցանէ և եթ երկնչի:

Այս զոյգ ընդ բանիցն յառաջ մատեաւ 'ի Պաւսանիս անողր, եւ իւրոցն՝ որ յայնմ կուսէ կային ծառոյն՝ ապա արար զնենգաւորին խափանել զելս փախստի։ Նա առ ահի 'ի ձեռս անկանելոյ՝ պատճառէր յետս ընկրկել, եւ խորհէր յարձակել 'ի Ակեստացիս՝ որ առնուին զառաջս նորա։ Բայց Տելեմաք հանգոյն շանթից, զորս աջ ամենահզօրն 'ի բարձանց Ոլիմպեայ արձակէ 'ի գլուխս մեղապարտից, հաս յեղակարծումն 'ի վերայ ոսոխին. եւ հարեալ զնա յաղթական ձեռամբ կործանեաց յերկիր, որպէս բռնաշունչ զցեռնէ հիւսիս զտկար որայս՝ որ ոսկեփայլ ծածանին 'ի դաշտ։ Ոչ եւս ունելն մնացոյց նմա, թէպէտ եւ ժպրհէր ամպարիշտն միւսանգամ փորձ փորձել, զեղծանել զթուլթեամբ նորա. մխեաց զսուսերն, եւ մղեալ ընկէց զնա գահավէժ 'ի բոցածաւալ վիհ տարտարոսին, պատիժ արժանի եղեռանց նորին։



# Ծ Ա Ն Օ Թ Ո Ւ Թ Ի Ւ Ն Ք

## ՔՍԱՆԵՐՈՐԴԻ ԳՐՈՑՆ

1 Սէնաւոխն քաղաք փոքրիկ 'ի Նէապօլիս :

2 Եքինադք, որ այժմ կոչին Քուրցօլարի, են կղզիք 'ի ծոց Պատրասայ 'ի բերան Աքելովայ գետոյ, հանդէպ Ակառնա-նիոյ յԵպիրոս :

3 Աւֆիդոս, որ այժմ կոչի Օֆանդօ, գետ 'ի Նէապօլիս, որ բղխեալ յԱպեննեանցն՝ գայ անկանի 'ի ծոց Վենետկեան : Առ սովաւ մղեցաւ պատերազմն Կաննեայ :

4 Կակոս որդի Հեփեստեայ, հովիւ և աւազակ՝ որջացեալ 'ի լերանն Աւենտինին. որոյ յափշտակեալ զանդեայս Հերակլի՝ ածէր յորջ իւր. և գտեալ զնա Հերակլէս սատակեաց լախտիւն :

5 Գարգանոս լեառն 'ի Նէապօլիս, մերձ 'ի քաղաքն Սի-պոնտոն :

6 Լիրիս, որ այժմ կոչի Կարիլիանոյ, գետ 'ի Նէապօլիս, որ անկանի 'ի ծոցն Կայետայ :

7 Եւրոտաս գետ 'ի Պելոպոննէս :

8 Ալփէոս գետ 'ի Պելոպոննէս :

8 Հիլոս պատանի չքնաղագեղ, որդի Թէոդամեայ, սիրելի Հերակլեայ. զոր առասպելեն յափշտակեալ 'ի յաւերժահար-սանց 'ի կամելն առնուլ զսափոր իւր անկեալ 'ի գետ. զի ըստ ճշմարտութեան գետամոյն լեալ մեռաւ :

10 Իպպոլիտոս, տես 'ի ԺԹ գիրս, ծան. 2 :

11 Աքելոոս գետ յԱկառնանիա, բղխեալ 'ի Պինդոս լեռնէ :

12 Կալիդոն քաղաք Ետոլիոյ, ուստի կալիդոնեան անտառն՝ յորում վարազն ահագին բնակեալ սպանեալն 'ի Մելէագրեայ՝ աջակցութեամբն Թեսեայ :

13 Կողքիս, ուր Արգոնաւորդք վասն ոսկի գեղմանն նաւա-րկեցին. տես 'ի Գ գիրս, ծան. 8 :

14 Կայիստր գետ 'ի Լիւդիա, մերձ յԵփեսոս :

15 Նիրէոս արքայ Նաքսոսի, չքնաղագեղ քան զամենայն

# ՆԱԽԱԴՐՈՒԹԻՒՆ

Դաւնիք 'ի մեռանել Ադրաստայ խաղաղութիւն տարեալ ընդ դաշնաւորս, խնդրեն 'ի նոցանէ կացուցանել զոք 'ի հա-մազգեաց թագաւոր: Նեստոր անմխիթար ընդ կորուստ որ-դւոյ իւրոյ՝ չերթայ 'ի ժողով անդր զօրավարաց. ուր բաղձանք պատրաստ համարին լաւաբաժին առնել զերկիր պարտելոցն, և տալ Տելեմաքայ զգաւառն Արպեայ: Տելեմաք մերժէ զառա-ջարկութիւն նոցա, և ցուցանէ յօգուտ դաշնաւորաց առ հասարակ կացուցանել զՊոլիդամաս թագաւոր Դաւնեաց, և թողուլ 'ի նոսա զամենայն երկիր իւրեանց: Յորդորէ ապա զԴաւնիս՝ տալ Դիոմեդեայ, որ անդր անկեալն էր ընդ բախ-տին արկածից՝ զերկիրն Արպեայ: Խաղաղին խռովութիւնք, և մեկնի իւրաքանչիւր ոք յաշխարհ իւր:

# ԱՐԿԱԾՔ ՏԵԼԵՄԱՔԱՅ

## ԳԻՐՔ ՔՍԱՆԵՐՈՐԴ ԱՌԱՋՆԵՐՈՐԴ

Ի գրաւել Ադրաստայ 'ի կենաց, Պատանիք փոխանակ ողբալոյ զպարտութիւն իւրեանց և զանկումն թագաւորին, ուրախացեալ ընդ ազատութիւն իւրեանց՝ ձեռն ձգեցին առ դաշնաւորս 'ի նշան խաղաղութեան և հաշտութեան: Մետրոդոր արքայորդի, դաստիարակեալն 'ի հօրէ իւրմէ 'ի նենգ յանիրաւութիւն և յանգթութիւն, փախեաւ վատութեամբ: Այլ մի 'ի սորկաց, արքանեակ պղծութեանց նորա և անգթութեանց, ազատագրեալ 'ի նմանէ և ճոխացեալ պարգևօք, յոր 'ի փախչելն իւրում վստահացեալն էր, նա ինքն յուսով շահու 'ի դամտաբերեալ՝ եհար զնա 'ի թիկանց անդէն 'ի փախստին, և հատեալ զգլուխ նորա եբեր առ դաշնաւորս, ակն կալեալ վարձուց մեծաց ընդ եղեռանն՝ որով վախճան լինէր պատերազմին:

Այլ նոքա սոսկացեալ ընդ ոճիրն, ետուն զնա 'ի մահ։ Տելեմաք 'ի տեսիլ գլխոյ արքայորդւոյն՝ չքնաղագեղի եւ բարեբարոյ պատանւոյն, որ 'ի գրգանաց եւ 'ի չար օրինակէ զեղծեալն էր, չկարաց ժոյժ ունել արտասուաց, եւ ողբալով ասէ. Աւա՛ղ, այսպէս չարաթոյն յաջողութիւնք եղծանեն զմանուկ արքայորդի. եւ որչափ առաւել է նմա ազնուականութիւն եւ աշխոյժ, այնչափ առաւել մոլորի եւ հեռանայ յիմաստից առաքինութեան։ Զսոյն արդեօք մնայր եւ ինձ կրել արդ կիրս, եթէ ոչ վիշտք եւ արկածք՝ 'ի դիցն շնորհէ հասեալք ինձ, եւ խրատք Մենտորի կրթէին զիս։

Համախմբեալ Դաւնեայք, խնդրեցին 'ի պայմանս հաշտութեան՝ ընտրել զոք յազգէ իւրեանց 'ի թագաւոր, որ առաքինութեամբն իւրով գիտասցէ բառնալ զնախատինսն՝ որովք ծածկեաց Ադրաստ զպետութիւնն։ Գոհանային զդից, զի հարին զբռնաւորն. եւ գային գունդագունդ 'ի համբոյր աջոյ Տելեմաքայ՝ որ յարիւն նորա թաթաւեալ էր, եւ զպարտութիւն իւրեանց համարէին յաղթանակ։ Այսպէս 'ի վայրկեան ժամանակի անկաւ անկանգնելի պետութիւնն այն՝ որ սպառնայր Եւրեկոռնեայց առ հասարակ կործանումն, եւ որ դողացուցանէրն զազգս։ Որպէս ընդ տրամ եւ հաստատուն գետնով եթէ ական մեղմով եւ առ փոքր փոքր հատանիցի, արհամարհի հարուստ մի ժամանակ անզօր ձիգն բրածոյ հիմանցն. երեւի տկարացեալ եւ ոչ ինչ, միա-

պաղաղ երկիրն կայ անդրդուելի, սակայն խախտին հաստատութիւնք նորա, մինչև փլուզեալ յանկարծ քանդայ վիհ անդնդախոր. այսպէս պետութիւն անիրաւ և նենգաւոր թէպէտ և յաջողել թուեսցի հարստահարութեամբքն, սակայն փորէ ընդ իւր և խորխորատ: Նենգ և անգթութիւն պերճեն տակաւ զհաստատագոյն իսկ հիմունս օրինաւոր իշխանութեանց. զարմանալի թուի և ահարկու, և դողան յերեսաց նորա ազգք մինչև ցորհաս նորին. այլ կործանի նա իւրովի, և ոչ ևս մարթ է նմա կանգնել, ինքնին իսկ զհիմունս իւր անձակառոյցս քայքայեալ, զհաւատարմութիւն և զարդարութիւն՝ որ յանկուցանեն յենքեանս զսէր և զվստահութիւն:

Մոլորեցան 'ի վաղիւ անդր զօրավարք, կացուցանել Դաւնեաց թագաւոր: Գեղեցիկ էր տեսանել զերկոսին բանակսն յանկարծ սերտաքար խառնեալ ընդ իրեարս: Ովերոնեին իմաստուն Մենտոր չկարաց գալ 'ի ժողով անդր. քանզի սուգ 'ի ծերութիւնն յաւելեալ՝ նուաղեցոյց զսիրտ նորա, զոր օրինակ տեղատարափ հարեալ զգետնէ ընդ երեկս զծաղիկ՝ որ 'ի ծագել այգուն փառս յօրինէր և զարդ դալարագեղ դաշտի: Աչք նորա թուէին կրկնավճակ աղբիւրք արտասուաց. հատեալ էր 'ի նոցանէ քուն անուշակ՝ սփոփիչ դառնագոյն վշտաց, և շիջեալ 'ի նմա յոյս՝ որ կենդանութիւնն է սրտի: Դառն էր ճաշակ կերակրոյ 'ի քիմս հիքի ծերունւոյն, և լոյս

տաղտկալի նմին. ոչ ևս ինչ ցանկալի էր հոգւոյ նորա, բայց լքանել զմարմին և ընկղմել խորասոյզ 'ի մշտագիշեր սահմանս Պլուտոնի։ Ի զուր բարեկամք նորա ջանային սփոփել զնա. սիրտ նորա նուաղեալ ոչ ևս առնոյր զճաշակ սիրոյ մտերմութեան, որպէս հիւանդ զհամեղամոց։ Ընդ գորովլագոյն իսկ բանս կարեկցութեան չտայր ինչ այլ պատասխանի, բայց հառաչանս և հեծութիւնս, և երբեք երբեք գոչէր. Պիսիստրատ, Պիսիստրատ, որդեակ իմ Պիսիստրատ. կոչես զիս առ քեզ. ահա գամ. դու ինձ ցանկալի առնես զմահ. Պիսիստրատ որդեակ, այլում իմիք ոչ ևս ցանկամ բարւոյ բաց 'ի տեսութենէդ քումմէ առ ափն ստիւգական գետոյ։ Այս ժամս ձիգս անբարբառ անցուցանէր 'ի հեծութիւնս, զձեռս իւր և զգերարտօսրալից աչսն յերկինս ամբարձեալ։

Մինչդեռ արքայք 'ի ժողովի անդ միայն Տելեմաքայ, նա առ դիականմբն Պիսիստրատայ կացեալ՝ ցանէր ծաղկունս զնովաւ լիաբուռն, սրսկէր իւղս անուշունս, և հեղոյր աղի արտասուս, ասելով. Ո՜ զինուորակից իմ սիրելի, մի՛ լիցի ինձ մոռանալ որպէս տեսի զքեզ 'ի Պիլէ, զիա՛րդ ուղեկից քեզ եղէ 'ի Սպարտա, և իբր գտի զքեզ դարձեալ 'ի ծովեզերս Արեկոյնեայց մեծաց. շնորհապարտ եմ բիւրուց խնամոցդ. սիրեցի զքեզ. և դու զիս սիրեցեր։ Ծանեայ զքաջութիւն քոյին, որով հանդերձէիրն քան զբազումս 'ի քա

Ջաղանցն Յովնաց գերազանցել. անկար փառօք, այլ ամո՛ղ քաջութիւն քո եբարձ յերկրէ վաղամեռիկ զառաքինութիւն քոյին՝ որում միայն հայրենականին հաւատարել: Այո՛ խնամութիւն քոյին և ճարտարխօսութիւն յաւագոյթ հաստակիրդ հանդերձեալ էին Նորայոցն նմանել ՚ի զարմանս բոլորումն Աշլարայ: Արդէն իսկ սփռէին ՚ի շրթանց քոց շնորհք հաճոյիչք՝ որոց ոչ է մարթ ունել զդէմ, ախորժ եղանակ վիպելոյ, զգօն հեզութիւն՝ հզօր յաղթել զցասումն, և սաստ իշխանական՝ որ յաջողէ խոհականութեանց և զօրութեանց խորհրդոց լուսաց: Ի խօսել քոյին՝ ամենայն ոք յականջ կայր, ամենեքին պատրաստ ՚ի հաւանութիւն, ելեւելս զմիամտամբք առնելով յարդարացուցանել զբանս քո, որ պարզք և ինքնազարդք հեզիկ ՚ի սիրտս իջանէին որպէս ցօղ ՚ի դալարիս: Աւա՛ղ, յայսքանեաց բազմահոյլ բարեաց՝ յորս առաւելիկ մի յառաջ վայելէաք՝ զրկեցաք անյոյս: Փարեցայ զքեւ այգուն, և արդ ոչ ես ես. յիշատակ եւեթ քոյին մնայ տխրագին: Եթէ գէթ փակէիր զարտասուանումս հօր քո մինչ չև մեր զքոյսդ փակեալ, ոչ տեսանէր ծերունին զաղէտս զայս, և ոչ զտանէր թշուառագոյն ՚ի հարս:

Եւ կատարեալ զողբսն, եւ Տելեմաք լուանալ զխոց կողիցն արիանաշաղախ, և դնել զնա ՚ի ծիրանեպատ դեսպակի. գլուխ նորա անկեալ կայր զուսովն, և մահ տժգոյն զերեսօքն մածեալ: Եւ

թուէր նա որպէս ծառ առոյգ՝ արդ իսկ սաղար-
թագեղ հովանացեալ զերկրաւ, և զուղեշան ծառ-
կուէաս ընդ երկինս ձգտեալ, և ահա յանկարծ
’ի մայրեւորէ ’ի սայր տապարի հարեալ, ոչ ևս կից
ընդ արմատ իւր, ոչ ևս ընդ երկիր մայր բխուրա-
բեղուն՝ յորմէ տածէին ստեղունք իւր, թառամի,
եղծանի դալարագեղ վայելչութիւն նորա, ոչ ևս
զօրէ կանգուն կալ, անկեալ դնի. կողերք նորա
երկնատարածք քարշին ընդ փոշի գօսք և ցա-
մաքք, և միայն կոճղ ընկեցիկ յամենայն զարդուցն
կապտեալ: Նոյնպէս Պիսիստրատ մատնեալ ’ի
մահ, բարձեալ տանէր ’ի յուղարկաւորաց ’ի խաւ-
րոյկն մահահամբոյր, որ բոցածաւալ ընդ երկինս
ամբառնայր: Գունդ պիղոնացի զարտօսրաթոր
աչսն ’ի վայր արկեալ, և գլխ ’ի վայր զզէնսն բե-
րելով, գնային առաջի: Ծախեցաւ դիականն բո-
ցակէզ, ամփոփեցաւ աճիւնն ’ի սափոր ոսկի. և
Տելեմաք ամենախնամ հոգովք աւանդեաց զայն
որպէս գանձ մեծ ’ի Կալլիմաք դաստիարակ պա-
տանւոյն, և ասէ. Կալ զտխուր հանգոյն և ցան-
կալի նշխար սանուդ սիրելւոյ, պահել զդա հօր
իւրում. այլ զգոյշ լեր չտալ նմա զայդ, մինչև զօ-
րասցի խնդրել ինքնին. որ արդ մորմոքեցուցիչն
է սրտի, լիցի ապա սփոփիչ: Գայր ապա Տելե-
մաք ’ի ժողով արքայիցն նիզակակցաց. և ’ի մտա-
նել նորա անդր՝ լռեաց ատեանն առ հասարակ.
ընդ որ զամօթի հարեալ պատանւոյն՝ չկարէր
բարբառել: Նա յաճախէին զշառագունանս նորա

ամենեցուն միաբերան դրուատիք վասն ամենայնի որ ինչ ցայն վայր 'ի նմանէ գործեցաւ իրք, մինչև խնդրել նմա թագուցանել զանձն. անդ ևեթ տեսանէ նա գումարեալ և խուճապեալ: Այլ ապա աղերս արարեալ լռել 'ի գովութեանցն, ասէ. Արդ ոչ եթէ չիցեն ինձ հաճոյ դրուատիք, մանաւանդ· ընծայեալք յարդարակորով դատաւորացդ առաքինութեան. այլ երկնչիմ 'ի փառասիրելոյ: Գովութիւնք զեղծուցանեն զսիրտ, անձնահաճս գործեն զմարդիկ՝ մնափառս և յանդգունս. պարտ է արժանի լինել այնոցիկ, այլ զգուշանալ յայնցանէ: Վայելչագոյնք 'ի գովութեանց հանգունատիպք են սոցին, և չարագոյնք 'ի մարդկանէ՝ բռնաւորք՝ առաւելագոյն գովասանին 'ի մարդահաճոյից. և զի՞նչ բերկրութիւն իցէ հանգոյն նոցին ընդունել գովութիւնս: ՝Աւեր-բող բարի լիցի ինձ այն, զոր 'ի մեկնել իմում 'ի ձէնջ՝ ինձ ընծայիցէք, եթէ միայն իցէ ինձ բախտ գոլոյ այնմ արժանի: Եթէ արդարև համարիք զիս առաքինի, պարտիք համարել զիս և ցածութեան սիրող և զգոյշ 'ի մնափառութենէ. խնայեցէք ապա յիս, եթէ մեծարէք զիս, և մի՛ որպէս փառասիրի ընծայէք ինձ դրուատիս:

Այլ զայս ասացեալ, ոչ ևս երեսս արար և ոչ ետ պատասխանի որոց ոչ դադարէին բարձրացուցանելոյ զնա երկնաչափ. և անդէն լռեցին 'ի գովասանութենէ, զի մի՛ գուցէ դժկամակեսցի: Այսպէս դադարեցին դրուատիք, այլ յաճա-

խեաց զարմացումն ։ Պիտացին ամենեքին զգութ նորա՝ զոր արար ընդ Պիսիստրատայ, և զխնամս յուղարկաւորութեանն. և առաւել զարմացեալ զօրաց ընդ այնպիսի բարեգթութիւն նորա քան ընդ հրաշս իմաստութեանն և քաջութեան՝ զոր այն ինչ ցուցեալ էր, ասէին ընդ միմեանս. Ապաքէն իմաստուն է և քաջ, սիրելի դից և արդարև դիւցազն յաւուրս մեր երևեալ 'ի վեր քան զպայման մերասեր բնութեան. այլ այս ամենայն զարմանալի ևեթ և հիացուցիչք են մնաց ։ Բայց մարդասիրութիւն նորա և բարութիւն, բարեկամութիւն գթած և հաւատարիմ, կարեկցութիւն, առատաձեռնութիւն և բարերարութիւն, նուիրումն անձին 'ի վերայ սիրելեաց, բերկրալի կենակցութիւն, զիջումն 'ի գոռոզութենէն և յանկարեկիր և 'ի խրոխտ բնաւորութենէն, այս ամենայն կացուցանեն զնա պիտանի, այս ամենայն ազդեն մեզ 'ի սէր, այսոքիկ զնա սիրելի առնեն, այսոքիկ զգալի զառաքինութիւն նորա գործեն, և զմեզ պատրաստս փոխանակելոյ զանձինս մեր 'ի վերայ նորա ։

Զայսոսիկ ժողովականքն զարմանմանց բանս. և ապա խորհուրդ 'ի մէջ առին վասն կացուցանելոյ զոք թագաւոր Դաւնեաց ։ Առաւելագոյնք 'ի թագաւորաց, որք էին 'ի խորհրդեան անդ, արժան համարէին բաժանել յիւրեանս զերկիրն զինուք նուաճեալ, ընծայելով Տելեմաքայ 'ի բաժին զգաւառն Արպեայ ' զարգաւանդ՝ որ երկիցս

'ի տարւոջ բերէ զԱնեմեսորեայ զպարգևս առատս, և զանուշակ տուրս Սպանդարամետին, և զնուէր բակոսին Դիոնեսեայ զմշտադալար ձիթենւոյն զմիրգս, և աւելին. Տացէ քեզ երկիրդ այդ մոռանալ զԱթանէ հանդերձ աղքատին անակօքն, զափափայս Դուլիքիոնի [2] սոսկալիս և զամայի անտառս Զակինթեայ [3]: Մի՛ ևս երթիցես 'ի խնդիր հօր քո՛ որ ծովակուր լեալ անշուշտ առ հրուանդանաւն Կափարեայ, վրէժխնդրութեամբն Նաւպղիոսի [4] և ցասմամբ Պլխոնդեայ կորուսեալ իցէ. և մի՛ մօր քո, 'ի ձեռս սիրեխացն մատնելոյ 'ի մեկնել քո 'ի նմանէ, և մի՛ հայրենեաց քոց, ուր չեն օրհնութիւնք երկնից որպէս 'ի սմա՛ զոր ընծայեմքս քեզ 'ի վիճակ:

Արկայնամտեաց Տելեմաք 'ի լուր բանից նոցա. այլ ոչ այնպէս պարերիք Թրակեայ և Թեսալիոյ խուլք են և անզգայք առ յուսահատ բողոք տարփաւորաց, որպէս նա առ նուէրս նոցին անլուող լեալ՝ ասէ. Ով մեծութեանց եմ ցանկացող և ոչ բերկրութեանց. զի՞ փոյթ է ինձ ժառանգել երկիր լայնատարր և բազմամթերս մարդկան իշխել, ուր առաւելագոյն են անձկութիւնք և նուազ ազատութիւն: Նմանապաւնից իսկ և զգաստից բազմադէտ են կեանք. և զի՞նչ, եթէ յաւելցին յաղէտսն և վիշտք հրամայելոյ անսաստ անխաղաղական անիրաւ նենգաւոր և ապաշնորհ մարդկան: Ոչ առ անձնասիրութեան կեթ իշխել կամիցի այլոց, ոչ այլ ինչ խնդրելով՝

բայց տիրել և 'ի գլուխս և 'ի փառս վայելել, ամպարիշտ է այնոքիկն և բռնաւոր և պատուհաս ազգի մարդկան։ Իսկ որ արդար օրինօք իշխէ այլոց՝ զնոցին և եթ խնդրելով օգուտ, այնոքիկն հոգաբարձու է նոցին. քան տէր՝ զհոգս և եթ անհամարս զիշխանութեանն կրելով, քաջ 'ի բաց յըղձից ընդարձակելոյ զիւր տէրութիւն։ Հովիւ՝ որ ոչ 'ի խաշանցն իւրոց կերակրի, որ պաշտպանէ նոցա 'ի գայլոց՝ զանձն իւր դնելով 'ի վերայ նոցա, որ զցայգ և զցերեկ տքնի արածել զնոսա յարօտս պարարտս, ոչ ցանկայ զթիւ նոցա յոլովել և յափշտակել զխաշինս այլոց՝ յաճախելով իւր հօտս։ Թէպէտ և չիք իմ երբէք առաջնորդեալ, այլ ուսեալ եմ յօրինաց և 'ի հանճարեղ օրէնսդրաց՝ քանի՜ դժուարին է առաջնորդութիւն քաղաքաց և թագաւորութեանց։ Վասն որոյ գոհ եմ ընդ իմն Իթակէ, թէպէտ և աղքատ և փոքրիկ. մեծ եղիցին ինձ փառք, եթէ արդարութեամբ գթութեամբ և արիութեամբ իշխեցից անդ, թէպէտ և վաղ իսկ հասցէ ինձ իշխել։ Այլ իցէ՜ թէ հաճեսցին դիք, զի հայրն իմ զերծեալ յաղետասատ մրրկաց՝ կարասցէ թագաւորել անդ ցալեւորեալ ծերութիւն, և լիցի ինձ վարժել ընդ երկար առ ոտս նորա յաղթել կրիցս իմոց առ 'ի գիտելոյ ապա նուաճել զժողովրդեանն։

Եւ ապա յաւել Տելեմաք. Լուարո՛ւք արքայք գումարեալք որ ինչ պարտ համարիմ ասել

ձեզ յօգուտ։ Եթէ տայցէք զոր Պաւղինեաց թագաւոր արդար, առաջնորդեսցէ նոցա արդարութեամբ և ուսուսցէ նոցա քանի՛ օգուտ է կալ հաւատարիմ և չյափշտակել ինչ զդրացւոյն, զոր չիք ուսեալ նոցա երբէք ընդ ձեռամբ ամպարշտին Մզրասսայ։ Այլ ցորչափ կացցեն նոքա ընդ ձեռամբ լաւ և զգօն թագաւորի, ոչ լիցի ձեզ երկիւղ յերեսաց նոցա. շնորհապարտ գտցին նոքա ձեզ՝ զայնպիսի ընկալեալ ՚ի ձէնջ թագաւոր բարի. գոհացողք լիցին և վասն խաղաղութեանն և բարեկենդանութեան՝ յոր վայելեսցեն. և փոխանակ արշաւելոյ յերկիր ձեր, օրհնեսցեն զձեզ. և թագաւորն և ժողովուրդ լիցին առ հասարակ ձեռասունք ձեր։ Իսկ եթէ լարաբաժին ՚ի ձեզ զերկիր նոցա առնիցէք, այժմէն ահա զհանդերձեալսն գուժեմ ձեզ չարիս։ Յուսահատեալ ազգն, և զէն առեալ անողորէն, տացէ պատերազմ արդար վասն ազատութեան. և դուք թշնամիք բռնաւորութեան պատերազմակից լիցին նոցա։ Այլ եթէ դուք ընդ նոսա իցեն, վաղ կամ անագան ՚ի պարտութիւն մատնեսջիք, յաղթութիւնք ձեր իբրև զծուխ ցնդեսցին, հանճար և իմաստութիւն բարձցի ՚ի զօրագլխաց ձերոց, քաջութիւն ՚ի զօրաց, և լիութիւն յերկրէդ։ Լինիցիք ինքնախաբք ՚ի յոյս, և յանդգունք ՚ի գործ. ընկեցուցանիցէք զլաւ որեարն ՚ի խօսելոյ զճշմարտութիւն, տապալեալ կործանեսջիք, և որք լսիցենն՝ ասիցեն. Որքա՜ն իցեն ազգք բարդաւաճեալք՝

ղոց պարտ էր օրէնս տալ աշխարհի. արդ փախըստականք զնան յերեսաց թշնամեաց, այսն եղեալ ազգաց՝ որ զնոսա առ ոտն կոխեն։ Ահա ձեռն դից. այսպէս պատուհասին ազգք անիրաւք գոռոզք և անողորմք։ Յուշ լիցի ձեզ և այն, զի 'ի բաժանել 'ի ձեզ զերկիրդ նուաճեալ՝ զումարէք 'ի վերայ ձեր զազգս ամենայն, որ շուրջ են զձեօք. Նիզակակցութիւնդ ձեր վասն ազատութեան Երեկորնեայց 'ի հարստահարութենէ Աղրաստայ՝ լիցի ատելի, և ազգք և ազինք յիրաւի զձեզ բամբասիցեն հարստահարիչս տիեզերաց։

Բայց համարեցուք այնպէս՝ թէ յաջողեսցի ձեզ յաղթել, ոչ Դաւնեաց միայն՝ այլ և հանուրց ազգաց. սակայն յաղթութիւն ձեր լիցի ձեզ 'ի կործանումն. և թէ ո՞րպէս, լուարո՛ւք։ Աշխարհակալութիւնդ այդ, որ չէ հաստատեալ յարդարութիւն, արկցէ 'ի ձեզ պառակտումն և հերձուած. չիցեն ձեզ օրէնք առ 'ի սանձահարել զիւրաքանչիւրոց 'ի ձէնջ զպահանջմունս, ամենայն ոք ըստ չափոյ զօրութեան իւրոյ խընդրեսցէ իւր բաժին, և ոչ ոք 'ի ձէնջ ունիցի իշխանութիւն 'ի վերայ այլոց՝ խաղաղութեամբ զբաժինսն առնելոյ։ Եւ ահա աղբիւրք պատերազմաց, զորոց թոռունք ձեր ոչ տեսցեն երբէք զսպառուած։ Ո՞չ լաւ ևս իցէ արդարութեան և չափոյից պատուական կալ, քան իշխանասիրութեամբ այսքան վտանգ և աղէտս անհրաժեշտս ձգել յանձինս։

Ո՛չ ցանկալի ևս իցեն խաղաղութիւն խորին, և կցորդ նմին քաղցր և անմեղ բերկրութիւն, անկարօտ լիութիւն, բարեկամութի ազգաց դրացեաց, փառք անանջրպետ յարդարութենէ, և պատիւ՝ զոր ստանայցէք հաւատարմութեամբդ իրաւարար կալոյ ազգաց օտարաց, քան զխօլ սնափառութիւն անխրատ աշխարհակալութեան: Ո՛վ բռունք ժողովրդոց, որ տեսանէքդ զի ոչ առ 'ի շահ ինչ օգտի բարբառիմ. լուարուք ինձ՝ որ վասն առաւել սիրոյ ձեզ հակաճառեմ, յանձն առեալ առ 'ի խելամուտ առնելոյ զձեզ ճշմարտութեան՝ դժպհի իսկ լինել ձեզ ո՛վ Թագաւորք:

Մինչդեռ Տելեմաք զայսոսիկ նոր իմն և չքնաղ և մեծասաստ իշխանութեամբ ատենաբանէր, և Թագաւորք առ հասարակ հիացմամբ յակճիռս կացեալ՝ զարմանային ընդ հանճարեղ խորհուրդս նորա, շշունջ խառնաձայն լսելի եղև ընդ բանակն, և պատգամ մինչև 'ի ժողովեալսն հասեալ ասէ. Հիւր անծանօթ 'ի ծովեզր աստ արամբք սպառազինօք հասեալ կայ յաղթահասակ՝ զդիւցազին բերելով կերպարանս, և յերեսաց իսկ նորա է միտ առնուլ՝ զի բազում ինչ կրեալ իցէ նորա վիշտս, և արութեամբն մեծաւ գեր 'ի վերոյ ամենայն վշտակրութեանց արշաւեալ: Զօրք սահմանապահք ծովեզերացն չտան նմա տեղի 'ի սկզբանն որպէս հինի ասպատակաւորի. այլ նա անվեհեր ձգեալ զսուսեր՝ խնդրէ ապատան և խաղաղութիւն, սպառնայ սաստիւ ընդ-

դէմ հալածչաց սպառ ունել անձին, և մատուցանէ ուղէշ ձիթենւոյ իբր աղաչաւոր, աղերս առնելով յանդիմանն լինել որոց հրամայեն ասա Ագրեկոր-նեայցս ծովեզերաց: Արքա տեղի տան, և ածեն զնա խօսել յատենի ասա Թագաւորացդ գումա-րելոց:

Զև պատգամաւորին աւարտեալ զբանսն, և ահա մտանէր հիւրն անծանօթ մեծավայելուչ փառօք 'ի հիացումն աւագախումբ ատենին. զի թուէր ինքն իսկ աստուածն Մարս, յորժամ 'ի լերինս անդ Թրակիոյ խմբէ 'ի Ճակատ ռազմա-րինուուշտ: Խօսել կալաւ և ասէ.

Հովիւք ժողովրդոց, որ գումարեալ էք աստա-նօր՝ որպէս ոչ ինչ երկբայիմ՝ առ 'ի պաշտպանել հայրենեաց յերեսաց հինից, կամ առ 'ի հաստա-տել օրէնս արդարակորովս, լուարուք հալածե-լումն 'ի բախտէն. մի տացեն ձեզ դիք նմանավիշտ հանդիպել բախտի: Ես ինքն եմ Դիոմեդ[5] արքայ Ետոլաց, որ հարի զԱստղիկ 'ի տրովական մարտին. վրէժխնդրութիւն նորին հալածէ զիս ընդ տիե-զերս: Պոսիդոն՝ որ ոչ ինչ զլանայ ծովածին դի-ցուհւոյն՝ մատնեաց զիս 'ի զայրոյթ ալեաց և մրրկաց, նաւակոծ 'ի ժայռս առնել զիս բազում անգամ: Անողոքելին այն Աստղիկ եբարձ յինէն զամենայն յոյս տեսանելոյ անդրէն զաթոռ իմ զտուն և զքաղցր արև հայրենեացս՝ ուր տեսի նախ զլոյս: Ոչ ևս լիցի ինձ տեսանել որ քան զամենայն ինչ է ինձ ցանկալի 'ի վերայ երկրի:

Մազապատուր յայնքանեաց լեալ նաւաբեկու-թեանց զամ՛ ի ծովեզերս յայսոսիկ անծանօթս խնդրել հանգիստ և ամուր ապաւէնի. եթէ է 'ի ձեզ երկիւղ աստուածոց, և մանաւանդ հիւ-րասիրի որմզդական դիցն վանատրի, և եթէ չի-ցեն սիրտք ձեր անկարեկիր, մի խնայէք յինէն 'ի լայնատարած սահմանս երկրիդ անկիւն մի անբեր, խորշ ինչ ամայի, երկիր աւազուտ, կամ սեպ մի ժայռի, հիմնել անդանօր ընդ ուղեկիցս իմ զկորստակից հայրենեաց մերոց զտխուր պատ-կեր: Ոչ խնդրեմք ինչ այլ, բայց դոյզն ինչ գե-տին՝ ձեզ ոչ պիտանի. կեցցուք անդանօր 'ի խա-ղաղութեան դաշնակիցք ընդ ձեզ և սերտ բա-րեկամք. Թշնամեաց ձերոց լիցուք թշնամիք, և լիցի օգուտ մեզ հաստատակաց. ոչ այլ ինչ խըն-դրեմք, բայց ազատութիւն և կեալ ինքնօրէն:

Իսկ 'ի բարբառել զայսոսիկ Դիոմեդեայ, Տե-լեմաք յառեալ 'ի նա՝ զամենայն ազգի ազգի կիրս 'ի դէմս բերէր: Ի սկսանել նորա զվէպս բազմար-կածեան ուղևորութեանն՝ յուսայր զի հայր իւր դիւցազինն այն իցէ անծանօթ. և ընդ յայտնել նորա զի էր Դիոմեդ, տխրեցան դէմք պատա-նւոյն իբր զծաղիկ չքնաղ 'ի դառնաշունչ հիւսի-սահողմն սեաւ մրրկէ խամրեալ: Իսկ ապա բողոք Դիոմեդեայ զերկարատև ցասմանէ դի-ցուհւոյն զարթեցոյց զսիրտ նորա 'ի յիշատակ անցիցն անցելոց ընդ հայր իւր և ընդ ինքն գըլ-խովին. արտասուք զուարճախառն տրտմութեան,

քամէին յաչաց նորա, և անկեալ զպարանոցաւն Իդոմենեայ, ասէ.

Որդի իմ Ողիսեայ՝ որ ծանօթ է քեզ, և որ 'ի յափշտակել քո զձիանն Հռեսեայ՝ զհռչակաւոր՝ եղև քեզ ձեռնտու: Այսպիսեան նման զիք որպէս և քեզդ. եթէ պատգամք Նչրեքեայ՝ չիցեն խաբուսիկք, աւականին կենդանի է նա. այլ աւա՜ղ, զի ոչ ևս կենդանի է ինձ: Թողի զԻթակէ, ելեալ 'ի խնդիր նորա. և արդ ոչ զնա և ոչ զԻթակէ է ինձ տեսանել: Ի միտ առ յինէն առածի ադետից՝ որպէս ընդ քոյդ լինիմ կարեկից. զի այս ևեթ թշուառութեան է օգուտ, կարեկից զալ թշուառաց: Օտար իմ յերկրիս, աւակայն մարթ է ինձ մեծդ Իդոմենեդ, (զի դատապարտակեալ 'ի տես մանկութեան ըստ քաւականին՝ թէպէտ և արկածք զհայրենիս իմ ընկճէին յայնժամ, ոչ անգիտանամ զփառս քոյին 'ի հանդէս մարտից)՝ աւակայն մարթ է ինձ, ով անյաղթելիդ դու յետ Աքիլլեայ 'ի մէջ Հելլենաց, օգնել քեզ խելք: Արքայք այսպիսիք, զորս տեսանես, մարդասէրք են յոյժ. գիտեն իսկ զի չիք առաքինութիւն, և ոչ ճշմարիտ երբէք քաջութիւն, ոչ փառք հաստատուն, առանց մարդասիրութեան: Թշուառութիւն յաւելու պայծառացուցանել զփառս արանց ազգաց. թերի է ինչ 'ի նոսա, եթէ իցեն անփորձք թշուառութեան. պակասէ 'ի վերայ նոցա օրինակ համբերութեան և անյողդողդ արիութեան. առաքինութիւն վշտակիր զորովէ

զանդրոտս առաքինութեանցս: Այլ իցի մեզ առաջի Հոգ. ափափել զքեզ, զիք զքեզ ածին այսր, պարգև նոցին է մեզ այս, և բարեբաստիկս համարիմք զմեզ այնու զի կարեմք զիւր տանել վշտաց քոց:

Այս 'ի խօսել նորա զայս, Դիոմեդէս հիացեալ կայր 'ի նա ակնկառոյց, և խանդաղատէր սիրտ նորա. զիրկս արկանէին միմեանց որպէս մանկունք իրերաց վաղնջուց բարեկամք, և ասէր Դիոմեդէս. Ո՛վ իմաստնոյն Ոդիսեայ զաւակդ արժանաւոր, զքաղցրութիւն դիմաց նորա նշմարեմ 'ի քեզ, զշնորհս շրթանց, զկարօղ ճարտարխօսութեան, զազնուականութիւն իմաստից և զհանճար խորհրդականութեան: Յայնժամ մատեաւ և Փիլոկտետ զիրկս արկանել դիւցազինն Տիդեան զաւակին. պատմէին միմեանց զեղերական անցս իւրեանց, և ապա Փիլոկտետ ասէ. Ոչ ինչ երկբայիմ զի ցանկալի իցէ քեզ տեսանել զխոհական ծերունին զՆեստոր. զեռ ևս կորոյս նա զՊիսիստրատ զվերջին իւր զորդի, և ոչ ևս ինչ մնայ նմա յերկրի՝ բայց արտասուօք իջանել 'ի գերեզման. Ե՛կ 'ի սփոփել զնա, բարեկամ՝ Թշուառ 'ի դէպ ևս է 'ի սփոփումն սրտի: Այս զնացին անդէն 'ի խորանն Նեստորի, որ հազիւ ծանեաւ զԴիոմեդ յաղմկելոյ ցաւոց զուշ և զզգայութիւնս նորա: Ի սկզբան անդ ելաց ընդ նմա Դիոմեդէս, և հանդիպումն նոցա միմեանց յաճախեաց զվիշտս ծերունւոյն. բայց տակաւ յե-

ըեռաց մտերմին ցածեալ սրտի նորա, և զկայ առին առ վայր մի ցաւք իւր պատմութեամբ վշտացն՝ զորս կրեալն էր, և զբարեկամին ևս լսելով զվշտակրութիւնն ։

Այլ մինչդեռ խօսէին նոքա ընդ միմեանս, առքայք զումարեալք և Տելեմաք ընդ նոսա խորհուրդ առին զառաջիկայից իրացն ։ Խրատ տայր Տելեմաք տալ Դիոմեդեայ զերկիրն Արպեայ, և թագաւոր Դաւնեաց կացուցանել զՊոլիդամաս յազգէ նոցա ։ Այս Պոլիդամաս էր զօրավար քաջ, զոր Ադրաստայ առ նախանձու չէր կացուցեալ 'ի գործ՝ թէ գուցէ ճարտարութեան նորա ընծայէին յաղթութիւնքն, զորոց միայնակ յուսայր ըմբոշխնել զփառս ։ Պոլիդամաս բազում անգամ ազդ արարեալ էր նմա որպէս բարեկամ, զի յոյժ 'ի վտանգ արկանէր զկեանս իւր և զբախտ աշխարհին՝ տալով պատերազմ ընդդէմ բազմութեան ազգացն զումարելոց, և յորդորեալ խակ զնա ուղղութեամբ և չափոյիւք գնալ ընդ սահմանակիցս. բայց ատեցողք ճշմարտութեան ատեան և զճշմարտախօսս, և ոչ յորդորին ոչ յանկեղծութենէ նոցա, ոչ 'ի տիրասէր նախանձուէ, և ոչ 'ի չխնայելոյ զշահ իւրեանց ։ Պատիր յաջողութեամբ խաստացեալ էր սիրտ Ադրաստայ առ խորհուրդս փրկաւէտս, և ոչ անսացեալ այնոցիկ՝ յաճախէր կանգնել յաղթութիւնս 'ի վերայ թշնամեաց գոռոզութեամբ նենգանօք և հարստահարութեամբ. և ոչ ինչ կրելով 'ի չարեացն՝ զորս

'ի բազմաց հետէ գուժէր նմա Պոլիդամաս՝ ծաղր առնէր զերկչոտ խոհականութեամբ որ կասկածէ միշտ պատահարս չարեաց։ Դըժ-պըհի եղև նմա Պոլիդամաս, և յամենայն պաշ-տամանց 'ի բաց անկեալ՝ տուայտէր լքեալ և ան-տես լեալ 'ի կարօտութեան։

Ակռան եղև 'ի սկզբան յաղխտից, այլ նոքին իսկ աղէտքն լցին զթերրին նորա, ցուցեալ նմա ակներև զպատրանս աւագութեանց. զգօնացաւ նա տուժիւք անձին, և ուրախ լինէր ընդ Թշուա-ռութիւն իւր։ Ասաւ մեղմով 'ի լռութիւն և 'ի սակաւապէտ կեանս, խոկալ անզբաղապէս 'ի ճշմարտութիւն, հրահանգել 'ի նորբքին առաքի-նութիւնս՝ որ գերագոյքն են քան զերևելիսն, և անկարօտ լինել այլոց։ Բնակէր նա 'ի ստորոտս Պարգանեայ՝ լերին յամայոջ ընդ քուաւ ժայռի միոյ՝ որ կամարանայր զնովաւ. վտակ քարաղէժ բուժէր զծարաւ նորա, և ծառք սակաւք մատու-ցանէին միրգս նմա։ Էին նորա ստրուկք երկու առ 'ի մշակել զանդ իւր փոքրիկ, վաստակէր և ինքն ընդ նոսա. և երկիրն հատուցանէր նմա տոկոսեօք զվարձս վաստակոցն՝ լցեալ զամենայն պէտս նորա, ոչ պտուղս ևեթ և ունդս բերեալ առատ, այլ և ծաղկունս ազգի ազգի անուշա-հոտս։ Անդ ողբայր զԹշուառութիւն ժողովրդոց, զորս անմիտ փառամոլութիւն Թագաւորի ձգէ 'ի կորուստ. և դէտակն ունէր օր ըստ օրէ կործան-մանն Ադրաստեայ յարդարադատ դից՝ որ երկայ-

նաւմոտէին նմա. և որչափ յաճախէին յաջողութիւնք բռնաւորին, այնչափ ևս առաւել մօտ նկատէր անկումն նորա անկանգնելի: Զի յանդգնութիւն յաջողեալ զառածանօք, և իշխանութիւն հասեալ 'ի ծայր բռնաւորութեան, կարապետք են կործանմանն թագաւորաց և թագաւորութեանց: Սակայն 'ի լուր պարտութեան և սպանմանն Ադրաստայ ոչ պանծացաւ նա ընդ կանխասացութիւն իւր, և ոչ խնդաց ընդ զերծանել իւր 'ի բռնաւորէն. այլ յոգւոց եհան ընդ վտանգ Դաւնեաց անկանելոյ 'ի ծառայութիւն:

Զնա Տելեմաք առաջարկեաց կացուցանել թագաւոր, զի վաղ իսկ 'ի վերայ հասեալ էր քաջութեան նորա և առաքինութեան. զի ըստ խրատուն Մենտորի ոչ դադարէր 'ի տեղեկանալոյ ամենայն ուրեք լաւութեանց և յոռութեանց աւագ որերոյ, ոչ միայն ազգաց նիզակակցաց գումարելոց 'ի պատերազմն, այլ և թշնամեաց. երիցագոյն փոյթ էր նմա հետազօտել ամենայն ուրեք զայս հանճարեղս և գերազանցեալս առաքինութեամբ:

Դժուարէին զառաջինն արքայք նիզակակիցք կացուցանել թագաւոր զՊոլիդամաս, զի ասէին. Զփորձ իսկ առաք՝ թէ քանի՛ ահաւոր է սահմանակցաց թագաւոր Դաւնեաց պատերազմասէր և հմուտ հրահանգաց մարտի: Պոլիդամաս, զօրավար քաջ, կարող է ածել 'ի վերայ մեր վտանգս

մեծամեծս։ Բայց Տեղեկանք պատասխանի եւս, և ասէ. Այո՝ հմուտ է Պողիդամաս 'ի պատերազմ, այլ սիրէ զխաղաղութիւն. որ են ամոլք առաքինութեան ցանկալիք։ Որ փորձն է աղետից վտանգաց և դժուարութեանց մարտի, կարող է խուսել յայնմանէ առաւել քան զանփորձ ոք։ Պողիդամաս էառ զճաշակ բարեբաստութեան խաղաղական կենաց, դատապարտեաց զպատերազմունս Աղքասատոց, և զուշակեաց իսկ զաղետալի ելս նոցին։ Նշկահելի եւս է ձեզ թագաւոր անզօր ագէտ և անփորձ, քան որ զիտիցէ և առնիցէ զամենայն իւրովի։ Թագաւորի տկարի և տգիտի բարեկամ ախտաւոր կամ մարդահաճոյ անխաղաղասէր և փառասէր պաշտօնէի ապաստանորեսցեն աչք, որով հանապազ կամեցի իսկ իւրոց ձեռն արկցէ 'ի պատերազմ։ Չկարիցէք երբէք վստահել 'ի նա, զի և ոչ ինքն վստահել յանձն կարիցէ. չկասցէ 'ի խոստմանն, և հարկ արասցէ ձեզ ընդ հուպ բառնալ զնա 'ի միջոյ, զի մի ծանրասցի ձեռն նորա 'ի վերայ ձեր։ Ո՞չ օգտակար եւս իցէ և աներկեան, միանգամայն և արդար և ազնուական, մի 'ի դերև առնել զայս Պառնեաց, և տալ նոցա զոր արժանի աթոռոյ 'ի թագաւոր։

Հաւանեցաւ ատեանն ամենայն ընդ բանս պատմանոյն, և առաջարկեցին Պառնեաց զՊողիդամաս։ Նոքա անձկանօք մնալով պատասխանոյ, իբրև լուան զանուն Պողիդամեայ՝ եասոն

պատասխանի. Այժմ խելամուտ եմք զի արքայք Նիզակակիցք հաւատարմութեամբ պահն ընդ մեզ, և կամին յաւէրժական ընդ մեզ ունել խաղաղութիւն, զի տան մեզ 'ի թագաւոր զայնպիսի ոք առաքինի և կարող 'ի տեսչութիւն: Այլ թէ զմա ոք զկնամարդի և զոգէս առաջարկեալ էր, էր մեզ կասկածել թէ գուցէ ընկճիցեն զմեզ և փոխեսցեն զկարգ տեսչութեան մերոյ, և ոխ 'ի սրտի մերում մթերեալ պահել ընդ խիստ և ընդ մեխ մեխս զնացս նոցա. այլ ընտրութիւն Պոլիդամեայ յայտ առնէ զատոյգ անկեղծութիւն նոցա: Այս քանզի արքայք Նիզակակիցք արդարութեան ևեթ և ազնուականութէ ձեան 'ի մէնջ աներկբայելի, տալով մեզ թագաւոր՝ որում չէ մարթ առնել ինչ ընդդէմ ազատութեան և փառաց ազգիս, վկայութիւն ունեմք և մեք առաջի արդարադատ դից, զի եթէ վերջանեալ ընկրկեսցին յաղբերականունս անդր ուրեանց գետք, լիցի և մեզ վերջանալ 'ի սիրոյ թագաւորացդ բարերարաց: Յիշեսցեն դարուց 'ի դարս թոռունք մեր որ ինչ այսօր ընդունիմք մեք 'ի դոցանէ երախտիս, և նորոգեսցեն յազգէ յազգ զոսկեղինիկ դարուն զխաղաղութիւն ընդ ծովեզերս առ Հասարակ Արեկոյնեայս:

Այս ասա առաջարկեաց նոցա Տելեմաք՝ տալ Դիոմեդեայ զերկիրն Արպեայ 'ի բնակութիւն գաղթականին, և ասէ. Ազգդ տարաշխարհիկ գտցի ձեզ շնորհապարտ, բնակեալ յերկրի՝ որ

թողեալ է 'ի ձէնջ անպիտանակ: Յուշ լիցի ձեզ, զի սիրել զմիմեանս պարտք են ամենեցուն, զի ընդհանրականագոյն է երկիր քան զպէտս ազգի մարդկան, զի հարկ է ունել դրացիս, և զի լաւագոյն է զի իցեն նոքա ձեզ պատուականք շնորհի բնակակցութեանն: Ողորմեցարուք թշուառութեան թագաւորին, որ չկարէ գտանել յաթոռ իւր. Պոլիդամաս և Դիոմեդ կցորդեալք ընդ միմեանց յօդիւ արդարութեան և առաքինութեան, որ միայն են անլուծանելի, տացեն ձեզ վայելել 'ի խորին խաղաղութեան, և կացուսցեն զձեզ ահարկու ազգաց դրացեաց՝ որ կամիցին ընդդարձակել զսահմանս իւրեանց: Տեսէք, ո՛վ Դաւնիք, զի տուաք ազգի և երկրի ձերում թագաւոր՝ որ մինչև յաստեղս կարող է ամբառնալ զփառս ձեր. տուէք ապա և դուք, զի մեք խնդրեմք 'ի ձէնջ, զերկիրդ ձեզ անպիտան արժանաւորի ամենայն նպաստից հէք թագաւորիդ:

Յայնժամ պատասխանի ետուն Դաւնիք, և ասեն. Չկարեմք և ոչ մի ինչ խնայել 'ի քէն, զի դու ետուր կացուցանել զՊոլիդամաս մեզ թագաւոր: Նա գնացցէ յանապատ 'ի խնդիր Պոլիդամայ առ 'ի թագաւորեցուցանել զնա, տալեալ նախ Դիոմեդեայ զդաշտս Արպեայ արգաւանդս 'ի հիմնարկութիւն նորոյ թագաւորութեանն: Նա յոյժ ուրախ եղեն ընդ այն արքայք նիզակակիցք. զի գաղթականին այնմիկ Յունաց մարթ էր ձեռն տալ նոցա հզօրեղապէս, եթէ երբէք

Գտանէիք 'ի նախանձ նմանութեան չարեացն Ա-դրաստոյ մտաբերէին 'ի յափշտակութիւնս ։

Պատրաստեցան այսպէս արքայք նիզակակիցք 'ի չու . և Տելեմաք մեկնէր արտասուօք, հանդերձ գնդաւն իւրով, գիրկս արկեալ քաջին Դիոմե-դեայ, և խնամոտոյ անմխիթար ծերունոյն՝ Նես-տորի, և ողջագուրեալ զգերահռչակն Փիլոկտետէ հերակլեան նետիցն արժանաժառանգ ։



# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ

## ՔՍԱՆԵՐՈՐԴԻ ԱՌԱՋՆԵՐՈՐԴԻ ԳՐՈՑՆ

1 Մեդի գաւառ գաւառնեանն Փոկիոյ, և մայրաքաղաք նորա Անդիկիրայեալ՝ որոյ կան ցարդ աւերակք։

2 Դուլիքիոն կղզեակ 'ի պատրասեան ծովի, յարևելից կեփաղենեայ, որ արդ կոչի Դոլիքի։

3 Զակինթոս կղզի 'ի յոնիական ծովու յարևմտից Պելոպոնեսեայ, որ արդ կոչի Զանթէ։

4 Նաւպղիոս արքայ Եւբիոյ սրտմտեալ ընդ անիրաւ մահապարտութիւն որդւոյ իւրոյ Պաղամեդեայ 'ի զօրավարաց բանակին Յունաց ըստ սադրանացն Ոդիսեայ, արար խարոյկ մեծ 'ի լերինն Կափարեայ առ 'ի ձգել անդր զնաւատորմիղ Յունաց 'ի վտանգ։ Այլ երբև 'ի գերև ել խորհուրդ նորա, և Ոդիսևս և Դիոմեդէս՝ ընդ որս առաւել ոխացեալն էր՝ զերծան ընդ այլ ճանապարհ, հեղձաւ ծովամոյն առ կատաղութեան։

5 Դիոմեդէս Թագաւոր Ետոլիոյ, որդի Տիդէոսի, քաջագոյն 'ի Յոյնս յետ Աքիլլեայ և Էասայ 'ի տրովադեան մարտին. որ ընդդէմ Էնեայ և Հեկտորի մարտեաւ, և յափշտակեաց զՊալլադիոն 'ի մեհենէն Պալլասայ։

6 Հռեսոս արքայ Թրակացւոց, որ գնաց յօգնութիւն տրովացւոց ընդդէմ Յունաց. և մատնութեամբ Տոլոնի սպանաւ յառաջնումն անդ գիշերի 'ի Դիոմեդեայ և յՈդիսեայ, և կէսք 'ի զօրաց նորա մատնեալ 'ի սուր, և այլք 'ի փախուստ դարձան. որով երիվարք նորա սպիտակք չկարացին ըմպել 'ի գետոյն Քսանթեայ, և ոչ ճարակել 'ի դաշտս Տրովադայ 'ի լրումն գուշակութեան պատգամաց։

7 Երեբոս, դիք դժոխոց, հայր գիշերոյ, ծնեալ 'ի վհէ և 'ի խաւարէ զոր քերթողք վարեն փոխանակ դժոխոց։

8 Պարթենոս լեառն. տես գիրք Ի, ծան. Ե։

# ՆԱԽԱԴՐՈՒԹԻՒՆ

Տելեմաք հասեալ 'ի Սալենտ, զարմանայ ընդ քաջ մշակութիւն անդաստանացն և ընդ նուազել պերճութեանց 'ի քաղաքին: Մենտոր ցուցանէ նմա զպատճառս փոփոխութեանն, և որ ինչ սովոր են խափան լինել զարգացման աշխարհին. և օրինակ առաջի առնէ նմա զգնացս և զկարգ տնտեսութեան Իդոմենեայ: Յայտնէ ապա Մենտորի Տելեմաք զսէր իւր ընդ Անտիոպեայ դստեր արքային, և զխորհս առնելոյ զնա իւր 'ի կնութիւն. գովէ և ինքն Մենտոր զբարեմասնութիւնս օրիորդին, և հաւաստէ 'ի դիցն իսկ սահմանեալ զնա պատանւոյն. այլ յաւելու զի պարտ է նմա առ ժամս փութալ յԻթակէ:

# ԱՐԿԱԾՔ ՏԵԼԵՄԱՔԱՅ



## ԳԻՐՔ ՔՍԱՆԵՐՈՐԴ ԵՐԿՐՈՐԴ

Բայց պատանին Տելեմաք իղձ լինէր փութայր հասանել առ Մենտոր 'ի Սալենտ, և նաւել ընդ նմա վաղվաղակի յԻթակէ՝ ուր յուսայր գտանել զհայր իւր ։ Այլ իբրև մերձեցաւ 'ի Սալենտ, և զդաշտավայրս՝ զորս թողեալն էր անգործ ամայի՝ ետես մշակեալս իբրև զդրախտ, և զժիրաժիր մշակաց ամբոխ համատարփիւռ ընդ արտորայս, հիացեալ եկաց. և ծանեաւ անդէն զարգասիս հանճարոյն Մենտորի ։ Այլ 'ի մտանել առաջ 'ի քաղաքն, և 'ի տեսանել նուազեալ յոյժ զճարտարս բարեկեցիկ կենաց, և մանաւանդ զշուք և զպերճութիւն, տրտմեցաւ ընդ այն. զի սիրէր բնաւորապէս զպայծառութիւն և զբարգաւաճանս ։ Բայց այլ խորհուրդք զբաւեցին անդէն զմիտս նորա 'ի նշմարելն 'ի բացէ զԻդոմենեւս և զՄենտոր, զի գային առ նա ։ Յուզեցան գութք նորա խառն ընդ հրճուանս. զի թէպէտ և յաջողեալ 'ի մարտին

ընդդէմ Ադրաստայ, սակայն կասկածէր թէ գու-ցէ Մենտոր չիցէ հաճ ընդ նա. և որչափ յառաջ մատչէր, առաւել ևս դիտէր տեսանել թէ իցէ՞ յաչս նորա սաստ կշտամբանաց։

Նախ Իդոմենևս գիրկս հայրաբար արկ նմա. և ապա Մենտոր, մինչ նա արտասուօք զպարտամա-ցուն իւրով անկանէր, ասէ. Գոհ եմ ընդ քեզ, սխալանք մեծամեծք՝ յորս զառածար՝ ետուն ճա-նաչել քեզ զանձն, և մի՛ լինել յանձնապաստան։ Բազում այն է՝ զի օգտակարագոյնք են մարդոյ սխալանք իւր քան զպայծառ արութիւնս. զի մե-ծագործութիւնք ուռուցանեն զսիրտ, և ազդեն 'ի նա բազմավտանգ յանդգնութիւն, իսկ սխալանք զգաստացուցանեն զնա, և դարձուցանեն 'ի նա զկորուսեալն յաջողութեամբք զգօնութիւն։ Զգովութիւնս պարտ է ընծայել դից, և մի՛ զնոյին խնդրել 'ի մարդկանէ. դու ապաքէն մե-ծամեծս գործեցեր. այլ խոստովան լեր զճշմար-տութիւն, զի ոչ 'ի քէն մանաւանդ այդոքիկ գոր-ծեցան քան յայլմէ ուստեք ազդեցութենէ՝ ո-րում մարթ իսկ էր քեզ շտապաւ քով և ան-զգաստութեամբ ոչ բարւոք արքանեկել։ Մի՛ 'ի միտ առնուս, զի գեր 'ի վերոյ քան զբնութիւն քոյին կացոյց զքեզ Աթենաս՝ առ 'ի գործել 'ի ձեռն քո զայդ ամենայն. նա ինքն զամենայն թե-րութիւնս քո արգել, որպէս Պոսիդոն սաստեալ մրրկաց՝ արգելու զնոցին բարկացայտ ալիս։

Այսպէս 'ի հարցանել Իդոմենեայ մանրախու-

զիւ զկրետացիս դարձեալս 'ի պատերազմէն , լսէր Տեղեմաքս զհանճարեղ խրատս Մ՝ենտորի ։ Եւ ապա շուրջ հայեցեալ զարմացմամբ , ասէ ցՄ՝ենտոր · Տեսանեմ կերպարանափոխ լեալ զամենայն , այլ զպատճառն ոչ 'ի միտ առնում՝ իցէ՞ թէ պատահեցին ինչ արկածք 'ի Սալենտ մինչ չէի ես աստ · զի՞ է զի ոչ ևս տեսանեմ զշուք և զպայծառութիւն , որ ամենայն ուրեք նախ քան զմեկնելն իմ աստի փայլէին · ոչ ևս տեսանեմ ոսկի և արծաթ և ակունս պատուականս · հանդերձք անպաճոյճք , շինուածք նորակերտք ոչ իբրև զառաջինսն մեծագործք և հոյակապք , արուեստք կործան անկեալ , և քաղաքս ամայացեալ ։

Պատասխանի ետ Մ՝ենտոր ժպտելով , և ասէ · Տեսե՞ր և զդաշտավայրդ շուրջ զքաղաքաւս ։ Տեղեմաքս ասէ · Տեսի ամենայն ուրեք զերկրագործութիւն յարգեալ , և զդաշտս արօրադրեալ ։ Եւ Մ՝ենտորի 'ի վերայ ածեալ , ասէ · Եւ ո՞ր լաւ իցէ , քաղա՞ք հոյակապ ճոխ 'ի կիճ յարծաթ և յոսկի՝ շուրջ պատեալ յանգործ և յանբեր դաշտօրէից , թէ 'ի դաշտավայր մշակեալ և բերրի քաղաք բարեքիկ հանդերձ բարեբարոյ բնակչօք ։ Քաղաք մեծակառոյց , յորում իցեն հոյլք արուեստաւորաց պարապելոց 'ի մեղկել զբարս հայթայթանօք հեշտասուն կենաց , և շուրջ զնովաւ երկիր անարգասաւոր և խոպան , հրէշ է ստուարագլուխ՝ որոյ իրան վտիտ և նիհար անպատկանաւոր ամենևին է ընդ գլխոյն ։ Բազմութիւն ժողովրդեան և լիութիւն պարենից են ստոյգ զօ-

րութիւն և զանձն պետութեան ։ Ի սորա Իդո-
մենեայ ժողովուրդ անհաճար և անխոնջ 'ի վաս-
տակոց, բնակեալ ընդ ամենայն սահմանս պե-
տութեան իւրոյ․ զի ամենայն երկիր նորա քաղաք
մի է, և միջակէտ նորա Սալենտ ։ Պակասէին
մարդիկ յանդաստանս, և էր 'ի քաղաքին որեար
բազում աւելորդ․ սոսկ անողր զաւելորդս փոխե-
ցաք․ և յօտար ազգաց ևս յաւելաք անդր ժող-
վուրդ բազում ։ Ըստ յաճախել մարդկանն, յա-
ճախեն արգասիք երկրին երկոսեք նոցա․ և մեղմ
և խաղաղական յաճախութեամբքն տուեալ ընդ-
արձակի թագաւորութիւն նորա քան աշխարհա-
կալութեամբ ։ Ոչ ինչ 'ի քաղաքէ սոսկ 'ի բաց
վարեցաք, բայց միայն զարուեստս աւելորդս՝ որ
զաղքատս խափանեն 'ի հայթայթելոյ զպէտս
իւրեանց կարևորս երկրագործութեամբ, և ա-
պականեն զճոխս՝ հրապուրելով 'ի սնափառս պեր-
ճանս և 'ի մեղկութիւն․ այլ ոչ ինչ սահմանեցաք
գեղարուեստից, և որոց է հանճար զարգացու-
ցանելոյ զնոսին ։ Այսպէս Իդոմենէս հզօրագոյն
է յոյժ արդ քան յորժամ զարմանայինն ընդ փա-
ռաւորութիւն նորա ։ Նոր ակնախտեալ պայծա-
ռութեամբքն ծածկէր յանժամ տկարութիւն
իւր և թշուառութիւն, որ կործանանէր վաղ 'ի
վերայ հասուցանելոց էր աշխարհին ։ Արդեն-
թիւ ևս են արդ մարդիկդ, և պարէն նոցա դիւ-
րապատրաստ․ և սովորեալք 'ի վաստակս 'ի վիշտս
և յարհամարհութիւն կենաց, առ սէր գեղեցիկ

օրինաց կազմ կան 'ի պատերազմել պահ ունել անդադարականաց զօրս ինքեանք մշակեն։ Պետութիւնս այս, զոր անկեալ կարծես, ըսցի ընդ հուպ 'ի զարմացումն Եւրոպացւոց։

Այլ 'ի մին, Տելեմաքէ. են 'ի տեսչութեան ժողովրդոց երկու ինչ վնասակար, որոց գրեթէ անխուսելի է վտանգ. անիրաւ և բռնաւոր իշխանութիւն, և զեղխութիւն ապականիչ բարուց։

Թագաւոր՝ որ ոչ ճանաչէ այլ օրէնս բաց յինքնիշխան կամաց իւրոց, և ոչ սանձահարէ զկիրս իւր, ապաքէն կարող է ամենայնի. այլ կարողութեամբն այնուիկ պեղէ զհիմունս իշխանութեան իւրոյ. ոչ ևս է նմա հաստատուն կարգ և կանոն տեսչութեան. ամենեքին ելևելս առնեն զքծնեամբք առ 'ի մարդահաճել զնա. ոչ ևս իշխէ ժողովրդեան, այլ ամբոխի ստրկաց՝ որոց թիւ նուազէ օր ըստ օրէ։ Ո՞ իշխեսցէ ասել նմա զճշմարտութիւն. ո՞ թումբ և ամբարտակ ընդդէմ ուղխի հեղեղացն կանգնել կարասցէ. ամենայն ինչ տեղի տայ առաջի նորա, և իմաստունք խուսեալ յերեսաց նորա ծածկին և յոգւոց հանեն։ Զիք այնուհետև որ կարիցէ զարձուցանել 'ի ձոր իւր զիշխանութիւնն զայն յորդեալ հեղեղաբար, բայց յեղափոխութիւն իմն բուռն և յանկարծ. այլ և այն յաճախ փոխանակ չափոյից ածէ կործանումն անկանգնելի։ Զիք ինչ որ աղխտագոյն սպառնայցէ անկումն Թագաւորի, որպէս ծայրայեղ իշխանութիւն. հանդոյն

ուժգնապիրկ աղեղան, զոր թէ ոչ թուլացուցէ ոք՝ բեկանի. այլ ո՞ երբէք իշխեսցէ թուլացուցանել զայն: Իդոմենէս զեղծեալ էր 'ի սաստ հրապուրանօք այսպիսւոյ իշխանութեան, և կործանեալ յաթոռոյ, այլ չև ևս զգաստացեալ. հարկ եղև դից առաքել զմեզ այսր առ 'ի զերծուցանել զնա 'ի վտանգէ յանդգնութեան և առաւելազանց իշխանութեան՝ որ ոչ իսկ վայել է մարդոյ. հանդերձ այսու ամենայնիւ գրեթէ և հրաշից եղեն պէտք առ 'ի բանալ զաչս նորա:

Երկրորդն վտանգ, իբր անհրաժեշտ, է զեղխութիւնն. զի որպէս ծայրայեղ իշխանութիւն զերծուցանէ զթագաւորս, այսպէս և զեղխութիւն ապականէ զազգն համօրէն: Այլ զեղխութիւն, ասեն, կերակրէ զաղքատս 'ի ծախուց մեծատանց. իբր այն թէ չիցէ մարթ աղքատաց օգտակարագոյն ևս հայթայթել զպարէն իւրեանց՝ յաճախելով զբերս երկրի, առանց պատրաստելոյ հնարս հեշտասուն կենաց առ 'ի մեղկութիւն մեծատանց: Սովորի ազգն ամենայն կարծել առ 'ի կեանս համարել զաւելորդսն, որ լոկ օրէ յաճախեն կարիք նորանորք, և ոչ ևս կարէ ոք կեալ առանց իրաց՝ որ յառաջ քան զամս երեսուն անծանօթք էին: Եւ կոչի զեղխութիւնս այս կիրթ ախորժակ, զարգացումն արուեստից, և բարգաւաճութիւն ազգի: Յոռութիւն այսպիսի, որ և այլս զհետ իւր առեալ ձգէ անբաւս, գովի իբր առաքինութիւն. և ապականութիւն նորին

անդաստին 'ի Թագաւորէն մինչև 'ի սինլքոր խու-
ժանն սփռեալ տարածանի ։ Արքայազունք զշուք
արքունի նկարուն բերել յանձին, աւագ որեարն
զարքայազանց, և սոսկականք զաւագանւոյն. զի
ով ոք 'ի չափու պայմանին զանձն ունի. սինլքորն
ընդ միջակայնոց ցանկայ հաւասարել, և ամենայն
ոք քան զկար իւր 'ի վեր նկրտի, կեսք առ մնա-
փառ պերճանաց և առ 'ի վայելս գոյից իւրեանց,
այլք առ ձախողակի ամօթոյ և առ 'ի ծածկել
զաղքատութիւն իւրեանց ։ Իմաստնագոյնք
իսկ, որք դատապարտ առնեն զմեծս զայս ան-
արգութիւն, չիշխեն յառնել ընդդէմ և զհա-
կառակն տալ օրինակ ։ Համակործան անկանի
ազգն, և կարգք վեր 'ի վայր հարեալ ընդ իրեարս
աղմկին ։ Իղձ մթերից ընչից առ 'ի կարելոյ լնուլ
զծախս սնոտիս՝ զեղծուցանէ զսիրտս զևս անսա-
րաստս. ոչ ևս այլ ինչ խնդրի բաց 'ի մեծութեանց,
և աղքատութիւն 'ի նախատինս համարի ։ Թէ-
պէտ և իմաստուն իցես և ճարտար և առաքինի,
հրահանգիչ այլոց, քաջայաղթ 'ի մարտս, փրկիչ
հայրենեաց, և պատրաստ 'ի նուիրել զօգուտ իսկ
անձին, եթէ ոչ հանդէս առնիցես բարեմասնու-
թեանց քոց մնափառ պերճանօք, արհամարհիս ։
Անինչք անգամ ցանկան ընչեղք երևել, և ծա-
խեն որպէս ունևորք. փոխ առնուն, խաբեն, և
բիւր հնարս անարժանս հնարին առ 'ի մեծանալ ։
Եւ երբ մարթ իցէ զդէմ ունել չարեացդ. հարկ
է փոխել զախորժակս և զսովորութիւնս բնաւո-

րեալս յազգին, և տալ նմա օրէնս նորա: Այլ ո՞ ձեռնհաս իցէ առնել զայս, բայց թագաւոր ոք ի-մաստասէր՝ որ գիտիցէ օրինակաւ չափոյից յանօթ առնել զբազմածախս պերճանս այլոց, և քաջալերել զիմաստունս՝ որոց ցանկալի է պատուապարան պարկեշտ սակաւապիտութեան իւրեանց ունել զթագաւորին:

Ի լուր խրատուցս այսոցիկ՝ որպէս 'ի խոր քնոյ զարթուցեալ Տելեմաք, խելամուտ լինէր ճշմարտութեան. և դրոշմէին այնոքիկ 'ի սիրտ նորա, որպէս ճարտար քանդակագործ դրոշմէ 'ի կիճ զտիպս ըստ կամի, տալով նմին փափկութիւն կենաց և շարժումն: Նա եւեթ կայր, և զլուեալն յեղյեղելով 'ի միտ՝ շուրջ յածէր զաչս ընդ քաղաքն, դիտել որ ինչ 'ի նմա փոփոխութիւնք լեալ էին, և ապա ասէ ցՄենտոր. Իմաստնագոյն քան զամենայն թագաւորս կացուցեր դու զԻդոմենեւս, որպէս զի ոչ ևս ճանաչել ինձ զնա, և ոչ զժողովուրդ նորա. և խոստովան լինիմ զի որ ինչ դու աստ գործեցեր գեր 'ի վերոյ են քան զյաղթութիւնս՝ զորս մեքն կանգնեցաք: Դէպք և զօրութիւն հաղորդ են առաւելագոյնի մասին յաղթութեան, և պարտ է մեզ բաժանել զփառս պատերազմաց ընդ զօրականին. իսկ հրաշակերտիցդ քոց քեզ միայնոյ վայելէն փառք, դու միայնակ ընդդէմ թագաւորին և ժողովրդեան եղեր աշխատ առ 'ի զգաստութիւն ածել զնոսա: Յաղթութիւնք մարտի աղիտաբերք են միշտ և

դժպհիք. իսկ ասա ամենայն ինչ գերահանճար իմաստութեամբ վճարեալ, ամենայն ինչ մեղկական, ամենայն ինչ սուրբ, ամենայն ինչ սիրելի, և գերաշխարհիկ զօրութեան ցոյց։ Եթէ փառաց իցեն մարդիկ ՚ի խնդիր, ընդէ՞ր ոչ ըստ ամին օրինակի բարերարելով այլոց խնդրեն զայն։ Աւա՛ղ, զիա՛րդ ձախողակի յուսան ստանալ փառս անկապուտ յաւէր աշխարհաց և ՚ի ձայնագլո մարդկեղէն արեան։

Յայնժամ փայլեցին ՚ի դէմս Մ՝ենտորի հրճուանք վառն սթափելոյ պատանւոյն ՚ի տարապարտ մեծարանաց յաղթութեան և աշխարհակալութեան ՚ի սիրտ, յորում ընդունակ էր նմա արքենալ նահատակութեանցն փառօք։ Եւ ասա յաւել Մ՝ենտոր. Նայաքէն ամենայն ինչ, զոր տեսանես, բարի է և գովելի. այլ գիտասջիր զի լաւագոյնս մարթ էր այնոցիկ գոլ։ Իդոմենէս տանջէ զկիրսն, և ջանայ արդարութեամբ իշխել ժողովրդեան. բայց դեռ սխալանս առնէ բազումս, որ կանխակալ սովորութեանցն են արդասիք չարք։ Ի կամել ուրուք հրաժարել ՚ի չարէ՝ թուի զհետ նորա գալ չարին ընդերկար. կան և մնան ՚ի նմա չար սովորութիւն, տկարութիւն բնութեան, հնացեալ մոլորութիւնք, և մնահաճութիւնք գրեթէ անբժշկականք։ Երանի որոց չիցեն երբէք մոլորեալ, զի նոքա կարող են կատարելապէս գործել զբարիս. առաւելագոյնս ՚ի քէն քան յԻդոմենեայ պահանջեսցեն դիք, ո

Տելեմաքէ. զի դու անդստին 'ի տղայ տիոց ծա-
նեար զճշմարտութիւն, և ոչ մատնեցար 'ի հրա-
պոյրս մեծի ինչ բարեբաստութեան:

Իշխանն նախ իմաստուն է և բազմահմուտ, այլ
'ի մանրամասունս պարապեալ՝ վերջանայ 'ի հա-
մօրէն տեսութենէ իրաց առ 'ի կարելոյ երկնել
բարեկարգութիւնս: Քաջութիւն Թագաւորի,
որ իշխէ մարդկան, ոչ այն ինչ է զի ինքնին զա-
մենայն ինչ գործիցէ. Թանձրամիտ մնափառու-
թեան է կարծել բաւական լինելոյ այնմ, կամ
այնպիսի կամել զանձն կարծեցուցանել այլոց:
Պարտ է Թագաւորի իշխել ընտրութեամբ և վե-
րատեսչութեամբ այնոցիկ, որք 'ի ձեռանէ նորա
իշխեն. ոչ է պարտ նմա զդուզնաքեայս յանձան-
ձել, զի պաշտօնէից այնոցիկ են գործք, այլ համարս
ևեթ 'ի նոցանէ պահանջել զյանձնանձանացն,
և տեղեակ այնոցիկ գոլ ըստ բաւականին գիտու-
թեամբ համարս պահանջելոյ: Հրաշափառապէս
իշխէ որ գիտէն ընտրել և պատշաճել ըստ իւրա-
քանչիւր հանճարոյ զիշխանս 'ի գործ. գերագոյն
և կատարեալ իշխանութիւն այն իսկ է իշխել որոց
իշխենն. պարտ է հսկել 'ի վերայ նոցա, փորձել
զնոսա, 'ի չափու ունել, խրատել, քաջալերել,
ամբառնալ, խոնարհել, փոխել 'ի պաշտամանէ, և
ունել միշտ զնոսա ընդ ձեռամբ: Որ զամենայն
ինչ կամի քննել ինքնին՝ կասկածոտ է և փոքրոգի
և զրահետ դուզնաքէից, որ կողանան 'ի նմանէ
զժամանակ և զանզբաղութիւն՝ կարևոր առ իրս

ծանուցանս ։ Ընդքօս և խաղաղ մտաց պէտք են առ երկնելոյ խորհուրդս մեծամեծս. պարտ է խորհել պարապով, անզբաղ ամենևին 'ի յանձանձանաց տաժանաւոր իրաց ։ Մինչ ցնդեալ 'ի մանրամասնութեանս՝ է որպէս զմրուր գինւոյ, որոյ չիք ոյժ և ոչ համ։ Որք 'ի տեսչութիւն զուզնաքէից միտ դնեն իրաց, 'ի մերձակայս ամփոփին միտք նոցա՝ ոչ ընդարձակեալ 'ի տեսութիւն ապագայից. ներկեան ևեթ իրք զուշ և զուրուշ նոցա գրաւեն. և այնու իսկ զի առօրէիւք ևեթ իրօք գրաւին միտք նոցա, առաւելագոյն զգածել կարկամին. զի ոչ է մարթ դատել զիրաց ողջմտութեամբ առանց համօրէն զամենայն ընդ իրեարս բաղդատելոյ, և հանդէպ առնելոյ նոցա 'ի միոյ կարգ ըստ կարգէ համեմատութեամբ։ Որք այսմ կանոնի ոչ հպատակեն իշխանք, նման են երաժըշտի՝ որ շատանայ ընդ գիւտ դաշնակաւոր ինչ ձայնից, և ոչ յարմարէ զայնս ընդ միմեանս՝ յօրինել յայնցանէ նուագ քաղցրալուր և հոգեշարժ ։ Նման է զարձեալ ճարտարապետի՝ որ բաւական համարի կուտել 'ի մի վայր սիւնս մեծամեծս և վէմս կոփածոյս ; և ոչ ինչ խորհի 'ի կարգ և 'ի համեմատութիւն զարդուց շինուածոյն. 'ի կառուցանելն դահլիճ՝ ոչ պատրաստէ սանդուղս նմին պատշաճաւոր, և 'ի կանգնել զվերնայարկսն՝ ոչ խորհի 'ի դուռնն և 'ի գաւիթ ։ Շինուած նորա ոչ այլ ինչ է, բայց խառն 'ի խուռն չեղջակոյտ հոյակապ մասանց՝ որ չեն իրե-

րաց պատկանաւորք. շինուածն այն ոչ միայն չիցէ նմա 'ի սպառածս, այլ և յաւէրժական արձանացուսցէ նմա նախատինս, ցուցանելով զանձկութիւն մտաց ճարտարապետին՝ որում պարտ էր նախ զձև բոլոր շինուածոյն կազմակերպել 'ի մտի: Ահա նկարագիր նմանախօս և ստորակայ պաշտօնէի. և որոյ այսպիսի է հանճար ամփոփեալ 'ի մանրամասնութիւնս, այնպիսին արբանեկել ևեթ կարէ այլոց: Մի երկբայիր, իմ Տելեմաքէ, զի և արքունական իշխանութեան կարևոր է ներդաշնակութիւն՝ որպէս յերաժշտութեան, և ճշգրիտ համեմատութիւն՝ որպէս 'ի ճարտարապետութեան:

Արդ, թէ ախորժես, նոյնին դարձեալ գեղարուեստիցդ համեմատութեամբ յաւելից քեզ ցուցանել, թէ որպէս որք 'ի դուզնաքեայս վարեն զիշխանութիւն՝ փանաքիսկք են: Որ 'ի միաբանութեան ձայնից արուեստականաց նուագէ ինչ, թէ և արուեստաւոր, երգեցիկ միայն է այնպիսին. իսկ որ յօրինէ զձայնիցն միաբանութիւն, և զամենայն յերիւրէ 'ի միասին զանսատունս, նա միայն է երաժշտապետ: Որպէս դարձեալ որ զսիւնսն կոփէ, կամ զմի յորմոց շինուածոյն կառուցանէ, քարակոփ ևեթ է կամ որմնածու. իսկ որ զշինուածն ողջոյն երկնեալ, և զմասանցն իւրաքանչիւր ունի 'ի մտի զհամեմատութիւնս, նա միայն է ճարտարապետ: Նա սոցին օրինակի որք վաստակին և յանձնանձեն և

սատանայական գործեն, նուազ իշխեն, և են պաշտօնեայք 'ի ձեռանէ․ իսկ քուն հանճարն՝ որ իշխէ աշխարհին՝ այն իսկ է, որ անգործ կացեալ՝ առնէ զամենայն, որ խորհի, հանճարէ, խելամտէ առաքադայից, և յանցեալն դարձ առնէ մնոք, կարգաւորէ, համեմատէ, պատրաստէ զիրս 'ի հետուստ, որ դիմադրաւէ 'ի կռիւ ընդդէմ բախտի որպէս լուղորդ ընդդէմ ուղխից հոսանաց, և որ զգոյշ կայ զանխ և զգիշեր չթողեալ ինչ դիպուածոյ ։

Կարծիցես դու, Տէլեմաքէ, զի նկարիչ ճարտար յայգուէ ցերեկոյ անդուլ աշխատիցի առ 'ի կատարել արագ արագ զնկարս իւր ։ Ոչ բնաւ․ թանձրագոյն վաստակք այդ ծառայական շիջուցանիցէ զբոց երևակայութեան նորա, և ոչ եւս ազդմամբ հանճարոյ վաստակիցի․ պարտ է նմա ազատօրէն և հեշտաշարժ ըստ քերմանն ախորժակացն և ըստ ազդելոյ հանճարոյն առնել զամենայն ։ Կարծիցես թէ ինքնին ժամավաճառ լինիցի զդեղս երանգոցն լնուլ և զվրձինսն կազմել պատրաստել․ ոչ երբէք․ զի այդ համբակաց նորին է գործ ։ Պահէ նա իւր զհոգս հանճարոյ, և ոչ այլ ինչ խորհի՝ բայց յեռուլ քաջայանդուգն ստորադասութեամբ 'ի կերպարանսն նկարեալս ազնուականութիւն հոգւոյ և ազդմանս քաղաքացականս ։ Կրէ 'ի միտս իւր զկերպս դիւցազանցն՝ զորս առնու նկարել, և փոխի մնոք 'ի դարս նոցա և 'ի հանգամանս ։ Սակայն յեռանդն մտաց

պարտ է նմա յաւելուլ և զգօնութիւն՝ որ զաւխոյժս նորին սանձիցէ, և ճշմարիտ զամենայն ինչ և անախտ և պատշաճ ըստ իւրաքս յարդարեսցէ: Կարծիցե՞ս դու, Տելեմաքէ, զի նուազագոյն ինչ բարձրութիւն համձարոյ և ձիրն մտաց խնդրիցի քաջի թագաւորի քան նկարչի ճարտարի: Որպէս ուրեմն անկ է թագաւորի խորհել ևեթ և պատրաստել առաջնորդութիւնս մեծամեծս, և ընտրել 'ի կատարումն նոցին արս պատկանաւորս:

Յայնժամ ասէ Տելեմաք. Թուի ինձ 'ի վերայ կալ ամենայն բանիցդ առացելոց, այլ ըստ այդմ վտանգ իցէ թագաւորի ընթանել առէպ 'ի պատերազմ՝ ոչ իւրովք զամենայն յանձանձելով զիրս: Մենտոր ասէ. Իսաքիս, վերատեսչութիւն յանձանձանաց իրաց համանգամայն զերծ զնա կացուցանեն 'ի պատերազմաց: Որոց չիցեն կարգք և օրէնք 'ի յանձանձանս իրաց, և ոչ ստոյգ ընտրութիւն մարդկան, առ խարխափ գնան միշտ, և դիպաց են արգասիք եթէ չախալեն. չգիտեն իսկ հաւաստեաւ զինչ խնդրեն, և թիմ'իմիք պարտ իցէ նոցա ուշ ունել. կասկածել ևեթ կասկածեն, և բազումայն է՝ զի զլաւ որերոյ 'ի լսել ինչ 'ի նոցանէ հակառակ, քան զխաբեբայից՝ որ շողոմեն զնոսա: Իսկ որոց իցէ կանոն առաջնորդական, և ճանաչիցեն զմարդիկ, գիտեն զինչ պարտ իցէ խնդրել 'ի նոսին, և իւ այնմ հասանել: Տեղեակք են, գէթ հասարակաբար տեսութեամբ, թէ որովք վա-

րինն՝ լիցեն գործիք պատկանաւորք 'ի կատարումն խորհրդոց իւրեանց, և զլինեսցեն համամիտք ընդ նոսա 'ի նոյն ուշ նպատակի ։ Այլ միտք նոցա, ոչ ծանրաբեռնեալք 'ի մանրամասին տեսչութենէ, ազատք են 'ի տեսանել միով ևեթ ակնարկութեամբ զբաղդորիցն ընթացս թէ խաղասցեն յառաջ 'ի բում իսկ 'ի նպատակ անդր ։ Ոչ թէ երբէք լիցի ևս նոցա վրիպել, գէթ ոչ 'ի կարևորագոյնս վրիպին ։ Վեր 'ի վերոյ են վատ նախանձաւորութեանց՝ որ նկուն և նուաստ հոգւոյ է. քաջ գիտեն զի անհնար է գոլ անխաբ 'ի գործս մեծամեծս կարօտս արքանեկութեան մարդկան՝ յորս խաբեբայք բազումք են ։ Առաւելագոյն է տոյժ 'ի տարտամութենէ՝ յոր զառածանի ոք կասկածոտութեամբ, քան 'ի մատնելոյ 'ի դոյզն ինչ պատրանս. և բարեբաստիկ է՝ որ 'ի դուզնաքեայս ևեթ գտանի պատրեալ, և բարւոք յաջողեն նմա իրք կարևորք. զի այր մեծախոհ այսմ ևեթ պարտի հոգ ունել ։ Ի յայտնել խաբէութեան՝ պարտ է խստիւ պատուհասել զայն. բայց պարտ է չկասկածել զխաբէութեանց ինչ առ 'ի չխաբելոյ մեծապէս ։ Այր գործաւոր տեսանէ իւրովի զամենայն 'ի գործարանի իւրում, և գործէ ձեռօք իւրովք զամենայն. բայց անհնար է թագաւորի յընդարձակ պետութեան իւրում տեսանել իւրովի և գործել զամենայն ։ Ոչ ինչ պարտ է նմա գործել, բայց միայն յորս չիցեն ձեռնհաս ստորակայք նորին պաշտօնեայք. և ոչ պարտի

այլ ինչ տեսանել բաց 'ի պիտոյից առ 'ի սահմանել զկարևորս ։

Այս ասաց յաւել Մենտոր ցՏելեմաք. Սիրեն զքեզ դիք, և պատրաստեն զքեզ առ 'ի թագաւորել լի իմաստութեամբ. ամենայն, որ ինչ տեսանեսդ, առ 'ի խրատ քո անցանելեն քան 'ի փառս Իդոմենեայ. ամենայն բարեկարգութիւնքս, ընդ որս զարմանաս, ստուերք են այնոցիկ' զորս մնայ քեզ յաւուր միում առնել յԻթակէ, եթէ կցեն 'ի քեզ առաքինութիւնք համեմատք վեհ ճակատագրիդ ։ Ժամ է արդ մեկնելոյ աստի, տալով մեզ Իդոմենեայ նաւ պատրաստական ։

Յայնժամ Տելեմաք երաց զսիրտ իւր, այլ ոչ առանց դժուարութեան, յայտնել նմա զմորմոք իւր ընդ մեկնել իւրեանց 'ի Սալենտեայ' վասն սիրոյ կապելոյ իւրոյ անդ, և ասէ. Թերևս մեղադրեցես ինձ զի դիւրաւ կապի սիրտ իմ ընդ վայրս' ընդ որս անցանեմք. այլ լիցի ինձ կրել ապաշաւ անբժշկելի, եթէ ծածկեցից 'ի քէն զսէր իմ ընդ Անտիոպեայ դստեր Իդոմենեայ ։ Ոչ կիրք զաչացու, ով իմ Մենտոր, համգոյն այնմ զոր 'ի կղզւոջն Կալիփսեայ բժշկեցեր, զգրաւեն զսիրտ իմ. քաջ ծանեայ զհաստատուն վէրմն' զոր ազդեաց յիս անդ սէր Եւքարեայ. չև ևս անյայզ 'ի կրից անուանել զնա կարեմ, ոչ ժամանակ և ոչ տարակայութիւն կարացին ջնջել զյիշատակ նորա 'ի սրտէս ։ Ի փորձ առեալ աղխտից, ուսայ չվստահել յիս. այլ ոչ այնպիսի ինչ կրեմ կիրս ընդ Ան-

տիրապետայ. ոչ ախտաւոր կրի յիւ սէր, այլ ախորժ ընտրողական, վարկ, և վկայութիւն միտաց բարեբաստիկ ընդ նմա կենակցութեան։ Եթէ շնորհեսցեն ինձ դիք զհայր իմ, և ներեսցեն ընտրել ինձ հարսն, ընտրեցից զԱնտիոպէ։ Յափշտակէ զսիրտ իմ լաւութիւն նորա և համեստութիւն, կալ առանձին և պարապել միշտ 'ի գործ, ճարտարութիւն յառաւելս և յաջնեգործութիւն, հոգ նորա 'ի տնտեսութիւն՝ որք 'ի մօրէ մնացեալ, արհամարհել նորա զսնոտի պաճուճանս, և չյիշել երբէք՝ թէ արդեօք և անգիտանալ զգեղ իւր։ Ի հրամայել Ադամենեայ կալ պարագլուխ դստերաց կրետուհեաց պարս յօրինելոյ 'ի ձայն արգանոց, թուի նա միւս այլ Աստղիկ գեղածիծաղ պար առեալ 'ի շնորհաց։ Յելանել նորա յորս յանտառս առեալ 'ի հօրէն, թուի Արտեմիս մեծավայելուչ և դիպաղեղն 'ի մէջ յաւերժհարսանց. հիանան ամենեքին ընդ նա, ինքն և եթ անխորագէտ։ Ի մուտս նորա 'ի մեհեանս դից՝ բերելով 'ի գլուխ զդիցանուէր սպաս 'ի խանի, նա ինքն է գոգցես դիցուհին բնակեալ 'ի մեհենի անդ։ Վանի երկիւղած և կրօնասէր տեսանեմք զնա 'ի նուէրս զոհից 'ի հաշտութիւն դից, 'ի քաւել զմեղս կամ 'ի բաց շրջել չարագոյժ հմայս։ Այս յորժամ երևի 'ի հոյլս կանանց առաջին 'ի ձեռին ունելով տսկի, թուի դիցուհին ինքնին Աթենաս առեալ 'ի յերկրի զկերպ մարդկեղէն առ 'ի գեղարուեստս զմարդիկ վարժել։

Յորդորէ նա և զայլս 'ի վաստակ, անուշէ զերկս նոցա և զձանձրոյթ 'ի ձայն իւր քաղցրիկ՝ զդիցն գեղգեղելով զհրաշապատում վէպս. և ասղնէգործ ճարտար կիտուածովքն ընտիր ընտիր յաղթէ նկարուց։ Երանի՛ որում վիճակեսցի բախտ կցորդելոյ ընդ նմա հարսանեկան քաղցր զօդիւ. 'ի վտանգէ կորստեան եւեթ նորին կամ յերկարակեաց քան զնա լինելոյ երկիցէ։

Վկայեն ինձ դիք, իմ Մենտոր, զի պատրաստ եմ 'ի չու. թէպէտ և սիրեցից մինչև եւս զԱնտիոպէ, այլ և ոչ վայրկեան մի յամեցուցէ նա զդարձ իմ յԻթակէ։ Եթէ այլ ոք ժառանգեսցէ զնա, դառն տխրութեամբ կեցից զաւուրս իմ։ Բայց թէպէտ գիտեմ զի 'ի մեկնել իմում 'ի նմանէ՝ մարթ իցէ ինձ կորուսանել զնա, սակայն մեկնիմ։ Ոչ նմա և ոչ հօր նորա յայտնեցից զսէր իմ, զի ոչ է ինձ պարտ յայտնել ումեք զայն բաց 'ի քէն, մինչև Ոդիսեայ դարձեալ յաթոռ իւր հաճեսցի ընդ այն։ Աստի կարիցես դու 'ի միտ առնուլ, ով իմ Մենտոր, թէ քանի՛ այս սէր օտար է 'ի կրից՝ որովք տեսեր զիս հարեալ կուրօրէն 'ի սէր Եւքարեայ։

Մենտոր ասէ. Տեսանեմ և ես, ով Տելեմաքէ, զխտիրն մեծ. Հեզ է արդարև Անտիոպէ, անպաճոյճ և զգօն, ոչ անօթ հանճարի վաստակել ձեռօք, յառաջատես է և խնամող ամենայնի, գիտէ լռել, և գործէ յար առանց շտապոյ. պարապեալ միշտ 'ի գործ՝ այլ ոչ տագնապի, զի 'ի

դէպ ժամու առնէ զամենայն. բարեկարգութեամբ տանն Հօր իւրոյ նորա են պարծանք, որով առաւել քան թէ գեղովն պարծի։ Մեծապէս նմա յանձն է Հօր ամենայն, և պատրաստ է նմա մերթ խրատել, մերթ մերժել զաղերս, և մերթ խնայել 'ի ծախս, որ առեալ 'ի կացուցանեն զտնաւորս, տակայն սիրելի է նա ամենեցուն, զի չեն 'ի նմա կիրք, ոչ յամառութիւն, ոչ թեթևամտութիւն, և ոչ անձնահաճ կամք որպէս յայլս 'ի կանանց. անկեղծաւորութեամբ ևեթ յայտնէ զկամս իւր. ամենայն ոք երկնչի 'ի տհաճելոյ զնա. տայ նա ճշգրիտ զպատուէրս, և զհնազանդութիւն ևեթ պատուիրէ. կշտամբէ հեզութեամբ, և 'ի կշտամբելն իսկ քաղցրաբերէ։ Հանգչի 'ի նա սիրտ Հօր իւրոյ որպէս ուղևոր պատսպարեալ 'ի տօթոյ ընդ հովանեաւ ծառոյ 'ի փափուկ զովարարութի։ Այո՛ Տելեմաքէ, զանձ է Անտիոպէ արժանի խնդրելոյ 'ի ծայր աշխարհս։ Որպէս 'ի սպասս մարմնոյն և միտք նորա ոչ մնան եօք անձնին զարդուք. Երևակայութիւն նորա, թէպէտ և աշխոյժ, նուաճի 'ի զգօնութենէն. զկարևորս ևեթ բարբառի, և 'ի բանալ բերանոյ նորա՝ տողք բարեհամբոյր և շնորհք ինքնազարդք բղխեն 'ի շրթանց նորա։ Ի խօսել նորա լռեն ամենեքին, և ինքն շիկնի. կամի իմն դադարել 'ի սկսելոցն բանից յորժամ տեսանէ յանկարծուս կացեալ զայլս 'ի լսել. և դուն ուրեք եղև մեզ լսել խօսելոյ նորա։

Յիշիցես, Տելեմաքէ, յորժամ 'ի հօրէն իւր-

մէ կոչեցեալ՝ եկն նա զաչս 'ի խոնարհ ունելով, քողարկեալ պարածածուկ: Նա 'ի ցածուցանել եւեթ զցասումն հօր իւրոյ խօսեցաւ, 'ի կամել նորա պատուհասել խստիւ զմի 'ի ստրկաց. վշտակից եղեւ նմա նախ, ապա աղաչեաց զնա, եւ ապա եցոյց զի մարթէր անպատիժ առնել զհէքն. եւ առանց զգացուցանելոյ թագաւորին զծայրայեղ սրտմտութիւն նորա, յորդորեաց զնա յարդարութիւն եւ յողորմութիւն: Ոչ առաւելագոյն քաղցրութեամբ ցածուցանէ Նեպտոն զմոլեգնեալ ալիս յողդքել իւրում զծերն Ներէոս: Այսպէս Անտիոպէ առանց տիկնաբար ասելոյ, եւ առանց գեղոյն զօրութեան շարժեսցէ յաւուր միում զսիրտ փեսային, որպէս շարժէ արդ զտամանողին յօրինել նուագ խանդաղատանելի: Յաւելում դարձեալ, ո Տելեմաքէ, արդար է սէր քո, եւ քեզ զօրինողն դիք սահմանեն, ոչ ինչ տարապարտ սիրես դու զնա. այլ պարտ է մնալ զի ինքն Իդոմենեւս զնա քեզ տացէ: Գովեմ զքեզ զի ոչ յայտնեցեր նմա զսիրտ քո. այլ գիտասջիր զի թէ ակնարկեալ ինչ էր քո նմա զխորհուրդս քո, մերժէր նա 'ի բաց, եւ ոչ եւս այլ մեծարէր զքեզ: Ոչ ինչ նա ումեք խոստացի երբէք, 'ի հայր իւր զամենայն արարեալ ապաստան. եւ ոչ այլ ումեք հարսնացի երբէք, բայց որ երկիւղածն իցէ յաստուածոց եւ լցցէ զամենայն պարտս պատշաճից: Գիտեցե՞ր եւ դու զի 'ի դարձին քում նուազ եւս արդ երեւի նա մեզ, եւ տեսանել իսկ զաչս 'ի

վայր արկեալ։ Պիտէ նա որ ինչ դէպք բարեպատեհք յաջողեցին քեզ 'ի պատերազմի. չէ ինչ անտեղեակ ազգիդ, և անցից՝ որ ընդ քեզ անցեալ, և ոչ որ ինչ ձիրք գեղեցկանանիհք քեզ 'ի դից շնորհեալ. սոցին աղագաւ յաւելու նա կալ զգոյշ և համեստ։ Համայս փութասցուք, ո՜ Տելեմաքէ, նաւել յԻթակէ. ոչ միայն ինձ այլ, բայց զհայր քոյին տալ քեզ գտանել, և հարսն արժանի ոսկեղէն դարուն. Թէ և չիցէ նա դուստր Սալենտեայ ծնեալ արքայի, այլ 'ի սահմանապատն Պէգիդոն՝ հովիւ, յառնուլ քո զնա քեզ 'ի հարսնութիւն լիցիս բարեբաստ։



# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ

## ՔՍԱՆԵՐՈՐԴԻ ԵՐԿՐՈՐԴԻ ԳՐՈՑՆ

1 ԹԷԹԻՍ դուստր երկնից և Եստեայ, կին Ովկիանոսու կամ Ներէոսի ծովային դից :

2 Ալճիդոն, որ արդ կոչի Ռօքքա տէլ փափա, աւան 'ի Լատիոն ընդ մէջ Տուսկուլոնի և Ալպանոնի .



# ԱՐԿԱԾՔ ՏԵԼԵՄԱՔԱՅ



## ԳԻՐՔ ՔՍԱՆԵՐՈՐԴ ԵՐՐՈՐԴ

# ՆԱԽԱԴՐՈՒԹԻՒՆ

Իդոմենեայ կասկած առեալ զչուոյ երկոցունց հիւրոցն, պատճառի առ Մենտորի բազում գործս՝ անհնարինս առանց օգնականութեան նորա ։ Մենտոր ցուցանէ նմա զհնարս այնոցիկ, և ոչ փոխի 'ի խորհրդոյն ածելոյ զՏելեմաք 'ի բաց ։ Իդոմենէս հնարի դարձեալ խափանել զչու նոցա, արծարծանելով զսէր Տելեմաքայ ընդ դստեր իւրում. և հրաւիրէ զնոսա 'ի սթափումն որսոց ընդ օրիորդին ։ Անդ Տելեմաք փրկէ զօրիորդն 'ի ժանեաց վարազու ։ Ծանր թուի այնուհետև պատանւոյն մեկնել յօրիորդէն, և հրաժեշտ 'ի հօրէ նորա առնուլ. այլ յորդորեալ 'ի Մենտորէ՝ յաղթէ դժկամակութեանն, և մտանէ 'ի նաւ՝ գնալ 'ի հայրենիսն ։

# ԱՐԿԱԾՔ ՏԵԼԵՄԱՔԱՅ



## ԳԻՐՔ ՔՍԱՆԵՐՈՐԴ ԵՐՐՈՐԴ

Իդոմենեւս առ կասկած մեկնելոյ 'ի բաց Տելեմաքայ և Մենտորի, ոչ այլ ինչ խորհէր՝ բայց հնարս 'ի յամեցուցանել չուոյ նոցա։ Պատճառեցաւ առ Մենտորի չկարել առանց նորա համոզել 'ի մէջ Դիոփանեայ քրմի որմզդական դիցն Պահպանողի, և Հելիոդորի քրմին Ապողոնի, որոց ընդ միմեանս զհմայից 'ի թռիչս հաւուց և յընդերս զոհից էին վէճք։ Նա որ պատասխանի տուեալ Մենտորի, ասէ. Եւ ընդէ՞ր իցէ քեզ մտանել 'ի վէճս սրբութեանց, թող զդատաստան դոցա յետրուրացիս՝ որ աւանդապահք են հնոց պատգամաց, և թարգմանք այնոցիկ աստուածազդեցիկք. ա՛րկ իշխանութիւն 'ի գործ առ 'ի խափանել ևեթ զվէճսդ անդէն 'ի սկզբան։ Մի՛ լիցի քեզ կուսակցութեամբ ինչ գործել կամ՝ մտահաճութեամբ, պատսպարան ևեթ լեր վճռոյն։ Յուշ լիցի քեզ զի պարտ է թագաւորի

հպատակել կրօնից, և մի՛ իշխել նոցին. յաստուածոց անտի տուան կրօնք, և գեր 'ի վերոյ քան զիշխանութիւն թագաւորաց են։ Թագաւոր որ ձեռներէց լինի 'ի կրօնս, փոխանակ պաշտպանելոյ արկանէ զնա 'ի ծառայութիւն։ Այնքան հզօր են թագաւորք և մարդիկ տկարք, զի վտանգ լիցի կրօնից ըստ հաճոյս նոցա փոփոխելոյ՝ եթէ տացի նոցա մուտ 'ի խնդիրս կրօնականս։ Թո՛ղ ապա ազատս ամենևին զպաշտօնեայս կրօնից դատել զայնցանէ, և նուաճեա ևեթ զորս հեստեն զդատաստանի նոցին։

Այլ ապա Իդոմենևս բաղբաղէր վարանել զվիճից բազմաց 'ի ժողովրդենէ, որք խնդրէին իրաւունս. և ասէ ցնա Մենտոր. Դատեա զդատաստանս՝ յորս հաստատին հիմունք իրաւացիութեան և իմաստք օրինաց, և մի՛ յանձն առնուր զդատս դուզնաքեայս. զի մի՛ խռնեսցի զքեամբոխ, և քեզ միայն լիցի դատել զդատաստանս ամենայն ժողովրդեան, և այլք առ հասարակ՝ որք 'ի ձեռանէ քումմէ դատաւորք՝ մնայցեն անգործ. ընկճեսցիս դու 'ի բեռանէ, և դուզնաքեայք խափանեսցեն զքեզ 'ի մեծամեծաց, առանց բաւելոյ քո նոցին իսկ դուզնաքէից։ Զգուշ լեր ապա չարկանել զքեզ 'ի տագնապ անել. թող զդատս ռամկին 'ի դատաւորս՝ որ ընդ ձեռամբ քով են, և դու դատեա որ ինչ չկարիցեն այլք դատել և օգնել քեզ. և այսպէս լիցի քեզ լնուլ սիրապէս զպարտս թագաւորի։

Յաւել ապա Իդոմենևս. Դուռն է ինձ լինելոյ առիթ հարստանեաց ազնուականաց ոմանց, որք 'ի մարտս պատերազմաց եղեալ ընդ իս, և տոյժս ծանունս վասն իմ կրեալ, ցանկան արդ ունել փոխարէն զօրիորդս ոմանս իշխանազունս 'ի հարսնութիւն. և դիւրին է ինձ բանիւ միով առնել նոցա զհարսանիսն :

Մենտոր ասէ. Իցէ իսկ դիւրին առնել քեզ բանիւ միով զհարսանիսդ, այլ բանին այն ծանուանց տուժից լիցի քեզ առիթ : Կամիցիս բառնալ 'ի ծնողաց զազատութիւն և զփափաքումն ընտրելոյ ինքնին զփեսայս իւրեանց, և նովին իսկ զժառանգս : Ընդ խիստ գերութեամբ նուաճեսցես այդուիկ զամենայն ազգատոհմն, և լիցիս պատճառ բնաւից աստնին չարեաց քաղաքայնոցդ : Շատ իսկ 'ի տուրեւառս ամուսնութեանց դարանին չարիք, առանց յաւելլոյ 'ի նոսին և զդառնութիւնդ զայդ : Եթէ իցեն քո ծառայք հաւատարիմք և վաստակաւորք, տուր նոցա 'ի վարձ երկիրս անգործս, յաւե՛լ նոցա բարձս և աւագութիւնս համեմատս աստիճանի նոցին և վաստակոց. յաւե՛լ, եթէ հարկ իցէ, և արծաթ՝ խնայեալ 'ի հասից սահմանելոց առ 'ի ծախս պիտոյից քոց. և մի՛ երբեք լիցի քեզ 'ի հատուցումն պարտուցդ փոխանակել զդստերս աւագորերոյ բռնադատելով զազատութիւն ծնողացն :

Անց ապա Իդոմենևս յայլ խնդիր, և ասէ. Սիբարացիք բողոք ունին, իբր թէ յափշտակեալ

մեր զերկիր նոցա և տուեալ ՚ի մշակութիւն եկաց յարելոց ՚ի մեզ: Տա՛ց նոցա տեղի, թէ ոչ. եթէ տաց, ամենայն ոք պահանջեսցէ բաղբաղանօք զմերն: Մենտոր ասէ. Ա՛չ է իրաւացի լսել սիբարացւոցդ դատախազից, և ոչ քեզէն առնել քեզ իրաւունս: Իդոմենևս ասէ. Իսկ ո՞ւմ լուայց: Մենտոր ասէ. Իսկ ոչ միում յերկոցունց կողմանցդ, այլ պարտ է քեզ իրաւարար ՚ի միջի ձերում կացուցանել զմի յազգաց դրացեաց՝ զորմէ չիցէ կասկած կուսակցութեան, որպիսիք են սիպոնտացիքդ՝ որոց չեն ինչ պատճառք հակառակութեան ընդ ձեզ: Յայնժամ ասէ Իդոմենևս. Արժա՞ն իցէ ինձ առն թագաւորի ստորանկիլ ընդ դատաստանաւ այլոյ, և թողուլ օտարաց սահման հատանել տէրութեան իմոյ:

Իսկ յառաջ ածեալ Մենտորի զբանսն, ասէ. Դու զի պինդ կալիս կալ, համարիս ուրեմն ունել քեզ իրաւունս. բայց և սիբարացիք անդուստ վճռեալ պնդին ունել իրաւունս: Արդ ՚ի հակառակել կարծեաց հարկ է, զի կամ դատաւոր ոք ընտրեալ յերկոցունց կողմանցդ՝ իրաւ արասցէ ՚ի մէջ ձեր, և կամ զի զէնք սահմանեսցեն զվէճն. չիք այլ ինչ հնար: Եթէ ՚ի հասարակաց ուրեք պետութեան ոչ ատեանք էին և ոչ դատաւորք, այլ ազգատոհմ իւրաքանչիւր բռնաբարէր որ ինչ իւր իրաւունս համարէր յայլոց, ո՞չ ապաքէն աւաղէիր զթշուառութիւն ազգին, և սոսկայիր յահագին անկարգութենէն, ՚ի տեսանել զտոհմս

իւրաքանչիւր ընդդէմ իւրերաց զինուորեալ: Նովին տակմամբ ակնարկեն դիք 'ի համաշխարհականս յայս հասարակապետութիւն 'ի յերկիր, եթէ ազգ իւրաքանչիւր՝ որ է ազգատոհմ մի մեծ՝ իշխեսցէ բռնաբարել 'ի սահմանակից ազգաց որ ինչ իւր իրաւունս համարի: Ոչ ումեք օրէն է առնուլ զվրիժակ հայրենի առանց իշխանութեան օրինաց, և առանց դատաստանի ատենից. սաստիկ պատժոց արժանի գտանի իբր ապստամբ, եթէ զինուք պահ կալցի իւրումն: Եւ իցէ՞ օրէն թագաւորաց պահանջել զինուք որ ինչ իրաւունս իւրեանց համարին, մինչ չև զամենայն հնարս քաղցրութեան և մարդասիրութեան 'ի կիր արկեալ: Ո՞չ սրբագոյն ևս և անդրժելի իցեն պարտք արդարութեան թագաւորաց 'ի վերայ սահմանաց պետութեան, քան ազգատոհմից 'ի վերայ անդաստանաց. ընդէ՞ր անիրաւ իցէ և յափշտակող որ զարտավարի միոյ գրաւիցէ գետին, և արդար որ զգաւառս յափշտակիցէ: Եթէ մարթ իցէ մտահաճութեամբ և անձնասիրութ̃բ մոլորել իւրաքանչիւր 'ի շահս դուզնաքեայս, չիցէ՞ մեծագոյն ևս վտանգ մոլորելոյ 'ի հրապոյրս անձնասիրութեան 'ի մեծամեծ օգուտս պետութեան: Արժա՞ն իցէ վստահել 'ի դատաստան անձին, ուր այսքան պատճառք են կասկածանաց. չիցէ՞ պարտ երկնչել 'ի մոլորելոյ, ուր մոլորութիւն միոյ ուրուք աղէտս առնել ձգէ զհետ իւր ահագինս: Զի մոլորութիւն առն թագաւորի զկար-

ծեցեալ իրաւունսն պահանջելոյ, բազում այն է՝ զի խուժան աներանաց ածէ զաշխարհաւ, զսով, զկոտորած, զտոյժս, և զապականութիւն բարուց, որոց դժնդակ արգասիք դարուց 'ի դարս ձգին յապագայս։ Այր Թագաւոր, շուրջ պար առեալ 'ի մարդահաճոյից, իցէ՞ անվտանգ 'ի զառածանելոյ 'ի մոլորութիւն 'ի դէպս յայսոսիկ։ Իսկ 'ի կամելն զոք իրաւարար վճռին՝ յայտ առնէ զարդարասիրութիւն իւր զուղղութիւն և զչզեղծիլ իշխանութեամբն, և հրապարակէ զցոյցս անժխտելիս իրաւանց իւրոց։ Այն զի իրաւարարն՝ զոր ընտրէ՝ ոչ է դատաւոր խիստ, այլ միջնորդ բարեհամբոյր. ոչ է հարկ յանձն առնուլ առանց խելամտութեան զվճիռ նորա, այլ մեծարել և եթ զդատաստան. ոչ որպէս դատաւոր անբողոքելի տայ նա վճիռ, այլ առաջարկէ հնարս, և խորհուրդ տայ նուիրել ինչ երկուստեք վասն խաղաղութեան։ Ապա եթէ յետ զամենայն հնարս հնարելոյ Թագաւորի առ 'ի պահել զխաղաղութիւն՝ հարկ լիցի պատերազմի, գէթ ժառանգեսցէ նա զվկայութիւն բարւոք խղճի մտաց, զմեծարանս սահմանակից ազգաց, և զարդարադատ դիցն զպաշտպանութիւն։

Այս համոզեալ Իդոմենեայ 'ի բանից աստի, յանձն էառ կալ սիպոնտացւոց իրաւարար ընդ իւր և ընդ սիբարացիս։ Այլ իբրև ետես՝ զի 'ի դերև ելին ամենայն հնարք իւր առ 'ի խափանել զհիւրսն 'ի մեկնելոյ, խորհեցաւ հզօրագոյն ինչ

արկանել նոցա խափան։ Իրազեկ լեալ էր նա սիրոյն Տելեմաքայ ընդ դստեր իւրում, և յուսայր այնուհետև ըմբռնել զնա։ Բազում անգամ եւս օրիորդին երգել ՚ի խնճոյս. և Մենտորայէ առ ՚ի չստունգանելոյ հօրն հրամանի՝ նուագէր, այլ այնու ցածութեամբ և տրտմութեամբ՝ զի յայտնի երևէր միշտ նորա ՚ի հնազանդելն։ Եւ ոչ անդ զկայ առանց Իդոմենեայ, կամէր զի երգեսցէ և զյաղթութիւնս կանգնեալ ընդդէմ Դաւնեայ և Ադրաստոյ. այլ անհնար եղև աղջկանն նուագել զգլուխ Տելեմաքայ, հրաժարեաց յայնմանէ պատկառանօք, և հայրն չիշխեաց բռնադատել զնա։ Ձայն օրիորդին քաղցր և խանդաղատելի ազդէր ՚ի սիրտ պատանւոյն, և ՚ի գորով շարժէր զնա. իսկ Իդոմենեւս ՚ի գնին կացեալ, բերկրէր ՚ի տեսանել զամօթխածութիւն նորա։ Բայց պատանին չտայր ամենևին կասկած զգաստ լինելոյ խորհրդոց Թագաւորին. և Թէպէտ անհնար էր չյուզել կրից նորա, այլ միտք նորա գեր ՚ի վերոյ էին զգայութեանն. և ոչ ևս էր նոյն ինքն, զոր բռնաւոր տռփանք գերէին երբեմն ՚ի կղզւոջն Կալիփսեայ։ Ի գեղգեղել օրիորդին՝ կայր նա լուռ և անբարբառ. և ընդ լռել նորա՝ զայլոց իրաց ՚ի ներքս ածէր զրոյց։

Եւ իբրև այս եւս չյաջողեցաւ Թագաւորին, խորհեցաւ նա առնել հանդէս մեծ որսոց առ ՚ի զբօսանս դստերն։ Այր Մենտորայէ և չկամէր գնալ անդր, այլ հարկեցոյց զնա հրամանն հայ-

բենի ։ Հեծաւ յերիվար ամեհի և փրփրերախ համգոյն նուաճելոյն 'ի Կաստորէ ձիոց . և պար առեալ 'ի խմբէ օրիորդաց՝ որ անձնապարեցին 'ի միասին, ձիավարէր կորավակի, երևեալ 'ի միջի նոցա որպէս Անահիտ յանտառս ։ Հայէր 'ի նա թագաւորն, և չյագէր 'ի հայելոյ, մոռացեալ 'ի տեսիլ նորա զամենայն անցս վշտացն ։ Տեսանէր զնա և Տելեմաք, և առաւել սխրանայր ընդ պար-կեշտութիւն նորա քան ընդ աջողակութիւն 'ի նուս ձիոյ և ընդ շնորհս գեղոյ նորա ։

Հետավարէր ապարականին կինճ մի սոսկա-վիթխար և կատաղի համգոյն Կալիդոնեան վա-րազուն . սուրք երկայնք և կարծունք ցցուէին զնովաւ որպէս զնետից բազմութիւն, աչք նորա արիւնոտուշտք և հրացայտք, խանչիւն նորա գայր լսելի 'ի հեռուստ որպէս սօսաւիւն մրմռեալ հող-մոց, որոց Եօղոս կոչ 'ի յետս առնէ անդր 'ի քարայր իւր 'ի ցածուցանել զյոյզս մրրկաց . և վրիժակք նորա ընդ խրախոյս ձիգ 'ի դուրս կորացեալ որպէս գերանդիք հատուք 'ի ձեղքել զբունս ծառոց ։ Սարակք ընդդէմ նորա խիզախեալք մատնէին 'ի ժանիս նորա, և յանդգնագոյնք յորսորդաց 'ի հետամտութն լինել նմա՝ չիշխէին մատչել 'ի նա ։

Անտիոպէ, թեթևընթաց իբրև զհողմ, ոչ ինչ երկեաւ յարձակել 'ի գազանն . և արդնընկեց լեալ, խոցեաց զնա 'ի պարանոցն ։ Յարենէն՝ որ հոսէր՝ զպյրապլին և ս գազանն վայրենի կատա-ղեալ, դարձաւ յոսոխն՝ որ եհարն զնա ։ Զի օ-

րիորդէն, Թէպէտ ամեհի, խրատուցեալ անդէն յետս նահանջեաց. և հրէշն երէ անկաւ զնո-վաւ, որպէս 'ի վերայ ամուր պարսպի թաւթան անհեթեթ։ Օ երերի հարեալ սալամբալն կող-ծանեցաւ. և համակործան ընդ նմին անկեալ օրիորդն 'ի յերկիր, ոչ ևս կարէր խուսել 'ի մար-դախողող ժանեաց գազանին զայրացելոյ ընդդէմ իւր։ Բայց Տելեմաք դէտ կացեալ վտանգին, էջ յերիվարէն. և փայլակնաձև անցեալ ընդ մէջ ձիոյն անկելոյ և վարազուն՝ որ 'ի վրէժ առեալն դիմէր, և գեղարդն 'ի ձեռին ունելով երկայնա-բուն՝ մխեաց զայն բոլորատէգ 'ի մնակուշտ ահեղ գազանին, որ տապալեալ անկաւ լի կատաղութեամբ։

Ապա հատեալ պատանւոյն զգլուխ նորա, որ տակաւին ահ արկանէր 'ի տեսողս և յապուշ զարմացս կրթէր, մատոյց Անտիոպեայ։ Կարմրաւ գունեալ օրիորդն յամօթոյ, ակնարկութեան հօրն ծայրիւք աչացն կայր դէտ. որ 'ի զարհու-րանացն յեղափոխեալ 'ի զեղումն խնդութեան ընդ զերծանել դստերն 'ի վտանգէն, ակնարկէր 'ի նա ընդունել զնուէրն։ Յայնժամ ընկալեալ զայն օրիորդին, ասէ ցպատանին. Ընդունիմ 'ի քէն զայդ՝ շնորհապարտ միւս ևս գերագոյն պար-գևի, քև մազապուր լեալ 'ի մահուանէ։ Այլ մինչդեռ բանքն 'ի բերանի կային, երկեաւ թէ դուցէ աւելի ինչ ասաց, և ցածոյց զաչս իւր։ Իսկ պատանւոյն զգացեալ զպղմուկ շփոթի մտաց կուսին, զայս ևեթ ասաց. Երանի որդւոյն Ո-

դիտեայ, զի փրկեաց զցանկալի կեանս քո. այլ առաւել երանի, եթէ լիցի նա քեզ կենակից։ Եւ որ Անտիոպէ ոչ ինչ յաւել պատասխանի, այլ խոյս ետ անդէն. և խառնեալ 'ի հոյլս օրիորդացն, 'ի ձի աշտանակեաց։

Կամէր Թագաւորն խառնեալ անդէն պատանւոյն զդուստր իւր, այլ խորհեցաւ առաւել ևս արծարծանել զսէր նորա՝ թողեալ զնա յերկբայս, որպէս զի ըղձիւք յարապահօղելոյ զհարսանիսն՝ յամեսցէ նա 'ի Սալենտ։ Այսպէս խորհէր Իդոմենևս, բայց ծիծաղին դիք զխորհրդովք մարդկան։ Որում պարտն էր յամեցուցանել զպատանին, նոյն ձեպեցոյց զնա 'ի չու. սկսանէր նա զգալ յանձին կիրս, որովք ոչ ևս մարթէր նմա յինքն վստահել։ Յաւել և Մենտոր յորդորել զնա և ևս 'ի դարձ, և ստիպէր զԻդոմենևս թոյլ զպատանին։ Կազմ և պատրաստ կայր նաւն 'ի չու. քանզի Մենտոր, որ զամենայն զկեանս պատանւոյն Տելեմաքայ տնօրինէրն՝ առ 'ի գերակայ ամբառնալ զնա 'ի փառս, ոչ յամեցուցանէր զնա 'ի վայրս իւրաքանչիւր աւելի քան զպէտս հանդիսից առաքինութեան և հրահանգելոյ 'ի փորձ. վասն որոյ և անդէն 'ի հասանել անդր պատանւոյն՝ տուեալ էր կազմել զնաւն։

Բայց Իդոմենևս, որ վաղ իսկ դժկամակէրն ընդ կազմութիւն նաւուն, անկաւ 'ի տրտմութիւն մեծ և 'ի վհատութիւն ողորմ, յորժամ հիւրքն՝ երկոքին պատտապարանք նորին կազ

մէջն 'ի չու։ Փակէր 'ի խորս արքունեացն, և հառաչանս 'ի խորոց սրտէ գերարտասուալից գեղձմանմբ արձակէր, զպէտս խոկ կերակրոյն 'ի մոռացօնս արկեալ. քուն ոչ ամոքէր զաղեկէզ վիշտս նորա, և հալէր մաշէր 'ի տառապանացն։ Զանգոյն ծառոյ մեծի՝ որ հովանեաւ սաղարթախիտ ոստոցն ծածկիցէ զերկիր, և ուտիճ 'ի բուն նորա անկեալ, զփափուկ վտարսն՝ որք զհիւթն ծծեն սնանիչ՝ կրծել սկսանիցի, ծառն այն անդրրդուելի 'ի մրրկաց, որում երկիր արգաւանդ մատաղիւր մատուցանէրն սնունդ, և յոր փայտաստ մայրեւորի խնայեացն միշտ, երթայ և տկարանայ առանց ուրուք զախտին կարելոյ գուշակել զպատճառս, թառամի կապտի 'ի սաղարթագեղ փառացն, և կոճղ մերկ արձանանայ հերձոտ կեղեւնօք և գօս ուղէշիւք. այսպիսի Իդոմենէս 'ի վիշտսն երեւէր։

Տելեմաք շարժեալ 'ի գորով՝ ոչ եւս իշխէր բարբառել. չկամէր զհասանել աւուրն՝ յորում պարտ էր նոցա մեկնել, պատճառանս խնդրէր յամելոյ. և տարտամէր նա արդեօք ընդ երկար, բայց Մենտոր խօսեցաւ ընդ նմա և ասէ. Ուրախ եմ ընդ այդքան փոփոխումն քոյին. խիստ էիր և դոռոզ 'ի բնէ, և զօգուտ եւեթ և զդիւր անձին խնդրէիր. այլ արդ ուրեմն սկսանիս մարդկօրէն կարեկից գոլ այլոց, զփորձ առեալ կարեաց։ Առանց այդր կարեկցութեան չիք լաւութիւն, չիք առաքինութիւն, և ոչ բաւականութիւն իշխելոյ

այլոց. այլ ոչ է արժան ծայրայեղ զառածանել ղովլաւ 'ի մեղկ բարեկամութիւն։ Մ՝տադիր ես ինքն յանձն առնուլ խօսել ընդ Թագաւորին առ 'ի համոզել զնա 'ի հրաժեշտ մեր, և ազատ առնել զքեզ 'ի դժպհի բանից այտի. այլ չկամիմ զի ամօթ չար և երկիւղ վատ տիրեսցեն 'ի սիրտ քո, պարտ է քեզ ընդ սէր և ընդ գորով բարեկամութեան միալուծ բերել յանձին զանյողդողդ բարեկամութիւն։ Ոչ է պարտ վշտացուցանել զոք առանց հարկի. այլ ուր հարկ 'ի վերայ կայցէ վշտացուցանելոյ, պարտ է վշտակից լինել նմա, և սփոփել ըստ կարի զվիշտն՝ յորոց չիցէ մարթ խնայել զնա։ Յայնժամ պատանւոյն 'ի վերայ ածեալ, ասէ. Ի դոյն իսկ և ես առ 'ի սփոփումն Թագաւորին՝ ցանկայի զի 'ի քէն մանաւանդ լուիցէ, և մի՛ յինէն զհրաժեշտ մեր։

Արկնեալ անդրէն Մ՝ենտորի, ասէ. Իթաքիս սիրեցեալդ իմ Տելեմաքէ, և զծիրանածին արքայորդւոյ բերես զբարս, որք զամենայն ինչ ըստ հաճոյից իւրեանց կամին, և հնազանդս կամաց իւրեանց զհամագոյս, այլ չիշխեն հակառակել ընդ ումեք դէմ յանդիման։ Նոր ոչ եթէ առ հոգալ ինչ՝ թէ գուցէ վշտացուցանիցեն զայլս, այլ առ անձին դիւրի՝ զի մի՛ տեսցեն դէմս տխուրս և տժգոհս։ Ոչ ինչ փոյթ է նոցա ընդ վիշտս և ընդ թշուառութիւն մարդկան, եթէ միայն չտեսանիցեն զայնս. դժպհի իսկ է նոցա և անլուալի լսել զայնցանէ։ Ըստ 'ի հաճոյ լինել նո-

ցա, հարկ է առնել՝ թէ բարուք ամենայն ինչ յաջողէ. և յորժամ 'ի զբօսանս կան, չկամին տեսանել ինչ կամ լսել՝ որ ընդհատումն զուարճութեան նոցա առնիցէ: Եթէ յանդիմանել զոք պարտ իցէ կամ խրատել, նշաւակել զպատուհաս, ցրել զկարծեցեալ իրաւունս, կամ հակառակ կալ անիրաւ թախանձանաց, յայս առնեն ապաստան. և փոխանակ հեզահամբոյր արիութեամբ խօսելոյ ինքնին, ներեն յափշտակել զշնորհս զևս անիրաւս, և զկարևորագոյն իրակութիւնս խանգարեն, չիշխելով սահմանել ինչ հակառակ մնաց այնոցիկ՝ ընդ որս գործ է նոցա հանապազօր: Եւ զայս տկարութիւն նոցա ամենայն ոք 'ի ձայն առեալ՝ ստիպէ զնոսա, ժտէ, թախանձէ, նեղէ, և նեղելովն զնոսա յաջողի: Շողոմիւք 'ի սկզբան անդ և զբօսանօք ընդ միտ մտեալ, իբրև գտանէ առ նոսա համարձակութիւն, և բարձի հասեալ՝ մերձ կայ նոցա, վարէ զնոսա ուր և կամք իցեն, և դնէ լուծ 'ի վերայ պարանոցի նոցա. հեծեն նոքա ընդ լծովն, և թօթափել կամին զայն, սակայն ստիպին տանել զայն 'ի սպառ: Արժանաւորք են ինքնիշխանք երևելոյ, այլ իշխին միշտ յայլոց, և չկարեն իսկ 'ի բաց կալ 'ի նոցանէ. հանգոյն վայրաբեր ստեղան որթոյ, որ ոչ ունելով հաստատարան 'ի բնէ՝ յենու միշտ 'ի յայլ ինչ ծառ հաստատաբուն:

Չթողից երբէք, Տելեմաքէ, անկանել քեզ 'ի տկարութիւնդ յայդ՝ որ անպիտան կացուցանէ

զայր 'ի տեսչութիւն։ Սա գոռոզէր մինչեւ չիշխել խօսելոյ ընդ Իդոմենեայ, ընդ մեկնել քո 'ի Սալենտեայ՝ ոչ եւս լիցի քեզ փոյթ ընդ վիշտս նորա. ոչ վիշտք նորա 'ի գործոյ ածեն զքեզ, այլ յերկեսաց նորա աղմկիս։ Համայս, եթէ խօսեաց ընդ թագաւորին. ուսիր, զգուշ առեալ, կարեկից լինել համեղերձ ազնուութեամբ. ցոյց նմա զվիշտ քո, զի մեկնիմք 'ի նմանէ. այլ ցոյց եւ զհարկ մեկնելոյ մերոյ վճիռ բանիւք։

Նաեւ պատասխանի ոչ համարձակ իշխէր կալ Մ՝ենտորի, եւ ոչ գնալ յանդիմանս լինել թագաւորին. ամաչէր ընդ երկիւղ իւր, եւ ոչ արտասուացն յաղթել նմին. 'ի վարանս կայր, յառաջ մտանէր, եւ յետս անդրէն ընկրկէր՝ բարբառել ինչ առ 'ի յանմեցուցն. բայց Մ՝ենտորի ակնարկելով եւեթ քաջացուցեալ զնա, եւ զպատճառանս նորա ցրեալ, ապա ասէ ժպտելով. Սա՞ ուրեմն իցէ յաղթականն Դաւնեաց եւ ազատարար Հերակղեայց, հանճարեղին Ոդիսեայ որդի, որում յետ նորա անկ է կալ պատգամաւոր Հելլադայ. չիշխէ առ արդ ասել Իդոմենեայ՝ զի չկարէ յամել 'ի դարձ 'ի հայրենիսն առ հայր իւր։ Աւա՛ղ Իթակացւոց, որոց թագաւոր գերեալ տարապարտ ամօթոյ, զօգուտս մեծամեծս աշխարհին ընդ դուզնաքէից կրիցն իւրոց փոխանակէ։ Տե՛ս ինձ, Տելեմաքէ, քանի՛ խառն ընդ պատերազմական քաջութիւն եւ ընդ արութիւն առաջնորդական կայցէ. դու ոչ երկեար 'ի զինուցն Ադրաստոյ, եւ երկնչիս արդ

տայց քեզ զամենայն իշխանութիւն, և վստահութեան իմոյ 'ի քեզ մի՛ լիցի սահման։ Եթէ այս ամենայն բարեմասնութիւնք չյորդորեն զքեզ կալ աստ, գոնէ զՄենտոր թող առ իս զմիակ ապաւէն իմ։ Խօսեաց, տո՛ւր ինձ պատասխանի, մի՛ փակեր զգութ քո յինէն, գթա 'ի թշուառագոյնս յիս քան զամենայն մարդիկ։ Հիմ դու կաս անբարբառ. գիտեմ, աւա՜ղ, զի անկարեկիր են ինձ դիք. սաստկագոյն ևս զգամ զայն քան 'ի Կրետէ, յորժամ յարիւն որդեկին իմոյ զձեռն իմ մխեցի։

Յայնժամ Տելեմաք երկչոտ և դողդոջ ձայնիւ ասէ. Զեմ ինչ ինքնիշխան, կոչեն զիս Ճակատագիրք 'ի հայրենիս իմ. աստուածախնամն Մենտոր հրամայէ ինձ 'ի դիմաց դից մեկնել աստի, և զինչ առնել իցէ ինձ։ Հրաժարեմ 'ի հօրէ և 'ի մօրէ, և 'ի հայրենեաց իսկ՝ զոր առաւել քան զնոսին պարտ է ինձ սիրել։ Ի թագաւորութիւն ծնեալ եմ, և ոչ 'ի քաղցր և յանդորրաւէտ կենցաղ և 'ի վայելս հաճոյից իմոց։ Արքայութիւն քո ճոխ և հզօր է քան զհայրենին իմ. այլ պարտ է ինձ ընտրել զառ 'ի դիցն ինձ սահմանեալ բախտ, քան զշնորհեալն 'ի բարերարութենէ քումմէ։ Բարեբաստ գտայց, թէ զԻթակէ՝ առանց իսկ քոյոյ թագաւորութեան՝ լիցի ժառանգել ինձ 'ի հարանութիւն. այլ չեղէց երբէք այդմ արժանի, թէ ոչ փութացայց ուր կոչեն զիս պարտք, և թէ ոչ հայր իմ խնդրեսցէ զնա ինձ 'ի

հարան 'ի քէն ։ Ո՞չ դու ինքնին խոստացար յղել զիս յԻթակէ, ո՞չ վասն խոստմանդ այդորիկ ետումարտ պատերազմի ընդդէմ Ադրաստայ ընդ նիզակակիցս քո ։ Ժամ է ինձ խորհել արդ 'ի հայրենական առանձին հոգոց ։ Դիք՝ որ ետուն զիս Մենտորի, ետուն և զնա ինձ՝ զի զճակատագրին լցցէ յիս զհրամանս ․ և կամիս զի և զՄենտոր կորուսից յետ կորուսանելոյ զամենայն ։ Ոչ ևս են ինձ, ոչ գանձք, ոչ տեղի ապաւինի, ոչ հայր, ոչ մայր, և ոչ հայրենիք աներկեան ․ այլ մի ևեթ իմաստուն և առաքինի մնայ ինձ, պարգև Արամազդայ գերագոյն ․ արդ քեզէն տուր զիրան, թէ կարիցեմ հրաժարել 'ի նմանէ և յանձն առնուլ զի թողցէ նա զիս ։ Ոչ այդ, մի լիցի ինձ բնաւ ․ մեռայց մանաւանդ, բարձ յինէն զկեանս իմ, և մի զՄենտոր ․ զի ոչ ինչ առ նովաւ զկեանս համարիմ ։

Եւ որչափ Տելեմաք յառաջ մատուցանէր զբանս իւր, և ևս զօրանայր բարբառ նորա, և փարատէր 'ի նմանէ երկչոտութիւն ։ Իսկ Թագաւորն առ 'ի բերան եղեալ, սակայն չկարէր հաւանութիւն բերել առ բանս պատանւոյն ․ և անզօր 'ի խօսել, ակնարկութեամբ ևեթ և նշանացի հնարէր 'ի գութ շարժել զնա ։ Եւ ահա եհաս անդր Մենտոր, և լուրջ և զգօն բարբառով ասէ ․

Մի անկցի սիրտ քո, տէր արքայ ․ զի թէպէտ և մեկնիմք մեք 'ի քէն, այլ իմաստութիւն դաբանակալ աթոռոյ դիցն՝ կացցէ մնասցէ առ քեզ ։

'ի դիցն որք այլակերպեալ առ 'ի հրահանգել զտկար և զտգէտ մարդիկ)․ Երթ ընդ ողխոական զառակին, որ առաւել պանծայ քև քան յաղթանակաւն 'ի վերայ Մարդասոսայ։ Ողջա՛յք 'ի միասին․ աւաղ, ոչ ևս զօրեմ բարբառել, ներեցէ՛ք հեկեկանացս։ Ողջա՛յք կեալ բարեբաստիկք 'ի միասին․ ինձ չմնայ այլ ինչ, բայց յիշել զի վայելեցի 'ի ձեզ աստ։ Աւուրք գեղամանիհք, աւուրք երանաւէտք, աւուրք՝ զորոց ոչ ըստ արժանւոյն ծանեայ զյարգ, աւուրք՝ որք կարի փութապէս սահեալ անցիք, դուք ոչ ևս դառնայցէք, և ոչ ևս տեսցեն աչք իմ զոր դեռ ևս տեսանեն։

Զայն ժամ պատեհ առեալ Մենտորի 'ի չու, գիրկս էարկ Փիլոկլեայ, և եթաց զնա արտասուօք՝ առանց կարելոյ ինչ բարբառել։ Իսկ Տելեմաք խնդրէր զձեռանէ ունել Մենտորի՝ առ 'ի բաժանել յԻդոմենեայ․ բայց Իդոմենէս յարի անկեալ ընդ նոսա 'ի նաւահանգիստն կոյս, էառ յաջմէ և յահեկէ զՄենտոր և զՏելեմաք․ ակնարկէր 'ի նոսա, և հառաչէր․ սկսանէր հեկեկելով զբարբառ, և ոչ կարէր կատարել զայն։ Ու ահա գոչիւն խառնաձայն հնչէր ընդ ծովեզրն ծածկեալ 'ի նաւաստեաց․ ձգէին պարանս, պարզէին առագաստ, և հողմն շնչէր յաջողակ։ Յայնժամ Տելեմաք և Մենտոր վտակայեղց արտասուօք առին հրաժեշտ 'ի թագաւորէն․ իսկ նա հարուստ մի զնոսա ընդգրկեալ, և ապա զհետ նոցա ձգտէր աչօք ցորվայր զօրէրն նշմարել։

# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ

## ՔՍԱՆԵՐՈՐԴԻ ԵՐՐՈՐԴԻ ԳՐՈՑՆ

1 Սիբարիտացիք բնակիչք Սիբարեայ քաղաքի մեծին յունաստանի յիտալիա, որ կործանեցաւ 'ի կրոտոնացւոց, և կան ցարդ աւերակք նորա 'ի Կալաբրիա որ յայնկոյս:

2 Սիպոնտացիք բնակիչք Սիպոնտեայ քաղաքի 'ի Նէապօլիս, երբեմն հռչակաւորի. զոր կործանեցին արշաւանք Սարակինոսաց և սասանութիւնք երկրի:



# ԱՐԿԱԾՔ ՏԵԼԵՄԱՔԱՅ



## ԳԻՐՔ ՔՍԱՆԵՐՈՐԴ ՉՈՐՐՈՐԴ

# ՙՆԱԽԱԴՐՈՒԹԻՒՆ

Տելեմաք 'ի նաւարկելն ընդ Մենտորի՝ բազում խնդիրս առաջի առնէ նմա վասն բարուց առաջնորդութեան, և մանաւանդ վասն ճանաչելոյ զմարդիկ՝ առ 'ի վար արկանել զնոսա, և մի 'ի չարաց պատրել: Ի վերջ կոյս խօսիցն՝ առ 'ի չգոյէ հողմոյ իջանեն 'ի կղզի մի, ուր և Ոդիսեւս իջեալ էր. անդ տեսանէ զնա Տելեմաք, և խօսի ընդ նմա յանծանօթս. և 'ի մտանել նորա անդրէն 'ի նաւ և 'ի մեկնել՝ ազդի սիրտ պատանւոյն, առանց զաղմկին գուշակել կարելոյ զպատճառս: Մենտոր յայտնէ նմա զայն, քաջալերեալ զնա և աներկեան տրամեալ զհետ հօրն ընդ հուպ հասանելոյ. այլ փորձէ զերկիւղածութիւն նորա և զհամբերութիւն, յամեցուցեալ զընթացսն առ 'ի մատուցանել զոհ Աթենասայ: Եւ ապա գիտուհին Աթենաս, այն որ առաջնորդէրն նմա 'ի կերպարանս Մենտորի, զաստուածային անդրէն զգեցեալ զկերպարան՝ յայտնէ զանձն իւր. և զյետին խրատսն տուեալ նմա, լինի աներևոյթ: Հասեալ ապա Տելեմաքայ յԻթակէ, գտանէ անդ զՈդիսեւս առ Եւմեայ հաւատարմի:

# ԱՐԿԱԾՔ ՏԵԼԵՄԱՔԱՅ



## ԳԻՐՔ ՔՍԱՆԵՐՈՐԴ ՉՈՐՐՈՐԴ

Ի նոյն հողմունոյց առագաստիցն թռչարանք, խաղխախ 'ի վեր առնու նաւաստին 'ի ջուր, և խուսէ ցամաքն 'ի բաց ։ Ուղղիղն ճարտարապետ նշմարէ 'ի հեռուստ զԼեւկադայս ՝ որոց գլուխք 'ի յորձանուտ ծածկին մրրիկ ցրտաստառոյց եղեմանն, և զԸանթայիս ՝ որք տակաւին խրոխտ զերկնաքերձ գագաթունսն ամբառնան զյաճախակի ամպահարեալս ։

Այս մինչդեռ նաւարկէին, ասէ Տելեմաք ցՄենտոր. Արդ ուրեմն թուիմ հասու լեալ քեւ կարգաց առաջնորդութեան. երազք թուէին ինձ այնուքիկ, այլ արդ պարզին 'ի միտս իմ և լուսանան. որպէս ընդ այգն նորանշոյլ՝ աղօտ և նսեմ հանգոյցս երևեալ, ապա տակաւ 'ի պայծառանալ լուսոյ՝ իբր 'ի համապարփակ մէջէն վերաբերին 'ի ցուցակութիւն, գոգցես իմն վերստին ընդունողականն իւրեանց առեալ զձև և զերանգ ։

Վասն խելամուտ եղէ զի կարեւորագոյն մասն առաջնորդականին է քաջ ճանաչել զազգի ազգի բնաւորութիւնս և զբարս, առ 'ի կարող լինելոյ ընտրել զնոսա և յիւրաքանչիւր պատշաճսն 'ի կիր արկանել. մնայ ինձ արդ ուսանել՝ ի՞բր զմարդիկ իցէ ճանաչել:

Պատասխանի ետ նմա Մենտոր, և ասէ. Առ 'ի ճանաչել զմարդիկ՝ հարկ է քննել զնոսա, և առ քննել՝ հարկ է տեսանել զնոսա և հաղորդել ընդ նոսա: Այսր աղագաւ պարտ է թագաւորի կենակից լինել ընդ հպատակս իւր, խօսակցել ընդ նոսա, խորհրդակիցս իւր առնել զնոսա, և փորձել 'ի փոքունս՝ անձրով 'ի նոցանէ հանճար, առ 'ի գիտել թէ իցե՞ն առ մեծամեծս բաւական: Ի՞ւ ուսար դու յԻթակէ ճանաչել զձիսն, իմ Տելեմաքէ, բայց ստէպ տեսութեամբ և գննութեամբ թերութեանց նոցա և բարեմասնութեանց ընդ հմուտս արուեստին: Այսպէս ուրեմն խօսեսջիր յաճախ զլաւ և զյոռի հանգամանաց մարդկան ընդ իմաստունս և ընդ առաքինիս, որոց պարապեալ իցէ ընդերկար 'ի քննին բնաւից բարուց մարդկան. և ուսցիս տակաւ զբնաւորութիւնս նոցա, և ի՞մ իմիք բաւականք իցեն: Ի՞բր ուսար ընտրել զքերթողս քաջս 'ի Հելլենացւոց, բայց ստէպ ընթերցանութեամբ և թելադրութեամբ վարժապետաց քերթողականին: Ո՞ւսոյց քեզ ընտրել զերգս երաժշտականս, բայց մտադրութիւն զարձեալ և պարապումն ընդ ե-

բաժինչաս ։ Ո՞րքր առաւ մեծութ իցէ բարւոք իշխել մարդկան՝ առանց ձանձրացելոյ զնոսա, և որպէս ձանձրացել զնոսա՝ առանց կենակից լինելոյ ընդ նոսա ։ Տեսանել ևեթ որեար ամբոխահոյլ՝ որք պատրաստականս և առօրեակի արկանիցեն ճառս, ոչ է կենակցել ընդ մարդկան . պարտ է տեսանել զնոսա ուրոյն, հետազօտել զգաղտնիս մտաց նոցա, զննել զնոսա շուրջանակի յամենայն կողմանց, և 'ի խորս սրտից նոցա քողախնդրեալ՝ հողանել զխմնաս նոցին ։ Բայց առ 'ի բարւոք զնոցանէ առնել դատաստան, հարկ է գիտել նախ որպիսին արժան է նոցա գոլ, և որ այն իցէ ստոյգ և հաստատուն յարգ նոցա, առ 'ի կարող լինելոյ ընտրել ընդ յարգունն և ընդ անարգ ։

Ո՛րք հանապազ անկանին զառաքինութենէ և զարժանեաց, առանց ուրուք գիտելոյ զճշգրիտ նոցին սահման ։ Ոչ յոլովս, որք յարաժամ զայնցանէ ճառարտակեն, ոչ այլ ինչ այնոքիկ են՝ բայց անուանք ստորոտանք ։ Պարտ է ունել 'ի մտի հաւասարի կանոնս արդարութեան, ուղղութեան և առաքինութեան, առ 'ի ճանաչել զարդարն և զառաքինի . պարտ է գիտել զկարգս բարւոք և իմաստուն տեսչութեան, առ 'ի ճանաչել որք ումանք կարգացն այնոցիկ պատկառ կան, և որք ճարտարապետութեանց խոյս տան յայնցանէ 'ի բաց ։ Հանճարոտ ինչ ասել . որպէս առ 'ի չափումն մարմնոց՝ հաւասարի չափոց պիտոք են, այսպէս և առ 'ի դատել պիտոք են հաստատուն կարգաց՝

որ ուղղեսցեն զդատաստանս մեր ։ Պարտ է կշխա զոտակաւ զխոսել զնպատակ կենաց մարդկան, և ի՛մ ուշ ունել արժան իցէ առաջնորդականին ։ Ո՛րք միակ և կարևորագոյն ուշ նպատակի նորին է՝ մի՛ երբէք զիշխանութիւն և զմեծութիւն վասն անձին ըղձանալ, զի փառաւորիւ այս իղձ 'ի յագեցումն ևեթ գոռոզ բռնաւորութեան բերի. այլ նուիրել զանձն յանաշխատ հոգս տեսչութեան առ 'ի յարդարել լաւս և բարեբաստիկս զմարդիկ ։ Այլ որ ոչ այսպէսն զնայցէ՝ առ խարխափ գնայ, պատահարք են ամենայն կեանք նորա, և է նա որպէս նաւ յանդունդս ծովու, որոյ չգուցէ զե-կավար, ոչ դէտ աստեղաց, և ոչ հմուտ ոք ծովե-զերաց. որում բեկումն հասանէ անհրաժեշտ ։

Նոյնպէս այն է զի իշխանք առ 'ի չճանաչելոյ զստոյգն առաքինութիւն, անգիտանան զինչ պարտ իցէ նոցա խնդրել 'ի մարդիկ ։ Ստոյգն ա-ռաքինութիւն դառն իմն թուի նոցա, խիստ և աննուաճելի. յորմէ զարհուրեալ և խոժոռեալ, դիմեն 'ի շողոմս. և ոչ ևս այնուհետև հանդի-պին անկեղծութեան և առաքինութեան, զհետ զակատեալ ունայն փառաց՝ որք անարժանս ճըշ-մարտին զնոսա կացուցանեն ։ Սովորին իսկ վաղ 'ի հաւատալ՝ թէ չգուցէ յերկրի առաքինութիւն ճշմարիտ. քանզի բարիք քաջ ճանաչեն զչարս, բայց չարք չճանաչեն երբէք զբարիս, և չհաւա-տալի իսկ թուի նոցա թէ գուցեն ։ Իշխանք այս-պիսիք կասկածել ևեթ գիտեն անխտիր զամե-

նեցունց. ծածկին, ամրանան, և վրէժխնդիր լինին դուզնաքէից. երկնչին յայլոց, և ահարկուք են նոցին. խոյս տան 'ի լուսոյ, և չիշխեն որպիսիք ենն երևել: Յանծանօթս կամին լինել, բայց ճանաչին. զի խորամանկ հետազօտութիւն ոստանկին հասանէ ամենայն ուրեք, և զամենայն ինչ նոցա գուշակէ. այլ նոքա չճանաչեն և ոչ զոք: Նւագանին օգտածարաւ, որ շուրջ կայ զնոքօք, թերևս 'ի տեսանել զնոսա անմատոյցս այլոց: Թագաւոր անմատոյց 'ի մարդկանէ, անմատչելի է և ճշմարտութեան. և որք կարող են բանալ զաչս նորա, մերժին 'ի բաց չարահամբաւեալ ժանտ զրպարտանօք: Վայրենի և անհամբոյր վարէ նա կենցաղ. կասկածէ յար 'ի պատրանաց, և յար 'ի պատրանս կայ, կարի իսկ արժանի պատրելոյ: Որ ընդ սակաւս ոմանս խօսի, հարկ է նմա ամենայն կրիւք նոցա և մտահաճութեամբք զգածիլ. զի և լաւաց իսկ են մոլորութիւնք մտաց և թերութիւնք: Թող զայս, և խաղ առնեն զնովաւ բանսարկուք. ազգ վատ և չարասէր՝ որ պարարի 'ի թոյն, և թունաւորէ զանմեղս իսկ իրս, որ ստուարացուցանէ զդուզնաքեայս, և նիւթէ զրպարտանս՝ առ 'ի չդադարել 'ի վնասելոյ, որ վասն անձին չարաշահութեան գրգռէ զկասկածանս և զդժպատեհ վայրախուզութիւն վատ և կասկածոտ թագաւորի:

Ծանիր ապա, Տելեմաքէ, ծանիր զմարդիկ. քննեսջիր զնոսա, հարց զնոսա զիրերաց, փոր-

ձեռջիր զնոսա տակաւ, և մի ուրեք լինիր անձնամատն ։ Ուսիր օգտել ՚ի փորձոյ յանկանել քո ՚ի պատրանս, զի ոչ իսկ է մարթ զերծանել քեզ յամենայն պատրանաց. քանզի խորագէտ են չարք, և մեքենայիւք ձգեն զլաւս ՚ի պատրանս ։ Ուսիր անտի մի փաղփաղել ՚ի դատել զոք ՚ի բարի կամ ՚ի չար, զի երկոքեան իսկ վնասակար յոյժ են չարիք. այսպէս սխալանք քոյին օգուտ մեծ հրահանգաւն գործեսցեն քեզ ։ Ի գտանել զոք հանճարեղ և առաքինի, կացո զնա վստահութեամբ ՚ի գործ. ցանկալի է լաւաց զի ծանիցի ուղղութիւն իւրեանց, և սիրեն զվարկ և զվստահութիւն առաւել քան զգանձս ։ Բայց մի զեղծուցաներ զնոսա, տալով նոցա անսահման իշխանութիւն. զի են՝ որոց մարթէր յարատեւել ՚ի լաւութեան, այլ առաւելագանց իշխանութիւն և գանձս ՚ի թագաւորէն իւրեանց ընկալեալ՝ ոչ յարատեւեցին ։ Որում շնորհեն դիք գտանել յամենայն թագաւորութեան իւրում երկուս կամ երիս անձինս ստոյգ բարեկամս անյողդողդս իմաստութեամբ և առաքինութեամբ, յաջողէ նմա գտանել ՚ի ձեռն նոցա և այլս նոցին նմանիս՝ առ ՚ի ձեռանէ նոցա կացուցանել պաշտօնեայս ։ Ի լաւաց անտի, յորս վստահի թագաւորն, ուսանի որ ինչ չկարէ իւրովի տեսանել յայլս ։

Ես յաւել պատասխանին. Բայց լուեալ է իմ ասելոյ ստէպ, զի օրէն է և զչարս ՚ի վար արկանել աջողակս ՚ի գործ ։ Մենտոր ասէ. Բազում այն

է՝ զի և հարկ իսկ է 'ի վար արկանել զնոսա ։ Ի յուզել յաղմկել ազգի՝ գտանին յաճախ արք անիրաւք և չարարուեստք յիշխանութեան, կարևորս ունելով գործս 'ի ձեռին՝ զորս չէ մարթ բառնալ 'ի նոցանէ, և է նոցա մտերմութիւն ընդ հզօրս ոմանս՝ յորոց զգուշութեան պէտք են. պարտ իսկ է և 'ի նոցունց իսկ զգուշանալ, զի եղեռնաւորք են և երկիւղալիք և կարողք վեր 'ի վայր հարեալ կործանելոյ զամենայն ։ Ընդ իսկ արժան է վարել նոքօք առ ժամանակ մի. բայց պարտ է ուշ ունել ումպէտս զնոսա առնելոյ տակաւ ։ Սակայն զգոյշ լեր մի երբէք անկասկած ընդ նոսա և մտերիմ ունել վստահութիւն, զի զերծանին նոքաւ, և գիտակցութեամբ զաղտնեաց քոց կապեալ կաշկանդեն զքեզ 'ի շղթայս դժուարախորտակելիս քան զամենայն կապանս երկաթիս ։ Ծառայեցո զնոսա 'ի գործ հարևանցի, փայփայեսջիր զնոսա, և հարկեցուսջիր առ 'ի խնդիր կրիցն իւրեանց գոլ ընդ քեզ հաւատարիմ, զի չէ իսկ հնար այլով իւիք սերտ ունել զնոսա. այլ մի երբէք գիտակիցս առնիցես զնոսա գաղտնածածուկ խորհրդոց քոց ։ Կա՛լ միշտ պատրաստ 'ի ձեռին զծածուկ զօրութիւն առ 'ի շարժել զնոսա ըստ հաճոյից կամաց քոց. և մի տար նոցա զբանալի սրտի քո և զգործոց ։ Ի խաղաղել և 'ի բարեկարգել պետութեան քո յանձանձանօք արանց իմաստնոց և ուղղոց՝ յորս իցես վստահ, ոչ ես լիցին 'ի պէտս արք չարք՝ որովք հարկ էր

քեզ վարել։ Այլ մի և այնուհետև դադարեսցես 'ի բարբառելոյ նոցա, զի ոչ է օրէն ապախտաւոր լինել և առ չարս, այլ լաւս զնոսա բարեբարութեամբ յարդարել։ Ընտես արա զԹերութիւնս ինչ նոցա, ներելիս մարդկեղէն տկարութեան. բայց ա՛ռ 'ի ձեռին տակաւ զիշխանութիւն, առ 'ի նուաճել զչարիս՝ զորս գործիցեն նոքա 'ի գտանելն համարձակութիւն։ Հանդերձ այսու ամենայնիւ չար է 'ի ձեռն անօրինաց զբարիս գործել. և Թէպէտ բազում այն է՝ զի չէ հնար հրաժարել 'ի չարէ աստի, սակայն պարտ է փոյԹ ունել կարճելոյ զհարկն։ Թագաւոր իմաստուն, որ ոչ այլ ինչ խնդրէ՝ բայց բարեկարգութիւն և արդարութիւն, կարասցէ տակաւ ոչ ևս կարօտել զեղծ և նենգաւոր մարդկան, շատ իսկ գտանելով արս լաւս և բաւականապէս աջողակս։ Բայց ոչ միայն խնդրել պարտ է, այլ և յաւելուլ յազգին զլաւ որեար։

Պատանին ասէ. Դժուարին յոյժ իցէ այդ։ Մենտոր ասէ. Բնաւ իսկ ոչ. 'ի հետազօտել քո արս աջողակս և առաքինիս՝ առ 'ի տալ նոցա բարձ և պատիւ, յորդորեսցես և քաջալերեսցես զնոսա՝ որոց է հանճար և արիութիւն, ամենայն ումեք 'ի լաւ անդր նկրտելոյ։ Քանի՞ք անկեալ դնին 'ի նսեմ անգործութեան, որոց մարթէր պայծառանալ՝ եթէ յոյս և գրգիռ բարենախանձ քաջալերէին զնոսա 'ի վաստակս։ Քանի՞ք դարձեալ առ թշուառութեան և չկարելոյ ամբառնալ առա-

քինութեամբ յաւագութիւն, հնարին ամբառնալ անդր ամբարտաւանութեամբ: Որդ եթէ վարձս և պատիւ հանճարոյ և առաքինութեան առաջի դնիցես, քանիք ոչ առաքինասցին իւրովի. և քանիս ոչ դու ինքն յարդարեսցես առաքինիս՝ ամբառնալով զնոսա աստիճանաւ 'ի ստորէ մինչև 'ի բարձրագոյն աւագութիւնս: Յարգեսցես զհանճար նոցա, և զընդարձակութեան մտաց նոցա և զանկեղծ առաքինութեան առցես զչափ. աւագագոյնք յիշխանաց գտանիցին առաջի աչաց քոց 'ի ստորագոյն աւագութիւնս մարզեալք, և տեսցես զամենայն աստիճանս կենաց նոցա, և դատեսցիս զնոսա ոչ ըստ խօսից իւրեանց՝ այլ ըստ գործոց բովանդակ կենաց նոցա:

Մինչդեռ զայսոսիկ Մենտոր խօսէր ընդ պաշտաւնեայսն, տեսին և ահա նաւ մի փէակեցի [3] խարիսխ արկեալ կայր մերձ 'ի կղզի ուրեք անապատ և ամայի՝ շուրջ պատեալ յահագին ժայռից: Լռեցին յայնժամ հողմք, և զեփիւռք քաղցրասիքք ամփոփէին իմն զշունչ իւրեանց. ծով հարթածաւալ իբր զհայելի, և առագաստք անկեալք ոչ ևս յառաջ վարէին զնաւն. Թիավարացն պարտասելոց ընդունայն էր ճիգն, հարկ եղև 'ի կղզի անդր իջանել, որ քարաժայռ իմն ցցուեալ ընդ ալիս քան երկիր էր մարդաբնակ. և եթէ ոչ հողմն խաղաղ էր ծով, մատչել իսկ անդր չէր մարթ անվտանգ: Նաւաստին փէակեցի դետակն կալեալ հողմոց՝ ոչ ինչ նուազ քան զպալենտացիս

փութայր յառաջ վարել զնաւարկութիւնն ։ Տելեմաք ընդ ծովեզրն ապառաժուտ յառաջ մատուցեալ, ուր նախ հանդիպեցան՝ եհարց և ասէ . Տեսեր դու զՈդիսեւս արքայ Իթակեայ յարքունիս Ալկինոեայ ՚ ։ Բայց ուր պատահեացն՝ չէր նա փէակեցի, այլ հիւր անծանօթ ։ դէմք նորա վեհափառ, այլ տխուր և վշտահար . Թուէր նա մտայոյզ, և հազիւ լուեալ զհարցուած պատանւոյն՝ յամր ետ պատասխանի . Ոչ խաբիս, արդարև Ոդիսեւս ագաւ յարքունիս Ալկինոեայ, ուր երկիւղ Արամազդայ է և ասպնջականութիւն . այլ ոչ ևս է նա անդ, և ՚ի զուր է քեզ խնդրել զնա անդ, մեկնեցաւ նա անտի . և եթէ հաշտեալ ընդ նմա իցեն դիք, և ուր ուրեմն ներեսցեն նմա ողջունել զդիսն հայրենիս, գնասցէ նա յԻթակէ ։

Զայսօրիկ հիւրն տխրութեամբ ասացեալ՝ դիմեաց ՚ի պուրակ մի թանձրախիտ ՚ի վերայ միոյ ՚ի ժայռից, և դէտ կայր ընդ ծով, փախուցեալ յերեսաց մարդկան . Թուէր իսկ տխուր ընդ յամեցումն չուոյն ։ Պշուցեալ հայէր ՚ի նա Տելեմաք . և որչափ հայէր՝ նոյնչափ ևս առաւել յաճախէին ՚ի նմա յոյզք սրտին և հիացումն, և ասէր ցՄենտոր . Որպէս այր որ լի վշտօք՝ հազիւ լուիցէ բանից, այնպէս հիւրս այս ետ ինձ պատասխանի ։ Յուզին գութք իմ ընդ թշուառս, յորմէ հետէ զփորձ առի թշուառութեան . և կարեկից յոյժ, չգիտեմ ընդէր, ընդ

տանս լինիմ. անհամբոյր իսկ գտաւ նա առ իս, և պատասխանել իսկ ինձ ծանրացաւ. սակայն ելս վշտաց նորա ըղձանամ։

Պատասխանի ետ Մենտոր ժպտելով, և ասէ. Տես ինձ զարգասիս վշտակրութեան, գթածք և կարեկիցք վշտաց այլոց եղանին այնու թագաւորք։ Եթէ զբարեբաստութեան ևեթ առեալ իցէ նոցա զչարաթոյն ճաշակ, հանգոյնս իմն դից զանձինս կարծեն, դաշտանալ կամին լերանց ըստ հաճոյս իւրեանց, առ ոչ ինչ զմարդիկ համարին, և զբնաւ աշխարհ խաղալիկ իւրեանց։ Եթէ զվշտաց ոք ընդ նոսա խօսիցի, չգիտեն զի՞նչ այն իցէ, և անտարբերք թուին նոցա, զի չիք նոցա զչափ առեալ որ ինչ խտիր է ընդ թշուառութիւն և ընդ բարեբաստութիւն։ Թշուառութեան ևեթ մարթ է ազդել ՚ի նոսա գութ, և զապառաժ սիրտ նոցա փոխել ՚ի սիրտ մարդկեղէն. յայնժամ ՚ի միտ առնուն զի մարդիկ են և ինքեանք, և զի պարտին խնայել ՚ի համբնակիցս իւրեանց ՚ի մարդիկ։ Եթէ ընդ անծանօթ ոք՝ զի նժդեհ ՚ի ծովեզերս յայսոսիկ իբրև զքեզ գտանի՝ այդպէս խռովին աղիք քո, ո՞րչափ ևս առաւել գորովեսցիս ՚ի վերայ Իթակացւոց՝ եթէ լիցի երբէք տեսանել քեզ ՚ի վիշտս զժողովուրդդ զայդ, զոր աւանդեսցեն քեզ դիք՝ որպէս աւանդի խաշն ՚ի ձեռս հովուի, և փառամոլութեամբ քով կամ սնափառ պերճանօք և կամ յանդգնութեամբ մատնեսցի դա ՚ի թշուառութիւն. զի աղէտք

ժողովրդեան 'ի զառանցանաց թագաւորի հասանէն, չեղեալ նորա նախահող զառաջս անելոյ չարեացն։

Այս 'ի բարբառել զայսոսիկ Մենտորի, ընկղմեալ կայր Տելեմաք 'ի միշտս և 'ի տրտմութեան. և ապա զայրացեալ իմն ասէ. Ոչ եթէ այդպէս իցէ, չիք թշուառագոյն ոք քան զթագաւոր. գերի է նա այնոցիկ՝ որոց հրամայել թուի. նոցին է, և նոցին բոլորանուէր զանձն պարտի ընծայել, և զամենայն պէտս նոցա յանձանձել. ծառայէ ժողովրդեան առ հասարակ, և իւրաքանչիւրոց առանձին. պարտի զիջանել 'ի տկարութիւնս նոցա, խրատել զնոսա հայրաբար, և յարդարել զնոսա զգօնս և բարեբարոյս։ Իշխանութիւն, զոր թուի ժառանգել, ոչ է իւր. զի չկարէ նա առնել ինչ, ոչ առ 'ի փառս իւր և ոչ առ 'ի զբօսանս. այլ օրինաց է իշխանութիւնն այն, որոց պարտի նա հնազանդել առ 'ի տալ օրինակ ժողովրդեան։ Տպաւորագոյնս ասացից, ամենայնպահ է նա օրինաց՝ առ 'ի տալ նոցա իշխել, և պարտի տքնել և վաստակել 'ի պահպանութիւն նոցին. նուազ քան զամենայն ոք վայելէ յազատութիւն և յանդորր, և է նա ստրուկ՝ փոխանակեալ 'ի վերայ բարեբաստութեան աշխարհին զհանգիստ իւր և զազատութիւն։

Կրկնեալ անդրէն Մենտորի ասէ. Այո ամենևին, թագաւոր առ 'ի խնամարկել ևեթ ժողովրդեան իւրում իշխէ, որպէս հովիւ խաշին և

հայր ընտանեաց իւրոց. այլ համարիցիս դու, սիրեցեալդ իմ Տելեմաքէ, զի որ այնքանեացն բարերարէ՝ իցէ նա թշուառ: Խրատէ նա զչարս պատժովք, յորդորէ զլաւս վարձուք, և զաստուածոց բերէ յանձին զդէմն՝ առաջնորդելով ազգի մարդկան յառաքինութիւն: Զիցե՞ն իսկ փառք գերապանծ՝ լինել վրէժխնդիր պահպանութեան օրինաց. սնոտի են փառք՝ իշխել՚ի վերայ օրինաց, թշնամանադիր և եպերելի: Եթէ չար ոք իցէ նա՝ թշուառանայ, զի ոչ գտանէ խաղաղութիւն յախտս իւր և ՚ի սնափառութեան. իսկ եթէ բարի՝ պարտ է նմա ճաշակել և զանանցն զանապակ քան զամենայն բերկրութիւնս. ասեմ իսկ վաստակել վասն առաքինութեան, և յաւերժականացն վարձուց ակն ունել ՚ի դիր:

Յայնժամ պատանին անգէտ յորոց կրէրն ալեկոծէր մտայոյզ, իբր անզօր հասու լինելոյ իմաստիցն այնոցիկ, յորս համակեալ իսկ էր՝ մինչև այլոց իսկ կարել ուսուցանել: Այլ դառնացեալ սևամաղձիւ, և ընդդէմ բնաւորականին իւրոյ հլութեան վարեալ՚ի հոգւոյ հակաճառութեան հերքել իմաստակօրէն զառ ՚ի Մենտորէ լուսաբանեալ զճշմարտութիւնն, և զապերախտութիւն մարդկան ընդդէմ ամենայն ցուցակութեանց նորա առարկեալ, ասէ. Այլ առ ի՞նչ իցէ այդքան հոգ սիրելի զանձն ընծայեցուցանելոյ այլոց, որք թերևս չսիրիցեն իսկ զքեզ, և բարե-

բարելոյ չարաց՝ որք բարերարութեամբդ քով զերծանիցեն ընդդէմ քո։

Պատասխանի ետ Մենտոր հեզութեամբ և ասէ. Պարտ իսկ է ապերախտութեան առ 'ի մարդկանէ ակն ունել, սակայն չդադարել 'ի բարերարելոյ նոցա. զի պարտ է առաւել քան 'ի նոցայն՝ 'ի սէր դիցն հայել, որ զայն հրամայեն։ Անկորուստ է բարերարութիւն. թէպէտ և մարդիկ 'ի մոռացօնս զայն արկանիցեն, սակայն յիշեն զայն դիք և վարձատրեն։ Այլ եթէ ապերախտ խուժանն գտանիցի, սակայն գտանիցեն և լաւք սիրողք առաքինութեան քո, և խուժանն իսկ թէպէտ և յողդյողդ և յեղյեղուկ, սակայն վաղ կամ անագան առնէ իրաւունս ճշմարիտ առաքինութեան։

Բայց կամիս զապերախտութեան մարդկան ունել զառաջս, զգոյշ լեր մի առնել զնոսա հզօրս փարթամս ահաւորս զինուք և բարեկեցիկս. զի փառք և յղփութիւն և փափկութիւն ապականեն զնոսա, որովք յաւելեալ նոցա 'ի չարութիւն՝ ապերախտագոյնք գտանիցին. պարգև մահառիթ պարգևես նոցա, թոյն յօշարակ խառնեալ։ Այլ զուն գործեսջիր ուղղել զբարս նոցա, ազդել 'ի նոսա արդարութիւն, անկեղծութիւն, երկիւղածութիւն 'ի դից, մարդասիրութիւն, հաւատարմութիւն, հեզութիւն և արհամարհանս շահու։ Քանզի լաւս զնոսա յարդարեալ՝ նահանջեսցես զնոսա յապերախտութենէ, և զճըշ-

մարդկան շնորհեսցես նոցա զբարի՝ առնել իսկ զա-ռաքինութիւն. և առաքինութիւն եթէ իցէ 'ի նոսա սերտ, հաստատուն զնոսա կացուսցէ առ որ արարին զնոսա առաքինիս։ Նոյնպէս 'ի շնոր-հել նոցա զստոյգ բարութիւնս՝ անձին իսկ բա-րեբարեսցես, և ոչ լիցի քեզ երկիւղ յապերախ-տութենէ նոցա։ Ոչինչ զարմանք եթէ ապե-րախտ գտանիցին ժողովուրդք առ թագաւորս՝ որք ուսուցանեն զնոսա յանիրաւութիւն, 'ի փա-ռամոլութիւն, 'ի չարակնութիւն ընդ սահմանա-կիցս, յանգթութիւն, 'ի գոռոզութիւն, և 'ի հաստատադրժութիւն. չէ իսկ թագաւորի այլում իմիք 'ի նոցանէ ակնունել, բայց որ ինչ ուսոյցն նոցա։ Իսկ եթէ զսոյն գործէր օրինակաւ և սա-տիւ յարդարել զնոսա լաւս, ժողովէր զպտուղս վաստակոց իւրոց յառաքինութենէ նոցա, և կամ գէթ յառաքինութեան իւրում և 'ի հաճոյ-ղից գտանէր սփոփումն զղեկեւացեալ յուսոյն։

Ապա իբրև դադարեաց Մենտոր 'ի խօսելոյ, դիմեաց Տելեմաք 'ի փէակեցիս անդր նաւորդս նաւուն՝ որ առ ծովեզերբն զկայ առնոյր, և ու-մեմն 'ի ծերունեաց անտի եհարց և ասէ. Ուստի՞ գայք, յո՞ երթայք, տեսէ՞ք բնաւ զՈդիսեւս։ Պա-տասխանի ետ ծերունին և ասէ. գամք 'ի Փէա-կեաց կղզւոյ մերմէ, և դիմեալ գնամք յԷպիրոս 'ի խնդիր վաճառաց. և որպէս լուայ, անց ապաքէն Ոդիսեւս ընդ հայրենիս մեր, այլ ոչ ևս է անդ։ Ապա յաւել պատանին. Իսկ այդ ո՞վ է տխուր և

թախծեալ, որ զվայրս խնդրէ ամայիս՝ դէտակն կալեալ մեկնելոյ նաւուդ: Մենտորին ասէ. Ո՞ւր է դա անծանօթ. փռիւգացի զդա ասեն գոլ՝ Կղէոմեն անուն դորա, և պատգամ առ մօր դորա նախ քան զերկունան լեալ թագաւորել դմա՝ եթէ հեռի 'ի հայրենեացն կացցէ, իսկ 'ի կալ դորա 'ի հայրենիսն՝ աստուածասաստ բարկութեան հարկանել սրածութեամբ զփռիւգացիս: Վասն որոյ ընդ ծնանելն յանձնեցաւ 'ի ծնողաց իւրոց նաւաստեաց ոմանց, որք ածին զնա 'ի Լեսբոս*. ուր սնաւ գաղտ, ռոճիկ կարգեալ նմա 'ի հայրենեացն՝ որոց փոյթ մեծ էր խնամանել զդարձ նորա: Աճեաց ապա մանուկն և եղև հուժկու, սիրելի, աջողակ յամենայն հրահանգս մարմնոյ. և էր նորա հանճար մեծ և քաջակիրթ ախորժակք 'ի վարժս գիտութեանց և գեղարուեստից: Բայց ոչ ուրեք գտաւ նմա կռուան ոտին, զի աշխարհագոյժ եղև գուշակութիւնն որ զնմանէ, ծանուցաւ նա ամենայն ուրեք, և երկնչէին ամենայն ուրեք թագաւորք՝ թէ գուցէ յափշտակեսցէ զթագ իւրեանց: Այսր աղագաւ անդադարին 'ի մանկութենէ թափառական շրջի, և ոչ ուրեք յաշխարհաց ազատութիւն է նմա զկայ առնուլ: Անց նա բազում անգամ յազգս հեռաստանեայս. այլ ընդ հասանել նորա ուրեք 'ի քաղաքաց՝ յայտնեցաւ ազգ նորա և գոյժ պատգամացն որ զնմանէ: Ի զուր է նմա թագուցանել զանձն, և աննշան ամենայն ուրեք ընտրել

կենցաղ. ուր և իցէ՝ փայլէ յականս իսկ իւր հանճար նորա, որպէս պատմեն, թէպէտ 'ի հրահանգս մարտի, թէ 'ի վարժս գիտութեանց և թէ 'ի յանձանձանս իրաց կարևորաց: Ամենայն ուրեք պատահեն նմա դէպք և պատահարք, որք ձգեն ածեն զնա յերևան. բարեմասնութիւնք նորա հէք զնա կացուցանեն, ահարկու առնեն զնա և տարագիր ամենայն ուստեք՝ ուր խնդրէ կայս: Ճակատագրեալ է նմա լինել մեծարոյ սիրելի և զարմանալի ամենեցուն, բայց տարամերժ յամենայն ծագաց երկրի: Անցեալ իսկ է զաւուրբք, սակայն չև ևս կարաց գտանել խորշ ինչ ուրեք 'ի ծովեզերս Ասիոյ կամ Եւրոպայ՝ ուր տացի նմա դադար և վայրիկ մի հանգստեան: Թուի անփառասէր ոք, և ոչ հետամուտ բախտի. այլ բարեբաստ գտանէր, եթէ ոչ խոստանային նմա պատգամք Թագաւորել: Չիք նմա յոյս դարձի 'ի հայրենիսն, զի գիտէ իսկ թէ աղէտս ևեթ և արտասուս լիցի նմա ածել անդր ընդ իւր: Արքայութիւն իսկ, վասն որոյ այնչափ կրէ վիշտս, չթուի նմա ցանկալի. ակամայ ըստ դժպհի բախտին հրամանաց, զհետ նորին յերկրէ յերկիր ընթանայ. գոգցես իմն խուսէ այն յերեսաց հիքին առ 'ի խաղ առնել զնա մինչև ցաւևոյթ: Գիտցն անմահից դժնդակ պարգև, որ դառնացուցանէ զգեղեցկագոյն աւուրս կենաց նորա, և պատրաստէ նմա վաստակս 'ի տիս՝ յորում տկարութեան նորա հանգիստ ևեթ ցանկալի է:

Մ[illegible] գնալ 'ի Թրակիա՝ խնդրել ազգ վայրենի առանց օրինաց, զի ածեալ զնա 'ի քաղաքաժողով միաբանութիւն՝ իշխեսցէ նմա զամս ինչ, որպէս զի գալով չար պատգամին՝ ոչ ևս լիցի 'ի նմանէ երկիւղ բարգաւաճելոց պետութեանց, և կարասցէ այնուհետև խոյս տալ 'ի գիւղ ուրեք Կարիոյ, և պարապել անդ 'ի միակութիւն՝ զոր սիրէ կաթոգին: Այս է ինքն այր լաւ և իմաստուն, երկիւղած 'ի դից, որ քաջ ճանաչէ զմարդիկ, և գիտէ կեալ ընդ նոսա խաղաղութեամբ, թէպէտ և ոչ մեծ ինչ զնոցանէ բերիցէ կարծիս: Այսքիկ ահա զհիւրոյդ, զորմէ հարցանեսդ, պատմին:

Բայց 'ի զրուցել առնն զայսոսիկ՝ դառնայր հայէր սակայն Տելեմաք 'ի ծով, զի ահա յուզէր ալէծուփ. և մրրկեալ 'ի հողմոց զայլն կածէին ընդ ժայռս կոհակք, 'ի փրփուր ուռեանց զնոսա ծածկեալ: Յայնժամ ծերունին ասէ ցՏելեմաք. Ժամ է ինձ մեկնելոյ, ուղեկիցք իմ չսպասեն ինձ: Այս զայս ասացեալ՝ ընթացաւ 'ի ծովափն, և մտանէր ընդ այլս 'ի նաւ. աղաղակ խառնաձայն հնչէր ընդ ծովեզրն 'ի ձեպ շտապոյ նաւաստեացն 'ի չու:

Իսկ Կղէոմէն անծանօթն այն հիւր թափառական ընդ կղզին, մերթ 'ի մի 'ի զահաւանդից և մերթ 'ի միւսն ելեալ՝ նկատէր զամբաւածաւալ ընդարձակութիւն ծովուն ծանրաթախիծ տրտմութեամբ: Բայց Տելեմաք արածէր զնա

աչօքն, դէտ կացեալ գնացից նորա. գորովէր սիրտ իւր ընդ այրն բարելաւ, որ նժդեհ չարաբաստիկ սահմանեալն 'ի նսիհ մեծ՝ խաղալիկ լեալ էր դժնդակ բախտին տարագիր 'ի հայրենեացն: Ասէր ընդ միտս իւր. լիցի ինձ գէթ տեսանել անդրէն զԻթակէ, այլ հիքիս այսմիկ չէ իսկ հնար տեսանել զՓռիւգիա: Տեսիլ առնն Թշուառագունի քան զինքն սփոփէր զվիշտս նորա: Ի տեսանել ապա առնն կազմ և պատրաստ զնաւն 'ի չու, էջ 'ի սեպացելոց ժայռիցն արագամէտ և թեթևընթաց, որպէս Ապոլոն յանտառս Լիկիոյ զդեղձանիկ վարսիցն ամփոփեալ զգիսակս՝ դիմէ ընդ դարավէժս զհետ եղջերուաց և կինճից՝ նետահար առնել զնոսա: Եմուտ նա 'ի նաւ, և հերձանէր ողնափայտն զաղտաղտուկ ալիս տարադէմ յանդնդս:

Յայնժամ 'ի մորմոք դաղտնածածուկ հարաւ սիրտ Տելեմաքայ. վշտանայր, և զվասն էրն անգիտանայր զվշտին. արտասուք ուղխօրէն յաչացն հոսէին, և ոչ ինչ քաղցր էր նմա որպէս զարտասուելն: Ետես անդ զնաւազս սալենտացիս ընկողմնեալ 'ի դալարուտ ընդ ծովեզրն, և ընկըղմեալ 'ի քուն թանձրութեան. զի էին խոնջք և վաստակաբեկք, և քուն անուշակ խլրտեալ էր ընդ անդամս նոցա, դիցուհւոյն Աթենասայ հզօր զօրութեան հաճախափիւռ ցանեալ զնոքօք 'ի լուսապայծառ տունջեան գքնէած գիշերոյ զխաւխաւս ցօղաւորս: Զարմանայր պատանին ընդ

թմրութիւն սալենտացւոցն առ հասարակ, մինչ դեռ փէակեցիք փութային ժիրաժիր չկորուսանել զհողմն աջողակ. այլ առաւել ուշ ունէր 'ի զնին նաւուն փէակեցւոյ որ 'ի խորս ծովուն անհետանայր, քան 'ի գնալ զարթուցանել զսալենտացիս: Ապշութիւն իմն և աղմուկ անիմանալի ունէր զնա ականկառոյց 'ի նաւուն ծովաչու, զորոյ առագաստից ևեթ նշմարանս տեսանէր 'ի կապուտակ ծուփսն յեռեալ սպիտակ: Այլ ոչ Մենտորի լսէր խօսիցն. արտաքսեալ իմն էր յանձնէ 'ի բաց հանգոյն խելայեղելոց Մենադիցն ', որ գեղարդն կարճաբուն 'ի ձեռին՝ 'ի ձիչ և 'ի կառաչ իւրեանց զգետեղերս Հեբրոսի ' և զլերինս Հռոդոպեայ ' և Իսմարեայ հնչեցուցանեն:

Ապա իբրև յապշութենէ անտի մտացն առ փոքր մի զգաստացեալ՝ սկսաւ անդրէն հեղուլ արտասուս, ասէ ցնա Մենտոր. Ոչ ինչ զարմանամ, իմ Տելեմաքէ, ընդ արտասուս քոյին. պատճառք դոցին քեզ անծանօթք՝ ոչ ինչ զանխուլ են 'ի Մենտորէ. բնութիւնն ինքնին ազդէ 'ի քեզ և բարբառի, նա ինքն ճմլէ զսիրտ քո 'ի գորով: Հիւրն անծանօթ՝ որ այդպէսն զքեզ խանդաղատեցոյց՝ նա ինքն է մեծն Ոդիսեւս. և որ ինչ ծերունին փէակեցի պատմեաց զնմանէ յանուն Կղէոմենեայ՝ կեղծիք են առ 'ի գործել անկասկած զդարձ հօր քո յաթոռ իւր: Գնայ նա դէպ ուղիղ յԻթակէ, և արդ մերձեալ իսկ է 'ի նաւահանգիստ անդր, և տեսանէ անագան

ուրեմն զվայրս՝ որոց անձկայրն 'ի բազմաց հետէ։ Ո՛չք քո տեսիլն զնա, ըստ նախապատուամն առ քեզ աւետեաց, այլ ոչ ծանեան զնա. տեսցես զնա ընդ հուպ և ծանիցես, և ծանիցես 'ի նմանէ. բայց ոչ ներէր ձեզ 'ի դիցն այժմէն զմիմեանս ճանաչել մինչ չև հասեալք յԻթակէ։ Սիրտ նորա ոչ ինչ ընդհատ 'ի քումմէդ լինէր հեղձամըղձուկ. այլ իմաստութեան նորա ոչ էր մարթ ծանօթս տալ ումեք ուր վտանգ էր զազանեացն մատնութեան, և եղեռնաւոր հինից սիրեխացն Պենելոպեայ։ Ողիսեւս հայր քո գերահանճար 'ի մահկանացուս, և սիրտ նորա գուբ է խոր, ուստի չէք հանել զգաղտնիս 'ի վեր։ Սիրէ նա զճշմարտութիւն, և ոչ ինչ վնասակար նմին հանէ 'ի շրթանց. այլ ըստ հարկի և եթ իւրաց ասէ զճշմարտութիւն, խոհականութիւն կնքէ զշըրթունս նորա ամրափակ յամենայն աւելորդ բանից։ Ո՜ խարդ փղձկեցաւ 'ի խօսելն ընդ քեզ, որպէս բուռն արար անձին առ 'ի չտալ ծանօթս, երբ աղէկիզեալ 'ի տեսիլ քոյին. աստի ահա այնքան տոկունութիւն նորա և սրտաբեկ վհատութիւն։

Այլ 'ի լսել զայս պատանւոյն՝ զեղաւ սիրտ նորա, և 'ի փղձուկ հարեալ՝ իջուցանէր յաչացն վտակս արտասուաց. և հարուստ մի 'ի հեկեկանացն հատկլեալ, ապա ուրեմն բարբառ արձակեաց և ասէ. Ո՛չ, սիրեցեալդ իմ Մենտոր, չգիտեմ որպիսի ինչ աղապատանս զգայի ես յայրն

անծանօթ՝ որ խռովէր զաղխս իմ. այլ ընդէ՞ր նախ քան զմեկնել նորին չյայտնեցեր ինձ զնա թէ ճանաչէիր։ Ե՞ր վասն թողեր նմա մեկնել աստի առանց ինչ խօսելոյ ընդ նմա և տալոյ նմա ծանօթս. չկարեմ 'ի վերայ կալ խորհրդոցդ, մի թէ մինչ 'ի սպառ գտայց ես թշուառ. կամ ծանրացասումն ընդ իս եղեալ դիք ետուն դատաւորնիք՝ կալ ինձ ծարաւի հանդոյն Տանտալեայ, զոր պատրեն յուսով ալիք խաբուսիկք 'ի պապակելոց շրթանցն խուսեալ։ Ողիսեւս հայր իմ, անդարձ դու յինէն խոյս ետուր 'ի բաց. գուցէ ոչ ևս ինձ լիցի տեսանել զերեսս քոյին. գուցէ տարփաւորք քոյդ Պենելոպեայ 'ի նոյն իսկ զքեզ արկցեն 'ի թակարդ՝ զոր ինձ լարէին։ Եթէ գէթ ընդ քեզ էի ուղեկից, լինէր ինձ արդեօք մեռանել ընդ քեզ։ Ո՛վ իմ Ողիսեւս, եթէ ոչ դարձեալ 'ի ժայռ ինչ ուրեք նաւակոծ զքեզ արկցեն մրրիկք, (զի զամենայն ինչ է ինձ կասկածել յոխերիմ բախտէ), զարհուրեալ դողամ զի 'ի ժամանել քոյին յԻթակէ նոյն և քեզ հասցեն աղէտք դժնդակք որ ինչ 'ի Միկենս Ագամեմնոնի։ Բայց դու հի՞մ ընդ բախտ իմ նախանձեցար ո՛վ իմն Մենտոր. զի գիրկս նմա արդ արկանէի, և այժմ ընդ նմա 'ի նաւակայս անդ կայի Իթակեայ՝ պատերազմակից լինել ընդ նմա, և յաղթել հանուրց մերոց թշնամեաց։

Ժպտեցաւ Մենտոր և ասէ. Տե՛ս ինձ, սիրեցեալդ իմ Տելեմաքէ, որպիսի՛ ինչ է մարդ. տրտ-

միս դու զի տեսեր զհայր քո, և ոչ ծանեար զնա. և զի՞նչ վայրիկ մի յառաջ ոչ փոխանակէիր առ գիտել ևեթ հաւաստեաւ զկենդանութիւն նորին. իսկ արդ ականատես իսկ եղեալ նմին, փոխանակ ցնծութեան լնուս դառնութեամբ: Այսպէս խօթամտութիւն հողեղինաց 'ի պատահել ըղձիցն՝ արհամարհէ զայն, և հնարի տանջել զանձն առաւելագունիցն ըղձիւք: Առ 'ի հրահանգել զհամբերութիւն քո ունիս զքեզ դիք միշտ յակնկալիս. կորուսանել կարծես զժամանակդ, այլ պիտանեգոյն է դա յամենայն 'ի կեանս քո, զի մարզիս դովաւ 'ի կարևորագոյնն իշխանի քան զամենայն առաքինութիւնս: Համբերութեան պէտք են առ 'ի տիրել անձին և այլոց. անհամբերութիւն, ույժ և կորով թուեցեալ հոգւոյ, վատութիւն է և տկարութիւն 'ի վշտակրել. որ ոչն գիտիցէ համբերել և կրել՝ այնպէս է, որպէս զի չգիտիցէ ոք լինել խորհրդապահ. զի երկաքանչիւր տկարանան նուաճել զանձինս: Որպէս կառարշաւ ոք եթէ ոչ կորովի բազկաւ նուաճէ 'ի ժամու զամեհի ձիանն, խեռեն 'ի սանձուց և զահավիժին, և վերելեալն տկար՝ որում անսաստեն՝ կործան 'ի կառացն անկեալ խորտակի, այսպէս այր անհամբեր յանսանձ և յամեհի ըղձիցն 'ի վիհս չարեաց զառածանի, և որչափ նորայն մեծ է զօրութիւն՝ այնչափ դժնդակ գործէ նմա չար անհամբերութիւն: Ոչ իմիք երկայնամտէ, ոչ տայ պարապ անձին կշռելոյ ինչ,

բռնաբարէ զամենայն 'ի հաճոյս իւր, բեկանէ
զկողերս առ 'ի կթել զխայր տհաս, խորտակէ
զճիւղսն՝ ոչ մնալով բացման նոցա, կամի հնձել 'ի
սերմանել խոհեմ մշակին. և որ ինչ և գործէ
հապճեպ և տարաժամ, չեն ինչ պիտանի, և կար-
ճատևք են քան զյեղյեղուկ իղձս նորա: Այս-
պիսի են խորհուրդք անհանճարք առն, որ ամե-
նայնի բաւական զանձն համարեալ՝ մտանի ան-
ժոյժ ընձիւղն զեղծանել իշխանութեամբն: Ար-
'ի խրատել զքեզ 'ի համբերութիւն, ով իմ
Տելեմաքէ, մատուցին ցարդ դիք զհամբերութիւն
քոյին 'ի հանդէս, և թուխս դու լեալ խաղալիկ
նոցին անկայուն կենօք՝ յորում տան քեզ կեալ
յողդողդ և տարտամ: Յարիք՝ ոյց յուսոյ,
մերթ երևին քեզ, մերթ անհետանան, իբր ե-
րազ թեթև՝ որ խուսէ յարթմնի. որպէս զի ու-
ցիս, զի և կարծեցեալք իսկ իրք 'ի ձեռին՝ 'ի
քթթելական 'ի բաց կորնչին: Ամաստնագոյնք
իսկ խրատք Ողիսեայ ոչ այնպէս ինչ քեզ լիցին
օգտակարք, որպէս կալ նորին ցարդ հեռի 'ի
քէն, և որ ինչ կրեսդ 'ի խնդիր նորին:

Իսկ ապա Մենտոր կամեցաւ 'ի վերջին փորձ
դժուարագոյն զհամբերութիւն պատանւոյն մա-
տուցանել, և 'ի պահուն՝ յորում փութայր նա
ձեպել զնաւաստին 'ի չու՝ արգել զնա յանկարծ,
և ստիպէր նուիրել Աթենասայ զոհ մեծ 'ի ծով-
եզերն: Հլու եղև Տելեմաք կամաց Մենտորի,
կանգնեցան բագինք կրկին հողակոյտք զալա-

ըազգեցաք, ճառագայթէր արիւն զոհիցն, և ամբառնայր ծուխ խնկոց ընդ սրտեռանդն հառաչանս պատանւոյն՝ որ զոհանայր զՀզօր պաշտպանութենէ դիցուհւոյն: Այլ իբրև վախճան եղև պատարագացն, եմուտ Տելեմաք զհետ Մենտորի 'ի մուայլ անտառակին՝ որ մերձ կայր, և անդ տեսանէր զնա յանկարծ յայլակերպս: Խորշոմք ճակատուն անհետ լինէին որպէս ստուերք՝ յորժամ վարդաժամն բանայ արշալոյս զդրունս արևելից, և բոցափայլ զեղերս երկնից պայծառացուցանէ: Ականողիք նորա խորխնք և դժնեայք փոխէին 'ի կապուտակ երկնագեղ 'ի լոյս աստուածեղէն շողեալ. անյայտէին միրուք նորա ալէբեկք և անյարդարք, և երևէին 'ի դէմս նորա տխուք վեհք և ազնուականք, զեղեցիկք և վայելուչք՝ յոր զօշատէին աչք Տելեմաքայ: Կերպարան կնոջ ողորկ և գողտրիկ քան զծաղիկ նորափթիթ՝ վառ առեալ 'ի շողիցն արփենից, և վարդ կարմրագեղ 'ի սպիտակ յեռեալ շուշան 'ի նմա երևէր: Ծաղկէր 'ի դէմս նորա ընդ անթառամ մանկութեան վեհափառութիւն ինն պարզ և անարուեստ. քուրումն ամբրոսականն 'ի վարսիցն զեղածփելոց ծաւալէր. ձորձք նորա փայլէին որպէս զերփնուանկ ճառագայթս՝ որք զնսեմ խորանարդ երկնից ընդ արևածայրս երգունեն, ոսկեճաճանչ զանիւս յօրինեալ: Ոսկոյս գարշապարօքն 'ի յերկիր զնայր դիցուհին թեթևընթաց, որպէս հաւ օդահերձիկ ընդ երկին սլացեալ.

ծօծէր 'ի հզօր աջումն նիզակ փայլակնանշոյլ՝ ահարկու քաղաքաց և ազգաց զօր պատերազմողաց, յորմէ Արէս իսկ արդեօք պակուցեալ սարսէր։ Բարբառ նորա հեզ և քաղցր, բայց զօրաւոր և յորդորական. և բանք նորա որպէս նետք հրաշէկք Թափանցիկք ընդ սիրտ Տելեմաքայ, որ ազդէին 'ի նա վէրս իմն չգիտեմ որպէս ախորժելիս. և զսաղաւարտի նորին չարագոյժ հաւն աթենական [10] կայր դրուագեալ, և զլանջօքն փայլատակէր այծենակաձ ասպարն ահեղ։

Յայնքան նշանաց ծանեաւ զնա պատանին, զի էր նա ինքն Աթենաս, և ասէ. Դո՛ւ ուրեմն, ո՛վ դիցուհիդ, հաճեցար առաջնորդել առ սէր Ոդիսեայ նորին որդեկիս։ . . . Եւ կամէր իսկ յառաջ ածել զբանսն, այլ ձայն նորա գելու. 'ի զուր շրթունք նորա ճգնէին բացատրել զխնամսն՝ որ աղբերաբար 'ի խորոց սրտի նորա բղխէին, զի ընկճեալ կայր 'ի փառաց աստուածուհւոյն. որպէս ոք զի հեղձամղձուկ լեալ յանուրջս, և շրր-թամբք տատանելովք ճիգն գործեալ՝ չկարիցէ յօդել բարբառ։

Առ որ զայսպիսիկ յայնժամ Աթենաս զյետին խրատսն յաւել. Զաւակդ ողջախոհական, լո՛ւր ինձ զայս վերջին նուագ։ Ոչ զոք 'ի մահկանացուաց այնքան խնամով հրահանգեցի. զձեռամբ քումմէ կալեալ ածի զքեզ ընդ անդունդս ալէկոծս, ընդ աշխարհս անծանօթս, ընդ արիւնայեղց պատերազմունս, և ընդ բնաւ ամենայն չարիս՝ որոց

մարթ է փորձել զսիրտ մարդկեղէն: Ցուցի քեզ արդեամբք իրացն զբարւոք և զյոռի տեսչութիւն: Ուսանցանք քո ոչ ինչ նուազ եղեն քեզ օգտակարք քան զարկածս չարեաց. զի ո՞ ուրեք երբէք իմաստութեամբ գիտիցէ իշխել, եթէ չիցէ նորա զչարեաց առեալ զփորձ, և ոչ 'ի վշտակրութեանց՝ յորս սխալանօքն զառածանի՝ իցէ խրատեալ:

Ընդ ծով և ընդ ցամաք յաճախեցին քեզ, որպէս հօր քում, պատահարք դժոխըմբերք. Երթ արդ, արժանի իսկ ես զհետ շաւղաց նորա ընթանալոյ: Կարճոյ և դիւրին մնայ քեզ ուղի առ 'ի յԻթակէ, ուր այժմիկ հասանէ նա. պատերազմակից լեր նմին, և հլու որպէս որ 'ի նուաստագունից նորին հպատակաց, օրինակ հնազանդութեան արձանացիր նոցին: Տացէ նա քեզ զԱնտիոպէ 'ի հարսնութիւն, և կեցցես բարեբաստիկ ընդ նմա, զի նախամեծար քան զգեղ զիմաստութիւն արարեր և զառաքինութիւն: Իսկ յորժամ թագաւորեսցես, փառս քեզ համարեսջիր զոսկեղինիկն դար վերականգնացուցել: Լուր ամենեցուն, և սակաւուց հաւատս ընծայեա. զգոյշ լեր, մի և անձին իսկ կարի հաւատալ, երկիր 'ի պատրանաց, և եթէ երբէք պատրեսցիս՝ մի ծածկեր յայլոց զպատրանս քո:

Սիրեա զժողովուրդ քո, և զամենայն գուն գործեա սիրելի լինելոյ նմա: Կարևոր է երկիւղ առ 'ի չգոյէ սիրոյ. այլ ակամայ միշտ պարտ է

զայն 'ի կիր արկանել որպէս զդեղս սաստիկս և վնասակարս : Լեր յառաջատես հետևանաց իրաց՝ յորս ձեռնարկես. զահաւորագոյն արկածս կասկածեսջիր. և գիտեա զի սոյգ քաջութիւն այն իսկ է՝ նախատես լինել վտանգաց, և արհամարհել զայսոսիկ յանհրաժեշտ հարկին : Որ ոչն կամի նախատես գոլ նոցին, չիք 'ի նմա արիութիւն՝ անխռով յերեսաց նոցա կալոյ. իսկ որ տեսանէն զամենայն, և զգուշանայ յամենայնէ՝ յորոց մարթ իցէ խուսել, և խիզախէ անվեհեր 'ի հանդէպս, նա միայն է իմաստուն և արի :

Փախիր 'ի մեղկութենէ, 'ի սնափառ պերճանաց, և 'ի շռայլութենէ. պարծանս քեզ համարեսջիր զանպաճոյճ պարզութիւն. առաքինութիւնք քո և բարեգործութիւնք լիցին զարդք անձին քո և արքունեացդ. նոքին շուրջ զքև կացցեն Թիկնապահք, և ուսցին 'ի քէն ամենեքին որ այն իցեն ճշմարիտ փառք : Մի՛ երբէք լիցին քեզ մոռացօնք՝ զի ոչ 'ի փառս անձանց իշխեն Թագաւորք, այլ յօգուտ ժողովրդոց : Բարերարութիւնք նոցա ձգին դարուց 'ի դարս հեռաւորս. և չարիք նոցա յաճախեն յազգաց յազգս մինչև 'ի սպառ : Լ՝ իսկ, զի միոյ ուրուք յոռի Թագաւորութեանն Թշուառանան դարք բազմայոլովք :

Առաւելագոյն լիցի քեզ զգուշութիւն յանձնահաճ կամապաշտութենէ, զի զոխերիմն զայն մինչև 'ի մահ քո ամենայն ուրեք ածեալ ձգեսցես զքոյին տուրի. մնացէ նա և 'ի խորհուրդս քո,

և մատնեսցէ զքեզ եթէ լուիցես նմին ։ Անձնա-հաճ կամք տան կորուսանել զդիպողագոյն պատեհութիւնս, և աղդեն 'ի սիրտ յօժարութիւն և խորշումն անխորհրդական 'ի վնաս մեծամեծ բարեաց ։ Դուզնաքեայ պատճառանօք սահմանեն զիրս կարևորս, նսեմացուցանեն զամենայն հնարս, ընկճեն զարիութիւն, և կացուցանեն զմարդ յեղյեղուկ տկար վատ և անբերելի ։ Մի՛ վստահիր յոտն յայդպիսի ։

Երկի՛ր 'ի դից, Տելեմաքէ ։ Ճոխագոյն գանձ է սրտի երկիւղդ այդ ։ Դովաւ ստասցիս իմաստութիւն, արդարութիւն, խաղաղութիւն, խնդութիւն, բերկրանս անապականս, զճշմարիտ ազատութիւն, զքաղցր լիութիւն, և զփառս անըստգիւտս ։

Մեկնիմ ես 'ի քէն, որդեակդ Ոդիսեայ, այլ իմաստութիւն իմ կացցէ ընդ քեզ անմեկնելի՝ եթէ միայն դիցես 'ի մտի զի չկարես և ոչ ինչ առանց նորա ։ Ժամ է արդ գնալոյ քեզ միայնակ ։ ոչ առ այլ ինչ մեկնեցայ 'ի քէն յԵգիպտոս և 'ի Սալենտ, բայց առ 'ի վարժս քոյին զրկելոյ 'ի քաղցրութենէ աստի, որպէս մանուկ դիեցիկ հատուցանի 'ի ստենէ 'ի հասանել ժամանակի ջամբելոյ նմա ընդ կաթին և հաստատուն կերակուր ։

Եւ իբրև վախճանեաց զբանս իւր դիցուհին, վերացեալ ընդ օդս, ծրարեալ յամպ ոսկեճաճանչ կապուտակային, աներևութանայր ։ Իսկ

Տեղեմաք յոգւոց հանեալ, պակուցեալ, յափշտակեալ յանձնէ 'ի բաց, ձեռս յերկինս ամբարձեալ, անկեալ երկիր եպագ դիցուհւոյն. և ապա դիմեաց զարթոյց զուղեկիցսն, ձեպեաց 'ի չու, հաս յԻթակէ, և 'ի տան Եւմեայ " հաւատարմի եգիտ զհայր իւր:



# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ

## ՔՍԱՆԵՐՈՐԴԻ ՉՈՐՐՈՐԴԻ ԳՐՈՑՆ

1 Լէւկատա հրուանդան Եպիրոսի, մօտ 'ի կղզին՝ որ արդ կոչի Սանթա Մաւրա:
2 Ռանթայէն կամ Կերաւնեան և Ակրոկերաւնեան լերինք Քիմերայ յԵպիրոս, ընդ ծովն յոնիական և ադրիական:
3 Փէակիա կամ Կորկիւրա, կղզի հանդէպ Եպիրոսի, որ 'ի Տաճկաց կոչի Քէօրֆէզ:
4 Ալկինոոս արքայ փեակեցւոց, որ հիւրընկալեաւ զՈդիսեւս 'ի նաւաբեկծելն:
5 Լէօբոս, այժ. Միքոնէ, կղզի 'ի ծովն արշիպեղագեան:
6 Թրակիա, այժ. Ռումէլի գաւառ Եւրոպայ ընդարձակ:
7 Մէնադք, կամ Սպանդարամետականք, քրմուհիք Բաքոսի:
8 Հէբրոս գետ 'ի Թրակիա, որ արդ կոչի Մարիցա:
9 Հռոդոպէ և Էմոս, լերինք 'ի Թրակիա:
10 Չարագոյժ հաւն Աթենայ, բու. զորոյ զթռիչս համարէին Աթենացիք գուշակ յաղթութեան. զի էր հաւն այն սրբազանեալ դիցուհւոյն իւրեանց Աթենասայ:
11 Եւմէոս հաւատարիմ հովուապետ խաշանցն Ոդիսեայ:

# ՑԱՆԿ

# ՎՐԻՊԱԿՔ ՏՊԱԳՐԻՆ

| | ԷՋ | ՏՈՂ | ՎՐԻՊԱԿ | ՈՒՂԻՂ |
|---|---|---|---|---|
| ՀԱՏ. Ա | 93 | 8 | տառութիւն | զտառութիւն |
| | 101 | 16 | գերութեանս | թերութեանս |
| | 127 | 11 | բերկրի | բերրի |
| | 165 | 26 | թագաւորել | թագաւորեալ |
| | 186 | 11 | երկնաւոր | երկնաւորք |
| | 201 | 26 | քաղցացան | քաղցրացան |
| | 212 | 16 | երթայցես | երթայց ես |
| | 218 | 21 | հայթաթել | հայթայթել |
| | 232 | 21 | այնոցիկ | այդոցիկ |
| | 237 | 6 | յանձն | անձն |
| | 255 | 14 | ճոպան | ընդ. ճոպան |
| | 287 | 8 | երեւին | երեւէին |
| | 292 | 14 | պամէր | պատմէր |
| ՀԱՏ. Բ | 77 | 26 | առ որ լինէ | առ որ էջէ լինէ |
| | 106 | 3 | Սխմուլեայ | Ցխմոյեայ |
| | 132 | 9 | 'ի պարգեւ | 'ի պարգեւս |
| | 144 | 28 | ոսկեփունջան | զոսկեփունջան |
| | 235 | 6 | իւր և | իւրև |
| | 292 | 19 | խրախան | երախան |